ՏԱՐԵՒՈՐ

# ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ

ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

ԸՍՏ ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ

## ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ

ԵՒ ԱՅԼՈՑ ՀԱՐՑ ՄԵՐՈՑ

Ի ՇԱԲԱԹԷ ՂԱԶԱՐՈՒ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՄԻՆՉԵՒ Ի ՇԱԲԱԹ-
ՔԿՆԻ ՍՐԲՈՑ ՔԱՅԿԻՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1891 ԹՈՒՆ

## ՟ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ

## ՈՐ ԿԱՏԱՐԻ

# Ի ՄԷՋԳԻՇԵՐԻ

## Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ

Օրհնեալ Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս. ամէն:

ՀԱՅՐ մեր, որ յերկինս ես. սբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութի քո. եղիցին կամք քո ոպ յերկինս և յերկրի: Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր. և թող մեզ զպարտիս մեր, ոպ և մեք թողումք մերոց պարտապանաց. և մի տանիր զմեզ ի փորձութիւն այլ փրկեա զմեզ ի չարէ: Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. ամէն:

Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիս քո: Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիս քո: Օրհնեալ համագոյ և միասնական անբաժանելի սբ Երրորդութիւնն՝ Հայր և Որդի և Հոգի սուրբ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Սաղմոս Գ:

Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ, և բազումք յարեան ի վր իմ: Բազումք ասէին զանձնէ իմմէ, թէ չիք փրկութիւն սորա առ Աստուած իւր:

Այլ դու Տէր օգնական իմ ես, փառք իմ և բարձրացուցիչ գլխոյ իմոյ: Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի. և լուաւ ինձ ի լեռնէ սրբոյ իւրմէ:

Ես ննջեցի և ի քուն եղէ. զարթեայ, և Տէր ընդունող իմ է: Ոչ երկեայց ես ի բիւրուց նց. ոյք շուրջանակի պատեալ պաշարեալ պահէին զիս:

# ԿԱՐԳԱՒ ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ

# Ի ՄԷՋԳԻՇԵՐԻ

### Ի ԴԻՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ

Օրհնեալ Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս. ամէն։

ՀԱՅՐ մեր, որ յերկինս ես. սբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութի քո. եղիցին կամք քո ոպ յերկինս և յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր. և թո՛ղ մեզ զպարտիս մեր, ոպ և մեք թողումք մերոց պարտապանաց. և մի տանիր զմեզ ի փորձութիւն այլ փրկեա՛ զմեզ ի չարէ։ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. ամէն։

Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիս քո։ Տէր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիս քո։ Օրհնեալ համագոյ և միասնական անբաժանելի սբ Երրորդութիւնն՝ Հայր և Որդի և Հոգի սուրբ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Սաղմոս Գ։

Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ, և բազումք յարեան ի վր իմ։ Բազումք ասէին զանձնէ իմմէ, թէ չիք փրկութիւն սորա առ Աստուած իւր։

Այլ դու Տէր օգնական իմ ես, փառք իմ և բարձրացուցիչ գլխոյ իմոյ։ Զայնիւ իմով ես առ Տէր կարդացի. և լուաւ ինձ ի լեռնէ սրբոյ իւրմէ։

Ես ննջեցի և ի քուն եղէ. զարթեայ, և Տէր ընդունող իմ է։ Ոչ երկեայց ես ի բիւրուց նց. որք շուրջանակի պատեալ պաշարեալ պահէին զիս։

Արի Տէր և փրկեա՛ զիս Ած իմ. զի դու հարեր զամենեսեան՝ ոյք էին ընդ իս թշնամութք ի տարապարտուց. եւ զատամունս մեղաւորաց փշրեցես։ Տեառնդ է փրկութի. ի վերայ ժողովրդեան քո օրհնութի քո։

Սաղմոս ՁԷ։

Տէր Ած փրկութե իմոյ, ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո։ Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ. և կեանք իմ ի դըժոխս մերձեցան, և համարեցայ ես ընդ այնոսիկ՝ որք իջանեն ի գուբ։ Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի. և ի մեռեալս ազատ։

Որպէս վիրաւորս որք ննջեն ի գերեզմանի։ Զորս դու ոչ յիշեցեր, նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնումն ի խաւարի, և ի ստուերս մահու։ Ցիս հաստատեցաւ սրտմտութի քո. զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս՝ իմ. և եդին զիս նշաւակ իւրեանց։ Մատնեցայ և ոչ ելանէի, աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ։ Մի՛ թէ մեռելո՞ց առնիցես զսքանչելիս քո կամ բժիշկք յարուցանիցեն և խոստովան առնիցեն առ քեզ։

Մի՛ թէ պատմեսցէ՞ ոք երբէք ի գերեզմանի զողորմութիս քո. կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան։ Մի՛ թէ ճանաչիցի՞ն ի խաւարի սքանչելիք քո. կամ արդարութի քո յերկիր մոռացեալ։

Ես առ քեզ Տէր աղաղակեցի. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։ Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ. կամ դարձուցանես զերեսս քո յինէն։

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմմէ. ի բարձրութենէ խոնարհեցայ և ապշեցայ։ Ցիս հաս-

տատեցաւ բարկութիւն քո. արհաւիրք քո խռովեցուցին զիս:

Շրջեցան զինեւ ոպ ջուր. զօր ամ պաշարեցին զիս ի միասին: Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ. և ըզծանօթս իմ վասն թշուառութեան իմոյ:

Սաղմոս ՃԲ:

Օրհնեա անձն իմ զՏէր, և ամ ոսկերք իմ զանուն սբ Նորա: Օրհնեա՛ անձն իմ զՏր, և մի մոռանար զամ տուրս Նորա:

Ո քաւէ զմեղս քո. բժշկէ զամ հիւանդութիս քո: Ո փրկէ յապականութէ զկեանս քո. պսակէ զքեզ ողորմութբ և գթութբ:

Ո լնու ի բարութէ զցանկութի քո, նորոգեսցի ոպ արծուոյ մանկութի քո: Առնէ ողորմութիս Տր. և իրաւունս ամ զրկելոց:

Ցոյց Տէր զճանապարհս իւր Մովսէսի. և որդւոցն Իսրայէլի զկամս իւր: Գթած ողորմած է Տէր. երկայնամիտ և բազումողորմ:

Ոչ իսպառ բարկանայ մեզ Տր. և ոչ յաւիտեան պահէ ոխս: Ոչ ըստ մեղաց մերոց արար մեզ Տէր. և ոչ ըստ անօրէնութե մերում հատոյց մեզ:

Այլ ոպ բարձր են երկինք յերկրէ՝ այնպէս զօրացոյց Տր զողորմութի իւր ի վր երկիւղածաց իւրոց: Որչափ հեռի են արեւելք յարեւմտից, այնչափ հեռի արար ի մէնջ զանօրէնութիւնս մեր:

Որպէս գթայ հայր ի վր որդւոց իւրոց, այնպէս գթասցի Տէր յերկիւղածս իւր: Զի Նա գիտաց զստեղծուածս մեր, և յիշեաց թէ հող եմք:

Մարդոյ ոպ խոտոյ են աւուրք իւր. ոպ ծաղիկ վայրի՝ այնպէս ծաղկի: Շնչէ ի նմա հողմ, և ոչ է, և ոչ եւս երեւի տեղի Նորա:

Բայց ողորմութի Տեառն յաւիտենանս յաւիտենից ի վր երկիւղածաց իւրոց. և արդարութի Նորա յորդւոց

*մինչև յորդիս։ Ոյք պահեն զուխտս Նր̃ յիշեն զպա-տուիրանս Նր̃ և առնեն զնա։*

*Տէր յերկինս պատրաստեաց զաթոռ իւր. արքայու̃ Նր̃ ամենեցուն տիրէ։ Օրհնեցէք զՏր̃ ամ̃ հրեշտակք Նր̃. հզօրք զօրութբ̃, որք առնէք զբան Նր̃ ի լսել ձայ-նի պատգամաց Նր̃։*

*Օրհնեցէք զՏր̃ ամ̃ զօրութի̃ք Նր̃. պաշտօնեայք Նր̃, և արարողք կամաց Նր̃։ Օրհնեցէք զՏր̃ ամ̃ գործք Նր̃. ընդ ամ̃ տեղիս է տէրութի̃ Նր̃. օրհնեա անձն իմ զՏէր։*

Սաղմոս ՃԽ։

*Տէր լո՛ւր աղօթից իմոց. ո՛ւնկն դիր խնդրուածոց իմոց ճշմարտութբ̃ քով։ Լո՛ւր ինձ արդարութբ̃ քով. և մի մտաներ ի դատաստան ընդ ծառայի քում. զի ոչ ար-դարանայ առաջի քո ամ̃ կենդանի։*

*Հալածեաց թշնամին զանձն իմ. խոնարհ արար յեր-կիր զկեանս իմ, և նստոյց զիս ի խաւարի ո̃պ մեռեալ յաւիտենից։ Ձանձրացաւ յիս հոգի իմ. և սիրտ իմ խռովեցաւ յիս։*

*Յիշեցի զաւուրսն զառաջինս. խորհեցայ յամ̃ գործս քո. յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։ Անձն՝ իմ ո̃պ երկիր ծարաւի է առ քեզ. վաղվաղակի լո՛ւր ինձ Տր̃, զի նուաղեցաւ յի-նէն հոգի իմ։*

*Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն. նմանեցիմ այ-նոցիկ՝ ոյք իջանեն ի գուբ։ Լսելի՛ արա ինձ առաւօ-տուց զողորմութիւնս քո. զի ես ի քեզ Տէր յուսացայ։*

*Ցոյց ինձ ճանապարհ յոր գնացից. զի առ քեզ Տր̃ համբարձի զանձն իմ։ Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Տր̃, զի զքեզ ապաւէն ինձ արարի։*

*Ուսո՛ ինձ առնել զկամս քո, զի դու ես Ա̃Ծ իմ։ Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։*

*Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս, արդարութբ̃*

քով հանցես ի ներողութե զանձն իմ։ Ողորմութե քով սատակեսցես զթշնամիս իմ. և կորուսցես զամ նեղիչս անձին իմոյ. զի ես ծառայ քո եմ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Երգ Տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի։

Յիշեսցուք ի գիշերի զանուն քո Տէր։

Բղխեսցեն սիրտք մեր զբան բարի. և լեզուք մեր պատմեսցեն զգործս երկնաւոր Թագաւորին։

Ի մէջ գիշերի յարուցեալ խոստովանեսցուք ընդ քեզ Տէր։

Զաղօթս մեր տացուք քեզ Տէր ի գաւիթս քո ի մէջ նոր Երուսաղէմի։

Ի գիշերի համբարձցուք զձեռս մեր սրբութեամբ առ քեզ Տէր։

Ի ձայն գոհութեան ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր։

Փ. Զարթիք փառք իմ զարթիք
Եւ ես զարթեայց առաւօտուց. ալէլուիա։
Զարթիք ընդ զուարթունս
Մանկունք վերինն Սիոնի. ալէլուիա։
Զարթիք որդիք լուսոյ
Ի յօրհնութիւն Հօրն լուսոյ. ալէլուիա։
Զարթիք փրկեալք արեամբ
Եւ տուք զփառս փրկողին. ալէլուիա։
Զարթիք նոր ժողովուրդք
Նոր երգս առեալ նորոգողին. ալէլուիա։
Զարթիք հարսունք հոգւով
Սպասեալք գալոյ սուրբ փեսային. ալէլուիա։
Զարթիք վառեալք լուսով

Ընտ իմաստուն սուրբ կուսանաց. ալէ՛ լուիա։
Զարթի՛ք պատրաստեցէք
Իւղ լապտերաց ջերմ արտասուս. ալէ՛ լուիա։
Զարթի՛ք եւ մի՛ ննջէք
Նման յիմար կուսից նիրհէք. ալէ՛ լուիա։
Զարթի՛ք երկիր պագցուք
Եւ արտասուօք զայս ասասցուք. ալէ՛ լուիա։

Փ. Զարթիր ընդէր ննջես. Տէր մի՛ մերժեր ըզ-մեզ ի սպառ։

Արի Տէր օգնեա մեզ. տացուք անուանդ քում ըզփառս։

Այժմ եւ յաւէտ Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հո-գւոյն. ամէն։

Փ. Զարթուցեալքս ի զբաղմանէ. գիշերային հանգստենէ։

Շնորհեսցէ մեզ մարդասէր Տէր. մխիթարութիւն եւ ի սփոփանս եկեղեցւոյ։

Ահիւ եւ դողութեամբ կացցուք ի յաղօթս։

Եկեալ խոստովանեսցուք ըզյանցանս։

Եւ գտցուք ի Քրիստոսէ զքաւութիւն եւ ըզմեծ ողորմութիւն։

կց. Անբաժանելի եւ համագոյ Երրորդու-թեան. համաձայնեալ ընդ զօրս երկնից փառըս մատուցանեմք։

Փառք քեզ։ Որ յանարուեստ յաթոռ բարձրացեալ հանգչիս. սուրբ Աստուած հզօր եւ սքանչելագործ։

Փառք քեզ։ Որ յանէից գոյացուցեր զա-մենայն արարածս. սուրբ Աստուած անձառ Հօր անեղ Որդի։

Փառք քեզ։ Որ տեսչութեամբ խնամես

*զամենայն արարածս. սուրբ Աստուած բղխումն անսպառ աղբեր։*

*Տէր. ժողովրդապետք եկեղեցւոյ ի քեն հայցեն ասելով. հովիւ բարի ողորմեա՛ բանաւոր հօտի։*

*Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։*

*Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։*

Քարոզ։

*Զարթուցեալքս ամենեքեան ի հանգստենէ քնոյ. զոր շնորհեաց մեզ մարդասէրն Ած ի մխիթարութի և ի սփոփանս տկարութեան մերում։ Եւ եկեալքս միաբան հոգևոր երգով ի փառաբանութի և ի պատիւ ամենասուրբ անուան Տեառն մերոյ և փրկչին Յսի Քսի։ Ահիւ և դողութբ կացցուք յաղօթս առաջի նորա. և գոհացարուք զնմանէ ի գիշերային ժամուս յայսմիկ վասն իրաւանց և արդարութե նորա։ Որ ընտրեաց զմեզ ողորմութբն իւրով. և շնորհեաց մեզ բերել զնմանութի երկնային հրեշտակացն փառաբանիչս Տեառն Այ ամենեցուն և մեզ լինել։ Եւ մեք այսուհետև սրբելով զանձինս մեր ի խղճէ և ի չար գործոց։ Համբարձցուք զձեռս մեր ի սրբութի առանց բարկութե և երկմտութե։ Հաւատով խնդրեսցուք ի նմանէ զքաւութի և զթողութի յանցանաց մերոց։ Խոստովան լինելով զգաղտնիս սրտից մերոց ծածկագիտին Այ։ Ոպ զի ընդունելով զպաղատանս մեր աղօթիւք և բարեխօսութբ ամենայն սրբոց։ Շնորհեսցէ մեզ մարդասէրն Ած կեալ առաքինութբ և անարատ վարուք ըստ կամաց Նր յայսմ աշխարհիս։ Եւ արժանաւոր լինելով յաւիտենական և երկնային խորանացն։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Ած Յս Քս Տր մեր. կեցո և ողորմեա։* Կեցո Տէր։

*Զմնացուած գիշերիս խաղաղութբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդրեսցուք։* Շնորհեա Տէր։

Զհրեշտակն խաղաղութեան պահապան անձանց մերոց ի Տեառնէ՛ խնդրեսցուք: Շնորհեա՛ Տէր:

Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց ի Տեառնէ՛ խնդրեսցուք: Շնորհեա՛ Տէր:

Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւն յօգնութիւն անձանց մերոց ի Տեառնէ՛ խնդր: Շնորհեա՛ Տէր:

Եւ եւս և վասն միաբանութեան ճշմարիտ և սր̄ հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա՛:

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք: Քեզ Տեառնդ յանձն եղիցուք:

Ողորմեա՛ց մեզ Տէր Ած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ:

Եւ ասէ երէց Տէր ողորմեա:

Նորին Տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի Երգ առաւօտեան ի դէմս սրբոյ Երրորդութեան. նաեւ իւրաքանչիւր դիմի Երրորդութեանն առանձնակի:

Առաւօտ լուսոյ,
Արեգակն արդար,
Առ իս լոյս ծագեա՛:
Բղխումն ի Հօրէ և յՈրդւոյ,
Բղխեա՛ ի հոգւոյս
Բան քեզ ի հաճոյս:
Գանձդ ողորմութեան,
Գանձիդ ծածկելոյ
Գտող զիս արա՛:
Դուռն ողորմութեան,
Դասանողիս բա՛ց.
Դասեցո՛ վերնոցն:
Երրեակ միութիւն,
Եղելոց խնամող,
Եւ ինձ ողորմեա՛:
Զարթի՛ր Տէր յօգնել.
Զարթո՛ ըզթըմրեալս,
Զուարթնոց նըմանել:
Էդ Հայր անըսկիզբն.
Էակից Որդի,
Է միշտ սուրբ Հոգի.
Ընկա՛լ զիս գըթած,
Ընկա՛լ ողորմած.
Ընկա՛լ մարդասէր:
Թագաւոր փառաց,
Թողութեանց տըւող,
Թո՛ղ ինձ ըզյանցանս:
Ժողովող բարեաց,
Ժողովեա՛ եւ զիս
Ժողովս անդրանկաց:
Ի քէն Տէր հայցեմ
Ի մարդասիրէդ
Ինձ բըժըշկութիւն:
Լե՛ր կեանք մեռելոյս,

Լոյս խաւարելոյս,
Լուծանող ցաւոյս:
Խորհրդոց գիտող,
Խաւարիս շնորհեա՛
Խորհուրդ լուսաւոր:
Ծընունդ Հօր ծոցոյ,
Ծածկելոյս ստուերաւ
Ծագեա՛ լոյս փառաց:
Կենարար փրկիչ,
Կեցո՛ ըզմեռեալս,
Կանգնեա՛ զգլորեալս:
Հաստեա՛ հաւատով,
Հաստատեա՛ յուսով,
Հիմնեցո՛ սիրով:
Ձայնիւս աղաչեմ,
Ձեռօքս պաղատիմ,
Ձիր բարեաց շնորհեա՛:
Ղամբարամբ լուսոյ,
Ղեկավար ճարտար,
Ղօղեալս ամրացո՛:
Ճառագայթ փառաց,
Ճանապարհ ինձ ցո՛յց
Ճեպել ի յերկինս:
Միածինըդ Հօր,
Մո՛յծ զիս յառագաստ
Մաքուր հարսանեացդ:
Յորժամ գաս փառօք
Յահագին աւուրն,
Յիշեա՛ զիս Քրիստոս:
Նորոգող հնութեանց,
Նորոգեա՛ և զիս,
Նորոգ զարդարեա՛:

Շնորհատու բարեաց,
Շնորհեա՛ զքաւութիւն.
Շնորհեա՛ զթողութիւն:
Ուրախացո՛ Տէր,
Ոգւոյս փրկութեամբ,
Ոյր վասն եմ ի սուգ:
Չար մըշակողին
Չար սերմանց նորին
Չորացո՛ զպըտուղն:
Պագեւիչ բարեաց,
Պարգեւեա՛ իմոց
Պարտեացս թողութիւն:
Ջուր շնորհեա՛ աչացս,
Ջերմ հեղուլ զարտօսր,
Ջընջել ըզյանցանս:
Ռետինըդ քաղցու,
Ռամ հոգւոյս արբո՛,
Ռահ ցո՛յց ինձ լուսոյ:
Սէր անուն Յիսուս,
Սիրով քով ճմլեա՛:
Սիրտ իմ քարեղէն:
Վասըն գըթութեան,
Վասն ողորմութեան,
Վերըստին կեցո՛:
Տենչալի տեսլեամբ
Տո՛ւր ինձ յագենալ,
Տէր Յիսուս Քրիստոս:
Րաբունդ երկնաւոր,
Րոտեա՛ զաշակերտս
Րամից երկնայնոց:
Ցօղ արեան քո Տէր,
Ցօղեա՛ ի հոգիս.

Ցնծասցէ անձն իմ։
Իլուծեալըս մեղօք
Իլուծեալ աղաչեմ
Իլուսել ի բարիս։
Փըրկիչ բոլորից,

Փութա զիս փրկել
Փորձութեանց մեղաց։
Քաւիչ յանցանաց,
Քաւեա զօրհնաբանս
Քեզ երգել ըզփառս։

Ածածնին բարեխօսութբ, յիշեա Տէր և ողորմեա։

Զկնի տուէ Աղօթս։

Օքէն գոհանամք Տէր Աճ մեր, որ շնորհեցեր մեզ հանգիստ քնոյ խաղաղութբ։ Եւ զարթուցեալ ժամանեցուցեր զմեզ կանխել յերկրպագութի ահաւոր և փառաւորեալ անուանդ քում սրբոյ։ Տուր մեզ Տէր աղաչեմք զքեզ զմնացուած գիշերիս խաղաղութբ անցուցանել. և զամենայն ժամանակս կենաց պանդխտուե մերոյ երկիւղիւդ քո ամրացո և պահեա։ Ոչ զի զգուշութբ և անարատ վարուք կրօնաւորեալք յայսմ աշխարհիս՝ ժամանեսցուք յանքոյթ և ի խաղաղ նաւահանգիստ յաւիտենական ի կեանսդ, շնորհօք և մարդասիրութեամբ Տեառն մերոյ և փրկչին Յսի Քսի. ընդ որում քեզ Հօր, և Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս։

Խաղաղութիւն ամենեցուն։

Աստուծոյ երկրպագեսցուք։

Նայեա՛ց Տէր բարերար ողորմութբ քով յերկրպագուս և ի փառաբանիչս անուանդ քում սրբոյ։ Տէր զօրութեց, խաղաղացո զանձինս մեր յամ սատանայական խռովութեց և յաշխարհական զբօսանաց։ Զհրեշտակ խաղաղութեան քո առաքեա առ մեզ, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ի տուէ և ի գիշերի, յարթնումե և ի հանգստեան մերում։ Ոչ զի բարեպաշտութբ և արժանաւորապէս քեզ Տեառնդ ծառայելով ի կեանս յայսոսիկ, ժամանեսցուք յաւիտենական երկնից արքայութե քո՝ զոր պատրաստեցեր ի սկըզ-

բանէ աշխարհի սրբոց քոց։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։

Աստ ասէ սաղմոս ըստ յաւուրն, եւ զկնի սաղմոսին ասէ ըստ յաւուրն կանոնագլուխ։

---

Կանոնագլուխ կիրակէին։

Ա2

Ալէլուիա. ալէլուիա։

Դատեա՛ Տէր զայնոսի՛կ ո՛յք դատե՛ն զիս. ալէ՛լո՛ւիա՛. մարտի՛ր ընդ այնոսիկ՝ ո՛րք մա՛րտնչին ը՛նդ իս. ալէ՛լո՛ւիա՛։

Ա՛ռ զզէն և զասպար քո՛ և արի՛ յօգնել ինձ. հա՛ն զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց. արգե՛լ զնոսա և ասա՛ դու ցանձն իմ թէ փրկութի՛ւն քո եմ ես. ալէ՛լո՛ւիա՛։

Ամաչեսցեն և յամօթ լիցին ո՛յք խնդրեն զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն ո՛յք խորհէին ինձ չար։

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ. և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնոսա։

Եղիցին ճանապարհք նոցա ի խաւար և ի գայթագղութիւն. և հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա։

Ի նանիր թագուցին ինձ զործուղայթ յապականութեան իւրեանց. և ի նանիր նախատեցին զանձն իմ։

Փ. Տէր յերկինս է ողորմութի՛ւն քո. ճշմարտութի՛ւն քո մինչև յամպս. ա՛լէ՛լո՛ւիա՛. ալէ՛լո՛ւիա՛։

Արդարութի՛ւն քո որպէս լերինք Աստուած. իրաւունք քո որպէս խորք բազումք. զմարդիկ և զանասուն կեցուցանես դու Տէր։

Որպէս զի՛ բազում արարեր զողորմութի՛ւն քո Ած. այլ որդիք մարդկան ի հովանի թևոց քոց յուսասցին։

Արբեսցին նոքա ի պարարտութե՛նէ տան քո. և զուղխս փափկութեան քո տացես ըմպել նոցա։

Ի քէն է Տէր աղբիւր կենաց. և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։

Ծագեա զողորմութիւնս քո՝ որք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս քո՝ որք ուղիղ են սրտիւք։

Մի եկեսցեն ՚ի վերայ մեր ոտք ամբարտաւանից. և ձեռք մեղաւորաց մի դողացուսցեն զմեզ։

Անդ անկցին ամենեքեան՝ որք գործեն զանօրէնութիւն. մերժեսցին՝ և այլ մի կարասցեն հաստատել։

Փառք Հօր։ Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն. ալէլուիա. ալէլուիա։

ԱԿ

Ասա՛ց անզգամն ՚ի սրտի իւրում թէ ոչ գոյ Աստուած. ալէլուիա. ապականեցան և պղծեցան յանօրէնութեան իւրեանց. և ոչ ոք է որ առնէ զքաղցրութիւն. ալէլուիա։

Ած յերկնից նայեցաւ յամ որդիս մարդկան. տեսանել թէ իցէ՞ ոք իմաստուն որ խնդրիցէ զԱծ. ալէլուիա։

Ամենեքեան խոտորեցան ՚ի միասին և անպիտանացան։

Ոչ ոք է՝ որ առնէ զբարի. և չէ ոք մինչև ՚ի մի։

Որպէս ոչ ծանիցեն ամքն. որք գործեն զանօրէնութի։

Ոյք ուտեն զժողովուրդ իմ ոպ կերակուր հացի. և զՏր Աստուած ոչ կարդացին. ալէլուիա։

Փ. Օ՛րհ՛ն՛ ո՛չ գոյր նոցա փոխանակ. և ո՛չ երկեան յԱստուծոյ. ալէլուիա. ալէլուիա։

Զգեաց զձեռն իւր ՚ի հատուցանել նոցա. և նոքա պղծեցին զօրէնս նորա. ալէլուիա։

Բաժանեցան ՚ի սրտմտութենէ երեսաց նորա. և եհաս ՚ի սիրտս նոցա։

Կակուղ էին բանք նոցա քան զձէթ. և ինքեանք որպէս սլաք։

Ընկեա ՚ի Տէր զհոգս քո. և նա կերակրէ զքեզ. և ոչ տայ յաւիտեան զսասանութիւն արդարոյ։

Դու Ած իջուսցես զնս ՚ի գուբ ապականութե. արք

*արփիւնահեղք և նենգաւորք մի հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես ի քեզ Տէր յուսացայ. ալէլուիա:*

**Փառք.** *ալէլուիա. ամմլէլուիա:*

**ԲՁ**

**Ի** *քեզ Տէր յուսացայ մի ամաչեցից յաւիտեան. ալէլուիա. յարդարութեան քում փրկեա և ապրեցո զիս. ալէլուիա:*

**Խ***ոնարհեցո առ իս զունկն քո. և կեցո զիս:*

**Լ***եր իմ Ած ապաւէն՝ և տեղի ամուր կեցուցանել զիս. զի հաստատութի իմ և ապաւէն իմ դու ես:*

**Ա***ստուած իմ փրկեա զիս ի ձեռաց մեղաւորի. ի ձեռաց անօրինի և անիրաւի:*

**Դ***ու ես համբերութիւն իմ Տէր. Տէր յոյս իմ ի մանկութենէ իմմէ:*

**Ի** *քեզ հաստատեցայ ես յարգանդէ. յորովայնէ մօր իմոյ՝ դու ես ապաւէն իմ. և առ ի քէն է օգնութիւն իմ յամենայն ժամ:*

**Փ. Ե***րկիր պագցեն նմա ամենայն թագաւորք երկրի. և ամենայն ազգք ծառայեսցեն նմա. ալէլուիա. ամլէլուիա:*

**Զ***ի փրկեաց զաղքատն ի ձեռաց հզօրի. զաղքատն և զտնանկն՝ որոյ ոչ է օգնական:*

**Ա***նխայեսցէ նա յաղքատն և ի տնանկն. և զանձինս տնանկաց կեցուսցէ. ի վաշխից չարաց փրկեսցէ զանձինս նոցա:*

**Պ***ատուական է անուն նորա առաջի նոցա. կեցցէ և տացի նմա յոսկւոյն Արաբացւոց:*

**Յ***աղօթս կացցեն առ նա յամենայն ժամ. և զօրհանապազ օրհնեսցեն զնա:*

**Ե***ղիցի հաստատութիւն ընդ ամենայն երկիր. և ի վերայ գլխոց լերանց:*

**Բ***արձրասցի քան զԼիբանան պտուղ նորա. ծաղկեսցի ի քաղաքի Տեառն որպէս խոտ երկրի:*

Եղիցի անուն Տեառն օրհնեալ յաւիտեան. զի յառաջ քան զարեւ է անուն Նորա։

Ի Նա օրհնեսցին ամենայն ազգք երկրի. և ամենայն ազինք երանեսցեն Նմա։

Օրհնեալ Տէր Ած Իսրայէլի որ առնէ զսքանչելիս միայն. և օրհնեալ է անուն սուրբ Նորա յաւիտեան. լցցի փառօք Նորա ամենայն երկիր. եղիցի. եղիցի։

Փառք Հօր. ալէլուիա. ալլէլուիա։

ԲԿ

Ողորմութիւնս քո Տէր յաւիտեան օրհնեցից. ալէլուիա. յազգէ յազգ պատմեցից զճշմարտութիւնս քո բերանով իմով. ալէլուիա։

Ասացեր թէ աշխարհս ողորմութեամբ շինեսցի. յերկինս պատրաստ եղիցի ճշմարտութիւն քո։

Եդի ուխտ ընտրելոց իմոց. երդուայ Դաւթի ծառայի իմոյ։

Յաւիտեան հաստատեցից զզաւակ քո. և շինեցից յազգէ յազգ զաթոռ քո։

Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց քոց Տէր. և ճշմարտութիւն քո յեկեղեցիս սրբոց։

Ո՞վ է յամպս որ հաւասարեսցի քեզ. կամ ո՞վ նմանեսցի Տեառն յորդիս Աստուծոյ։

Փ. Դարձուցեր զօգնութիւն ի սրոյ Նորա. և ոչ ընկալար զնա ի պատերազմի. ալէլուիա. ալէլուիա։

Անարգեցեր զսրբութիւն Նորա. և զաթոռ Նորա յերկիր կործանեցեր։

Նուազ արարեր զաւուրս ժամանակաց Նորա. և հեղեր զնովաւ զամօթ։

Մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո ի սպառ. բորբոքեսցի որպէս հուր բարկութիւն քո։

Իսկ արդ՝ յիշեա և տես թէ ո՛վ է իմ հանդիստ. միթէ ի զո՞ւր ինչ ստեղծեր զամենայն որդիս մարդկան։

Ո՞վ է մարդ՝ որ կեցցէ, և ոչ տեսցէ զմահ. կամ փրկեսցէ զանձն իւր ի ձեռաց դժոխոց։

Ո՞ւր են ողորմութիւնք քո Տէր առաջինք. զոր եր-
դուար Դաւթի ճշմարտութեամբ քով:

Յիշեա՛ զնախատինս ծառայի քո. զոր ընկալայ ի ծոց
իմ յազգաց բազմաց:

Զոր նախատեցին թշնամիք քո Տէր. նախատեցին փո-
խանակ օծելոյ քո:

Օրհնեա՛լ Տ̃ր Ա̃ծ յաւիտեանս յաւիտ. եղիցի. եղիցի:

Փառք Հօր. ալէլուիա. ալէլուիա:

Գ·Ձ

Խոստովան եղերուք Տեառն, զի քաղցր է. ալէլու-
իա. զի յաւիտեան է ողորմութ̃ի նորա. ալէլուիա:

Ո՞ խօսեսցի զզօրութիւնս Տեառն. լսելի արասցէ զա-
մենայն օրհնութիւնս նորա:

Երանի՜ որք պահեն զիրաւունս. և առնեն զարդարու-
թիւն յամենայն ժամ:

Յիշեա՛ զմեզ Տէր ընդ հաճոյս ժողովրդեան քո. և
այց արա մեզ ի փրկութեան քում:

Տեսցուք մեք զքաղցրութիւն ընտրելոց քոց. ուրախ
եղիցուք մեք յուրախութիւն ազգի քո. և գովեսցուք
մեք ի ժառանգութեան քում:

Մեղաք մեք ընդ հարս մեր. անօրինեցաք և յանցեաք:

Փ. Մատնեաց զնոսա ի ձեռս հեթանոսաց. տիրեցին
նոցա ատելիք իւրեանց. և թշնամիք իւրեանց նեղեցին
զնոսա. և խոնարհ եղեն ի ներքոյ ձեռաց նոցա. ալէ-
լուիա. ալէլուիա:

Բազում անգամ փրկեաց զնոսա. և նոքա դառնա-
ցուցին զնա ի խորհուրդս իւրեանց. և կորացան յանօ-
րէնութեան իւրեանց:

Հայեցաւ Տ̃ր ի նեղութիս ն̃ց. ի լսել ձայնի աղօթից ն̃ց:

Յիշեաց զուխտ իւր. և զղջացաւ ըստ բզ̃մ ողորմութ̃ե
իւրում, և ետ զն̃ս ի գթութիս առաջի ա̃մ գերչաց ն̃ց:

Փրկեա՛ զմեզ Տէր Աստուած մեր, և ժողովեա՛ զմեզ ի
հեթանոսաց:

Խոստովան եղիցուք անուան քում սրբոյ. և պարծեսցուք յօրհնութիւնս քո:

Օրհնեալ Տէր Ած Իսրայէլի յաւիտեանս յաւիտենից:

Եւ ասասցէ ամենայն ժողովուրդն. եղիցի եղիցի:

Փառք Հօր. ալէլուիա. ալէլուիա:

ԳԿ

Արարի իրաւունս և արդարութիւն. ալէլուիա. մի՛ մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց. ալէլուիա:

Ընկա՛լ զծառայս քո ի բարի. զի մի՛ ամբարտաւանք զզուեսցեն զիս:

Սպասեցին աչք իմ փրկութեան քում Տէր. և բանից արդարութեան քո:

Արա՛ ընդ ծառայի քում Տէր ըստ ողորմութե քում. զարդարութիւնս քո ուսո՛ ինձ:

Ծառայ քո եմ ես, իմաստո՛ւն արա զիս. և ծանեայց զվկայութիւնս քո:

Ժամ է պաշտել զՏէր. խափանեցին զօրէնս քո:

Փ. Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր. ըստ բանի քում իմաստուն արա զիս. ալէլուիա. ալէլուիա:

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. և բանիւ քով փրկեա՛ զիս:

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո. յորժամ ուսուցես ինձ զարդարութիւնս քո:

Խօսեսցի լեզու իմ զբանս քո. զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են:

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս. զի զպատուիրանս քո ընտրեցի:

Ցանկացայ փրկութե քում Տր. և օրէնք քո խօսք իմ էին:

Կեցցէ անձն իմ օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ:

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա՛ զծառայս քո. զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ:

Փառք Հօր. ալէլուիա. ալէլուիա:

Դ2

Օրհնեա՛ անձն իմ ըզՏր. օրհնեցի՛ց ըզՏր ի կեա՛նս իմ. ա՛լէլուիա. սաղմոս ասացից Աստուծոյ իմոյ մինչեւ եմ ես. ա՛լէլուիա։

Մի՛ յուսայք յիշխանս, և մի՛ յորդիս մարդկան. զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա։

Ելցէ հոգի ի նոցանէ, և դարձցին անդրէն ի հող. և յայնմ աւուր կորիցեն ամենայն խորհուրդք նոցա։

Երանի՛ ազգի՝ որոյ Տէր Աստուած Յակոբայ օգնական է նմա. և յոյս նորա ի Տէր Աստուած է։

Ո արար զերկինս և զերկիր. զծով և զամենայն որ է ի նոսա։

Ո պահէ զճշմարտութիւն յաւիտեան. և առնէ իրաւունս զրկելոց։

Փ. Գովեա՛ Եղէմ ըզՏէ՛ր. ա՛լէլուիա։ Եւ օրհնեա՛ զԱստուած քո Սիոն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց. և օրհնեաց զորդիս քո ի քեզ։

Ո եդ զսահմանս քո ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նորա։

Դնէ զձիւն ո՛րպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց։

Արկանէ զսառն որպէս պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա. շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք։

Պատմէ զբան իւր Յակոբայ. զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի։

Ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր. և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա։

Փա՛ռք Հօր. ա՛լէլուիա։

ԴԿ

Սիրեցից ըզքեզ Տէր զօրութիւն իմ. ալէլուիա. Տէր հաստատիչ իմ, ապաւէն իմ և փրկիչ իմ. ալէլուիա:

Աստուած օգնական իմ. և ես յուսամ ի նա. ապաւէն իմ, եղջիւր փրկութեան իմոյ ընդունելի իմ է:

Օրհնելով կարդացից առ Տէր. և ի թշնամեաց իմոց ապրեցայց:

Շուրջ եղեն զինեւ երկունք մահու. և ուղխք անօրէնութեան խռովեցուցին զիս:

Վիշտք դժոխոց պաշարեցին զիս. և ժամանեցին ինձ որոգայթք մահու:

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի. և առ Աստուած իմ աղաղակեցի:

Փ. Օգնեցուցեր ինձ զզօրութիւն ի պատերազմի. զյարուցեալսն ի վերայ իմ ներքոյ իմ արարեր. ալէլուիա. ալէլուիա:

Զթշնամիսն իմ հալածականս արարեր. և զատելիսն իմ սատակեցեր:

Աղաղակեցին, և ոչ ոք էր որ փրկէր զնոսա. կարդացին առ Տէր, և ոչ լուաւ նոցա:

Մանրեցից զնոսա որպէս փոշի առաջի հողմոյ. և որպէս կաւ գռեհաց կոխեցից զնոսա:

Փրկեսցէ զիս Տէր ի հակառակութենէ ժողովրդոց. և կացուսցէ զիս գլուխ հեթանոսաց:

Ժողովուրդ զոր ոչ գիտէի ծառայեաց ինձ. և ի լուր ականջաց լուաւ ինձ:

Որդիք օտարաց ստեցին ինձ. որդիք օտարաց մաշեցան և կաղացան ի շաւղաց իւրեանց:

Կենդանի է Տէր, և օրհնեալ է Աստուած. և բարձր եղիցի Աստուած փրկութեան իմոյ:

Աստուած է որ խնդրէ զվրէժ իմ. և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինեւ:

*փրկիչ իմ ի թշնամեաց իմոց բարկացողաց. յայնցանէ որք յարուցեալ են ի վերայ իմ՝ բարձր արարեր զիս. և յառնէ անիրաւէ փրկեցեր զիս։*

*Վասն այսորիկ խոստովան եղէց քեզ ի հեթանոս. և անուան քում սաղմոս ասացից։*

*Մեծ արարեր զփրկութիւն թագաւորի նորա. առնել ողորմութիւն ընդ օծելոյ նորա Դաւթի. և ընդ զաւակի նորա յազգէ մինչեւ յազգ։*

*Փառք Հօր և. ալէլուիա. ալէ։*

Եթէ կանոնագլուխն ընդ սաղմոսին ասի՝ յետին քառորդայն որ է այլոց մարգարէից՝ եւս ասի։ Իսկ եթէ ուշ ասի ընդ սաղմոսին որպէս է սովորութիւն ոմանց, զկնի կանոնագլխոյն ասի՝ Եւ *եւս խաղաղութ*։ *Օրհնութ և փառք*։ Եւ ապա պաշտօն առնի ըստ յայնին։

Բայց յորժամ պաշտօնական շարականն հանգստեան ասեն, զկնի շարականացն ասի սաղմոս ըստ յայնին, եւ ընթերցուած զկնի աւետարանն ըստ յայնին, եւ զկնի աւետարանին ասի յԱծ *անեղէն* փառս մի։ Ողորմեա ընդ Ած *անեղէն* կցուրդեն զի դու *է յԱրարիչ և մարդասէրեն*. եւ կամ է Ես *ասացիեն*. կամ քո է։ Եւ ապա *Հոգւոց հանգ*։ *Քն որդի*. եւ *Հայր մեր*։

---

Սաղմոս ըստ յայնիցն նախ քան շարականն հանգստեան։

ԱՁ. Սաղմոս Զ։

*Տէր մի սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս. և մի բարկութբ քով խրատեր զիս։ Ողորմեա ինձ Տէր. զի հիւանդ եմ ես. բժշկեա զանձն իմ. զի խռովեցան ոսկերք իմ։*

*Անձն իմ յոյժ խռովեցաւ. և դու Տէր մինչեւ յե՞րբ։ Դարձ Տէր և փրկեա զանձն իմ. կեցո զիս Տէր ըստ ողորմութեան քում։*

*Զի ոչ ոք է, որ ի մահու յիշէ զքեզ. կամ ի դժոխս խոստովան առնիցի առ քեզ։ Վաստակեցայ ես ի հե-*

ծութեան իմում. լուացի զա̃մ գիշեր զմահիճս իմ և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի։

Խռովեցաւ ի սրտմտութենէ ակն իմ. և մաշեցայ ես ի վերայ ամենայն թշնամեաց իմոց։ Ի բաց կացէք յինէն ամենեքեան, որք գործէք զանօրէնութիւն։

Լուաւ Տէր ձայնի լալոյ իմոյ. լուաւ Տէր աղօթից իմոց. և Տէր զխնդրուածս իմ ընկալաւ։ Ամաչեսցեն, և խռովեսցին յոյժ ամենայն թշնամիք իմ. դարձցին յետս և ամաչեսցեն յոյժ վաղվաղակի և խռովեսցին։

ԵԿ. Սաղմոս ԻԹ։

Բարձր առնեմ զքեզ Տէր. զի ընկալար զիս, և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։ Տէր Աստուած իմ կարդացի առ քեզ, և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. և փրկեցեր զիս յայնցանէ որք իջանեն ի գուբ։

Սաղմոս ասացէք Տեառն սուրբք Նորա. խոստովան եղերուք յիշատակի սրբութեան Նորա։ Սրտմտութի̃ է ի բարկութեան Նորա. և կեանք են ի կամաց Նորա։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք. առաւօտուց եղիցի ուրախութիւն։ Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յաւիտեան։

Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն. դարձուցեր զերեսս քո յինէն՝ և ես եղէ խռովեալ։ Առ քեզ Տէր կարդացի. և առ Ա̃ծդ իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ. թէ իջանեմ ես յապականութիւն։

Մի՞ թէ հո̊ղ խոստովան առնիցի առ քեզ. կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո։ Լուաւ ինձ Տէր, և ողորմեցաւ. և Տէր եղեւ ինձ օգնական։

Դարձոյց զսուգ. իմ յուրախութիւն. եզերծ յինէն զքուրձ, և ինձ զգեցոյց զուրախութի̃։ Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ. և այլ մի՛ եւս զղջացայց, Տ̃ր Ա̃ծ իմ. յաւիտեան խոստովան եղէց քեզ։

### ԲԶ. Սաղմոս ԾԳ:

Աստուած յանուն քում կեցո զիս. և ի զօրութեան քում իրաւ արա ինձ: Աստուած լուր աղօթից իմոց. ունկն դիր բանից բերանոյ իմոյ:

Օտարք յարեան ի վր իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ. և ոչ համարեցան զքեզ ԱԾ առաջի իւրեանց: Ահա ԱԾ օգնական իմ, և Տէր ընդունող հոգւոյ իմոյ:

Ի դարձուցանել զչարն ի թշնամիսն իմ, ճշմարտութեամբ քով սատակեա զնոսա: Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ. և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է:

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս. և ի թշնամիս իմ ետես ակն իմ:

### ԲԿ. Սաղմոս ԿԶ:

Աստուած ողորմեա մեզ՝ և օրհնեա զմեզ. երևեցո զերեսս քո ի մեզ, և ողորմեա մեզ: Ճանաչել յերկրի զճանապարհս քո. յազինս ամ զփրկութիս քո:

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ԱԾ. խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամ: Ուրախ եղիցին և ցնծասցեն ազինք. զի դու դատես զժողովուրդս յուղղութն. և ազգաց երկրի դու առաջնորդես:

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ԱԾ. գոհասցին զքէն ժողովուրդք ամենայն: Երկիր ետ զպտուղ իւր. և օրհնեաց զմեզ ԱԾ ԱԾ մեր:

Աստուած մեր օրհնեսցէ զմեզ. և ի նմանէ երկիցեն ամենայն ծագք երկրի:

### ԳԶ. Սաղմոս ՁԴ:

Հաճեցար Տէր ընդ երկիր քո. և դարձուցեր զգերութիւն Յակոբայ: Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քո. և ծածկեցեր զամենայն մեղս նոցա:

Լռեցուցեր զամ սրտմտութիս քո. դարձար ի բարկութէ սրտմտութն քոյ: Դարձ առ մեզ ԱԾ փրկիչ մեր. և դարձո զսրտմտութիս քո ի մէնջ:

Մի՛ յաւիտեան բարկանար մեզ Տէր. և մի՛ ձգեր զբարկութի՛ քո յազգէ մինչև յազգ: Ած դու դարձեալ կեցուսցես զմեզ. և ժողովուրդ քո ուրախ եղիցի ի քեզ:

Ցո՛յց մեզ Տէր զողորմութի՛ս քո. և զփրկութի՛ս քո տո՛ւր մեզ: Լուաք զինչ խօսի Տէր Ած մեր. խօսեսցի զխաղաղութի՛ ժողովրդեան իւրոյ առ սուրբս իւր, և առ այնոսիկ, որք դարձեալ են առ նա սրտիւք:

Սակայն մերձ է առ երկիւղածս իւր փրկութիւն նորա. բնակել փառաց նորա յերկրի մերում: Ողորմութիւն և ճշմարտութիւն պատահեսցին. արդարութի՛ և խաղաղութիւն համբուրեսցին:

Ճշմարտութիւն յերկրէ բուսաւ. արդարութիւն յերկնից երևեցաւ: Տէր տացէ զքաղցրութիւն. եւ երկիր մեր տացէ զպտուղ իւր. արդարութիւն առաջի նորա գնասցէ. դիցէ ի ճանապարհի զգնացս իւր:

ԳԿ. Սաղմոս ՃԱ:

Տէր լո՛ւր աղօթից իմոց. և աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն: Յաւուր նեղութե՛ իմոյ խոնարհեցո՛ առ իս զունկն քո. յորում աւուր կարդամ առ քեզ վաղվաղակի՛ լո՛ւր ինձ:

Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ, և ոսկերք իմ որպէս խռիւ չորացան: Հարայ ես որպէս խոտ. և ցամաքեցաւ սիրտ իմ. մոռացայ ուտել զհաց իմ ի ձայնէ հեծութեան իմոյ:

Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ. նմանեցայ ես հաւալսան անապատի: Եղէ ես որպէս բու յաւերակի. տըքնեցայ, և եղէ որպէս ես ճնճղուկ միայն ի տանիս:

Նախատեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ. և գովիչք իմ ինեւ երդնուին: Զմոխիր որպէս զհաց կերայ. և ըմպելին իմ արտասուօք խառնեցի:

Յերեսաց բարկութեան սրտմտութեան քո. զի դու բարձրացուցեր և խոնարհեցուցեր զիս: Աւուրք իմ որպէս հովանի անցին. և ես ոպ̃ խոտ ցամաքեցայ:

Դու Տէր յաւիտեան կաս. և յիշատակ քո յազգէ մինչեւ յազգ: Դու յարուցեալ գթասցիս ի վերայ Սիովնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ:

ԴՁ. Սաղմոս ՃԺԸ:

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր, ըստ բանի քում իմաստուն արա զիս: Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. և բանիւ քո փրկեա զիս:

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո. յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո: Խօսեսցի լեզու իմ զբանս քո. զի ամենայն պատուիրանք քո արդարութիւն են:

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս. զի զպատուիրանս քո ընտրեցի: Ցանկացայ փրկութեան քում Տէր. և օրէնք քո խօսք իմ էին:

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ: Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա զծառայս քո. զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ:

ԴԿ. Սաղմոս ՃԽԲ:

Տէր, լուր աղօթից իմոց. ունկն դիր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով: Լուր ինձ արդարութեամբ քով. և մի մտաներ ի դատաստան ընդ ծառայի քում. զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի:

Հալածեաց թշնամին զանձն իմ, խոնարհ արար յերկիր զկեանս իմ. և նստոյց զիս ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից: Ձանձրացաւ յիս հոգի իմ. և սիրտ իմ խռովեցաւ յիս:

Յիշեցի զաւուրս զառաջինս. խորհեցայ յամենայն գործս քո. յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ: Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ. վաղվաղակի լուր ինձ Տէր, զի նուաղեցաւ յինէն հոգի իմ:

Մի դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանիցիմ այնոցիկ, որք իջանեն ի գուբ: Լսելի արա ինձ առաւօտուց զողորմութիւնս քո. զի ես ի քեզ Տէր յուսացայ:

Ցո՛յց ինձ ճանապարհ՝ յոր գնացից. զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։ Փրկեա՛ զիս ի թշնամեաց իմոց Տէր. զի զքեզ ապաւէն ինձ արարի։

Ուսո՛ ինձ առնել զկամս քո. զի դու ես Ա̃Ծ իմ։ Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ յերկիր ուղիղ։

Վասն անուան քո Տէր կեցուսցես զիս. արդարութ̃ք քով հանցես ի նեղութենէ զանձն իմ։ Ողորմութեամբ քով սատակեսցես զթշնամիս իմ. և կորուսցես զամենայն նեղիչս անձին իմոյ. զի ես ծառայ քո եմ։

Զկնի սաղմոսացս ընթերցեալ լինի աւետարան ըստ յաւուրն։

## ԱՒԵՏԱՐԱՆՔ ՀԱՆԳՍՏԵԱՆ

ԴԿ ԲԿ

Աւետարան ըստ Մատթէոսի։ Ժգ. 36։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յայնժամ թողեալ զժողովուրդսն՝ եկն ի տուն. մատեան առ նա աշակերտքն նորա և ասեն. մեկնեա՛ մեզ զառակ որոմանցն՝ ագարակին։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. որ սերմանէ զսերմն բարի՝ է որդի մարդոյ. և ագարակն աշխարհս է։ Սերմն բարի նոքա են, որ որդիքն արքայութեան են. իսկ որոմն որդիք չարին են. և թշնամին որ վարեաց զայն՝ սատանայ է. և հունձքն կատարած աշխարհիս է. և հնձօղքն հրեշտակք են։ Որպէս ժողովի որոմն և ի հուր այրի, այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս։ Առաքեսցէ որդի մարդոյ զհրեշտակս իւր. և ժողովեսցեն յարքայութ̃է նորա զա̃մ գայթագղութ̃իս, և զայնոսիկ ոյք գործեն զանօրէնութ̃ի. և արկցեն զնոսա ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Յայնժամ արդարքն ծագեսցին իբրեւ զարեգակն յարքայութ̃ն երկնից. որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։ Դարձեալ՝ նման է արքայութ̃ի երկնից գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ մարդոյ՝ թագոյց. և ի խնդութ̃է անտի երթայ վաճառէ զա̃մ ինչ զոր ունի, և գնէ զագարակն զայն։

Դարձեալ՝ նման է արքայութի՟ երկնից առն վաճառականի, որ խնդրիցէ մարգարիտս գեղեցիկս. և գտեալ մի պատուական մարգարիտ՝ երթեալ վաճառեաց զա՟մ զոր ինչ ունէր, և գնեաց զայն մարգարիտ: Դարձեալ՝ նման է արքայութի՟ երկնից ուռկանի արկելոյ ի ծով. և յա՟մ ազգաց ժողովելոյ: Որ իբրև լցաւ, հանեալ ի ցամաք՝ և նստեալ ժողովեցին զբարի բարին յամանս, և զխոտանն ի բաց ընկեցին: Այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս. ելցեն հրեշտակք՝ և մեկնեսցեն զչարս ի միջոյ արդարոց, և արկցեն զնոսա ի հնոց հրոյն. անդ եղիցի լալ և կրճել ատամանց: Ասէ ցնոսա Յս՟. իմացարո՞ւք զայս ա՟մ. ասեն ցնա, այո՛ Տէր: Եւ նա ասէ ցնս՟. վասն այսորիկ ա՟մ դպիր աշակերտեալ արքայութե՟ երկնից՝ նման է առն տանուտեառն որ հանէ ի գանձէ իւրմէ զնոր և զհին: 52:

ԲՁ ԴՁ

Աւետարան ըստ Մարկոսի: Դ. 26:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ

Այսպէս է արքայութի՟ Աստուծոյ, որպէս զի այր մի արկանիցէ զսերմանիս յերկիր, և ննջիցէ և յառնիցէ զցայգ և զցերեկ. և սերմանիքն բուսանիցին և աճիցեն. և նա՟ ոչ գիտէ՝ թէ երկիրն ինքնին բերէ զպտուղ. նախ զխոտն և ապա զհասկն, ապա զցորեանն ատոք ի հասկին: Եւ յորժամ տայցէ զպտուղն՝ վաղվաղակի առաքէ մանգաղ, զի հասեալ են հունձք: Եւ ասէր. ո՞ւմ նմանեցուսցուք զարքայութիւնն Աստուծոյ, կամ որո՞վ առակաւ առակեսցուք զնա: Որպէս հատն մանանխոյ՝ որ յորժամ սերմանիցի յերկրի, փոքրագոյն է քան զա՟մ սերմանիս, որք են յերկրի. և յորժամ սերմանիցի, բուսանի և լինի մեծ քան զա՟մ բանջար, և արձակէ ոստս մեծամեծս, մինչև բաւական լինել ընդ հովանեաւ նորա թռչնոց երկնից բնակել: Եւ այնպիսի առակօք խօսէր ընդ նոսա զբանն՝ որպէս կարող լինէին

լսել: Եւ առանց առակի ոչինչ խօսէր ընդ նոսա, բայց առանձինն աշակերտացն իւրոց մեկնէր զամենայն: 34:

ԱԿ ԳԿ

Աւետարան ըստ Ղուկասու: ԺԲ. 32:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ, զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն: Վաճառեցէք զինչս ձեր, և տո՛ւք ողորմութիւն. և արարէք ձեզ քսակս առանց հնանալոյ, գանձ անպակաս յերկինս. ուր ոչ գող մերձենայ, և ոչ ցեց ապականէ: Զի ուր գանձն ձեր է, անդ և սիրտք ձեր եղիցին: Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս. և ճրագունք լուցեալք: Եւ դուք նմանողք մարդկան, որք ակն ունիցին տեառն իւրեանց, թէ երբ դառնայցէ ի հարսանեաց. զի յորժամ գայցէ և բախիցէ, վաղվաղակի բանայցեն նմա: Երանի՜ իցէ ծառայիցն այնոցիկ, զորս եկեալ տէրն գտցէ արթունս: Ամէ՜ն ասեմ ձեզ. զի գօտի ընդ մէջ ածցէ՝ և բազմեցուսցէ զնոսա, և անցեալ պաշտեսցէ զնոսա: Եւ եթէ յերկրորդ կամ յերրորդ պահու եկեսցէ՝ և գտցէ այնպէս, երանելի են ծառայքն այնոքիկ: Բայց զայն գիտասջիք, եթէ գիտէր տանուտէրն յորում ժամու գող գայ, հսկէր և ոչ տայր թողուլ ական հատանել ի տան իւրում: Եւ դուք եղերո՛ւք պատրաստք, զի յորում ժամու ոչ կարծիցէք՝ գայ որդի մարդոյ: Ասէ Պետրոս. Տէ՛ր, առ մե՞զ ասացեր զառակդ զայդ՝ եթէ առ ամենեսեան: Եւ ասէ Տէր. ո՞վ. իցէ հաւատարիմ տնտես և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ի վերայ գերդաստանի իւրոյ՝ տալ ի ժամու զկերակուրս: Երանի՜ իցէ ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէր իւր գտանիցէ արարեալ այնպէս: Արդարև ասեմ ձեզ՝ զի ի վերայ ամ̃ ընչից իւրոց կացուսցէ զնա: Ապա եթէ ասիցէ ծառայն այն ի սրտի իւրում. յամէ տէր իմ ի գալ. և սկսանիցի հարկանել զծառայս և զաղախնայս, ուտել և ըմպել և

արբենալ։ Եկեսցէ տէր ծառային այնորիկ յաւուր յորում ակն ոչ ունիցի, և ի ժամու՝ յորում ոչ գիտիցէ. ընդ մէջ կտրեսցէ զնա, և զմասն նորա ընդ անհաւատս դիցէ։ Եւ ծառայ՝ որ գիտիցէ զկամս տեառն իւրոյ՝ և ոչ պատրաստեսցէ ըստ կամաց նորա, արբցէ գան բազում։ Եւ որ ոչն գիտիցէ՝ և արժանի գանի ինչ գործեսցէ, արբցէ գան սակաւ։ Ամենայնի՝ որում շատ տուաւ, շատ խնդրեսցի ի նմանէ. և որում բազում աւանդեցաւ, առաւել ևս պահանջեսցեն ի նմանէ։ 48։

ԱՁ ԳՁ

Աւետարան ըստ Յովհաննու։ Ե. 19։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Պատասխանի ետ և ասէ ցնոսա։ Ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ կարէ որդի մարդոյ առնել յանձնէ ոչինչ, եթէ ոչ տեսանիցէ զՀայրն զի առնէ։ Զի զոր Նայն առնէ, զնոյն և Որդին նմին նման գործէ. զի Հայր սիրէ զՈրդի, և զա̃մ ինչ ցուցանէ Նմա՝ զոր Ինքն առնէ, և մեծամեծս ևս քան զսոյնս ցուցանէ Նմա զգործս, ընդ որս դուք զարմանայք։ Զի որպէս Հայր յարուցանէ զմեռեալս և կենդանի առնէ, Նոյնպէս և Որդի՝ զորս կամի կենդանի առնէ։ Եւ ոչ եթէ Հայր դատի զոք. այլ զա̃մ դատաստան ետ Որդւոյ իւրոյ, զի ամենեքեան պատուեսցեն զՈրդի՝ որպէս պատուեն զՀայր։ Որ ոչ պատուէ զՈրդին՝ ոչ պատուէ զՀայր զառաքիչն Նորա։ Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ զբանն իմ լսէ և հաւատայ այնմ որ առաքեացն զիս, ընդունի զկեանս յաւիտենականս. և ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ի մահուանէ ի կեանս։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի գայ ժամանակ, և արդէն իսկ է, յորժամ մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ. և որք լսիցենն՝ կեցցեն։ Զի որպէս Հայր ունի կեանս յանձին իւրում, Նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յանձին իւրում։ Եւ իշխանութի̃ ետ Նմա դատաստան առնել. և զի որ-

դի մարդոյ է՝ ընդ այն զի՞ զարմանայք։ Զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքեան որ ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի Նորա, և եկեսցեն արտաքս։ Որոց բարիս գործեալ իցէ՝ ի յարութիւն կենաց. և որոց զչար արարեալ՝ ի յարութիւն դատաստանաց։ Ոչ կարեմ ես առնել յանձնէ և ոչ ինչ. այլ ո՜պ լսեմ՝ դատիմ. և դատաստանն իմ արդար է. զի ոչ խնդրեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։ 30։

Ապա Ա՜ծ անեղ, եւ այլն, որպէս ի վերոյ, երես 21։

---

Մաղթանք։

Հոգւոյն հանգուցելոյ Ք՜ս Ա՜ծ արա հանգիստ և ողորմութիւն, և մեզ մեղաւորացս շնորհեա զթողութիւն յանցանաց։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վասն հոգւոյն հանգուցելոյ աղաչեսցուք զփրկիչն մեր Ք՜ս. զի զնա ընդ արդարոյն դասեսցէ. և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ Տէր Ա՜ծ մեր կեցո և ողորմեա։ Տէր ողորմեա։ Երիցս։

Աղօթք։

Ք՜ս Որդի Ա՜յ անոխակալ և բարեգութ՝ գթա քո արարչական սիրովդ ի հոգիս հանգուցեալ ծառայից քոց։ Յիշեա յաւուր մեծի գալստեան արքայութեան քո. արա արժանի ողորմութեան, քաւութեան և թողութեան մեղաց։ Պատուորեալ պայծառացո ընդ ս՜բս քո յաջակողմեան դասուն։ Զի դու ես Տէր և արարիչ ամենեցուն, դատաւոր կենդանեաց և մեռելոց։ Եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Քրիստոս Աստուած մեր, ողորմեա համօրէն հաւատացեալ ննջեցելոց հոգւոցն։

Եւ ապա ասէ Օրհնութիւն բազում պատշաճի աւուրն, կամ ի յայնէն, եւ զկնի մաղթանքն, եւ քարոզն եւ աղօթքն։

Մաղթանք տէրունական տօնից։

Փառք հրաշափառ (յարութ՟ն) քոյ Տէր. զօրհնեալ և զփառաւորեն՟ զհրաշալի և զյաղթող (զյարութ՟ի) քո օրհնեմք և փառաւորեմք։ Մարդասէր Տէր, վասն սրբուհւոյ անարատ մօր քոյ և կուսի, և վասն խաչի քոյ պատուականի՝ ընկալ զաղաչանս մեր և կեցո՛ զմեզ։

Քարոզ Երանեալ է— Իբրև կանոնացն։

Դկ Բկ

Վասն ի վերուստ խաղաղութ՟ն և փրկութ՟ն անձանց մերոց. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն լսելի լինելոյ Տեառն Ա՟յ ձայնի աղաչանաց մերոց. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն քաւիչ և ներող լինելոյ Ա՟յ ի վերայ մեղաց մերոց. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն թողլոյ մեզ զա՟մ յանցանս մեր զկամայ և զակամայ. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն զի մի՛ ընդ խոտանս գտանիցիմք յաւուրն պատասխանատուութեան. զՏէր աղաչ։ Տէր ողորմեա՛։

Վ՟ն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի ք՟ս ննջեցին. զՏէր աղաչ։ Յիշեա Տ՟ր և։

Եւ ևս և վասն միաբանութ՟ն ճշմարիտ և ս՟բ հաւատոյս մերոյ. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն Ա՟յ ամենակալին յանձն արասցուք։ Քեզ Տ՟ն՟դ ջն։

Ողորմեա՛ց մեզ Տէր Ա՟ծ մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

Աղօթք։

Տէր տուընջեան և գոյացուցիչ գիշերոյ, որ արարեր զտիւ ի զբօսանս բարեգործութ՟ն ի փրկութ՟ի անձանց մերոց. և զգիշեր ի հանգիստ քնոյ տկարացեալ բնութ՟ես մերոյ։ Իսկ այժմ զարթուցեալ բացեր զբերանս

մեր յօրհնաբանութ̃ ահաւոր և փառաւորեալ անուանդ քում սրբոյ։ Ընկա՛լ և այժմ զաղաչանս մեր. և յաջողեա՛ մեզ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք ի նոյն պաշտօն քո կանխել միշտ։ Եւ նովին կանոնիւս անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և միշտ և։

Խաղաղութիւն ամենեցուն։

Օ՛ քեզ, որ յա̃մի գթած և մարդասէր Տէրդ ես, աղաչեմք հանապազ. զի զօրացուսցես զմեզ օր ըստ օրէ կալ ի կարգի կրօնաւորութ̃ մերում։ Թեթեւացո՛ Տէր զքաղցր լուծ քո՝ զոր եդեր ի վ̃ր մեր. զի կարասցուք կալ ի պատուիրանի քում, և զհաճոյսն առնել առաջի քո յամենայն ժամ։ Ի տուէ և ի գիշերի հրեշտակային երգակցութեամբ զքեզ օրհնել, զքեզ գովել և քեզ գոհութ̃իս և փառս մատուցանել ամենազօր տէրութ̃դ. այժմ։

Աղմուկք և օրհնութ̃ք և երգօք հոգեւորօք անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսբ̃ Հոգին. այժմ։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։

Քարոզ Երկինք պատմեն Ե– Տէր ապաւէն կանոնոյն։

ԱԶ ԳԶ

Վասն ի գիշերի և ի տուընջեան և յա̃մ ժամու խօսել մեզ զբան Տեառն. զՏէր աղաչես։ Տէր ողորմեա՛։

Վասն չանկանելոյ մեզ ի փորձութ̃ի, որում ոչ կարեմք հանդուրժել. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն անբիծ և անդատապարտ կալ մեզ առաջի ահեղ ատենին Քնի. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն առաջնորդելոյ մեզ ի նաւահանգիստն կենաց անվախճանից. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն արժանի լինելոյ մեզ վերին կոչմանն և երկնից արքայութ̃ն. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն հոգւոցն։ Եւ եւս և վ̃ն միաբ։ Զանձինս մեր։

Ողորմեա՛ց։

Աղօթ։

Ի գիշերի և ի տուընջեան և յամ ժամու զքեզ աղաչեմք և ի քէն խնդրեմք մարդասէր Տէր։ Լո՛ւր մեզ Աձ փրկիչ մեր. խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս մեր. զի մի՛ ունայն լիցին վաստակք ծառայից քոց։ Այլ համարեա՛ զաշխատութիւս մեր ի գործ արդարութե, և ի պտուղ ածպաշտութե։ Ընկա՛լ Տէր զաղօթս և զերկրպագութիւս մեր. և հատո՛ մեզ ղողորմութի քո առատապէս։ Ծածկեա՛ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյ քո։ Զօրացո՛ զմեզ Տր զօրութբ սբ Հոգւոյդ։ Պահեա՛ զմեզ որպէս բիբ ական. և արա՛ առ մեզ նշան բարի ի գովեստ և ի փառաբանութի անուանդ քում սրբոյ։ Զի ի քո փառս կատարի ամ արարածոց մշտընջենաւոր փառաբանութի ի բարձունս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Հովիւ քաջ, հովիւ բարի և յաւիտենական, նայեա՛ց և ա՛յց արա բանաւոր հօտի քո, զոր ժողովեցեր առ քեզ գթութբ քով։ Զի քո առաջի կամք Տէր, և առ ի քէն ողորմութեցդ և գթութեցդ ակն ունիմք։ Զամենեսեան օրհնեա՛. զամենեսեան իմաստնացո՛. զամենեսեան լուսաւորեա՛. և ամենեցուն պարգեւեա՛ զերկնից արքայութիւդ։ Վասն զի դու ես Տէր կենաց, և Աձ ողորմութեց. և քեզ վայելէ փառք, իշխանութի և պատիւ. այժմ և միշտ և։

Ի գիշերի և ի տուընջեան, և յամ ժամու անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍբ Հոգին. այժմ. և։

Քարոզ Մի՛ Նախանձիր Եւ Խոստովան կանոնացն։

ԱԿ ԳԿ

Վասն ուղղելոյ զգնացս մեր ի ճանապարհս խաղաղութե. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։

Վասն ցրելոյ ի մէնջ զամ խորհուրդս չարին. զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։

Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուրդս եւ առաքինի վարս. զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա՛:

Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ. զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա՛:

Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք. զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա՛:

Վասն հոգւոցն: Եւ եւս եւ վն: Զանձինս: Ողորմեա՛ց:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Աղօթ+:

Տէր երկնի եւ երկրի՝ արարիչ ամ արարածոց՝ երեւելեաց եւ աներեւութից: Առ քեզ կարդամք յամ ժամ, զի ընդ ամ տեղիս է տէրութի քո. եւ արքայութի քո ամենեցուն տիրէ: Շնորհեա՛ մեզ երկիւղիւ ի պաշտօն քո կանխել հանապազ. սիրել զքեզ ի բոլոր սրտէ, եւ ի բովանդակ մտաց, եւ յամ զօրութե մերմէ պահել զպատուիրանս քո. համբառնալ առ քեզ զձեռս մեր ի սրբութի առանց բարկութեան եւ երկմտութեան, եւ գտանել ի քէն զշնորհս եւ զողորմութի, եւ զառաքինասէր գործոցն յաջողութի: Վասն զի դու ես Տէր կենաց եւ Աճ ողորմութեց. եւ քեզ վայելեն փառք, իշխանութի եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ:

Խաղաղութիւն ամենեցուն:

Քում ամենազօր եւ յաղթող տէրութեդ կրկնի ամ ծունր յերկրպագութի. եւ փառաւորի յամենեցունց թագաւորութի քո: Նայեա՛ յերկրպագութիս մեր. եւ ուսո՛ մեզ առնել զարդարութի ճշմարտութե: Վասն զի դու ես Աճ խա՛ղաղութե, որ բարձեր զթշնամութի ի միջոյ, եւ արարեր խաղաղութի յերկինս եւ յերկրի: Հեռաւորաց եւ մերձաւորաց աւետարանեցեր զնոր պարգեւս քոյին բարեացդ: Որում եւ զմեզ մեծի շնորհացդ արժանաւորս արասցես՝ դասելով՛ ընդ ճշմարիտ երկրպագուս քո, Աճ մեր եւ Տէր եւ փրկիչ Յս Քս: Որ ես օրհնեալ ընդ Հօր եւ ընդ սբյ Հոգւոյն, այժմ:

Յերգս օրհնութեան և ի ձայն սաղմոսաց անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍբ Հոգին. այժմ:

Քարոզ Ողորմեա՛ Ես ի Նեղութեան կանոնացն:

ԲՁ ԴՁ

Վասն գտանելոյ մեզ զշնորհս և զողորմութի ի բարերար Տեառնէ մերմէ. զՏէր աղաչ: Տէր ողորմեա՛:

Վասն փրկելոյ զմեզ ի զրպարտութէ մարդկան և յորոգայթից սատանայի զՏէր աղաչ: Տէր ողորմեա՛:

Վասն ամ անձանց քրիստոնէից և տանց հաւատացելոց. զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա՛:

Վասն որք ի լերինս, յայրս և ի փապարս բնակեալ են սբ հարքն մեր. զՏէր աղաչ: Տէր ողորմեա՛:

Վասն որք սաղմոսիւք և օրհնութբ կատարեն զամ ժամանակս կենաց իւրեանց. զՏէր աղ: Տէր ողորմեա՛:

Վասն հոգւոցն: Եւ եւս և վս: Զանձինս: Ողորմեաց:

Աղօթ+:

Գոհանամք զքէն Տէր Ած մեր, որ զարթուցեր զմեզ ի հանգստենէ քնոյ շնորհիւ ողորմութե քո: Զարթո՛ զմիտս մեր արդարութբ առ քեզ Տէր Ած մեր. զի տեսցեն աչք մեր զփրկութի քո: Եկեսցէ և բնակեսցի առ մեզ ածութի քո. և ողորմութի քո հովանի և պահապան լիցի ի վերայ պաշտօնէից քոց: Եւ զմեզ զծառայս քո արժանի՛ արա ի տուէ և ի գիշերի, և յամենայն համու միշտ խորհել ի սէր պատուիրանաց քոց. և գոժանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և միշտ և:

Խաղաղութիւն ամենեցուն:

Կենդանարար զօրութի և աղբիւր անմահութե դու ես Քս Ած փրկիչ մեր, որ շնորհեցեր մեզ ի մէջ գիշերի յառնել և խոստովան լինել առ քեզ վասն իրաւանց և արդարութե քո: Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Ած մեր. արա՛ զմեզ արթունս և պատրաստս ի ժամ առաւօ-

տու ընդ սբս քո։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ. այժմ։

Գոհութեամբ և ճշմարիտ խոստովանութբ անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսբ Հոգին. այժմ։

Ալէլու Յարութեանն Քրիստոսի։

ԱՁ

Ալէ՛լուիա. ալէ՛լուիա. ալէլուիա։

Ողորմութեա՛մբ Տեառն լի եղեւ երկիր. և բանիւ Տեառն երկինք հաստա՛տեցան։ Եւ հոգւո՛վ բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա։

Փ. Յարեա՛ւ Ած. և ցրուեցան ամ թշնամիք նորա։ փախեա՛ն ատելիք նորա յերեսաց նորա։

Փա՛ռք և երկրպագութի Հօր և Որդւոյ և Հոգւոյն սբյ. ա՛յժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։ Դա՛սք հրեշտակաց օրհնեն ըզքեզ քս. ալէլուիա. մարդկա՛ն ազգ սաղմոսեն քեզ. ալէլուիա՛։

Զկնի ամենայն տէրունական տօնի որ ԱՁ լինի՝ զԴասքն ասա։

ԱԿ

Ծա՛փս հարէք ամ հեթանոսք. աղաղակեցէք առ Ած ի ձայն ցնծութե։ Տէ՛ր բարձրեալ և ահարկու. թագաւոր մեծ ի վր ամենայն երկրի։

Փ. Հաճեցա՛ր Տէր ընդ երկիր քո. և դարձուցեր ըզգերութի Յակոբայ։ Թողե՛ր զանիրաւութի ժողովրդեան քո. և ծածկեցեր զամ մեղս նոցա։

Փա՛ռք և երկրպագութի Հօր և Որդւոյ և Հոգւոյն սբյ. այժմ և միշտ. ալէ՛լուիա. ալէ՛լուիա. ալէ՛լուիա՛։

ԲՁ

Յարեա՛ւ Ած, և ցրուեցան ամ թշնամիք նորա։ փախեա՛ն ատելիք նորա յերեսաց նորա։

Փ. Տէ՛ր թագաւորեաց. վայելչութի ըզգեցաւ։ Զգեցա՛ւ Տէր զօրութի ընդ մէջ իւր ածաւ։

Փա՛ռք և. ա՛յժմ և. ալէ՛լուիա։

ԲԿ

Հաճեցար Տէր ընդ երկիր քո. և դարձուցեր զգերութիւն Յակոբայ։ Թողեր զանիրաւութիւն ժողովրդեան քո. և ծածկեցեր զա՟մ մեղս նոցա։

փ. Օրհնեցէք մանկունք զՏէր. և օրհնեցէք զանունն Տեառն։ Եղիցի անուն Տեառն օրհնեալ. յայսմհետէ մինչև յաւիտեան։

փառք և. այժմ և. ալէլուիա։

ԳՁ

Տէր թագաւորեաց. վայելչութիւն զգեցաւ։ Զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ։

փ. Գովեա Եղ՟էմ զՏ՟ր. և օրհնեա զԱստուած քո Սի՟ոն։ Զօրացոյց զնիգս դրանց քոց. և օրհնեաց զորդիս քո ի քեզ։

փառք և. այժմ և. ալէլուիա։

ԳԿ

Օրհնեցէք մանկունք զՏէր. և օրհնեցէք զանունն Տեառն։ Եղիցի անուն Տեառն օրհնեալ. յայսմհետէ մինչև յաւիտեան։

փ. Կենդանի է Տէր, և օրհնեալ է Ա՟ծ. և բարձր եղիցի Ա՟ծ փրկութեան իմոյ։ Ա՟ծ է, որ խնդրէ զվրէժ իմ. և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինեւ։

փառք և. այժմ և. ալէլուիա։

ԴՁ

Գովեա Եղ՟էմ զՏէր. և օրհնեա զԱստուած քո Սի՟ոն։ Զօրացոյց զնիգս դրանց քոց. և օրհնեաց զորդիս քո ի քեզ։

փ. Ողորմութեամբ Տեառն լի եղև երկիր. և բանիւ Տեառն երկինք հաստատեցան։ Եւ հոգւով բերանոյ ն՟ր ա՟մ զօրութիւնք ն՟ց։

փառք և. այժմ և. ալէլուիա։

ԴԿ

Կենդանի է Տէր, և օրհնեալ է Ա՟ծ. և բարձր եղիցի

Ած փրկութեան իմոյ: Ած է որ խնդրէ զվրէժ իմ. և հնազանդ առնէ զժողովուրդս ընդ ինև:

Փ. Ծափս հարէք ամ հեթանոսք. աղաղակեցէք առ Ած ի ձայն ցնծութն: Տէր բարձրեալ և ահարկու. թագաւոր մեծ ի վր ամենայն երկրի:

Փառք և. այժմ և. ալէլուիա:



## ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

# ԱՌԱՒՕՏՈՒ ԺԱՄՈՒՆ

### ՈՐ ԿԱՏԱՐԻ Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐ ԵՐԵՒԵՑԱՒ ԻՒՂԱԲԵՐԻՑՆ

Լցաք առաւօտու ողորմութք քով. ցնծացաք և ուրախ եղաք զամ աւուրս կենաց մերոց:

Ուրախ եղաք փոխանակ աւուրցն, յորս խոնարհ արարեր զմեզ. և ամացն յորս տեսաք զչարչարանս: Հայեաց Տէր ի ծառայս քո և ի գործս ձեռաց քոց. և առաջնորդեա որդւոց նոցա. եղիցի լոյս Տեառն Այ ի վերայ մեր: Զգործս ձեռաց մերոց ուղիղ արա ի մեզ Տէր. և զգործս ձեռաց մերոց յաջողեա մեզ:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ:

Այժմ և միշտ: Եւ ևս խաղաղութն զՏէր աղաչ:

Օրհնութի և փառք Հօր և Որդւոյ և Հոգւ:

Օրհնութիւն երից մանկանցն: Դան. Գ. 26:

Օրհնեալ ես Տէր Ած հարցն մերոց. օրհնեալ փառաւորեալ անուն քո յաւիտեան:

Ցիրաւունս անցուցեր զայս ամ ընդ մեզ. արդար ես դու Տէր, և ամ գործք քո ճշմարիտ են:

Ճանապարհք քո ուղիղ են. և ամ դատաստանք քո արդար են:

Դատաստան արդարութ՟ն ածեր ի վերայ մեր ըստ ա՟մի. և զոր ինչ ածեր ի վերայ մեր և քաղաքի ս՟բյ հարցն մերոց Երուսաղէմի։

Արդարութ՟ք և յիրաւի ածեր զայս ա՟մ ի վերայ մեր վ՟ն մեղաց մերոց։

Անօրինեցաք և յանցեաք ապստամբ լինել ի քէն. մեղաք յա՟մի և պատուիրանաց քոց մեք ոչ անսացաք։

Ոչ պահեցաք և ոչ արարաք՝ որպէս պատուիրեցեր դու մեզ. զի զբարիս գտցուք մեք ի քէն։

Արդ զա՟մ զոր արարեր և զոր ինչ ածեր ի վերայ մեր արդար դատաստանաւ արարեր։

Մատնեցեր զմեզ ի ձեռս թշնամեաց մերոց անօրի-նաց, խստաց և ապստամբողաց։

Ի ձեռս թագաւորի անօրինի և չարի քան զամենայն երկիր՝ մատնեցեր զմեզ։

Եւ արդ ոչ գոյ մեզ ժամ բանալ զբերանս մեր. զի յամօթ և նախատինք եղաք ծ՟ռյից քոց և պաշտօնէից։

Այլ մի՛ մատներ զմեզ ի սպառ վ՟ն անուան քո. մի՛ ցրեր զուխտս քո. և մի՛ ի բացեայ առներ զողորմութ՟իս քո ի մէնջ։

Վասն Աբրահամու սիրելւոյ քո, Իսահակայ ծառայի քո, և Իսրայէլի սրբոյ քո։

Խոստացար նոցա և ասացեր, բազմացուցից զզաւակ ձեր որպէս զաստեղս երկնից բազմութ՟ք. և որպէս զաւ-ազ առ եզր ծովու։

Եւ արդ Տէր նուազեցաք մեք քան զա՟մ ազգս, և եմք տառապեալք յա՟մ երկրի այսօր վ՟ն մեղաց մերոց։

Ոչ գոյ ի ժամանակիս յայսմիկ իշխան, մարգարէ և առաջնորդ. ոչ ողջակէզք պատարագաց, և ոչ խունկք օրհնաց, և ոչ տեղի պատարագս մատուցանելոյ առաջի քո և ողորմութիւն գտանել ի քէն։

Այլ անձամբք խոնարհեալ, և հոգւով տառապա-նաց ընդունելի լիցուք մեք որպէս զողջակէզս խոյոց և

*զուարակաց. և որպէս բիւրաւորս գառանց պարարտաց:*

*Այնպէս ընդունելի լիցին պատարագք մեր այսօր առաջի քո, զի կատարեալ գտցուք զկնի քո. և չիք ամօթ յուսացելոցս ի քեզ:*

*Եւ արդ գամք զհետ քո ա՟մ սրտիւք մերովք. երկրպագեմք ի քեզ, և խնդրեմք զերեսս քո Տէր. մի՛ յամօթ առներ զմեզ:*

*Այլ արա՛ առ մեզ ըստ հեզութե՟ն քում. և ըստ բազում ողորմութե՟ն քում. փրկեա՛ զմեզ վ՟ն սքանչելեաց քոց Տէր, և փառաւորեսցի անուն քո յաւիտեան:*

*Ամօթ լիցին ամենեքեան որք չարչարեն զծառայս քո. ամաչեցեալ լիցին բռնութ՟իւք նոցա, և ա՟մ զօրութ՟իւք նոցա խորտակեսցին:*

*Եւ ծանիցեն, զի դու ես Տ՟ր Ա՟Ծ միայն՝ որ փառաւորեալդ ես ի վերայ ա՟մ տիեզերաց:*

*Փ. Օրհնեալ ես դու Տէր Ա՟Ծ հարցն մերոց. * գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան:*

*Եւ օրհնեալ է անուն ս՟բ փառաց քոց. գովեալ և:*

*Օրհնեալ ես ի տաճարի փա՛ռաց սրբութե՟ն քո. գով:*

*Օրհնեալ ես ի վ՟ր աթոռոյ արքայութե՟ն քո. գով:*

*Օրհնեալ ես որ նստիս ի քրովբէս, և հայիս յանդունդս. գովեալ և:*

*Օրհնեալ ես ի վ՟ր հաստատութե՟ն երկնից. գով:*

*Փ. Օրհնեցէք ա՟մ գործք Տեառն զՏ՟ր. * օրհնեցէք բա՛րձր արարէք զնա յաւիտեան:*

*Օրհնեցէք երկինք զՏ՟ր. օրհնեցէք և բարձր արար:*

*Օրհնեցէք հրեշտակք Տեառն, և ջուրք՝ որ ի վերոյ երկնից զՏէր. օրհնեց:*

*Օրհնեցէք զօրութ՟իւք Տ՟ն՝ արեգակն և լուսին զՏ՟ր. օրհ:*

*Օրհնեցէք աստեղք երկնից, անձրևք և ցօղք զՏէր. օրհնեցէք և:*

*Օրհնեցէք ա՟մ հողմք, հուր և ջեր զՏէր. օրհնեց:*

Օրհնեցէք ցուրտ և տօթ, ցօղ և ձիւնաբեր զՏր. օրհ:

Օրհնեցէք սառն և պարզ, եղեամն և ձիւն զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք տիւք և գիշերք, լոյս և խաւար զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք ամպք և փայլատակունք և երկիր զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք լերինք, բլուրք և ամ՟ բոյսք երկրի զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք աղբիւրք, ծովք և գետք զՏէր. օրհնեց:

Օրհնեցէք կէտք և ամ՟ կայտառք որք ի ջուրս, և թռչունք երկնից զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք գազանք և անասունք և որդիք մարդկան զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեսցէ Իսրայէլ զՏէր. օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան:

Օրհնեցէք քահանայք զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք ծառայք Տեառն զՏէր. օրհնեցէք և:

Օրհնեցէք անձինք և շունչք արդարոց զՏէր. օրհն:

Օրհնեցէք սուրբք և խոնարհք սրտիւք զՏէր. օրհնեց:

Օրհնեցէք Անանիա, Ազարիա և Միսայէլ զՏր. օրհ: փառք Հօր: Այժմ և միշտ:

Մաղթանք:

Օրհնեցէք զարարիչն արարածոց, զՏէրն տերանց, զթագաւորն թագաւորաց, զԱծ՟ն աստուածոց: Օրհնեցէք, գովեցէք, բարեբանեցէք. զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Եւ ապա ասեն զՀայրսն ըստ պատշաճին:

Քարոզ զՆոյն Հայցէն:

Ընկեալքս ամենեքեան ի սբ՟ կաթուղիկէ և առաքելական եկեղեցի, աղաչեսցուք զմիածին Որդին Աստուծոյ, զՏէրն մեր և զփրկիչն Յս՟ Քս՟: Որ էջ փառօք Հօր ի մէջ հնոցին, և փրկեաց զերիս մանկունսն ի

Քաղդէացւոց անտի։ Լուսաւոր և նը պահեսցէ զմիտս մեր. զի մի՛ երբէք խաբեսցուք մեք ի մեղաց և ի ցանկութէ աշխարհի։ Այլ արժանի եղիցուք պահել զպատուիրանս նր. առնուլ զպսակն լուսոյ և կենաց ի յանձինս մեր։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց Ճշմարիտն Ած Յն Քն Տէր մեր։ կեցո՛ և ողորմեա՛։

Տէր ողորմեա՛։ Երիցս։

Մաղթանք։

Հզօր, յաղթող, սքանչելագործ, նը, մեծի (յարութն) Քնի Աստուծոյ մերոյ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և։

Երգ Մարիամու Աստուածածնին։ Ղուկ. Ա. 47։

Մեծացուսցէ անձն իմ զՏէր. և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով։

Այց արար ի վերայ խոնարհութե աղախնոյ իւրոյ. այսուհետև երանեսցեն ինձ ամենայն ազգք։

Արար ընդ իս մեծամեծս հզօրն. և սբ է անուն նր։

Ողորմութի արար յազգաց յազգս երկիւղածաց իւրոց. և արար զօրութի բազկաւ իւրով։

Ցրուեաց զամբարտաւանս ի մտաց սրտից. և քակեաց զհզօրս յաթոռոց։

Զխոնարհս բարձրացոյց, զկարօտս ելից բարութք. և զմեծատունս արձակեաց ունայնս։

Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ յիշելով զողորմութի իւր։

Որպէս խօսեցաւ առ հարս մեր. ընդ Աբրահամու և զաւակի նորա յաւիտեան։

Օրհնութիւն Զաքարեայ հօրն Յովհ. Մկրտչին։

Օրհնեալ Տէր Ած Իսրայէլի, որ յայց ել, և արար փրկութիւն ժողովրդեան իւրոյ։

Յարոյց մեզ եղջիւր փրկութե ի տանէ Դաւթի ծառայի իւրոյ. որպէս խօսեցաւ բերանովք սրբոց որք յաւիտենից մարգարէքն էին։

Փրկութ՟ի ի թշնամեաց մերոց. և ի ձեռաց ամ՟ ատելեաց մերոց։

Առնել ողորմութ՟ի առ հարսն մեր. և յիշել զկտակարանս սրբութեան իւրոյ։

Զերդումն զոր երդուաւ Աբրահամու հօր մերոյ. տալ մեզ առանց երկիւղի զփրկութ՟ի ի թշնամեաց մերոց։

Պաշտել զնա սրբութ՟բ և արդարութ՟բ առաջի Նորա զամ՟ աւուրս կենաց մերոց։

Եւ դու մանուկ, մարգարէ բարձրելոյն կոչեսջիր. գնասցես առաջի Տ՟ն պատրաստել զճանապարհս Ն՟ր։

Տալ զգիտութ՟ի փրկութ՟ե ժողովրդեան իւրոյ, ի թողութ՟ի ամ՟ մեղաց մերոց։

Վ՟ն գթոյ ողորմութեան Տեառն Աստուծոյ մերոյ, որով երևեցաւ մեզ արեգակն ի բարձանց լուսաւոր առնել զխաւար մեր։

Ծագել լոյս ի վերայ այսոցիկ՝ որք նստէաք ի խաւարի և ի ստուերս մահու. ուղղել զոտս մեր ի ճանապարհս խաղաղութեան։

Աղօթք Ծերունւոյն Սիմէոնի։

Արդ արձակես զծառայս քո Տէր. ըստ բանի քում ի խաղաղութ՟ի. զի տեսին աչք իմ զփրկութ՟ի քո. զոր պատրաստեցեր առաջի ամ՟ ժողովրդոց։

Լոյս ի յայտնութ՟ի հեթանոսաց. և փառք ժողովրդեան քում Իսրայէլի։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Եւ ապա ասէ Մեծացուսցէն ըստ պատշաճի։

Քարոզ զկնի Մեծացուսցէին։

Սուրբ զԱ՟ծածինն և զամ՟ սբս բարեխօս արասցուք առ Հայր յերկինս. զի կամեցեալ ողորմեսցի, և գթացեալ կեցուսցէ զարարածս իւր։ Ամենակալ Տէր Ա՟ծ մեր, կեցո՛ և ողորմեա՛։

Աղօթք։

Ընկա՛լ Տէր զաղաչանս մեր բարեխօսութ՟բ սբ Ա՟ծա-

ծնիչն՝ անարատ ծնողի միածնի Որդւոյ քո, և աղաչա-
նօք ամ սբց քոց։ Լուր մեզ Տէր և ողորմեա՛. Ներեա՛, քա-
ւեա՛ և թո՛ղ զմեղս մեր։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փա-
ռաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ Սբյ Հոգւոյդ. այժմ։

---

Քարոզ զկնի Մեծացուսցէին կիւրակէից աւուրց։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմ։
Վասն սուրբ տեղւոյս շինութեան և բարեկար-
գութեան. զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմ։
Վասն ժողովրդեանս որք միաբանեն ընդ դրու-
նս սրբոյ եկեղեցւոյ. զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմ։
Վասն ընդունելոյ զպաղատանս սոցա ըստ մեծի
ողորմութեան իւրում. զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմ։
Եւ ևս վասն միաբանութեան։ Տր ողորմ։
Զանձինս մեր և զմիմեանս։ Ողորմեաց մեզ։
Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Աղօթք։

Դու ես թագաւոր յաւիտեանս յաւիտենից Քս Ած
մեր։ Եւ քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայել է
փառք, իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և։

Երգ Խաղաղականի տէրունականին։

Եղիցի անունն Տեառն օրհնեալ. ի յայ-
սմհետէ մինչև ի յաւիտեա-
ն։

Օրհնեցէք մանկունք զՏէր. և օրհնեցէք զա-
նուն Տեառն։ Եղիցի անուն Տեառն օրհնեալ
յայսմհետէ մինչև ի յաւիտեան։ Յարևելից
մինչ ի մուտս արևու օրհնեալ է անուն Տեառն.
ի յայսմհետէ մինչև ի յաւիտեան։

Փառք եւ երկրպագութիւն Հօր եւ Որդւոյ եւ
սրբոյ Հոգւոյն. և այժմ եւ միշտ և յաւի-

տեառնըս յաւիտենից. ամէն. ի յայսըմհետէ մինչև ի յաւիտեան։

Արի Տէր օգնեա մեզ. եւ փրկեա զմեզ. վասն անուան քոյ։

Արի եւ մի մերժեր ըզմեզ ի սպառ. վն անուան քոյ։

Թագաւորեսցէ Տէր յաւիտեան. Աստուած քո Սիոն ազգէ յազգ։

Օրհնեա անձն իմ ըզՏէր. օրհնեցից ըզՏէր կենդանութեան իմոյ։

Որթիւ։ Խաղաղութի ամ։ Ել ընդ հոգւոյդ քում։ Երկիրպագութի լուարուք։ Սքյ աւետարանիս որ ըստ (Մատթէոսի)։ Փառք քեզ Տէր Աստուած մեր։ Պռօսխումէ։ Ասէ Աստուած։

ԱԿ (Ծաղկազարդին։)

Աւետարան ըստ Ղուկասու։ ԻԳ. 50։

Վն թաղման և յարութե Տռն մերոյ Յսի Քսի։

Եւ ահա այր մի, անուն Յովսէփ. որ էր Նախարար, այր բարեգործ և արդար։ Սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նց. յԱրիմաթեայ քաղաքէ Հրէից, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութե Այ։ Սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յսի։ Եւ իջուցեալ զնա՝ պատեաց պաստառակալաւ. և եդ ի կուածոյ գերեզմանին, ուր չէր բնաւ զոք եդեալ։ Եւ օրն էր ուրբաթ, և շաբաթ լուսանայր. և երթային զհետ նր կանայք՝ որք եկեալ էին ընդ նմա ի Գալիլեէ. տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմին նր։ Դարձան և պատրաստեցին խունկս և իւղս. և ի շաբաթուն հանդարտեցին վն պատուիրանին։

Բայց ի միաշաբաթուն վաղ քաջ ընդ առաւօտն եկին ի գերեզմանն, բերին զխունկսն զոր պատրաստե-

ցին. և այլ կանայք ընդ նմ՟։ Եւ գտին զվէմն թաւալեցուցեալ ի գերեզմանէ անտի. և մտեալ ի ներքս՝ ոչ գտին զմարմինն Տեառն Յ՟ի։ Եւ եղև ընդ հիանալն նց՟ վ՟ն այնորիկ, և ահա արք երկու հասին առ նմ՟ ի հանդերձս լուսաւորս։ Եւ իբրև զահի հարան՝ և խոնարհեցուցին զերեսս իւրեանց յերկիր, ասեն ցնմ՟. զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. չէ՛ աստ, այլ յարեաւ։ Յիշեցէ՛ք որպ՟ խօսեցաւ ընդ ձեզ մինչ էրն ի Գալիլեա. և ասէր, թէ պարտ է որդւոյ մարդոյ մատնել ի ձեռս մարդոց մեղաւորաց և ի խաչ ելանել և յերրորդ աւուր յառնել։ Եւ յիշեցին զբանսն նր՟. և դարձան պատմեցին զայս ամ՟ մետասանիցն և այլոցն ամենեցուն։ Եւ էին Մարիամ Մագդաղենացի, և Յովհաննա, և Մարիամ Յակովբայ, և այլք ընդ նմ՟, որ պատմեցին զայս առաքելոցն։ Եւ երևեցան առաջի նց՟ շաղփաղփութ՟ի բանք նց՟, և չհաւատային նց՟։ Բայց Պետրոս յարուցեալ ընթացաւ ի գերեզմանն. և հայեցեալ տեսանէ զկտաւսն լոկ, զի կային. և գնաց՝ ընդ միտս զարմացեալ թէ զինչ եղև։ Իդ. 12։

ԱԶ (Զատկին։)

Աւետարան ըստ Յովհաննու։ Ժթ. 38։

Վասն յարութեան Տեառն մերոյ Յ՟ի Ք՟ի։

Եւ ի միաշաբաթուջն Մարիամ Մագդաղենացի գայ առաւօտուն ընդ արշալուսն ի գերեզման անդր. և տեսանէ զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին։ Ապա ընթանայ և գայ առ Սիմովն Պետրոս և առ միւս աշակերտն՝ զոր սիրէրն Յ՟ս. և ասէ ցնմ՟. բարձին զՏէր ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմ, ուր եդին զնա։ Ել Պետրոս և միւս աշակերտն, և գային ի գերեզմանն. ընթանային երկոքեանն ի միասին. և միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս, և եկն նախ ի գերեզմանն։ Եւ խոնարհեալ տեսանէ զի կային անդ կտաւքն. բայց ի ներքս ոչ եմուտ։

Եկն և Սիմոն Պետրոս՝ որ գայրն զկնի Նորա, և եմուտ ի գերեզմանն և տեսանէ զկտաւսն, զի կային անդ. և վարշամակն՝ որ էր ի գլուխ Նր՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն ծալեալ ի մի կողմն: Յայնժամ եմուտ և միւս աշակերտն, որ եկեալ էր յառաջագոյն ի գերեզմանն. ետես և հաւատաց. զի չև ևս գիտէին զգիրս, թէ պարտ է Նմա ի մեռելոց յառնել: Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն: Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին և լայր: Եւ մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ի գերեզմանն, և տեսանէ երկուս հրեշտակս ի սպիտակս զի նստէին՝ մի ի սնարից և մի յանոտից, ուր կայր մարմինն Յնի: Եւ Նոքա ասեն ցնա. կին դու՝ զի՞ լաս: Ասէ ցնս. զի բարձին զՏէրն իմ ի գերեզմանէ աստի, և ոչ գիտեմ ուր եդին զնա: Զայս իբրև ասաց՝ դարձաւ ի թիկունս կոյս, և տեսանէ զՅն զի կայր. և ոչ գիտէր թէ Յն իցէ: Ասէ ցնա Յն. կին դու՝ զի՞ լաս, զո՞ խնդրես. Նմա այսպէս թուեցաւ թէ պարտիզպանն իցէ. ասէ ցնա, տէր՝ եթէ դու բարձեր զնա, ասա́ ինձ ու́ր եդիր զնա, զի ես առից զնա: Ասէ ցնա Յն. Մա́րիամ. և Նա դարձաւ և ասէ ցնա եբրայեցերէն, Ռա́բբունի, որ թարգմանի՝ վարդապետ: Ասէ ցնա Յն. մի́ մերձենար յիս. զի չև ևս ելեալ եմ առ Հայր իմ. այլ երթ դու առ եղբարս իմ, և ասա́ ցնս. ելանեմ ես առ Հայրն իմ և առ Հայր ձեր, և Ածն իմ և Ած ձեր: Գայ Մարիամ Մագդաղենացի, և պատմէ աշակերտացն՝ եթէ ետես Նա զՏէր, և զայս ինչ ասաց ցնա: Ի. 18:

Երգ ձայնի ի վերջերէց աւետարանին:

Փառք յարութեն քո Տէր. ոչ դադարեցայց Քրիստոս օրհնել ըզքեզ զամ աւուրս կենդանութեն իմոյ:

Փառք յարութեն քո Տէր. ոչ դադարեցայց Յիսուս գովել ըզքեզ զամ աւուրս կենդանութեն իմոյ:

Ես ոչ դադարեցայց փրկիչ փառաւորել ըզքեզ զամ աւուրս կենդանութեան իմոյ:

Ի գիշերի համբարձէք. ըզձեռըս ձեր ի սրբութիւն. եւ օրհնեցէք ըզՏէր:

Ասա օրհնեցէք ամենայն ծառայք Տեառն ըզՏէր ի սրբութի. եւ օրհնեցէք ըզՏէր: Ապա ասասցէ պաշտօն Գիշերին ասա:

Քարոզ ըստ Խաղաղականի տէրունական Եւ Երգոյն:

Օւարձացեալքս մեծաւ ուրախութը աւետեօք յարութեն Տ՟ն մերոյ և փրկչին Յ՟սի Ք՟սի: Որ եղև պտուղ և անդրանիկ ամ՟ ննջեցելոց: Խորտակեաց զդրունս դժոխոց. և եղոյծ զըռնութի մահու: Եւ ետ յոյս հաստատութեն վերստին նորոգման կենդանութեն ամ՟ մարդկան: Խնդրեսցուք հաւատով ի փրկչէն մերմէ Յ՟սէ Ք՟սէ: Զի զմեզ արժանի արասցէ յարութեն իւրոյ, կերպարանակից առնել զմարմին խոնարհութեն մերոյ՝ ըստ նմանութեն մարմնոյ փառաց իւրոց: Վ՟ն զի զայս խոստացաւ՝ զմեծ և զանճառելի շնորհս պարգևել սիրելեաց իւրոց ճշմարիտն Ա՟ծ Յ՟ս Ք՟ս Տ՟ր մեր: Կեցո և ող:

Աղօթ:

Ամենակեցոյց, ճշմարիտ, ո՛վ, մեծի յարութեն Ք՟սի Ա՟յ մերոյ վայելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և:

---

Եւ ասէ Փոխ՝ Սաղմոս Ծ:

Ողորմեա ինձ Ա՟ծ՝ ըստ մեծի ողորմութեն քում. ըստ բազում գթութեն քում քաւեա զանօրէնութիս իմ:

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ. և ի մեղաց իմոց սուրբ արա զիս:

Զանօրէնութիս իմ ես ինձէն գիտեմ. և մեղք իմ առաջի իմ են յամ ժամ:

Քեզ միայն մեղայ Տէր. և զչար առաջի քո արարի:

Ո՟պ արդար եղիցիս ի բանս քո. և յաղթեսցես ի դատել քո:

Անօրէնութը յղացաւ. և ի մեղս ծնաւ զիս մայր իմ:

Digitized by Google

Դու Տէր զճշմարտութի՟ սիրեցեր. զանյայտս և զծածկեալս իմաստութե՟ քոյ յայտնեցեր ինձ։

Ցօղեա՛ յիս մշտկաւ, և սր՟ եղէց. լուա, և քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի՛ արա ինձ Տէր զցնծութի՟ և զուրախութի՟. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո՛ զերեսս քո ի մեղաց իմոց. և զա՟մ անօրէնութիւնս իմ քաւեա՛ յինէն։

Սիրտ սր՟ հաստեա՛ յիս Ած՟. և զհոգի ուղիղ նորոգեա՛ ի փորի իմում։

Մի՛ ընկեներ զիս Տէր յերեսաց քոց. և զհոգի քո սբ՟ մի հաներ յինէն։

Տո՛ւր ինձ զցնծութի՟ փրկութե՟. և հոգւով պետութե՟ քով հաստատեա՛ զիս։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո. և ամպարիշտք առ քեզ դարձցին։

Փրկեա՛ զիս յարենէ Ած՟. Ած՟ փրկութե՟ իմոյ. և ցընծասցէ լեզու իմ յարդարութե՟ քում։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութի՟ս քո։

Թէ կամեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար։

Պատարագ Այ՟ հոգի խոնարհ. զսիրտ սբ՟ և զհոգի խոնարհ Ած՟ ոչ արհամարհէ։

Բարի՛ արա Տէր կամօք քովք Սիոնի, և շինեսցին պարիսպքն Երուսաղէմի։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութե՟. ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Եւ ապա ասէ Ողորմեայն ըստ պատշաճին։

Քարոզ զկնի Ողորմեային։

Երկրպագեմք քեզ Տր՟ Ած՟ մեր անցեալքս ընդ երկարութի՟ գիշերիս, և կանխեալքս ի տեղւոջ խոստո-

վանութե՟ն մատուցանեմք. զառաւօտու աղօթս մեր։ Զքեզ Տէր օրհնեմք և փառաւորեմք, և զքէն Տէր գոհանամք. որ արժանի արարեր զգիշերս խաղաղութ՟բ անցուցանել և հասանել ի ժամ առաւօտուս։ Արժանաւորեա՛ զմեզ Տէր անճառ խոստմանց քոց, զոր խոստացար սիրելեաց քոց. Ճշմարիտ Ա՟ծ Յ՟ս Ք՟ս Տէր մեր, կեցո՛ և ողորմեա՛։ Կեցո Տէր։

Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութե՟ն քում։ Ասասցուք ամենեքեան միաբանութ՟բ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Մաղթանք։

Ողորմած, գթած, ճշմարիտ, ն՟ք մեծի (յարութե՟ն) Ք՟սի Ա՟յ մերոյ վայելէ փառք իշխանութ՟ի և պատիւ. այժմ և միշտ։

Սաղմոս ՃԽԸ։

Ալէլուիա. ալէլուիա։

Օրհնեցէք զՏ՟ր յերկինս. օրհնեցէք զնա ի բարձունս։

Օրհնեցէք զնա ա՟մ հրեշտակք ն՟ր. օրհնեցէք զնա ամենայն զօրութ՟իք նորա։

Օրհնեցէք զնա արեգակն և լուսին. օրհնեցէք զնա ամենայն աստեղք և լոյս։

Օրհնեցէք զնա երկինք երկնից. և ջուրք որ ի վերոյ քան զերկինս՝ օրհնեցէք զանուն Տեառն։

Զի նա ասաց և եղեն. հրամայեաց և հաստատեցան։

Կացոյց զն՟ս յաւիտեանս յաւիտենից. սահման եդ, և ոչ անցանեն։

Օրհնեցէք զՏէր յերկրէ վիշապք և ա՟մ խորք։

Հուր և կարկուտ, ձիւն և սառն, հողմ և մրրիկ՝ որք առնէք զբան նորա։

Լերինք և ամենայն բարձունք, ծառք պտղաբերք և ամենայն մայրք։

Գազանք և ա՟մ անասունք, սողունք և ա՟մ թռչունք թեւաւորք։

*Թագաւորք երկրի, և զօրք իւրեանց. իշխանք, և ամ̃ դատաւորք երկրի։*

*Երիտասարդք և կուսանք, ծերք և տղայք օրհնեցէք զանուն Տեառն։*

*Բարձրացաւ անուն նր̃ միայն. խոստովանութի̃ նմա յերկինս և յերկրի։*

*Բարձր առնէ Տէր զեղջիւր ժողովրդեան իւրոյ. օրհնութիւն նմա յամենայն սրբոց նորա՝ յորդւոցն Իսրայէլի. ժողովոյն՝ որ մերձ է առ Տէր։*

Սաղմոս ճխթ։

*Օրհնեցէք զՏէր յօրհնութի̃ նոր. օրհնութի̃ նմա յեկեղեցիս սրբոց։*

*Ուրախ ասցի Իսրայէլ յարարիչ իւր. որդիք Սիովնի ցնծասցեն ի թագաւորն իւրեանց։*

*Օրհնեսցեն զանուն նր̃ օրհնութբ̃. սաղմոսիւք և օրհնութբ̃ սաղմոս ասասցեն նմա։*

*Հաճի Տէր ընդ ժողովուրդս իւր ոք. և բարձր առնէ զհեզս ի փրկութե̃։*

*Պարծեսցին սբ̃քն փառօք. և ցնծասցեն ի հանգիստս իւրեանց. և բարձր արասցեն զԱստուած բերանովք իւրեանց։*

*Սուր երկսայրի եւ ի ձեռս նոցա, առնուլ զհատուցումն ի հեթանոսաց, յանդիմանութիւն ամենայն ժողովրդոց։*

*Կապել զթագաւորս նց̃ կապանօք, և զզօրավարս նց̃ ձեռնակապօք երկաթեօք։*

*Առնել նց̃ դատաստան ըստ գրոց. և փառք այս են ամենայն սրբոց նորա։*

Սաղմոս ճծ։

*Օրհնեցէք զԱծ̃ ի սրբութե̃ նորա. օրհնեցէք զնա ի հաստատութե̃ զօրութե̃ նր̃։*

*Օրհնեցէք զնա ի զօրութե̃ նր̃. օրհնեցէք զնա ի բազում մեծութե̃ նր̃։*

Օրհնեցէք զնա ի ձայն օրհնութեան. օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ:

Օրհնեցէք զնա ցնծութեամբ. գովեցէք զնա ուրախութեամբ:

Օրհնեցէք զնա ի բանս քաղցր. գովեցէք զնա ի բարբառ լսելի:

Օրհնեցէք զնա ի ձայն գոհութեան. ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր:

Փառք Հօր: Այժմ և միշտ:

Եւ ապա ասէ Տէրողորմեայն ըստ պաշտօնին:

Զկնի Տէրողորմեայն ասէ Օրհնութիւն առաւօտու, ասացեալ յանմարմնոց այլև ի Կոստանդնուպօլսոյ սրբոյ ժողովոյն ՃԾ հայրապետաց:

Փառք ի բարձունս Աստուծոյ. եւ յերկիր խաղաղութիւն. ի մարդիկ հաճութիւն: Եւ օրհնութիւն քեզ ի բարձունս. օրհնեալ ես Տէր Աստուած մեր. օրհնեմք ըզքեզ եւ գովեմք ըզքեզ: Խոստովանիմք Տէր ըզքեզ. եւ երկիր պագանեմք քեզ. փառաւորեմք ըզքեզ. գոհանամք Տէր ըզքէն վասըն մեծի փառաց քոց: Տէր թագաւոր. սուրբդ երկնային. Աստուած եւ Հայր ամենակալ: Տէր եւ Որդի Հօր միածին Յիսուս Քրիստոս եւ սուրբ Հոգի: Տէր Աստուած գառն Աստուծոյ. և Որդի Հօր. որ առեր ըզմերս ի կուսէն. ողորմեցար. բարձեր ըզմեղս աշխարհի: Եւ արդ ընկալ զաղաչանս մեր. սուրբըդ որ նստիս ընդ աջմէ Հօր ողորմեաց մեզ: Զի դու միայն սուրբ. դու միայն բարձրեալ ես. դու միայն Տէր մեր. Յիսուս Քրիստոս: Տէր եւ Հոգիդ սուրբ որ ի փառս Աստուած ընդ Հօր. ամէն:

Եւ յամենայն ժամ օրհնեմք ըզքեզ. Տէր և գովեմք զանուն սուրբ քո յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից: Արժանի արա Տէր զօրըս զայս խաղա-

ղութեամբ եւ առանց մեղաց պահեա ըզմեզ: Օրհնեալ ես Տէր Աստուած հարցըն մերոց. գովեալ և փառաւորեալ է անուն սուրբ քո յաւիտեանս ամէն:
* Օրհնեալ Տէր. ուսո ինձ զարդարութիւնս քո. Երիցս:
Տէր ապաւէն եղեր մեր յազգէ յազգ: Ես ասացի Տէր ողորմեա ինձ և բըժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ: Ցոյց մեզ Տէր զողորմութիւնս քո. եւ ըզփրկութիւնս քո տուր մեզ: Տէր ողորմութիւն քո յաւիտեան. ըզգործըս ձեռաց քոց մի անտես առներ: Տէր իմ ըզքեզ ապաւէն ինձ արարի. ուսո ինձ առնել ըզկամըս քո զի դու ես Աստուած իմ: Ի քէն է Տէր աղբիւր կենդանութեան. եւ լուսով երեսաց քոց տեսանեմք ըզլոյս: Ծագեա զողորմութիւնս քո որք ճանաչեն ըզքեզ Տէր:

Մաղթանք:

Փառք, պատիւ և երկրպագութիւն ի բարձունս Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ:

Առաւօտու երգք զկնի Փառք ի բարձունսին:

Ցորեկեան:

ԱՁ Ակ. * Օ յարութիւն ըզփրկչին օրհնեսցուք. զփրկչին մերոյ օրհնեսցուք ըզյարութիւն:
Յարեաւ Աստուած. ցըրուեցան թըշնամիք նորա:
ԲՁ Բկ. Օ յարութիւն ըզփրկչին օրհնես:
Զյարուցեալն զՔրիստոս օրհնեսցուք. և զյարութիւն նր փառաւորեսցուք:

ԳՁ Գկ. Օ յարութիւն ըզփրկչին օրհնես:
Որ ելն ի բարձունս եւ գերեաց ըզգերութիւն. էառ աւար. բաշխեաց պարգեւս և ետ որդւոց մարդկան:
ԴՁ Դկ. Օ յարութիւն ըզփրկչին օրհնես:
Որ համբերեաց խաչի. և եդաւ ի նորափոր վիմի.

և աստուածային յարութեամբն ըզմահացեալըն վերամբերեաց ի կեանս:

Քարոզ Կիւրակէից եւ ամենայն տաւնից տէրունեաց:

Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ. Տէր ողորմեա՛: Տէր ողորմեա՛:

Վ՟ն խաղաղութ՟ն ա՟մ աշխարհի, և հաստատութ՟ն ս՟ր եկեղեցւոյ. զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա՛:

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց. զՏէր աղաչ: Տէր ողորմեա՛:

Վ՟ն սրբազան Պապին մերոյ Տ՟ն այս անուն. կենաց և փրկութ՟ն հոգւոյ նորին. զՏ՟ր աղաչ: Տէր ողորմեա:

Վ՟ն հայրապետին մերոյ Տեառն այս անուն. կենաց և փրկութ՟ն հոգւոյ նորին. զՏէր աղա: Տէր ողորմեա:

Վասն վարդապետաց, քահանայից, սարկաւագաց, դպրաց և ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ. զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա:

Վ՟ն բարեպաշտ Թագաւորաց, և ա՟ծասէր իշխանաց, զօրավարաց և զօրաց նոցին. զՏ՟ր աղա: Տէր ողորմեա:

Վ՟ն զի Տ՟ր ամենակալ հնազանդեցուսցէ առաջի ն՟ց զա՟մ պատերազմունս թշնամեաց. զՏ՟ր աղ: Տէր ողորմեա:

Յաղագս հարց և եղբարց մերոց, որք ի գերութեան են և ի չար ծառայութ՟ն. զՏէր աղա: Տէր ողորմեա:

Յաղագս ճանապարհորդաց և նաւորդաց՝ խաղաղութեամբ հասանել ի նաւահանգիստ բարութեան. զՏ՟ր աղաչեսցուք: Տէր ողորմեա:

Յաղագս հիւանդաց և ամենայն վշտացելոց փութապէս առողջութ՟ն. զՏէր աղա: Տէր ողորմեա:

Յաղագս բարեխառնութ՟ն օդոց, անձրեւաց քաղցրութ՟ն և պտղոց առատութ՟ն. զՏէր աղա: Տէր ողորմեա:

Յաղագս ուխտաւորաց և պտղաբերից ի սուրբ եկեղեցի Աստուծոյ. զՏէր աղա: Տէր ողորմեա:

Եւ յաղագս այնոցիկ, որք մատնեալ են ի ձեռս անօրինաց վ՟ն անուանն Ք՟ի. զՏէր աղա: Տէր ողորմեա:

Յաղագս հոգւոցն հանգուցելոց՝ որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի քն ննջեցին. զՏէր աղաչ: Յիշեա Տր և:

Յաղագս փրկելոյ զմեզ Տեառն Աստուծոյ յերեւելի և յաներեւոյթ թշնամւոյն. զՏէր աղաչ: Տէր ողորմեա:

Սրբ զՄարիամ զԱծածինն, զփառաւորեալ և օրհնեալ միշտ սբ կոյսն, սբ զՅովհաննէս մկրտիչն, սբ զՍտեփանոս Նախավկայն, սուրբ զառաքեալսն և զմարգարէսն, զարի և զյաղթող սբ զվկայսն, և զմեծ խոստովանողն քնի զհայրապետն մեր զսբն Գրիգորիոս լուսաւորիչն Հայաստանեայց աշխարհի:

Յիշեսջիք և զամ սբս, և նոքօք զՏէր աղաչեսցուք: Յիշ:

Զառաւօտս լուսոյ, և զառաջակայ օրս խաղաղութբ անցուցանել հաւատով ի Տնէ խնդր: Շնորհեա Տր:

Զհրեշտակ: Զքաւութի: Զսբյ խաչ: Շնորհեա Տր:

Եւ եւս և վն միաբանութն ճշմարիտ: Տէր ողորմեա:

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն: Քեզ Տնդ յ:

Ողորմեա՛ց մեզ Տէր Ած մեր ըստ մեծի ողորմութն:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Քարոզ պահոց:

Փառաւորեսցուք զամենակալն Ած զՀայր Տեառն մերոյ Յնի Քնի՝ գոհանալով զնմանէ, որ պահեաց զմեզ խաղաղութբ ի գիշերիս յայսմիկ. և առաջնորդեաց մեզ ի խաւարէ ի լոյս, ի մահուանէ ի կեանս, յապականութէ յանապականութի, յանգիտութէ ի գիտութի ճշմարտութն իւրոյ: Աղաչեսցուք և խնդրեսցուք ի նմանէ, զի զերկարութի տուընջեանս խաղաղութբ և ամ մտադիւր զուարթութբ արասցէ անցուցանել ի մէնջ: Եւ պարսպեալ պահեսցէ զժողովուրդս իւր աստուածային զօրութբն, որ ի վր ամի բարերարութբն իւրով իշխանութիւն ունի: Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո՛ և ողորմեա՛: Կեցո՛ Տէր:

Զառաւօտս լուսոյ և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տնէ խնդր: Շնորհեա Տր:

Զհրեշտակ։ Զքաւութի։ Զսբյ խաչ։ Շնորհեա Տր։
Եւ ես և վս միաբանութն ճշմար։ Տէր ողորմեա։
Զանձինս մեր և զմիմեանս Տռն Այ։ Քեզ Տռնդյ։
Ողորմեաց մեզ Տէր Ած մեր ըստ մեծի ողորմութե։
Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Աղօթք։

Գոհանամք զքէն Տէր Ած մեր, որ երեւելի լուսով քո զուարճացուցեր զամ արարածս քո. իսկ իմանալի լուսով պատուիրանաց քոց զամենեսեան լուսաւորեցեր զհաւատացեալս ի քեզ։ Զօրացո և զմեզ Տէր ի պահպանութի պատուիրանաց քոց ի տուընջեանս յայսմիկ, և յամ ժամանակի։ Որպ զի լուսաւորեալ մտօք միշտ զհաճոյս քո արասցուք. և հանդերձեալ բարեացդ հասցուք ընդ ամ սբս քո։ Շնորհօք և մարդասիրութբ Տեառնդ մերոյ և փրկչիդ Յսի Քսի. որում վայելէ փառք, իշխանութի և պատիւ. այժմ և միշտ և։

Խաղաղութիւն ամենեցուն։

Խաղաղութի մեր և կեանք, որ ի Հօրէ առաքեցար՝ միածին Որդի Այ Տէր մեր և փրկիչ Յս Քս։ Տուր մեզ զխաղաղութի քո, զոր շնորհեցեր սրբոց քոց առաքելոցն. փչմամբ քո ի նս զկենդանացուցիչ և զամենազօր Հոգիդ քո սբ. որպ զի և մեք խաղաղացեալք յամ աշխարհական սահեցմանց, լիցուք տաճար և բնակարան ածային շնորհացդ։ Եւ գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և սբ Հոգւոյդ, Քս Ած մեր. այժմ։

Եւ ապա ասէ Սուրբ Աստուած։

Սուրբ Աստուած. Սուրբ և հզօր. Սուրբ և անմահ ողորմեա մեզ։ Երիցս կրկնել։

Եւս։

Փառաւորեալ և օրհնեալ միշտ սբ կոյս Աստուածածին Մարիամ մայր Քսի. մատո զաղաչանս մեր որդւոյ քոյ և Աստուծոյ մերոյ։

Մաղթանք։

Փրկեա՛ զմեզ ի փորձութենէ և յամ վտանգից մերոց։

Քարոզ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վ՟ս լսելի լինելոյ Տեառն Այ ձայնի աղաչանաց մերոց բարեխօսութեամբ սբ Աստածնին. և իջանելոյ ի վ՟ր մեր ողորմութեան և գթութեան Տեառն Այ։ Ամենակալ Տէր Աստ մեր, կեցո՛ և ողորմեա՛։

Քհն. Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սբյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտ։

Խաղաղութեան ամենեցուն։

Ի տօնս տէրունականս ասա այլ սաղմոս եւ քերթ եւ աւետարան ըստ պատշաճին։

---

Քարոզ յորժամ է Նաքոր եղանէն։

Սրկ. Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Դպ. Տէր ողորմեա։

Սրկ. Վասն ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց զՏէր աղաչեսցուք։

Դպ. Տէր ողորմեա։

Սրկ. Ողորմեա՛ց մեզ Տէր Աստ մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութբ։

Դպ. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛։

Քհն. Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյն և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Դպ. Ամէն. ալէլուիա՛. ալէլուիա՛. ալէլուիա՛։

Քհն. Օրհնեսցի և պահպանեսցի և նախախնամեալ պահեսցի արևելեան կողմն աշխարհիս. և հայրապետութիւն Հայոց. * այս նշանաւ սուրբ խաչիւս և սբ աւետարանաւս և աւուրբս շնորհիւ. անուամբ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։ Եւ դառնան երես յարեւմուտս։

Ամէն. ալէլուիա՛. ալէլուիա՛. ալէլուիա՛։

Օրհնեսցի և պահպանեսցի և Նախախնամեալ պահեսցի արևմտեան կողմն աշխարհիս. և Թագաւորութիւն քրիստոնէից. այս նշա: Եւ շրջելով դառնայ ի հարաւ:
Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Օրհնեսցի և պահպանեսցի և Նախախնամեալ պահեսցի հարաւային կողմն աշխարհիս. երկիրս, անդաստանս և պտղաբերութիւն տարւոյս. այս նշանաւ սբ խաչիւս և սուրբ աւետար: Եւ դառնայ դէպ ի հիւսիս:
Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Օրհնեսցի և պահպանեսցի և Նախախնամեալ պահեսցի հիւսիսային կողմն աշխարհիս. քաղաքս և գիւղս. վանքս անապատս և բնակեալ ժողովուրդս ի սմա. այս նշանաւ սբ խաչիւս և սբ աւետարանաւս և: Ամէն:

Եւ դառնայ ի բեմն, եւ ասեն դպրեալ.

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւ. որպէս է վերոյ:

Քարոզ Նախօրէի եւ խաչի:

Սբ խաչիւս աղաչեսցուք զՏէր. զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութեն իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա:

Աղօթք:

Պահպանեա զմեզ, Քրիստոս Աստուած մեր, ընդ հովանեաւ սբ և պատուական խաչիւդ քով ի խաղաղութեն. փրկեա յերևելի և յաներևոյթ թշնամւոյն: Արժանաւորեա գոհութեն փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սբյ Հոգ:

---

ԿԻՐ. Երգ Տեառն Ներսէսի վասն առաջնոյ աւուր միաշաբաթին, եւ է խորհուրդ արարչութեան: Եւ է յարութեանն Քրի:

Նախաստեղծեալ Բանն յանէից ի սկզբանէ զերկինս երկնից. Եւ զերկնային զօրս անմարմնոց իմանալեացն զզուարթնոց. Եւ ըզգալի տարերց քառից հականակաց միաբանից. որով յաւէտ փառաբանի Երրորդութիւն անճառելին:

Երեքսրբեան մի տէրութի միով բնութեամբ աստուածութի. լոյսն որ անեղ արարչական ասաց լինել լոյս եղական. զոր և ծագեաց յօրն առաջին միաշաբաթ կիւրակէին. որով յաւէտ փառաբանի Երրորդութին անճառելի:

Րաբունորէն բացատրեսցուք զծածկեալ խորհուրդն ծանիցուք. զի լոյսն անտես իմանալի մաքուր հոգւոց տեսանելի. իսկ սոյն ծագեաց միաշաբաթ մեզ յարութեն ուր ճառագայթ. * Եկայք փրկեալք ընդ զուարթնոյն տուք օրհնութի յարուցելոյն:

Սէրդ սիրով խոնարհեցար ի փրկութի մեր մարմնացար. նովին մարմնովն խաչեցար ի գերեզման մահու եդար. այսօր յարեար աստուածաբար ի հրեշտակաց քարոզեցար. Եկայք փրկեալք ընդ զու:

Էրեւեցար խնկաբերիցն յողջոյն կենաց ուրախալից. եւ ի լերինն Գալիլեա առաքելոց մետասանից. արժանացո զմեզ ընդ նոսին զքեզ տեսանել յօրն վերջին. Եկայք փրկեալք ընդ զու:

Սիովնի որդիք զարթիք հարսին լուսոյ տուք աւետիք. եթէ փեսայն քո յարուցեալ յաղթեաց մահու իշխանութե. գայ պըսակէ ըզքեզ փառօք եւ ընդ առաջ պըճնեալ զարդուք. Երգեա երգ նոր յարուցելոյն ննջեցելոց կենաց պըտողին.

Քարոզ կիւրակէից եւ այլոց տէրունական տօնից:

Խնդրեսցուք հաւատով միաբանութե ի Տեառնէ, զի զողորմութեն զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր: Տէրն ամենակալ կեցուսցէ և ողորմեսցի: Կեցո Տէր:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Աղօթք:

Քում ամենազօր և հրաշալի (յարութեդ), Քս. ԱԾ մեր, երկիր պագանեն զօրք հրեշտակաց. զի դու միայն

ունիս զանմահութ՟ի բնակեալդ ի լոյս անմատոյց։ Եւ մեք հողեղէն արարածքս խոնարհեալ երկիւղիւ երկիր պագանեմք. զքեզ և զհրաշալի և զյաղթող (զյարութ՟իդ) քո օրհնեմք և փառաւորեմք. Եւ քեզ ընդ երկնային զօրսն մատուցանեմք զօրհնութ՟ի և զփառս՝ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր։

---

Իսկ ի մեծի շաբաթու առաւօտու յետ Սուրբ Ած՟ին եւ փառողջին ասէ էրէց՝

Սաղմոս ՃԺԲ։

Օրհնեցէք մանկունք զՏ՟ր. և օրհնեցէք զանուն Տ՟ն։
Եղիցի անուն Տեառն օրհնեալ. յայսմհետէ մինչև յաւիտեան։
Յարևելից մինչև ի մուտս արևու օրհնեալ է անուն Տ՟ն։
Բարձր է ի վերայ ամենայն ազգաց Տէր. և յերկինս են փառք նորա։
Ո՞վ է ոպ՟ Տէր Ած՟ մեր ի բարձունս բնակեալ. և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի։
Յարուցանէ զաղքատս յերկրէ. և բարձր առնէ զտառապեալս յաղբեւաց։
Նստուցանէ զնա իշխանս ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ։
Բնակեցուցանէ զամուլն ի տան ուրախամիտ. որպէս մայր որդւովք բերկրեալ։
Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Եւ ասէ շարական Մանկանց ըստ պատշաճին։

Քարոզ զկնի Մանկանցն։

Վ՟ն խաղաղութ՟ե ա՟մ աշխարհի, և հաստատութ՟ե ն՟ց եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։ Ասասցուք ամենեքեան միաբանութ՟ք։ Տէր ողորմեա։ Երիցս։

Աղօթք։

Մ՟ե ես Տէր Ած՟ մեր հզօր և փառաւորեալ, որ նստիս ի կառս քերովբէականս, և լոյս ծագես յարարածս

քո: Լուսաւորեա՛ զմեզ Տէր ի ժամ առաւօտուս, որպէս զի ի ծագել լուսոյ տուընջեանս ծագեսցի մեզ գութ մարդասիրութեան քո: Հեռացո՛ ի մէնջ Տէր զխաբէութի՛ սատանայի. և զգռնութի՛ նո՛ր խորտակեա՛ աղօթիւք և բարեխօսութեամբ ամ՛ սրբոց: Արա՛ և զերկիրս պտղաբեր ի սնունդս ծառայից քոց, յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ. այժմ և:

Եւ ապա Արշալուսին սաղմոս, առաւօտեան Խորհուրդն. բոլոր աւուր պաշտամանն:

ԲՇԻ. Երգ Տեառն Ներսէսի վասն Երկրորդ առաւօտ արարչութեան եւ վասն Երկնային զօրացն:

Ո՛րարչական բանի՛ն հրամա՛ն ի յե՛րկրո՛րդում՛ աւո՛ւր սկըզբա՛ն. ը՛զջուրսն ի ջո՛ւրցըն բա՛ժանեա՛ց հաստա՛տո՛ւթ՛. պարո՛ւնակեա՛ց. ո՛րով՝ զաշխա՛րհս հողե՛ղինա՛ց անջը՛րպե՛տեաց ի հրե՛ղինաց. * ը՛նդ՝ նոսա՛ն որդի՛ք լուսո՛յ տուք օ՛րհնո՛ւթի՛ երրեա՛կ լո՛՛ւսո՛՛յն:

Բազմաչեա՛յ հոյլք քրովբէից երեքսըրբեանըդ սրովբէից. աթոռք անեղ Աստուածութեանըն համագոյ Երրորդութե՛ն. բարեխօ՛ս լերուք առ Տէր վասըն մանկանց եկեղեցւոյ. ընդ նոսին որդիք:

Գերագո՛յն իշխանութիւնք և անփոփոխ միշտ տէրութի՛ք. անյա՛ղթելի ն՛ա զօրութի՛ք ի յարարչի՛ն փառաւորութի՛. աղաչեցէք զՏէրն ողորմած անտես չառնել զգործըս ձեռաց. ընդ նոսին որդ:

Դասք անմարմինցըն պետութեանց հրեշտակապետըք բարձրութե՛ց. հոգիք հրեղէնք և սպասաւորըք հրեշտակաց զինուորութի՛ք. մաղթեցէ՛ք զՏէրըն ներանց վասըն մարդկան երկրաւորաց. ընդ նոսին որդիք:

Երկնաւորաց դասուց վերնոց օրհնաբանից քոց զըւարթնոց. քաղցրասցի՛ն առ քեզ գըթած որ վասըն մեր ձայն մաղթանաց. զորս և տացես մեզ պահապան յայսըմ՛հետէ մինչ ի վախճան. ընդ նոսին որդիք:

Զօրութեանց և տէրութեանց իշխանութեանց և պետութեանց. և ամ անուանելոց որ ի յերկինս պաշտամանօք. ընկալ քն ուրախութ զմեզ յօր մահու և յարութ. ընդ Նորին օրհնել Հոգւով ըզքեզ ընդ Հօր փառաւորելով:

ԳՇԻ. Երգ վասն Երրորդ աւուր արարչութեանն, եւ Երրորդ դարուն. եւ է Յովհաննու Մնդրոնին:

Էական Բանն որ ընդ Հօր արարչակից և համագոր. յերրորդ աւուր զջուրսըն զատոյց. զբոյսս եւ ըզտունկս բըղխեցոյց. Իսկ ի յերրորդ դարուն դարձեալ զջուրցըն՝ հեղեղ ցամաքեցոյց. զՆոյ տապանաւն իւր ապրեցոյց. ըզկենդանեաց սեռս աճեցոյց. * տուք օրհնութիւն անճառ լուսոյն Հօր եւ Որդւոյ և սուրբ Հոգւոյն:

Ընդ ծառոց երկրի զգալեաց տընկեաց և զտունկս իմանալեաց. զհեղեղ մեղացըն ցածուցեալ, զդասս արդարոց բազմացուցեալ. յորոց և մեծն ի ծնունդս կանանց միջնորդ շնորհաց և օրինաց. տուք օրհն:

Թագաւորին երկնից զինուոր. արքայութեանն աւետաւոր. խնդրեա ըլնել եւս ի սրտի առ ի հովտէս տրտմականէ. յուխտեալ տեղին տէրունական ի խոստացեալն որդւոց մարդկան. տուք օրհնութիւն:

Ժառանգին Հօր սպասաւոր և յարգանդէ երկրպագող. կարապետ և մըկըրտիչ այնմ որ մեղաց մերոց քաւիչ. լեր բարեխօս առ Նոյն գըթած ջընջել ըզգիր մեր յանցանաց. տուք օրհնութիւն:

Ի Հօրէ լոյս ծագեցար մեռեալ բնութեանս կենդանարար. առաքեցեր յառաջընթաց մք զՅովհաննէս քարոզ կենաց. սորին հայցմամբ ամենակալ ըզպաշտամունս մեր ընկալ. տուք օրհնութիւն:

Լուսաշաւիղ յերկինս ելին հողանիւթեայ սք հրեշտակին. արժանացո ըզմեզ Նորին Նեղ և անձուկ ճանապարհին. զի հետեւող գոլով Նորին Հօր քո վերին

օթեւանին. եւ երգեսցուք ընդ երջանկացն որդւոց լուսոյ քեզ երգ փառաց։

ԴՇԻ. Եւ է ձայն շարականս առաջ ողորմեանն, եւ շարական պարոն. եւ ձայն աւետեաց Աստուածածնին։

Խաւարն անգոյ և սկզբնածին հալածեցաւ յօրն առաջին. լոյսն այն պայծառ յօր չորրորդին յարեգական նիւթ հաւաքեալ. լուսինն ի տիպ լուսոյ ստեղծեալ և աստեղաց պարք յօրինեալ. որով օրհնի ստեղծողն էից ի բանաւոր պաշտօնէից։

Ծածկեալ խորհուրդն ծանուցաւ չորրորդ դարուն իսահակաւ. ի չորրորդ օր դարձեալ հրեշտակն ետ զաւետիսն կուսական. թէ լոյսն որ ոչ բովանդակի ի քէն մարմնով պարունակի. * յոր օրհնեցայք ազգք երկրածինք տուք օրհնութիւն պտղոյ կուսին։

Կուսին նախնոյ մօրն Եւայի յորմէ Ադամըն հին պարտի. դարձան անէծքըն տըրտմական քո սուրբ ծնընդեամբ կոյս Մարիամ. աղաչեա զքո միածինն թողուլ ըզմեղս որդւոց նոցին. յոր օրհնեցայք։

Հարսն ընծայեալ յերկրէ յերկինս յոր համբառնամք առ քեզ զհոգիս. յոր լըսելոյ քոյ զաւետիս խընդրեա լինել մեզ լըսելիս. զձայն աւետեաց քոյ միածնին եթէ եկայք օրհնեալք Հօր իմ. յոր օրհնեցայք ազգք երկրածինք։

Ձայնիւ առ քեզ Տէր պաղատիմք և առաջի քո անկանիմք. աղաչանօք Աստուածածնին շիջո ի մէնջ ըզբոց հնոցին. տուր արտասուօք զմեղըս ջընջել և վերըստին զմեզ նորոգել. յոր օրհնեցայք։

Ղեկավար ճարտարապետ անցեր ընդ ծով կենցաղս անհետ. վերաբերեա ընդ Պետրոսի զմեզ ի յալեաց մեղաց ծովէս. պաղատանօք գերագունին անապական քում ծընողին. յոր օրհնեցայք ազգք երկրածինք տուք օրհնութիւն պտղոյ կուսին։

ԵՇԻ· Երգ ձայն հինգերորդ տանս արարչութեանն, եւ ձայն հինգ դարձուածն. եւ է սուրբ առաքելոցն Քրիստոսի:

Ճառագայթեալ Բանն ի Հօրէ յօր հինգերորդին հրամայէ. բղխեալ ի ջրոց սեռք կայտառաց և թեւաւորս օդականաց. իսկ ի դարուն հինգ մկրտին յամպն եւ ի ծովն Իսրայէլ հին. * տացուք հրաշից ներգործողին պատիւ եւ փառք անեղ Բանին:

Մաքրապէս օրինակի առաքելոցն քոյ. որք ի ծովէն տիբերական ի յերկնայինսն կոչեցան. անցին ընդ ծով աշխարհական և ի Հոգին մկրտեցան. տացուք հրաշ:

Ցուրախութիւն անզրաւական ի հարսանիսն անապական. զձեզ առաքեաց Հայրն փառաց հրաւիրատուք տրտմականաց. նը հարսանեացն այն հայցեցէք ընդ ձեզ լինել մեզ պարակից. տացուք հրաշից:

Նորոգողք տիեզերաց ի նախահօրն յանցանաց. նորափետուր զարդարեցիք զեկեղեցիս հեթանոսաց. պաղատեցէք առ նոյն գթած զմեզ նորոգել ի հնոյ մեղաց. տացուք հրաշից:

Շինող էիցս համայնից արարածոց ի յանգոյից. նոյն շինեցեր զեկեղեցի վէմդ ի վերայ վիմին բանի. ՚նդ եդեալ հիմունս ի նոր Սիովն ըղմեղ յօդեա շինմամբ ի նոյն. տացուք հրաշից:

Ուրախացաւ գնացիւք գետոց քաղաք ի քէն շինեալ Ցն. յորմէ վտակք շնորհաց հոսեն զոգիս մարդկան ոռոգանեն. արբո և մեզ ի ջրոյն կենաց հայցմամբ Հոգւոյն մատռուակաց. զի բանաւոր երկիրս քո պտղաբերցի ի փառս քո:

ՈՒՐ· Երգ վեցերորդ տանս արարչութեան. եւ ձայն վեց դարձուածն. եւ է խաչելութեան Քրիստոսի:

Զըհանդուրժեալ բնութեամբ բարւոյն ունել միայն զանձառ բարին. այլ ստեղծեալ մարդ յիւր պատկերին ի վեցերորդն առաւօտին. եւ ի յերրորդ ժամ

զկողածինն ի յօգնութի եւ հողածնին. զօրս ի դրախ-տին եդ վայելել բայց ի պտղոյն մահու արգել:

Պապանձեալ առ դատողին յետ յանցանացն Ադամըն հին. զկինըն պատճառ եդեալ խաբմանն և կինըն զօձըն դաւաճան. որով երկիրս այս անիծաւ փուշ և տա-տասկ ի սմա բուսաւ. վըճիռ մահու մարդոյն տըւաւ դառնալ ի հող ուստի ստեղծաւ:

Ջընջել փութայր Հայրըն փառաց ըզգիր պարտեաց մեր յանցանաց. որով զգեցաւ Որդին գըթած ի վեց դարուն զմարմին մեղաց. Հօր հաճութ՟բ ի մահ խաչին եկըն կամաւ ի յուրբաթին. գառըն զենաւ ի հին զատկին փոխան գառանցն օրինակին:

Ռահիւ լուսոյ պատուիրանին արդարութ՟ե ճանապար-հին. բարձրանալով քո ի խաչին բարձրացուցեր զմեզ ի յերկինս. քո անպատում խոնարհութ՟բդ և կամաւ-որ խաչելութ՟բն. հաշտեա ընդ մեզ Տէր գըթութ՟բ և թող ըզմեղս ողորմութ՟բ:

Սոսկալիդ սերովբէից և ահաւորըդ քերովբէից. խո-նարհեցար ի չարչարանս չարչարելի բնութ՟բ մարդկան. ի խաչին զմեղըս սպաներ և զդատակնիք մահու լուծեր. հաշտեա ընդ մեզ Տէր գըթութեամբ և թող ըզմեղս ողորմութեամբ:

Վեհագոյն բնութ՟եց էից և արարիչըդ բոլորից. յոր-ժամ ծագես զխաչիդ նըշան ի գալըստեան քոյ միւս-անգամ. զերկըրպագուս այժմ հաւատով լուսաւորեա նորին լուսով. զի համաձայն խաչազգեցիցն ըզքեզ օրհնեմք յաւիտենից:

ՇԲ. Երգ եօթներորդ աւուր արարչութեանն, եւ եօթն դա-րուն, եւ է խորհուրդ հանգստեանն Աստուծոյ:

Տէրն յետ ստեղծման արարածոց հանգեաւ յեօթն օրն ի գործոց. այն որ հանգիստ աշխատելոց և կամ-քըն գործ է եղելոց. ուստի և մեզ յոյս հաստատուն

եւ հանգըստեամբըն շաբաթուն. թէ՞ աստ գործել զգործս Աստուծոյ անդ է հանգչել ընդ Աստուծոյ:

Րաբունաբար վարդապետիմք յօրինակէ Տեառըն խըրատիմք. որ ի յերկրորդ արարչութեն յետ կատարման տնօրէնութեն. յեօթներորդ օր հանգըստեան իջեալ մարմնով ի գերեզման զկապեալ հոգիսըն վերածեաց զանանց հանգիստըն պարգեւեաց:

Յօղդ որ ի քոյդ կողէ ցօղեալ բըժըշկեսցէ ըզհանգուցեալըսն. իջցէ ի հող մահու նոցին եւ բուսուսցէ յօրըն վերջին. կենդանարար ձայնիւըդ քո կոչեա զնոսա ի կեանըս քո. եւ դասեցո ընդ արդարոցն երգել քեզ փառս ընդ զըւարթնոցն:

Խիւծեալ զընութիս կենաց ունող դարձոյց յանցանքն ի մահու հող. իսկ անմահիդ մեռելութի շնորհեաց դարձեալ զանմահութի. զորս են ընդ քեզ թաղեալ մահուամբ աւազանին մըկըրտութբ. յարո ընդ քեզ քոյին փառօք արեգական նըման լուսով:

Փայլեն, արդարքըն յարքայութեն եւ ծըգնաւորքըն ի հանգըստեանն. մարտիրոսքըն պըսակին եւ կուսանաց լապտերք վառին. դասեցո Տէր ընդ նոսին որ զքեզ ԱԾ խոստովանին. արդարութբ մի դատեսցին այլ գըթութեամբ քո քաւեսցին:

Քո անպատում խոնարհութբդ որ թաղեցար մեռելութբ. եւ յարուցեր յորդւոց մարդկան որք հաւատով ի քեզ անկան. յարո եւ զմեզ արդարութբ եւ զնընջեցեալըսն ողորմութեամբ. զի՞ կենդանեացըս բերանով տացին քեզ փառք ընդ Հօր Հոգւով:

Քրղ. Խնդրեսցուք: Աղ. Քում ամենազօր. Եր. 59:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր որ յերկինս:



# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

# ԵՐՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՑԱՐԻ

Ի ԴԷՄՍ ԻՋՄԱՆ ՀՈԳՒՈՅՆ ՍՐԲՈՅ ԵՒ Ի ԽՈՐՀՈՒՐԴ ՆԱԽԱՄՕՐՆ ՃԱՇԱԿՄԱՆ ԵՒ ԱՋԱՑՈՒԹԵԱՆՆ ՔՐԻՍՏՈՍԻ

Օրհնեալ Հոգիդ սուրբ Ած ճշմարիտ. ամէն։

Սաղմոս Ծ։

Ողորմեա ինձ Ած՝ ըստ մեծի ողորմութե քում. ըստ բազում գթութե քում քաւեա՛ զանօրէնութիս իմ։

Առաւել լուա՛ զիս յանօրէնութենէ իմմէ. և ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ Տէր. և զչար առաջի քո արարի։

Որպէս արդար եղիցես ի բանս քո. և յաղթեսցես ի դատելն քո։

Անօրէնութբ յղացայ. և ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու Տր զճշմարտութի սիրեցեր. զանյայտս և զծածկեալս իմաստութբ քով յայտնեցեր ինձ։

Ցօղեա՛ յիս մշտկաւ, և սրբ եղէց. լուա՛, և քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի՛ արա ինձ Տէր զցնծութի և զուրախութի. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո՛ զերեսս քո ի մեղաց իմոց. և զա՛մ անօրէնութիս իմ· քաւեա՛ յինէն։

Սիրտ սուրբ հաստեա՛ յիս Ած, և հոգի ուղիղ նորոգեա՛ ի փորի իմում։

Մի՛ ընկեներ զիս Տէր յերեսաց քոց. և զհոգի քո սբ մի՛ հաներ յինէն։

Տուր ինձ զցնծութիւն փրկութեան. և հոգւով պետութեան քո հաստատեա զիս։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո. և ամպարիշտք առ քեզ դարձցին։

Փրկեա զիս յարեանց Աստուած. Աստուած փրկութեան իմոյ. և ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։

Թէ կամեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար։

Պատարագ Աստուծոյ հոգի խոնարհ, զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ։

Բարի արա Տէր կամօք քովք Սիոնի. և շինեսցին պարիսպք Երուսաղէմի։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան. ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս։

Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Երգ երրորդ ժամու [illegible] Ողորմեայն։

Օրհնեմք զքեզ Հայր անսկիզբն էից էակ ի յանգոյից. Բարձեր ձեռօք նիւթ ի հողոյ և ստեղծեր մարդ ի պատկեր քո. Գլորեալն ոտից խոնարհեցաւ զի զպատուիրան քո մոռացաւ. Դարձեալ ասեմք՝ ըստ անառակին թէ հայր մեղայ քեզ ի յերկինս։

Երկնաւորացն անքննելի եղեր մարդկան տեսանելի. Զգեցար պատկեր հողեղինի պատկերըդ Հօր անփոփոխելի. Էլեր յերրորդ ժամ ի խաչին վասն Ադամայ նախաստեղծին. Ընդ աւազակին քում խաչակցին արժանացո ըզմեզ դրախտին։

Թագաւոր թագաւորաց առատաբուղխ Հոգի շնորհաց. Ժողովելոցն ի վերնատանն առաքելոցն երկոտասան. Ի հրոյ լեզուս երեւեցար յոգիս նոցա վերա-

Նըստա՛ր. Լո՛ւր յանուն քո ժողովելոցս էջ և՛ առ մեզ յերրո՛րդ ժամո՛ւս։

Մաղթանք։

Յժմ ժամու աղաչանք իմ այս են, ի մեղաց իմոց ո՛ր արա զիս Տէր, և յօտարէն պահեա՛ զծառայս քո մարդասէր Տէր։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն։

---

Քարոզ մեծ պահոցն է Յովհաննու Մանդակունւոյ ասացեալ։

Միաբան ամենեքեան գոհացարո՛ւք զմարդասիրէն Այ և զփրկչէն մերմէ Յնէ Քնէ. որ ազատեաց զազգս մարդկան ի դատապարտութէ անիծիցն և եբարձ զմեղս աշխարհի ի ժամուս յայսմիկ խաչիւն իւրով սրբով, և շնորհեաց առատապէս զպարգևս Հոգւոյն սրբոյ երանելի առաքելոցն։ Խնդրեսցուք հաւատով, զի զմեզ զամենեսեան արասցէ հաղորդս մեծամեծաց և ամծային բարեացն այնոցիկ. աղօթիւք և բարեխօսութեամբ ամ սրբց, որք աստ և ընդ ամ տիեզերս։ Ոյք զի անարատ վարուք և ճշմարիտ առաքինութբ կացեալք ըստ կամաց Նորա յայսմ աշխարհիս, մասն և վիճակ ժառանգութե ընկալցուք ընդ ամ սրբս Նր զընակութի յաւիտենական և երկնային խորանացն։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած Յիսուս Քրիստոս Տէր մեր. կեցո՛ և ողորմեա՛։ Կեցո Տէր։

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութբ անցուցանել հաւատով ի Տնէ խնդրեսցուք։ Շնորհեա Տր։

Զհրեշտակ։ Զքաւութի։ Զսբյ խաչ։ Շնորհեա Տր։

Եւ ևս և վն միաբանութե ճշմար։ Տէր ողորմեա։

Զանձինս մեր և զմիմեանս Տն Այ։ Քեզ Տնդ յ։

Ողորմեաց մեզ Տէր Ած մեր ըստ մեծի ողորմութե։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Աղօթք։

Որ ի քրովբէական և յանպատում հանգուցեալ ես յաթոռ, և այցելու ես միշտ արարածոց քոց. որ և ի ժամուս յայսմիկ հեղեր յերանելի առաքեալսն զշնորհս Հոգւոյդ սրբոյ։ Դու Տէր յառաջակայ ժամուս. եւ յաւէտ մինչեւ ի կենցաղոյս աւարտումն տպաւորեալ միացո՛ զմեզ ընդ քում բարեգործութեան յորդորմունս. և խոստացելոց բարեացդ հաղորդս լինել զմեզ արժանի՛ արա, Տէր մեր և փրկիչ Յս Քս։ Որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Որ էիր յառաջ քան զյաւիտեանս Բանդ Ած, էակից Հօր և արարչակից սբ Հոգւոյդ, որ և զնախաստեղծին պատուիրանազանցութիւն պտղոյն ճաշակման նշանաւ ամենայաղթ խաչիւ քով ի ժամուս յայսմիկ ենթադրեալ՝ ի կենդանութիւն փոխեցեր, և զանօրէնութիւս մեր ի նմա բեւեռեալ, կեանք անապական և նորոգումն կենաց յուսացելոց ի քեզ խոստացար։ Որոց մասնաւորել և զմեզ արժանի՛ արա Տէր մեր և փրկիչ Յս Քս, որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ սբյ Հոգւոյդ. այժմ և։

Սաղմոս։

Տէր Ած օրհնեալ, օրհնեալ է Տէր զօրհանապազ։
Ած մեր. Ած կենարար. և նա փրկեսցէ զմեզ։
Տէր Ած օրհնեալ, օրհնեալ է Տէր զօրհանապազ. առաջնորդեսցէ մեզ Ած փրկիչ մեր։

---

Քարոզ։

Խնդրեսցուք հաւատով ի Տեառնէ վն ճանապարհորդաց հարց և եղբարց մերոց, որք ընդ ծով և ընդ ցամաք գնասցեն. ոպ զի առաջնորդեսցէ նոցա, խաղաղութբ պահեսցէ, և տարեալ հասուսցէ յիւրաքանչիւր տեղիս Տէր Աստուած մեր։ Վասն զի նա ինքն է առաջնորդ կենաց և յոյս փրկութեան. որ յաջողէ ծառայից

իւրոց խաղաղութեամբ հասանել ի Նաւահանգիստն կենաց և փրկութեան։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛։

Աղօթք։

Առաջնորդեա՛ մեզ Տէր Ա՟ծ մեր, և ուսո՛ մեզ գնալ ի ճանապարհս քո արդարութ՟ք. պահեա՛ ի խաղաղութ՟ե զկեանս մեր և զգնացս ի հաճոյս քո. ժամանեցո՛ զհոգեւոր և զմարմնաւոր ընթացս ծառայից քոց անարատ ճանապարհաւդ յաւիտենական ի կեանսդ։ Շնորհօք միածնի քոյ Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ եղեւ մեզ առաջնորդ կենաց և լոյս փրկութ՟ե. ընդ որում օրհնեալ ես Հայր ամենակալ հանդերձ կենդանարար և ազատիչ ս՟բ Հոգւովդ. այժմ և միշտ և յաւիտեանս։

Դպ. Յիշեա՛ Տէր զպաշտօնեայս քո, զծնողսն մեր, զվարդապետս, զեղբարս, զընկերս, զկերակրիչս, զուխտաւորս, զճանապարհորդս, զհանգուցիչս, զվաստակաւորս, զխոստովանողս, զապաշխարողս, զգերիս, զհիւանդս, զննջեցեալս, զիշխանս, զչարարարս, զբարերարս, զթշնամիս, զատելիս և որք պատուիրեցին մեզ հաւատով։

Քհ. Յիշեա՛ Տէր և ողորմեա՛։ Բարերար և բազումողորմ Ա՟ծ, քո անմոռաց գիտութ՟բդ և անբաւ մարդասիրութ՟բդ յիշեա՛ զա՟մ հաւատացեալս ի քեզ. և ողորմեա՛ ամենեցուն։ Օգնեա՛ և փրկեա՛ յիւրաքանչիւր վտանգից և ի փորձութ՟ց։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զՀայր և զՈրդի և զս՟բ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտ։

Սաղմոս ԻԲ։

Տէր հովուեսցէ զիս. և ինձ ինչ ոչ պակասեսցի։

Ի վայրի դալարուոջ անդ բնակեցոյց զիս. և առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Դարձոյց զանձն իմ առ իս. և առաջնորդեաց ինձ ի ճանապարհս արդարութե վն անուան իւրոյ։

Թէպէտ և գնացից ես ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ի չարէ. զի դու Տէր ընդ իս ես։

Ցուպ քո և գաւազան՝ նոքա մխիթարեցեն զիս։

Պատրաստ արարեր առաջի իմ սեղան. ակն յանդի֊ման նեղչաց իմոց։

Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս։

Ողորմութի քո Տէր զհետ իմ եկեսցէ զամ աւուրս կենաց իմոց, բնակել ինձ ի տան Տեառն ընդ երկայն աւուրս։

ՃԽԲ. Ցոյց ինձ ճանապարհ, յոր գնացից. զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Տէր, զի զքեզ ա֊պաւէն ինձ արարի։

Ուսո ինձ առնել զկամս քո զի դու ես Աճ իմ։

Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։

Վն անուան քո Տէր, կեցուսցես զիս. արդարութբ քով հանցես ի նեղութենէ զանձն իմ։

Ողորմութբ քով սատակեսցես զթշնամիս իմ, և կո֊րուսցես զամ նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Քարոզ։

Եւ ևս խաղաղութե զՏէր աղաչեսցուք։

Գոհաբանելով աղաչեսցուք զբարերար Հոգին Այ և խնդրեսցուք զողորմութի ի նմանէ. զի անցուսցէ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարե֊րարութեամբ իւրով։ Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա։

Աղօթք։

Խաղաղութբ քով, Հոգիդ սբ Այ ճշմարիտ, որ ի վեր է քան զամ միտս և զխորհուրդս, մխիթարեա

զանձինս ծառայից քոց ընդունելով զաղաչանս մեր. անցո ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութբ քով: Ներեա և լուր մեզ, քաւեա և թող զմեղս մեր արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Որդւոյն միածնի. այժմ և միշտ և յաւիտ:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր որ:



# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

# ՎԵՑԵՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ

Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ ԱՅԼ ԵՒ Ի ԴԷՄՍ ՉԱՐՉԱՐԱՆԱՑ ԵՒ ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ ՈՐԴՒՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ

Օրհնեալ Հայր նք Ած ճշմարիտ. ամէն:

Սաղմոս Ծ:

Ողորմեա ինձ Ած ըստ մեծի ողորմութեան. 67:

Երգ վեցերորդ ժամուն:

Խաւարեցաւ լոյսն արեւուն ի վեցերորդ ժամ ուրբաթուն. Ծանոյց թէ լոյսն արարչական նըսեմացոյց զլոյսն եղական. Կախեալ ըզքեզ մերկ ի խաչին քողով ստուերաւըն ծածկէին. Հերքեա ի մէնջ ըզծանրութիւն շրջող դիւին միջօրէի:

Զանձրութեն մարտ այսուն չարի որ յայս ժամուս պատերազմի. Ղօղեալ յոգւոց մեր հերքեսցի քո նըշանաւ նըյ խաչի. Ճշմարտութե քո ճառագայթ զառ ի յերկնից անկեալ զփայլակն. Մերժեալ ի մէնջ հալածեսցէ և զմեզ լուսով քո վառեսցէ:

Յայս միջօրեայ տուընջեան ժամուս վայելչական աչաց մարմնոյս. Նետիւք գաղտնեաց մի խոցեսցուք ի

խաւարէն որ ի ծածուկ. Շուրջանակի՞ բանակեցին ըզմեօք բանակք հրեշտակաց. Որք պարակից մեզ լինելով ըզքեզ ընդ Հօր փառաւորելով:

Մաղթանք:

Յամ ժամու աղաչանք իմ այս են, ի մեղաց: 69:
Եւ ես խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ:
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւ:

---

Քարոզ ԺԹ պահոցն:

Արթուն մտօք և անզբօս խորհրդով կացցուք միաբան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին Յ՟սի Ք՟սի: Հաւատով խնդրեսցուք ի Նմանէ զհրեշտակ խաղաղութե՟ պահապան անձանց մերոց, որ եկեալ բանակեսցէ շուրջ զմեօք, և աներկիւղ պահեսցէ զմեզ յամ՟ հրեղէն նետից սատանայի, որ թռչի ի տուէ, յիրաց խաւարային գնացից ի գայթագղութենէ դիւին ի հասարակ աւուր: Յորմէ զգուշութե՟ պահելով աղօթիւք և բարեխօսութե՟ ամ՟ սրբոց, շնորհեսցէ մեզ մարդասէրն Ա՟ծ կեալ առաքինութե՟ ի փրկութի՟ անձանց մերոց՝ ի պատիւ և ի փառս կենդանացուցիչ անուան իւրոյ: Յոյս հաղորդութե՟ ընկալցուք ի յայտնութե՟ միածնի Որդւոյն Ա՟յ. կերպարանակից առնել զմարմին խոնարհութե՟ մերոյ ըստ նմանութե՟ մարմնոյ փառաց իւրոց: Վ՟նզի զայս խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Ա՟ծ Յ՟ս Ք՟ս: Տ՟ր մեր կեցո՛ և: Կեցո Տէր:

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութե՟ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդր: Շնորհեա Տ՟ր:
Զհրեշտակ: Զքաւութի՟: Զս՟բյ խաչ: Շնորհեա Տ՟ր:
Եւ ես և վ՟ն միաբանութե՟ ճշմարիտ: Տէր ողորմեա:
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն: Քեզ Տ՟նդ յ:
Ողորմեա՛ց մեզ Տէր Ա՟ծ մեր ըստ մեծի ողորմութե՟:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Աղօթք։

Օգնեցո՛ մեզ Տէր Ած մեր զէն արդարութեն զօրաւոր և յաղթող լինել ընդդէմ սատանայական պատերազմաց, և զամ հրեղէն նետս նր շիջուցանելով անկասկած լիցուք յիրաց խաւարային գնացից ի դայթագղութէ դիւին ի հասարակ աւուր։ Եւ զգաստացեալք վայելչական տուընջեամբս առաքինութեամբ կացցուք ի փրկութի անձանց մերոց ի պատիւ և ի փառս սրբոյ Երրորդութեն. այժմ և միշտ։

Խաղաղութի ամենեցուն։

Երկնաւոր խաղաղութբդ քով պարսպեալ պահեա՛ զանձինս մեր, Տէր զօրութեց։ Վն զի դու ես Ած խաղաղութե, և բաց ի քէն զայլ ոք ոչ գիտեմք, և զանուն քո ամենազօր կարդամք յօգնականութիւն անձանց մերոց։ Նայեա՛ յերկրպագութիւնս մեր, և ուսո՛ մեզ առնել զարդարութի ճշմարտութե։ Եւ գոհութեամբ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ։

Սաղմոս։

Տէր, մի՛ յիշեր զմեղս մեր զառաջինս. վաղվաղեսցէ առ մեզ ողորմութի քո Տէր, զի աղքատացաք յոյժ։

Օգնեա մեզ Աստուած փրկիչ մեր, վն մեծի փառաց անուան քո։

Տր փրկեա՛ զմեզ. և քաւեա՛ զմեղս մեր վն անուան քոյ։

---

Քարոզ։

Վն հիւանդաց և ամ վշտացելոց աղաչեսցուք զփրկիչն. մեր Քն, զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում. և բժշկեսցէ զախտս և զհիւանդութիւս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց, և կատարեալ առողջութբ հասուսցէ զամենեսեան ի մշտնջենաւոր և յանախտ կեանս. որ առաքեցաւ ի Հօրէ ի բժշկութի ազգի մարդկան, միածին Որդին Աստուծոյ։ Տէր մեր և փրկիչ Յս Քս, կեցո՛ և ողորմեա՛։

Աղօթք։

Փարատեա՛ զցաւս և բժշկեա՛ զհիւանդութիւնս ի ժողովրդենէ քումմէ Տէր Ած մեր, և շնորհեա՛ ամենեցուն զկատարեալ առողջութի նշանաւ ամենայաղթ խաչիւ քով, որով բարձեր զտկարութի ազգի մարդկան, և դատապարտեցեր զթշնամին կենաց և փրկութեան մերոյ։ Դու ես կեանք մեր և փրկութիւն, բարերար և բազումողորմ Ած, որ միայն կարող ես թողուլ զմեղս և մերժել զախտս և զհիւանդութիս ի մէնջ. որում յայտնի են պէտք կարեաց մերոց. պարգեւիչդ բարեաց, պարգեւեա՛ զառատ ողորմութիւն քո արարածոց քոց ըստ իւրաքանչիւր պիտոյից, յորոց հանապազ փառաւորեալ գովի ամենասուրբ Երրորդութիւնդ. այժմ և միշտ։

Յիշեա՛ Տէր զպաշտօնեայս քո. 71։
Յիշեա՛ Տէր և ողորմեա։ Բարերար և բազումողորմ։

Սաղմոս Խ։

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկեսցէ զնա Տէր։
Տէր փրկէ զնա և կեցուցանէ. երանելի առնէ զնա ի վր երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց։
Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց, և զամ անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութէ նորա։
Ես ասացի Տէր ողորմեա՛ ինձ. և բժշկեա՛ զանձն իմ. ես մեղայ քեզ։

Սաղմոս Ղ։

Որ բնակեալն է յօգնութի բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հանգիցէ։
Ասասցէ Տեառն. ընդունելի իմ ես դու, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ ի նա։
Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին, և ի բանիցն խռովութենէ։

Ի Թիկնամէջս իւր ընկալցի զքեզ. ի հովանի Թեւոց Նորա յուսասցիս:

Որպէս զէն շուրջ եղիցի զքեւ ճշմարտութի̃ Նորա:

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի. և ոչ ի Նետէ՝ որ Թռչի ի տուէ:

Ցիրէ՝ որ շրջի ի խաւարի. ի գայթագղութե̃ դիւին ի հասարակ աւուր:

Անկցին ի կողմանէ քումմէ հազարք, և բիւրք ընդ աջմէ քումմէ. և առ քեզ ինչ ոչ մերձեսցին:

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու. և զհատուցումն մեղաւորաց տեսցես. զի դու Տէր յոյս իմ ես:

Զբարձրեալն արարեր քեզ ապաւէն. ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս քո:

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վն̃ քո, ի պահել զքեզ յա̃մ ճանապարհս քո:

Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ, զի մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո:

Ի վ̃ր իժից և քարբից գնասցես դու. և առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն:

Քանզի յիս յուսացաւ, և փրկեցից զնա. հովանի եղէց Նմա, զի ծանեաւ զանուն իմ:

Կարդասցէ առ իս, և ես լուայց Նմա. և առ Նմա եղէց ի Նեղութեան:

Փրկեցից և փառաւոր արարից զնա. երկայն աւուրբք լցուցից, և ցուցից Նմա զփրկութիւն իմ:

Փառք Հօր և: Այժմ և:

Քարոզ:

Եւ եւս խաղաղութե̃ զՏէր աղաչեսցուք:

Խնդրեսցուք հաւատով ի Հօրէ վն̃ քաւութե̃ մեղաց և Թողութե̃ յանցանաց, փրկելոյ զմեզ ի վշտաց և ի Նեղութե̃ց. իջանելոյ ի վ̃ր մեր ողորմութե̃ և գթութե̃ Տե̃ն Ա̃յ ամենակալին: Կեցո՛ և ողորմեա:

Աղօթք։

Հայր գթութ՟ց և Ա՟ծ ամ՟ մխիթարութեանց, որ մխիթարես զմեզ յամ՟ նեղութ՟ս մերում, լո՛ւր և այժմ ձայնի պաղատանաց ծառայից քոց ընդունելով զաղաչանս մեր. անցո՛ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութ՟բ քով։ Ներեա՛ և լո՛ւր մեզ. քաւեա՛ և թո՛ղ զմեղս մեր. արժանաւորեա՛ գոհութ՟ք փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սբ՟յ Հոգւոյդ. այժմ և միշտ և։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։



# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

# ԻՆՆԵՐՈՐԴ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ

Ի ԴԷՄՍ ՈՐԴՒՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԱՅԼ ԵՒ ՄԱՀՈՒԱՆ ԵՒ ԲԱՆԱԿԱՆ ՀՈԳՒՈՅՆ ԱՒԱՆԴՄԱՆՆ

Օրհնեալ Որդիդ սբ Ա՟ծ ճշմարիտ. ամէն։

Սաղմոս Ծ։

Ողորմեա՛ ինձ Ա՟ծ ըստ մեծի ողորմութեան. 68։

Երգ իններորդ ժամուն։

Զա՛րչարակցեա՛լ քեզ տի՛ւ լո՛ւսոյ երե՛ք ժա՛մաւ խաւարելո՛յ. Պա՛յծառացեալ յի՛ններորդի՛ն ի տի՛պ լը՛րման մահու ստուերի՛ն. Ձա՛յնի՛դ լուսո՞յ մեծապա՛յծառ աւա՛նդե՛ցեր զհոգիդ առ Հա՛յր. Ռա՛հիւ կըցորդ քե՛զ ի՛ յերկի՛նս ըզմե՛զ ուղղեա Հոգւո՛վ քոյի՛ն։

Սա՛նդարամե՟տըք սա՛րսեցի՛ն զկապեա՛լ հո՛գիսն արձակեցի՛ն. Վէ՛մք ի վիմե՛դ պա՛տառեցան ի տա՛պանաց մեռեալք յարեա՛ն. Տա՛րե՛րք երկրի՞ տատանե՛ի՛ն և ա՛շ-

խա՛րհի սիւնք դողայի՛ն. Բա՛մեալքս առ քեզ պա՛ղա՛-տեսցուք զի՛ ը՛նդ արդարսը՛ն դա՛սեսցո՛ւք։

Ցո՛ւցեր յայնժա՟մ ըսքա՛նչե՛լիս և ա՛յժը՛մ մեզ ողոր-մեսցի՛ս. Խի՛ւծեալ բնութի՟ս քե՛ւ ո՛ղջացաւ շնորհեա՛ ե՛ւ մեզ լի՛նել անցա՛ւ. փո՛խա՛ն մահո՛ւ քո կե՛նա՛րար կեցո՛ ը՛զմեզ Տէր բարերա՛ր. Քե՛զ պաղատիմք ՚ստ ա՛ւ-ա՛զակի՛ն յիշեա՛ ըզմեզ յօրի՛ն յա՛հագի՛ն։

Մաղթանք։

Յա՟մ ժամու աղաչանք իմ այս են, ի մեղաց. 69։
Եւ ես խաղաղութե՟ զՏէր աղաչեսցուք. ընկալ։
Օրհնութի՟ և փառք Հօր և Որդւոյ և Հոգւ։

Քարոզ Ժծ պահոցն։

Ա՟ սրտիւ և հաստատուն հաւատով կացցուք միա-բան յաղօթս առաջի Տեառն մերոյ և փրկչին Յս՟ի Քս՟ի. յիշելով զմեծամեծս նորա, զանչափ շնորհսն, զհամ-բերութի՟ կենսատու խաչին և զհեղումն ազատեցու-ցիչ արեան նր՟, և զսոցին նմանս որ յայսմ ժամու վս՟ մեր մեղաւորացս կրեաց նա։ Եւ մեք զայս ա՟մ զմտաւ ածելով, սրբեսցուք ի մեղաց զխորհուրդս, զբանս և զգործս մեր. կատարեսցուք զսրբութի՟ անձանց մերոց ահիւն Ա՟յ։ Մի՛ յապաղեսցուք խոստովան լինել նմա զմեղս մեր, և խնդրել զթողութի՟ մեղաց մերոց. զի մի՛ կորիցուք անապաշխար զյաւիտենական կորուստն։ Այլ մինչդեռ ժամանակս ի ձեռս է, գործեսցուք զբարիս ի կեանս յայսմիկ, օրինակ վարուց մերոց ունելով զա՟մ սբս և զյաղթող նահատակսն, որք միանգամ ի սկզբանէ հաճոյ եղեն Տեառն և փրկչին բոլորեցունց, որոց աղօթիւք և բարեխօսութեբն շնորհեսցէ մեզ մար-դասէրն Ա՟ծ զհաճոյսն իւր և զօգուտն մեր խորհել միշտ և առնել, և անպատում պարգևացն հաղորդս գտանել։ Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն Ա՟ծ Յս՟ Քս՟։ Տէր մեր կեցո՛ և ողորմեա՛։ Կեցո Տէր։

Զժամս և զառաջակայ օրս խաղաղութ̃բ անցուցանել հաւատով ի Տ̃նէ խնդր։ Շնորհեա Տ̃ր։
Զհրեշտակ։ Զքաւութ̃ի։ Զս̃բ խաչ։ Շնորհեա Տ̃ր։
Եւ եւս և վ̃ն միաբանութ̃ե ճշմարիտ։ Տէր ողորմեա։
Զանձինս մեր և զմիմեանս Տեառն։ Քեզ Տ̃նդ յ։
Ողորմեա՛ց մեզ Տէր Ա̃Ծ մեր ըստ մեծի ողորմութե։
Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Աղօթ̃ք։

Տէր զօրութ̃եց, որ կամաւոր մահուամբ քով ի ժամուս յայսմիկ կենդանացուցեր զմեզ ի մեռելութ̃է մեղաց մերոց, և բեւեռեցեր զկնիք դատապարտութ̃ե մերոյ ի խաչին, և շնորհեցեր ազատութ̃ի ազգի մարդկան ի ծառայութ̃է ապականութ̃ե յազատութ̃ի փառաց հեղմամբ արեամբդ քով սրբով։ Ընկա՛լ և այժմ զաղաչանս մեր, և յաջողեա՛ մեզ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք կալ յայսմ աշխարհիս, և արժանաւոր լինել յաւիտենական և երկնային ուրախութ̃եցն ընդ ա̃մ ն̃ս քո։ Եւ գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր և Ս̃բ Հոգւոյդ. այժմ և։

Խաղաղութիւն ամենեցուն։

Բազումողորմ Ա̃Ծ և հաստիչ խաղաղութ̃ե, հաստատեա՛ զանձինս մեր քոյով խաղաղութ̃բդ, որով ունիս յիւրաքանչիւր կարգի զա̃մ արարածս քո, ուղիղ հրամանաւդ մատակարարելով. վ̃ն զի այդ իսկ է կամք քո՝ խաղաղական և հոգեւոր սիրով կալ մեզ առ միմեանս. և սպասել արթուն մտօք յայտնութ̃ե միածնիդ Աստուծոյ և փրկչիդ մերոյ Յ̃սի Ք̃սի։ Որում արժանաւորք եղիցուք հանդիպել ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. զուարթերեսս կացցուք յաջմէ քումմէ ընդ ն̃ս և ընդ սիրելիս անուանդ քում սրբոյ. և ժառանգեսցուք զպատրաստեալն ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց զարքայութ̃իդ. և ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր և ամենաս̃բ Հոգւոյդ. այժմ։

Սաղմոս:

Տէր մի՛ մատներ զմեզ ի սպառ վն անուանդ քում սրբոյ. մի՛ ցրեր զուխտս քո. եւ մի՛ ի բացեայ առներ զողորմութիւնս քո ի մէնջ:

Վասն Աբրահամու սիրելւոյ քոյ, Իսահակայ ծառայի քոյ եւ Իսրայէլի սրբոյ քոյ:

Տէր մի՛ մատներ զմեզ ի սպառ վն անուանդ քում սբյ. մի՛ ցրեր զուխտս քո. եւ մի՛ ի բացեայ առներ զողորմութիւնս քո ի մէնջ:

Երգ:

Նա՛հա՛պետին Աբրա՛հա՛մու հա՛յցմամբ ընկա՛լ Տէր զաղաչա՛նս. Ե՛ւ ծառա՛յի՛ն քում Սա՛հա՛կայ խնդրելածո՛վքն ի՛ մեզ գըթա՛: Բե՛նատե՛սին Իսրա՛յէ՛լի Սի՛րով սրբո՛յն ի մեզ խնայեա՛. Ե՛րեքսրբեան երի՛ւք սո՛ցին Սրբեա զհոգի՛ զմի՛տս եւ զմարմի՛ն:

---

Քարոզ:

Աղաչեսցուք զկենսատու փրկիչն մեր Քն, որ կամաւոր խաչելութբն իւրով զարարածս փրկեաց, եւ հեղմամբ արեան իւրոյ զթողութի շնորհեաց յուսացելոց իւրոց: Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո եւ ողորմեա:

Աղօթք:

Ընկեալ առաջի քո, բարերար եւ բազումողորմ Աճ աղաչեմք ամ սրտիւք մերովք, եւ խնդրեմք զթողութի ի քէն. որպէս խոստացար ծառայից քոց եւ ասացեր. զամ զոր ինչ խնդրիցէք հաւատով յանուն Որդւոյ ի Հօրէ, տացի ձեզ: Շնորհեա եւ այժմ հաւատացելոցս ի քեզ, եւ կատարեա ի բարի զխնդրուածս մեր. զի ի քեզ եմք ապաւինեալ. եւ քո առատ ողորմութբդ մխիթարեա զմեզ ի կեանս յայսմիկ. եւ առաջնորդեալ հասո յանձառ երկնից արքայութիդ ի փառաբանել եւ ի պատիւ ամենասուրբ Երրորդութե. այժմ եւ:

Յիշեա Տէր զպաշտօնեայս քո. Երես 71:

Յիշեա Տէր եւ ողորմեա: Բարերար եւ բազումողորմ:

Սաղմոս ՃԺԴ։

Սիրեցի, զի լուիցէ Տէր զձայն աղօթից իմոց. զի խոնարհեցոյց զունկն իւր առ իս, և ես յաւուրս իմ կարդացի առ նա։

Շրջեցան զինեւ երկունք մահու. և վիշտք դժոխոց գտին զիս։

Զնեղութի՛ և զանձկութի՛ գտի. և զանուն Տն̃ կարդացի։

Ո՛ Տէր, փրկեա՛ զանձն իմ. ողորմած Ած̃ մեր ողորմի, և պահէ զտղայս Տէր։

Ես խոնարհ եղէ, և Տէր կեցոյց զիս. դա՛րձ անձն իմ ի հանգիստ քո. զի Տէր օգնեաց քեզ։

Փրկեաց զանձն իմ ի մահուանէ. զաչս իմ յարտասուաց. և զոտս իմ ի գայթագղութենէ. հաճոյ եղէց առաջի Տեառն յերկրին կենդանեաց։

Սաղմոս ՃԺԵ։

Հաւատացի զոր և խօսեցայ, և ես խոնարհ եղէ յոյժ։

Ես ասացի ի զարմանալ իմում. թէ ա̃մ մարդ սուտ է։

Զի՞նչ տաց տրիտուր Տեառն. ընդ ա̃մի զոր և ետ ինձ։

Զբաժակ փրկութեան ընկալայց. և զանուն Տեառն կարդացից։

Զաղօթս իմ Տն̃ տաց. առա՛ջի ա̃մ ժողովրդեան Նր̃։

Պատուական է առաջի Տեառն մահ սր̃ց իւրոց. ո՛ Տր̃, ես ծառայ քո եմ. ծառայ, և որդի աղախնոյ քոյ։

Հատեր զկապանս իմ, քեզ մատուցից պատարագս օրհնութե̃. և զանուն Տեառն կարդացից։

Զաղօթս իմ Տեառն տաց առաջի ա̃մ ժողովրդեան Նորա. ի գաւիթս տան Տեառն, և ի մէջ քո Եղ̃էմ։

Սաղմոս ՃԺԶ։

Օրհնեցէ՛ք զՏէր ամենայն ազինք. գովեցէ՛ք զնա ամենայն ժողովուրդք։

Զօրասցի ողորմութիւն Նորա ի վերայ մեր. և ճշմարտութիւն Տեառն մնասցէ յաւիտեան։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Շարական հանգստեան ըստ յայնին։

## ԱԶ

Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր ըզմեզ. ընկալ եւ այժմ ըզնընջեցեալսն ի քեզ ուղիղ հաւատով. ըստ մեծի քում ողորմութեան։ Որ շնորհօք սբ Հոգւոյն լուսաւորեցեր. յիշատակի իւրեանց զհոգիս նոցա ընկալ մարդասէր. ըստ մեծի քում ողորմութեան։ Որք հաղորդեցան մարմնոյ եւ արեան քո Տէր. հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո Քրիստոս Աստուած. քանզի գինք սուրբ արեան քո են։ — Միայն օրհնեալդ ի կանայս՝ մայր եւ միշտ կոյս եւ իմանալի լոյս. ծընող արարչին մերոյ անդադար բարեբանեսցուք։

## ԱԿ

Արարիչ Աստուած և ըստեղծիչ ազգի մարդկան. * մի անտես ըզնընջեցեալսն մեր. այլ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։ Որդի միածին յարութիւն տիեզերաց. մի անտես առներ ըզնընջեց։ Հոգիդ ճըշմարիտ մխիթարիչ սըգաւորաց. մի անտես առներ ըզնընջ։ — Հոգւոյն ըզքեզ հովանացեալ միայն սըրբուհի. ծընար ըզԲանն Աստուած զանճառելոյ Հօր ծնունդ. եւ յայտնեցաւ միութիւն Երրորդութեանն։

## ԲԶ

Որ կոչեցեր առ քեզ Տէր. ըզտիեզերս ամենայն. ընկալ ըզմեր ըզնընջեցեալսն. ի գոգ նահապետին Աբրահամու. ողորմած Տէր փրկիչ և բարերար։ Որ թողութեանց ես տըւող Աստուած. թող ըզմեղս մեր ննջեցելոցըն. կարող յամենայնի և հզօր. ողորմած Տէր փրկիչ և բարերար։ Որ լուսատու ես տիեզերաց Քրիստոս Աստուած. լուսաւորեա եւ ըզմեր ըզ-

նընջեցեալըն լուսով երանաւէտ զուարթնոցն. ողոր-մած Տէր փրկիչ և բարերար։ — Յոյս մեր և ապաւ-էն մայր Տեառն եւ կոյս սուրբ. որ հուր ածութեանն ոչ բոցակիզեաց զքո սուրբ զորովայնդ. բարեխօսեա առ Տէր վասն մերոյ փրկութեան։

ԲԿ

Որ Որդիդ ես և Բանդ Աստուած. հաւասարակից ընդ Հօր յէութեան. առ քեզ կարդամք մարդասէր. հանգո զհոգիս ննջեցելոց մեր ընդ սուրբըս քո։ Որ իջեր յերկնից վասն մեր. զառաջինն առեր զյանցանսն Ադամայ. մերով բնութեամբ բարձեր ի վերայ խաչին անարատ ձեռօք. հանգո զհոգիս ննջեցելոց մեր ընդ նբըս քո։ Որ լուծեր զիշխանութիւն մահու. կամաւորական մահուամբ քո Քրիստոս. բանաւորաց զաղաչանս առաջի քո հեղեալ մաղթեմք. հանգո զհոգիս ննջեցելոց մեր ընդ նբըս քո։ — Տի-րուհի անարատ մայր Տն եւ կոյս Մարիամ. քրով-բէական աթոռ ըզքեզ տեսաք ի յերկրի. բարեխօ-սեա առ Տէր վասն մերոյ փրկութեան։

ԳՁ

Հայր բարեգութ որ գըթացար ի յազգս որդւոց մարդկան. առաքեցեր ըզմիածինդ ի փրկութիւն. * յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց. և հանգո ընդ սուրբըս քո։ Որդիդ միածին որ յարեարդ ի մեռե-լոց. ի միւսանգամ գալըստեանըն քո յարութի մեզ խոստացար. յիշեա։ Հոգիդ ճըշմարիտ մըխիթա-րիչ սըգաւորաց. աղաչանօք նը Ածածնին և ամենայն քոց սրբոց. յիշեա զհոգիս։ — Ի բարեխօսութիւն փութացիր մեզ սուրբ Ածածին. առ ի փրկել զժո-ղովուրդս ի մեղաց եւ յապականութենէ։

ԳԿ

Յանըսկըզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ Բանըդ մարմնացար ի կուսէն վասըն փրկութեան մերոյ. * աղաչեմք ըզքեզ զնընջեցեալըսն մեր ի քեզ ուղեղ հաւատով. յիշեա Տէր յորժամ գաս թագաւորութեամբըդ քո։ Անոխակալ քաղցրութեամբ Որդի Այ. հաճեցար բառնալ ըզմեղս աշխարհի քո խաչելութեամբըն. աղաչեմք ըզքեզ։ Կամաւորական մահուամբ քո լուծեր զերկունըս մահու. եւ արժանի արարեր թողութեան յանցանաց քաւիչ քո արեամբ. աղաչեմք ըզքեզ։ Որ փոխանակ մեղաւորաց ըզմեռանել յանձն առեր. իջանելով ի դըժոխըս փրկեցեր ի մեղսամէր բանտէն ըզգերեալըսն. աղաչեմք ըզքեզ։ Բարեբանեմք զանչափ քո զմարդասիրութիւնդ. որ երեքօրեայ յարուցեալ զկենդանութի պարգեւեցեր աշխարհի. աղաչեմք ըզքեզ։ — Մաքուր եւ անբիծ կոյս յետ ծընընդեան. որ մարմնով ծընար զարձակողն ի կապից մահու. բարեխօս լեր վասն անձանց մերոց փրկել ի սպառնալեաց գեհենոյն։

ԴՁ

Յորժամ հարկանի փող գալըստեան քո Տէր. յայնըժամ զարհուրեալ դողան արարածք ի յահէ քումմէ. * աղաչեմք ըզքեզ փրկիչ. հանգո եւ ըզմեր ըզնընջեցեալըսն ընդ սուրբըս քո. որ միայն ես բազումողորմ։ Յահաբեկ լուսոյ ծագման քո Տէր. ցընծան դասք առաքինեացն ի վերայ լուսեղէն ամպոյն. աղաչ։ Անոխակալ բազմագութ ողորմած Տէր. մի անտես առներ ըզմեղուցեալքըս յահագին աւուրն. որ միայն ես բազումողորմ։ — Որ իջեր ի յերկնից եւ մարմնացար ի սուրբ կուսէն. անճառելի

քոյին ծննդեամբդ. եւ զիս մի անտես առներ. այլ պահեա պատուականն և սուրբ խաչիւ քո։

ԴԿ

Ո՞ր Թագաւորդ ես յաւիտենից Քրիստոս Աստուած. ընկալ ըզծառայս քո ի բարի. եւ շնորհեա ի յաջակողման քում դասիլ։ Ո՞ր ունիս իշխանութիւն մահու և կենաց. հանգո զհոգիս քոց ծառայից. եւ շնորհեա ի յաջակողման քում դասիլ։ Յորժամ կարգի աթոռ տէրութեանդ քո և հաստատի ատեան դատաստանին. յայնժամ խնայեա ի ծառայս քո. եւ շնորհեա ի յաջակողման քում դասիլ։ — Ամենօրհնեալ Աստուածամայր Մարիամ. քերովբէական աթոռ արարչին մերոյ տնօրէնութեան. զոր երանեմք ամենայն ազինք հանապազ։

Մաղթանք։

Հոգւոցն հանգուցելոց, Քս Ած, արա հանգիստ և ողորմութիւն. և մեզ մեղաւորացս շնորհեա զթողութիւն յանցանաց։

Քարոզ։

Եւ եւս խաղաղութե զՏէր աղաչեսցուք։

Վս հոգւոցն հանգուցելոց աղաչեսցուք զփրկիչն մեր Քրիստոս, զի զնոսա ընդ արդարսն դասեսցէ, և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ Տր Աստուած մեր։

Աղօթք։

Քս Որդի Այ անոխակալ և բարեգութ, գթա քո արարչական սիրովդ ի հոգիս հանգուցեալ ծառայից քոց։ Յիշեա յաւուր մեծի գալստեան արքայութե քոյ. արա արժանի ողորմութե, քաւութե և թողութե մեղաց։ Դասաւորեալ պայծառացո ընդ սբս քո յաջակողման դասուն։ Զի դու ես Տէր և արարիչ ամենե-

ցուն, դատաւոր կենդանեաց և մեռելոց: Եւ քեզ վայ-
ելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և միշտ:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր որ:

Մաղթանք:

Զսաղմոսերգութիւնս և զաղաչանս ընկալցի մար-
դասէրն Ած. մեր մեղաց և յանցանացն թողութի շնոր-
հեսցէ. ի չարեաց փրկեսցէ. ի մեղաց պահեսցէ. և նմա
փառք յաւիտեանս. ամէն:

Եւ ասէն ողջանէ պատարագն:

---

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՍԵՂԱՆՈՅ

## ՎԱՍՆ ՄԱՐՄՆԱՒՈՐ ԿԵՐԱԿՐՈՑ ԵՒ ԸՄՊԵԼԵԱՑ

Պատրաստեն զսեղանն հացի, եւ զարդարեն կերակրովք, եւ
կանգնին իւրաքանչիւր ոք ի տեղւոջ իւրեանց: Եւ գայ իշխանաւ-
որն կամ քահանայն, եւ ասէ.

Սաղմոս ՃԽԴ:

48. Աչք ամենեցուն ի քեզ յուսան, և դու տաս
կերակուր նոցա ի ժամու:

Դպիրքն:

Փխ. Բարձր առնեմ զքեզ, Աստուած իմ և թա-
գաւոր իմ. և օրհնեմ զանուն քո յաւիտեան, և յաւ-
իտեանս յաւիտենից:

Զօրհանապազ օրհնեցից զքեզ, և գովեցից զանուն
քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից:

Մեծ է Տէր, և օրհնեալ է յոյժ. և մեծութեան նո-
րա ո՛չ գոյ չափ:

Ազգ և ազգ գովեսցեն զգործս քո, և զզօրութիւնս
քո պատմեսցեն:

Զմեծվայելչութիւն փառաց սրբութեան քոյ խօսես-
ցին, և զսքանչելիս քո պատմեսցեն:

*Զզօրութիւն ահի քո ասասցեն, և զմեծութիւնս քո պատմեսցեն:*

*Զյիշատակ բազում քաղցրութեան քո բղխեսցեն, և արդարութեամբ քով ցնծասցեն:*

*Գթած ողորմած է Տր̃, երկայնամիտ և բազումողորմ:*

*Քաղցր է Տէր առ ամենեսեան. և գթութիւն նորա ի վերայ ամենայն արարածոց իւրոց:*

*Խոստովան եղիցին առ քեզ Տէր ամենայն գործք քո, և սուրբք քո օրհնեսցեն զքեզ:*

*Զփառս արքայութեան քո ասասցեն, և զզօրութիւնս քո պատմեսցեն:*

*Ճանաչել որդւոց մարդկան զզօրութի̃ս քո, և զփառս մեծվայելչութեան արքայութեան քո:*

*Արքայութիւն քո արքայութիւն ամենայն յաւիտենից, և տէրութիւն քո յազգէ մինչեւ յազգ:*

*Հաւատարիմ է Տէր յամենայն բանս իւր, և արդար է յամենայն գործս իւր:*

*Հաստատէ Տէր զամենայն գայթագղեալս, և կանգնէ զամենայն գլորեալս:*

*Աչք ամենեցուն ի քեզ յուսան. և դու տաս կերակուր նոցա ի ժամու:*

*Բանաս զձեռն քո, և լցուցանես զամենեսեան քաղցրութեամբ կամօք քո:*

*Արդար է Տր̃ յամ̃ ճնպ̃րհս իւր, և սբ̃ է յամ̃ գործս իւր:*

*Մերձ է Տէր առ ամենեսեան, որք կարդան առ նա. առ ամենեսեան, որք կարդան առ նա ճշմարտութբ̃:*

*Զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր. աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա:*

*Պահէ Տէր զամենեսեան, որք սիրեն զնա. և զամենայն մեղաւորս սատակէ Տէր:*

*Զօրհնութի̃ս Տն̃ խօսեսցի բերան իմ. օրհնեսցէ ամ̃ մարմին զանուն սբ̃ նր̃ յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից:*

*Փառք Հօր և: Այժմ և միշտ:*

Մաղթանք:

Քհն. Ողորմած գթած է Տէր, կերակուր տայ եր-կիւղածաց իւրոց:

Քարոզ:

Սրկ. Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչ:

Աղաչեսցուք զամենակալն Ած, զի պարգեւեսցէ մեզ կերակուր ուրախութեան, եւ լցուսցէ զսիրտս մեր ի լիութենէ արարածոց իւրոց: Ամենակալ Տէր Ած մեր:

Աղօթք:

Քհն: Օրհնեա՛ Քս Ած մեր հոգեւոր օրհնութբ զկերակուրս եւ զըմպելիս ծառայից քոց, եւ շնորհեա՛ յառողջութիւն հոգւոյ եւ մարմնոյ: Որպէս զի կրօնաւորական պարկեշտութբ վայելելով ի մարմնաւոր պիտոյիցս՝ անանց բարեաց եւ երկնից արքայութեանդ հաղորդս լինիցուք ընդ ամ սբս քո: Եւ գոհութբ փառաւորեսցուք զքեզ ընդ Հօր եւ ամենասուրբ Հոգւոյդ. այժմ եւ:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր որ:

Եւ օրհնող սեղանոյն կալով կանգուն, եւ առեալ զհացն բե-կանէ ընդ պատուաւորացն որք առընթեր կան, կամ զհետ այ-նորիկ որ պատրաստող է ճաշոյն, եւ նոքա առ ամենեսեան: Եւ-ասէ. Ճաշակեցէք խաղաղութբ. եւ նստին ի ճաշն:

Իսկ եթէ վանականք իցեն, կամ անապատաւորք, նստցի մին յեղբարց ի բարձրագոյն տեղւոջ, եւ առեալ ընթեռնուցու զգիրս աստուածայինս. եւ ամենեքեան ունկն դիցեն ընթերցմանն անմռունչ ճաշակմամբ: Եւ եթէ ոք խնդրեսցէ զըմպելի ինչ պարականաց, լուծցեն որք կարողքն իցեն. եւ դարձեալ ճաշեսցեն լռելեայն, եւ ոչ աղաղակաւ:

---

Եւ յետ յառնելոյ ի սեղանոյ՝ դարձեալ կացցեն ի տեղիս իւ-րեանց: Եւ ասասցէ.

Քհն. Տէր Յիսուս, լցաք ի բարութեանց քոց:

Դպ. Տացուք գոհութիւն Տեառն Աստուծոյ մերոյ:

Սաղմոս ԼԲ։

Աչք Տեառն ի վերայ երկիւղածաց իւրոց. և որք յուսան յողորմութիւն նորա։

Փրկել ի մահուանէ զանձինս նոցա, և կերակրել զնոսա ի սովու։

Անձինք մեր համբերեսցեն Տեառն. զի օգնական և պաշտպան մեր է։

Ի նա ուրախ եղիցին սիրտք մեր. և յանուն սուրբ նորա յուսասցուք։

Եղիցի ողորմու՟թի քո Տ՟ր ի վ՟ր մեր ո՟պ յուսացաք ի քեզ։

Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Մաղթանք։

Քհ՟ն։ Կերակրիչ և ուրախարար Տէր, փառք քեզ. լցուցանող Քրիստոս, գոհանամք զքէն։

Քարոզ։

Սրկ։ Եւ եւս խաղաղութ՟ե զՏէր աղաչեսցուք։

Գոհացարո՛ւք ի վերայ լիութ՟ենց պարգեւաց Տեառն Աստուծոյ մերոյ. որ կերակրէ զմեզ օր ըստ օրէ առատապէս քաղցրութ՟բ կամօք իւրովք։ Զի հոգեւոր բարութ՟ենն և երկնից արքայութ՟ենն հաղորդս արասցէ զծառայս իւր ըստ ակնկալութ՟ե յուսոյն մերոյ։ Ամենակալ Տէր Ա՟ծ մեր, կեցո՛ և ողորմեա՛։

Աղօթք։

Քհ՟ն։ Օրհնեալ ես Տէր Ա՟ծ մեր, որ կերակրես զմեզ ի մանկութ՟է. և տաս կերակուր ա՟մ մսեղեաց. լցո՛ ուրախութ՟բ և բերկրութ՟բ զսիրտս մեր։ Որպէս զի զա՟մ բաւականութ՟ի ունիցիմք՝ առաւելեալք ի գործս բարութ՟ե ի Ք՟ն Յ՟ն ի Տ՟ր մեր. որում վայելէ փառք, իշխ։

Խաղաղութ՟ի ամենեցուն։

Փառք քեզ Տէր, փառք քեզ Թագաւոր փառաց. որ ետուր մեզ կերակուր ուրախութեան, և լցուցեր զսիրտս մեր ի լիութ՟է ամենաբաւական ողորմութ՟ե քոյ. լցո՛ և զմեզ Հոգւովդ քով սրբով. որպէս զի գտցուք

առաջի քո հաճոյք և մի՛ ամաչեցեալք։ Զի դու գաս և հատուցանես իւրաքանչիւր ըստ գործս իւր. և քեզ վայելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր։

Մաղթանք։

Ո, կերողդ Ած օրհնեսցէ. սպասաւորացդ և երախտաւորացդ վարձս բարեաց պարգեւեսցէ. և օրհնեսցէ զամենեսեան։ Քս Ած մեր, որ զմեզ կերակրեաց և լիացոյց՝ նմա փառք յաւիտեանս. ամէն։



# ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

# ԵՐԵԿՈՅԻ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ

Ի ԴԷՄՍ ՈՐԴԻՈՅՆ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐ ԷՋ Ի ԽԱՉԷՆ ԵՒ ՊԱՏԵԱԼ ՊԱՍՏԱՌԱԿԱԼԱՒ ԵԴԱՒ Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ

Ես առ Ած կարդացի. և Տէր լուաւ ինձ յերեկոյս, ի վաղորդայն և ի հասարակ աւուր։

Սպասէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի կենարարին. որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Այժմ և միշտ։ Եւ ևս խաղաղութն զՏէր աղաչ։

Օրհնութի և փառք Հօր և Որդւոյ. և Հոգւոյն սբյ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Սաղմոս ՁԵ։

Խոնարհեցո՛ Տէր զունկն քո և լո՛ւր ինձ. զի աղքատ և տնանկ եմ ես։

Պահեա՛ զանձն իմ սուրբ, Տէր. փրկեա՛ զծառայս քո Ած իմ, որ ի քեզ յուսացայ։

Ողորմեա՛ ինձ Տէր, զի առ քեզ աղաղակեցի զօրհա-

նապաղ․ ուրախ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Զի դու Տէր քաղցր և ուղիղ ես․ բազումողորմ առ ամենեսեան որք կարդան առ քեզ։

Ունկն դիր Տէր, աղօթից իմոց․ և նայեաց ի ձայն խնդրուածաց իմոց։

Յաւուր նեղութե իմոյ կարդացի առ քեզ, և լուար ինձ։

Ոչ ոք է նման քեզ յաստուածս, Տէր․ և ոչ ոք է որպէս զգործս քո։

Զամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն և երկիր պագցեն առաջի քո Տէր․ և փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։

Մեծ ես դու Տէր, և առնես սքանչելիս․ և դու միայն ես Աստուած։

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, և գնացից ի ճշմարտութեան քում․ և ուրախ եղիցի սիրտ իմ երկնչել յանուանէ քումմէ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ․ բոլորով սրտիւ իմով փառաւոր արարից զանուն քո յաւիտեան։

Մեծ եղեւ ի վերայ իմ ողորմութի քո․ և փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց։

Աստուած, անօրէնք յարեան ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ․ և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Այլ դու Տէր Աստուած իմ, գթած ես եւ ողորմած․ երկայնամիտ բազումողորմ և ճշմարիտ․ նայեաց առ իս, և ողորմեա ինձ։

Տուր զօրութիւն ծառայի քո․ կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն․ զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս։

Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ։

Մաղթանք։

Փառք քեզ Աստուած, փառք քեզ. յաղագս ամենայնի Տէր, փառք քեզ։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկալ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւ.։

Խաղաղութիւն ամենեցուն։

Սաղմոս ՃԼԹ։

Ապրեցո՛ զիս Տէր ի մարդոյ չարէ. յառնէ անիրաւէ փրկեա՛ զիս։

Խորհեցան զանօրէնութիւն ի սիրտս իւրեանց. զօր ամենայն պատրաստեցան ի պատերազմ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի. և թոյնք իժից ի ներքոյ շրթանց նոցա։

Պահեա՛ զիս Տէր ի ձեռաց մեղաւորի. և ի մարդոյ չարէ փրկեա՛ զիս։

Խորհեցան խափանել զգնացս իմ. թաքուցին ամբարտաւանք որոգայթ ինձ։

Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց. շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ գայթագղութիւն։

Ասացի Տէր Աստուած իմ ես դու. ո՛ւնկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց։

Տէր Տէր զօրութիւն փրկութեան իմոյ. հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի։

Մի՛ մատներ զիս Տէր ի ցանկութիւն մեղաւորաց. ոյք խորհեցան վասն իմ ընդ վայր հարկանել զիս։

Զի մի՛ երբեք բարձրասցին, և խորհուրդք նոցա մի՛ կատարեսցին. վախճան կատարածի նոցա վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա։

Արկցես ի վերայ նոցա կայծակունս հրոյ, և կործանեսցես զնն. ի տառապանաց մի՛ կարասցեն կեալ։

Մարդոյ լեզուանւոյ մի՛ յաջողեսցի ի վ̃ր երկրի. զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ի կորուստ։

Ծանեայ, զի առնես Տէր դատաստանս աղքատի, և իրաւունս տնանկի։

Արդարք գոհասցին զանուանէ քումմէ. և բնակեսցեն ուղիղք առաջի երեսաց քոց։

Սաղմոս ՃԽ։

Տէր կարդացի առ քեզ, և լո՛ւր ինձ. Նայեա՛ց ի ձայն աղօթից իմոց ի կարդալ իմում առ քեզ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո Տէր. համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի։

Դի՛ր Տր̅ պահապան բերանոյ իմոյ, և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի՛ խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարուե̅։

Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութիւն. և ոչ եղէց կցորդ ընտրելեաց նոցա։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութք̅, և յանդիման արասցէ. իւղ մեղաւորի մի՛ օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս նորա։

Արգելան մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն̃ բանից իմոց և քաղցրասցին։

Որպէս թանձրութի̅ հողոյ զի սփռեալ է ի վր̅ երկրի՝ ցրուեսցին ոսկերք նոցա մերձ ի դժոխս։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ. մի՛ հաներ զհոգի յինէն։

Պահեա՛ զիս յորոգայթէ որ թագուցաւ ինձ. ի գայթագղութե̅ գործողին զանօրէնութի̅։

Անկցին ի ցանցս նորա մեղաւորք. միայն եմ ես՝ մինչեւ անցից։

Սաղմոս ՃԽԱ։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի. ձայնիւ իմով զՏէր աղաչեցի։

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ. և զնեղութի̅ս իմ առաջի նորա պատմեցից։

Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ՝ դու Տր̅ ծանեար զշաւ-

իղս իմ. ի ճանապարհ յոր և գնայի՝ թագուցան ինձ որոգայթ։

Հայէի յաջմէ՝ տեսանէի, և ոչ ոք ճանաչէր զիս. կորեաւ յինէն փախուստ իմ, և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ։

Աղաղակեցի առ քեզ Տէր, և ասացի. դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց։

Նայեա՛ Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ եղէ յոյժ. ապրեցո՛ զիս ի հալածչաց իմոց, զի հզօր եղեն քան զիս։

Տէր հա՛ն ի բանտէ զանձն իմ. գոհանամ զանուանէ քումմէ։

Եւ քեզ սպասեն արդարք մինչեւ հատուսցես ինձ։

Փառք Հօր և Որդ։ Այժմ և միշտ։

Երգ Ճրագալուցի։

Ալէլուիա՛. ալէլո՛ւիա՛։

Լո՛յս զուա՛րթ ս՛բ փա՛ռա՛ց. ա՛նը՛մա՛հի՛ Հօ՛րն ե՛րկնա՛ւո՛րի սր՛բո՛յ կե՛նա՛րա՛րի՛ Յի՛սո՛ւս Քրի՛ստո՛ս։

Ե՛կեա՛լքս ի՛ մը՛տանել ա՛րե՛գակա՛ն. տեսաք ը՛զլո՛յս ե՛րե՛կո՛յիս։ Օրհնե՛մք ը՛զՀայր և զՈ՛րդի և ը՛զսբ Հո՛գի՛ն Ա՛ստուածո՛յ. և ամենեքեան ա՛սե՛մք ա՛մէ՛ն։ Ա՛րժանաւորեա ը՛զմե՛զ յամենայն ժա՛մ օրհնե՛լ ձա՛յնի՛ւ երգո՛վ զանուն փառա՛ց ամենա՛յնիւ Երրո՛րդո՛ւթեա՛նդ։

Ո՛ր տա՛ս զկենդանութի՛ւն. վն որո՛յ և աշխարհս ը՛զքեզ փա՛ռաւո՛րէ՛։ Աղօ Քրղ. Հասեալքս ի ժամ։

Իսկ յայլ աւուրս՝ Մաղթանք։

Օրհնեալ Տէր, որ բնակեալդ ես ի բարձունս, և օրհնեալ են փառք մեծութեան քոյ. որ հաստատեցեր զլուսաւորս ի բարձունս. յերկնից լոյս ծագեցեր ընդ ամ տիեզերս։ Արարեր զարեգակն լուսատու տուընջեան. զլուսինն և զաստեղս՝ լուսատու գիշերոյ, և զլոյս ճրագի։ Դու ես լոյս գովելի. սուրբ և առաջին լոյսն. ի քէն փախնու խաւարն. և զլոյս քո կենդանի Տէր ծա-

գեամ ի սիրտս մեր։ Եւ մեք միաբան ասասցուք. օրհ-նեալ է անուն սուրբ փառաց քոց. և քեզ երգեմք զօրհնութի՛ւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և։

Քարոզ։

Հասեալքս ի ժամ երեկոյիս ամենեքեան համբառնալով զձեռս մեր փառաւորեմք զքեզ Տէր Աստուած մեր, սմ շնորհեցեր մեզ զտիւս խաղաղութեամբ անցուցանել և հասանել ի ժամ երեկոյիս։ Արժանաւորեա՛ զմեզ Տէր սուրբ սրտիւ, հրեշտակային երգով գոհաբանութիւն մատուցանել Տեառն Աստուծոյ ամենակալիդ. կեցո և ողորմեա՛։ Կեցո Տէր։

Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում։

Ասասցուք ամենեքեան միաբան։ Գ. Տէր ողորմեա՛։

Մաղթանք։

Հասեալքս ի ժամ երեկոյիս ամենեքեան անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտ։

Մեսեդի գոհութեան։

Օրհնեալ որ գաս յանուն Տեառն. օրհնեալ որ գալոց ես։

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչեւ յանկիւնս սեղանոյ։

Ապա ասեն զՈւղղեսցին։

Ուղիղ եղիցին աղօթք իմ.
Որպէս խունկ առաջի քո Տէր։
Համբարձումն ձեռաց իմոց.
Պատարագ երեկոյի։

Քարոզ Լուսաւորչի եւ ամենայն սրբոց Վարդանեանց։

Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ. երես 54։

Զերեկս մերձեալ և զառաջակայ գիշերս խաղաղութեամբ անցուցանել հաւատով. Եւ այլն ըստ կարգի։

Քարոզ պահոց։

Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Աղաչեսցուք զամենակալն Ած, զՀայր Տեառն մերոյ Յսի Քսի, զԹագաւորն խաղաղութե՝ յաղագս խաղաղութե, և վասն միայնոյ ոք կաթուղիկէ և առաքելական եկեղեցւոյ․ զի զբազում ամս խաղաղութք տացէ մեզ Տէր Ած մեր․ և զԹագաւորս խաղաղարարս առաքեսցէ առ մեզ վն մեծի, ոք և աՀաւոր անուան իւրոյ․ զպետս գաւառաց, զզօրավարս, զզօրագլուխս, զժողովուրդս, զմուտս և զելս մեր խաղաղութք պաՀեսցէ․ և զամ պատերազմունս Թշնամւոյն խորտակեսցէ ի մէնջ։ Տրն ամենակալն կեցուսցէ և ողորմեսցի։ Կեցո Տէր։

Զերեկս մերձեալ և ղառաջակայ գիշերս խաղաղութք անցուցանել Հաւատով ի Տռնէ խնդր։ ՇնորՀեա Տր։

ԶՀրեշտակ։ Զքաւութի։ Զսքյ խաչ։ ՇնորՀեա Տր։

Եւ ևս և վն միաբանութե ճշմար։ Տէր ողորմեա։

Զանձինս մեր և զմիմեանս Տռն Այ։ Քեզ Տռնդ յ։

Ողորմեաց մեզ Տէր Ած մեր։ Գ․ Տէր ողորմեա։

Աղօթք։

Լուր ձայնից մերոց Տէր Ած մեր․ ընկալ զաղաչանս մեր, զՀամբարձումն ձեռաց մերոց և զբանս աղօթից, սրբելով զերեկոյի պատարագս մեր ի Հոտ անուշից՝ ի Հաճոյս քեզ պատրաստել։ Յաւել ի մեզ Տէր ամենակալ զՀաւատ, զյոյս, զսէր և զամ գործս առաքինութե․ ոպ զի ըստ կամաց քոց բարեսիրաց միշտ կրօնաւորեալք բարեպաշտութք ի տուէ և ի գիշերի․ և արժանաւորք եղիցուք յաղագս անձանց մերոց փրկութե և վն Հոգեւոր կենացդ աղաչել զքեզ Տէր․ և գտանել ի քէն զշնորՀս և զողորմութի․ և գոՀանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և։

Խաղաղութիւն ամենեցուն։

Քեզ երկիր պագանելով Տէր Ած մեր, գոՀանամք զքէն յաղագս խաղաղութեամբ անցուցանելոյ ի մէնջ

զերկարութիւն տուընջեանս։ Տո՛ւր մեզ Տէր, աղաչեմք զքեզ, զերեկս և զառաջակայ գիշերս առանց մեղաց և առանց գայթագղութեան անցուցանել. Հաստատուն կալ և մնալ ի հաւատ, ի յոյս, ի սէր և ի պատուիրանապահութեան քո։ Խնդրելով զխաղաղութիւն ամ աշխարհի, եկեղեցւոյ քում սբյ զհաստատութիւն, և անձանց մերոց զփրկութիւն։ Ո՛չ զի ընդունելով ի քէն զհայցուածս մեր, և զմեծվայելչական փառաբանութիւն միշտ ի բարձունս առաքեսցուք ամենազօր Տէրութեանդ, Քս Ած մեր. այժմ և։

Եւ ապա ասէ Սուրբ Աստուած։

Սո՛ւրբ Աստուած. Սո՛ւրբ և հզօր. Սո՛ւրբ և անմահ ողորմեա՛ց մե՛զ։ Երեքս կրկնեա։

Երգ։

Փառաւորեա՛լ և օրհնեալ միշտ սբ կոյս Աստուածածի՛ն Մարիամ մա՛յր Քսի՛. մատո՛ զաղաչա՛նըս մեր որդւոյ քո՛յ և Աստուծո՛յ մերո՛յ։

Մաղթանք։

Փրկել զմեզ ի փորձութենէ և յամ վտանգից մերոց։

Քարոզ։

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք։

Վ՟ն լսելի լինելոյ Տեառն Այ ձայնի աղաչանաց մերոց բարեխօսութբ սբ Աստածնին. և իջանելոյ ի վր մեր ողորմութեան և գթութեան Տրն Այ։ Ամենակալ Տր։

Քհն. Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Սաղմոս ՃԻ։

Համբարձի զաչս իմ ի լերինս. ուստի՞ եկեսցէ ինձ օգնութիւն։

Օգնութիւն ինձ ի Տեառնէ եկեսցէ. որ արար զերկինս և զերկիր։

Մի՛ տար ի սասանութիւն զոտն քո. և մի՛ ննջեսցէ պահապան քո։

Ո՛չ ոչ ննջէ, և ոչ ի քուն երթայ պահապանն Իէլի:
Տէր պահեսցէ զքեզ, և Տէր ընկալցի աջոյ ձեռամբն իւրով:
Արեգակն ի տուէ քեզ մի՛ մեղիցէ. և մի՛ լուսինն ի գիշերի:
Տէր պահեսցէ զքեզ յամենայն չարէ. պահեսցէ Տէր զանձն քո:
Տէր պահեսցէ զմուտ և զել քո. յայսմ հետէ մինչեւ յաւիտեան:

Փառք Հօր և: Այժմ և միշտ:

Եւ տաղս տօնի Համբարձման ըստ պատշաճին:

Զկնի Համբարձոյն՝ Քարոզ:

Վ՜ն խաղաղութե՜ն ա՜մ աշխարհի, և հաստատութե՜ն սրբոյ եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք: Ասասցուք ամենեքեան միաբանութե՜ք: Տէր ողորմեա՛. Երիցս:

Աղօթք:

Հայր գթած, բարեխնամող, արարիչ ա՜մ արարածոց. ընկա՛լ զպաղատանս ծառայից քոց ի ժամ երեկոյիս, որ առատ ես առ ամենեսեան պարգեւօք բարերարութե՜ քոյ. ողորմեա՛ Տէր ա՜մ աշխարհի, և եկեղեցւոյ քում սրբոյ, հիւանդաց, վշտացելոց, ճանապարհորդաց, նաւորդաց, խոստովանողաց, ապաշխարողաց և հոգւոցն հանգուցելոց: Զի դու Տէր ամենակալ, գիտես զպէտս մեր և զկարիս առաւել քան զոր խնդրեմք և իմանամք. և քեզ ընդ Որդւոյ և ամենասուրբ Հոգւոյդ վայելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և միշտ:

Ապա Ալէլուեան սաղմոս եւ Աւետարան ըստ պատշաճին:

Քարոզ:

Խնդրեսցուք հաւատով միաբանութե՜ք ի Տեառնէ, զի զողորմութե՜ն զշնորհս իւր արասցէ ի վերայ մեր: Տէրն ամենակալն կեցուսցէ և ողորմեսցի: Կեցո՛ Տէ՛ր:

Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛. Տէր ողորմեա՛:

Աղօթք՝

Թագաւոր խաղաղութե՟, օգնական և փրկիչ անձանց մերոց, ք՟ն Ա՟ծ մեր, պարսպեալ պահեա՛ զժողովուրդս քո ընդ հովանեաւ ն՟ք և պատուական խաչիւդ քո ի խաղաղու՟ե: փրկեա՛ յերեւելի և յաներեւոյթ թշնամւոյն. արժանաւորեա՛ գոհութ՟բ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտ:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր:



ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂՕԹԻՑ

# ՀԱՆԳՍՏԵԱՆ ԺԱՄՈՒՆ

ՈՐ ԿԱՏԱՐԻ

Ի ԴԷՄՍ ՀՕՐ ԱՍՏՈՒԾՈՅ ԶԻ ՊԱՀՊԱՆՈՂԱԿԱՆ ԱՋՈՎ ՄԻԱԾՆԻՆ ՊԱՀԵՍՑԷ ԶՄԵԶ Ի ԽԱՒԱՐԱՑԻՆ ԳԻՇԵՐԻՍ

Առաքեա Տէր զլոյս քո և զճշմարտութի՟ քո, զի առաջնորդեսցեն ինձ, և հանցեն զիս ի լեառն սուրբ և ի յարկս քո:

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ. առ Աստուած որ ուրախ առնէ զմանկութիւն իմ: Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ Աստուած Աստուած իմ: Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Աստուած. խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն ս՟բյ:

Այժմ և միշտ: Եւ ես խաղաղութե՟ զՏէր աղաչ:

Օրհնութի՟ և փառք Հօր և Որդ:

Սաղմոս ՃԺԸ։

Եկեսցէ ի վ՟ր իմ ողորմութ՟ի քո Տէր, և փրկութ՟ի քո ըստ բանի քում։

Տաց պատասխանի ոյք նախատեն զիս բանիւք, զի ես ի բանս քո յուսացայ։

Մի՛ ի բացեայ առներ ի բերանոյ իմմէ զբան ճշմարտութեան մինչեւ յոյժ, զի յիրաւունս քո յուսացայ։

Պահեցի զօրէնս քո յամ ժամ. յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից։

Գնայի ես յանդորրու, զի զպատուիրանս քո խնդրեցի։

Խօսէի զվկայութիւնս քո առաջի թագաւորաց, և ոչ ամաչէի։

Խորհէի ի պատուիրանս քո, զոր սիրեցի։

Համբարձի զձեռս իմ ի պատուիրանս քո, զոր սիրեցի. և խորհէի յարդարութեան քում։

Յիշեա՛ զբան ծառայի քո, յոր և յուսացուցեր զիս։

Սա մխիթարեսցէ զիս ի խոնարհութեան իմում, զի բան քո կեցոյց զիս։

Ամբարտաւանք անիրաւեցան յիս յոյժ. այլ յօրինաց քոց ես ոչ խոտորեցայ։

Յիշեցի զիրաւունս քո յաւիտենից Տ՟ր, և մխիթարեցայ։

Տրտմութիւն կալաւ զիս ի մեղաւորաց, և ոյք թողին զօրէնս քո։

Գովելի են ինձ իրաւունք քո ի տեղւոջ պանդխտութեան իմոյ։

Յիշեցի ի գիշերի զանուն քո Տէր. և պահեցի զօրէնս քո։

Սա եղև ինձ ճանապարհ ի կեանս. զի զարդարութիւնս քո խնդրեցի։ —

Զանօրէնս ատեցի և զօրէնս քո սիրեցի։

Օգնական և փրկիչ իմ ես դու, և ես ի բանս քո յուսացայ։

Ի բաց եղերուք յինէն չարք, և քննեցից զպատուիրանս Աստուծոյ իմոյ։

Օգնեա՛ ինձ ըստ բանի քում, և կեցո՛ զիս. և մի՛ յամօթ առներ զիս ի յուսոյ իմմէ։

Օգնեա՛ ինձ և ապրեցո՛ զիս, և խորհեցայց զիրաւունս քո յամենայն ժամ։

Անարգեցեր զամենեսեան, որք ապստամբք եղեն յարդարութեանց քոց. զի անիրաւութեամբ էին խորհուրդք նոցա։

Յանցաւորս համարեցայ զա̃մ մեղաւորս երկրի. վ̃ն այսորիկ սիրեցի զպատուիրանս քո։

Բեւեռեա՛ ընդ երկիւղ քո զմարմին իմ, զի ի դատաստանաց քոց երկեայց յոյժ։ —

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր. ըստ բանի քում իմաստո՛ւն արա զիս։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, և բանիւ քով փրկեա՛ զիս։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութի՛ս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո. զի ա̃մ պատուիրանք քո արդարութեամբ են։

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս, զի զպատուիրանս քո ընտրեցի։

Ցանկացայ փրկութե̃ քում Տէր, և օրէնք քո խօսք իմ էին։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա՛ զծառայս քո զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ։

Լե։ Մի՛ եկեսցեն ի վերայ մեր ոտք ամբարտաւանից, և ձեռք մեղաւորաց մի՛ դողացուսցեն զմեզ։

Անդ անկցին ամենեքեան, ոյք գործեն զանօրէնութի̃. մերժեսցին, և այլ մի՛ կարասցեն հաստատել։

Ես ի Տէր յուսացայ. ցնծացայց և ուրախ եղէց յԱ՟ծ փրկիչ իմ։

Տէր Տէր ետ ինձ զօրութի՟, և կացոյց զոտս իմ ի համատառութե՟. ի վ՟ր պարանոցի թշնամւոյն կացոյց զիս, և հանգոյց զիս երագ երագ։

Սաղմոս Ղ։

Որ բնակեալն է յօգնութի՟ բարձրելոյն, ընդ հովանեաւ Աստուծոյ յերկինս հանգիցէ։

Ասասցէ Տեառն. ընդունելի իմ ես դու, ապաւէն իմ Աստուած, և ես յուսամ ի նա։

Նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին, և ի բանիցն խռովութենէ։

Ի թիկնամէջս իւր ընկալցի զքեզ. ի հովանի թեւոց նորա յուսասցիս։

Որպէս զէն շուրջ եղիցի զքեւ ճշմարտութի՟ նորա։

Ոչ երկիցես դու յերկիւղէ գիշերի. և ոչ ի նետէ՝ որ թռչի ի տուէ։

Յիրէ՝ որ շրջի ի խաւարի. ի գայթագղութե՟ դիւին ի հասարակ աւուր։

Անկցին ի կողմանէ քումմէ հազարք, և բիւրք ընդ աջմէ քումմէ. և առ քեզ ինչ ոչ մերձեսցին։

Բայց միայն աչօք քովք հայեսցիս դու. և զհատուցում՟ն մեղաւորաց տեսցես. զի դու Տէր յոյս իմ ես։

Զբարձրեալն արարեր քեզ ապաւէն. ոչ հասցեն առ քեզ չարք, և տանջանք մի՛ մերձեսցին ի յարկս քո։

Հրեշտակաց իւրոց պատուիրեալ է վ՟ն քո, ի պահել զքեզ յա՟մ ճանապարհս քո։

Ի բազուկս իւրեանց ընկալցին զքեզ, զի մի՛ երբեք հարցես զքարի զոտն քո։

Ի վ՟ր իժից և քարբից գնասցես դու. և առ ոտն կոխեսցես զառիւծն և զվիշապն։

Քանզի յիս յուսացաւ, և փրկեցից զնա. հովանի եղէց նմա, զի ծանեաւ զանուն իմ։

կարդասցէ առ իս, և ես լուայց նմա. և առ նմա եղէց ի նեղութեան։

Փրկեցից և փառաւոր արարից զնա. երկայն աւուրբք լցուցից, և ցուցից նմա զփրկութիւն իմ։

Սաղմոս ՃԻԲ։

Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ, որ բնակեալդ ես յերկինս։

Որպէս աչք ծառայի ի ձեռն տեառն իւրոյ. և որպէս աչք աղախնոյ ի ձեռն տիկնոջ իւրոյ։

Այնպէս են աչք մեր առ քեզ Տէր Աստուած մեր. մինչեւ ողորմեսցիս ի վերայ մեր։

Ողորմեա՛ց մեզ Տէր, ողորմեա՛ց մեզ. զի բազում լցաք արհամարհանօք։

Եւս առաւել լցան անձինք մեր նախատանօք, որք նախատէին զմեզ. և արհամարհանօք ամբարտաւանից։

Սաղմոս ԾԳ։

Աստուած յանուն քում կեցո՛ զիս. և ի զօրութեան քում իրաւ արա ինձ։

Աստուած լո՛ւր աղօթից իմոց. ո՛ւնկն դիր բանից բերանոյ իմոյ։

Օտարք յարեան ի վերայ իմ, և հզօրք խնդրեցին զանձն իմ. և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Ահա Ած օգնական իմ. և Տր ընդունող հոգւոյ իմոյ։

Ի դարձուցանել զչարն ի թշնամիսն իմ, ճշմարտութբ քով սատակեա՛ զնոսա։

Ես կամօք իմովք պատարագս մատուցից քեզ. և խոստովան եղէց անուան քում Տէր, զի բարի է։

Յամենայն նեղութենէ իմմէ փրկեցեր զիս, և ի թշնամիս իմ ետես ակն իմ։

Օրհնութիւն երից մանկանցն։ Դան. Գ։

Օրհնեալ ես դու Տէր Ած հարցն մերոց. գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան։

Եւ օրհնեալ է անուն նը փառաց քոց. * գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան։

Օրհնեալ ես ի տաճարի փառաց սրբուն քոյ. գով։

Օրհնեալ ես ի վը աթոռոյ արքայութն քոյ. գով։

Օրհնեալ ես որ նստիս ի քրովբէս. և հայիս յանդունդս. գովեալ։

Օրհնեալ ես ի վը հաստատութն երկնից. գով։

Սաղմոս ճծ։

Օրհնեցէք զԱծ ի սրբութն նը. օրհնեցէք զնա ի հաստատութեան զօրութեան նորա։

Օրհնեցէք զնա ի զօրութն նորա. օրհնեցէք զնա ի բազում մեծութեան նորա։

Օրհնեցէք զնա ի ձայն օրհնութեան. օրհնեցէք զնա սաղմոսիւք և օրհնութեամբ։

Օրհնեցէք զնա ցնծութեամբ. գովեցէք զնա ուրախութեամբ։

Օրհնեցէք զնա ի բանս քաղցր. գովեցէք զնա ի բարբառ լսելի։

Օրհնեցէք զնա ի ձայն գոհութն. ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր։

Աղօթք Ժերոնոյն Սիմէոնի։ Ղուկ. Բ։

Արդ՝ արձակես զծառայս քո Տէր ըստ բանի քում ի խաղաղութիւն, զի տեսին աչք իմ զփրկութիւն քո, զոր պատրաստեցեր առաջի ամ ժողովրդոց։

Լոյս ի յայտնութիւն հեթանոսաց, և փառք ժողովրդեան քում Իսրայէլի։

ՃԼԷ։ Զգեցեր զձեռն քո, և փրկեաց զիս աջ քո. և Տէր հատուցէ ընդ իմ։

Տէր ողորմութի քո յաւիտեան. զգործս ձեռաց քոց մի անտես առներ։

Տէր հան ի բանտէ զանձն իմ. գոհանամ զանուանէ քումմէ։

Եւ քեզ սպասեն արդարք, մինչեւ հատուցես ինձ։

Երգ Մարիամու Աստուածածնին։ Ղօղ. Ա։

Մեծացուսցէ անձն իմ զՏէր. և ցնծասցէ հոգի իմ Աստուծով փրկչաւ իմով։

Այց արար ի վերայ խոնարհութեան աղախնոյ իւրոյ. այսուհետև երանեսցեն ինձ ամենայն ազգք։

Արար ընդ իս մեծամեծս հզօրն. և սուրբ է անուն նորա։

Ողորմութի̃ւ արար յազգաց յազգս երկիւղածաց իւրոց. և արար զզօրութիւն բազկաւ իւրով։

Ցրուեաց զամբարտաւանս ի մտաց սրտից. և քակեաց զհզօրս յաթոռոց։

Զխոնարհս բարձրացոյց. զկարօտս ելից բարութե̃ք. և զմեծատունս արձակեաց ունայնս։

Պաշտպանեաց Իսրայէլի ծառայի իւրոյ յիշելով զողորմութիւն իւր։

Որպէս խօսեցաւ առ հարս մեր. ընդ Աբրահամու, և զաւակի նորա յաւիտեան։

Զե. Տէ́ր զօրութիւն ծառայի քոյ. կեցո́ զորդի աղախնոյ քոյ, և արա́ առ իս նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Մաղթանք։

Անձն իմ ի ձեռս քո է յա́մ ժամ, և ի սուրբ խաչ քո յուսացեալ եմ Թագաւոր երկնաւոր. զբազմութի̃ւ ս̃րբ̃ց քոց բարեխօս ունիմք առ քեզ։ Որ երկայնամիտդ ես առ ամենեսեան, մի́ անտես առներ զապաւինեալս ի քեզ։ Այլ պահեա́ պատուական և ս̃բ խաչիւ քո ի խաղաղութեան։

Քարոզ։

Աղաչեսցուք զամենակալն Ա̃ծ և խնդրեսցուք ի նմանէ, զի առաքեսցէ ղհրեշտակ խաղաղութե̃ որ եկեալ պահեսցէ զմեզ յերկիւղական գիշերիս ի դիւական

խռովութե̃, ամբողջ պահելով զհոգի և զմարմին մեր. մինչեւ ի կատարումն ժամանակի ամաց մերոց: Ամենակալ Տէր Ա̃ծ մեր, կեցո՛ և ողորմեա: Կեցո Տէր:

Զհանգիստ գիշերիս խաղաղութեամբ անցուցանել հաւատով ի Տեառնէ խնդր: Շնորհեա Տ̃ր:

Զհրեշտակ: Զքաւութի̃: Զսբ̃յ խաչ:՝ Շնորհեա Տ̃ր:

Եւ եւս և վն̃ միաբանութե̃ ճշմարիտ: Տէր ողորմեա:

Զանձինս մեր և զմիմեանս Տեառն: Քեզ Տ̃նդ. յ:

Ողորմեա՛ց մեզ Տէր Ա̃ծ մեր ըստ մեծի ողորմութե̃:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Աղօթ+:

Տէր Ա̃ծ մեր, դու պահեա՛ զմեզ խաղաղութե̃ ի գիշերիս յայսմիկ և յա̃մ ժամանակի: Ընդ ն̃բ երկիւղ քո բեւեռեալ պահեա՛ զմիտս և զխորհուրդս մեր: Որպէս զի յա̃մ ժամ քեւ պահպանեալ լիցուք յորոգայթից թշնամւոյն: Եւ քեզ հանցուք զօրհնութի̃ և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն:

Հրեշտակի խաղաղութե̃ յանձն արա զանձինս մեր Տէր զօրութե̃ց, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ի տուէ և ի գիշերի. յարթնութե̃ և ի հանգստեան մերում: Զի դու ես արարիչ լուսոյ և հաստիչ գիշերի: Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Ա̃ծ մեր. զհանգիստ գիշերիս շնորհեա՛ խաղաղութե̃ անցուցանել: Եւ հասանել ի պաշտօն առաւօտու յերկրպագութի̃ և ի փառաբանութի̃ ամենասբ̃ Երրորդութե̃դ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտ:

Սաղմոս Դ:

48. Խաղաղութե̃ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով .քով բնակեցուցեր զմեզ:

Փխ․ Ի կարդալ իմում լուաւ ինձ Ած ըստ արդարութեան. ի նեղութե ինձ անդորր արարեր. ողորմեա՛ ինձ, և լո՛ւր աղօթից իմոց:

Որդիք մարդկան, մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութի և խնդրէք զստութի:

Ծաներո՛ւք, զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա:

Բարկանայք, և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք:

Մատուցէ՛ք պատարագս արդարութեան, և յուսացարո՛ւք ի Տէր:

Բազումք ասէին, թէ ո՞ ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց:

Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա:

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձինն յուսով քով բնակեցուցեր զմեզ:

Ալէլուիա որթիւ:

Աւետարան ըստ Յովհաննու: ԺԲ. 24:

Տէրն մեր Յս Քս ասէ.

Ամէն ամէն ասեմ ձեզ. եթէ ոչ հատն ցորենոյ անկեալ յերկիր մեռանիցի, ինքն միայն կայ. ապա եթէ մեռանիցի, բազում արդիւնս առնէ: Որ սիրէ զանձն իւր արձակէ զնա. և որ ատեայ զանձն իւր յաշխարհիս յայսմիկ, ի կեանսն յաւիտենականս պահեսցէ զնա թէ: Եթէ ոք զիս պաշտեսցէ, զկնի իմ եկեսցէ. և ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի: Եթէ ոք զիս պաշտիցէ, պատուեսցէ զնա Հայրն իմ: 26:

Փառք քեզ Տէր Աստուած մեր:

Քարոզ։

Որ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց, և կեցուսցէ շնորհիւ ողորմութե իւրոյ։ Ամենակալ Տէր Աստուած մեր։

Աղօթք։

Պահպանեա զմեզ Քս Ած մեր, ընդ հովանեաւ սբ և պատուական խաչիւդ քո ի խաղաղութե. փրկեա յերևելի և յաներևոյթ թշնամւոյն։ Արժանաւորեա գոհութբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։

Մաղթանք։

Ընկանիմք առաջի քո Ածածին, և աղաչեմք զանարատ զկոյսդ. բարեխօսեա վս անձանց մերոց, և աղաչեա զմիածին Որդիդ, փրկել զմեզ ի փորձութէ և յամ վտանգից մերոց։

Որ արձակիչդ ես կապելոց, պարգևատու ամենեցուն, այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեա և զիս զբազմամեղս ի կապանաց մահու ի կեանսդ յաւիտենից։

Մաղթանք զօրաւոր ընդդէմ արհաւրաց գիշերայնոց. սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն. ԺԲ։

Ընկալ քաղցրութբ, Տէր Ած հզօր, զդառնացողիս զաղաչանս։ Մատիր գթութբ առ պատկառեալս դիմօք։ Փարատեա ամենապարգև, զամօթական տխրութիս։ Բարձ յինէն ողորմած, զանբերելի ծանրութիս։ Անջրպետեա հնարաւոր, զմահացու կրթութիս։ Աւարեա միշտ յաղթող, զխաբողին հաճութիս։ Բացադրեա վերնային, զմոլեգնոյն մառախուղ։ Անքեա կեցուցիչ, զկորուսչին ընթացմունս։ Ցրուեա ծածկատես, զըմբռնողին չար գտմունս։ Խորտակեա անքնին, զմարտողին դիմեցմունս։ Տեառնագրեա քո անուամբդ զլուսանցոյց երդ յարկիս։ Պարփակեա քո ձեռամբդ զա-

*ռաստաղ տաճարիս: Գծագրեա քո արեամբդ զմուտ սեմոց սենեկիս: Կերպացո զքո նշանդ ի հեռս ելից մաղթողիս: Ամրացո քո աջովդ զհանգստեանս խշտի: Մաքրեսցես ի հողեից զծածկարան անկողնոյս: Պահեսցես քո կամօքդ զտառապեալ անձն հոգւոյս: Անխարդախ արասցես զքո շնորհեալ շունչ մարմնոյս: Կացուսցես շրջափակ զպար զօրուդ երկնայնոյ: Կարգեսցես ի դիմի ընդդէմ դիւացն դասու: Տուր հանգիստ բերկրութ՟ե մահահանգոյնս նիրհման ի խորութ՟ե գիշերիս: Բարեխօսութ՟բ հայցուածոց սրբոյ Ա՟ծածնիդ և ամ՟ ընտրելոց: Ամփոփեալ պարուրեա զպատուհան տեսութեանց զգայարանացս իմաստից անզարհուրելի զետեղմամբ ի ծփական խռովութ՟ց կենցաղական զբաղմանց, անրջական երազոց, խօլականաց ցնորից, յիշատակաւ քո յուսոյդ անմխալելի պաշտպանեալ: Եւ սթափեալ վերստին ի ննջմանէ ծանրութ՟ե ամենազգաստ արթնութ՟բ, հոգենորոգ զուարթութ՟բ ի քեզ արձանացեալ, զայս ձայն մաղթանաց բուրմամբ հաւատոց քեզ, ամէնօրհնեալ Թագաւոր փառաց անճառից, փառաբանողաց երկնագումար խմբից երգակցեալ, յերկինս առաքել: Զի դու փառաւորեալ ես յամ՟ արարածոց յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

Աղօթք զօրաւոր սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ. ԽԱ:

*Որդի Աստուծոյ կենդանւոյ, օրհնեալ յամ՟ի, Հօրդ ահաւորի անքնին ծնունդ, որ տկարանայ առ ի քէն և ոչ ինչ: Որ ի ծագել անստուեր նշուլից ողորմութ՟ե քո փառաց, հալին մեղք, հալածին դեւք, ջնջին յանցանք, խզին կապանք, խորտակին շղթայք, կենդանածնին մահացեալք, բժշկին հարուածք, ողջանան վէրք, բառնին ապականութ՟իք, տեղի տան տխրութ՟իք, նահանջին հեծութ՟իք, փախնու խաւարն, մեկնի մէգն, մերժի մառախուղն, փարատի մուայլն, սպառի աղջամուղջն, վերանայ մութն, գնայ գիշերն, տարագրի*

տագնապն, չքանան չարիքն, հալածին յուսահատութիւնքն և թագաւորէ ձեռն քո ամենակար, քաւիչդ ամենայնի: Որ ոչ եկիր կորուսանել զմարդկան ոգիս, այլ կեցուցանել. թող ինձ զանթիւ չարիսն իմ, բազում ողորմութ՟բդ. զի դու միայն ես յերկնի անճառ և յերկրի անզնին, ի տարր գոյի և յեզր ծագաց աշխարհի, սկիզբն ամենայնի և յամենայնի ամենայն լրմամբ, օրհնեալ ի բարձունս, և քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ փառք յաւիտեանս. ամէն:

Աղօթք խոստովանութեան անձին հաւատացելոյ ի Քրիստոս, զոր արարեալ է Տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի:

Հաւատով խոստովանիմ և երկիր պագանեմ քեզ, Հայր և Որդի և սուրբ Հոգի. անեղ և անմահ բնութիւն. արարիչ հրեշտակաց և մարդկան և ամ՟ եղելոց. և ողորմեա՛ քո արարածոցս:

Հաւատով խոստովանիմ և երկիր պագանեմ քեզ անբաժանելի լոյս, միասնական Սբ՟ Երրորդութ՟ի և մի Ածութ՟ի. արարիչ լուսոյ և հալածիչ խաւարի. հալածեա՛ ի հոգւոյ իմմէ զխաւար մեղաց և անգիտութ՟ե, և լուսաւորեա՛ զմիտս իմ ի ժամուս յայսմիկ աղօթել քեզ ի հաճոյս, և ընդունել ի քէն զխնդրուածս իմ, և ողորմեա՛ ինձ բազմամեղիս:

Հայր երկնաւոր, Ած՟ ճշմարիտ, որ առաքեցեր զՈրդիդ քո սիրելի ի խնդիր մոլորեալ ոչխարին. մեղայ յերկինս և առաջի քո. ընկա՛լ զիս ոպ՟ զանառակ որդին, և զգեցո՛ ինձ զպատմուճանն զառաջին, զոր մերկացայ մեղօք, և ողորմեա՛ քո արարածոցս և ինձ բազմամեղիս:

Որդի Այ՟, Ած՟ ճշմարիտ, որ խոնարհեցար ի հայրական ծոցոյ, և առեր մարմին ի սբ՟յ կուսէն Մարիամայ վս՟ մերոյ փրկութ՟ե. խաչեցար և թաղեցար և յարեար ի մեռելոց, և համբարձար առ Հայր. մեղայ յերկինս և առաջի քո. յիշեա՛ զիս որպէս զաւազակն յորժամ

գաս արքայութեամբ քով. * և ողորմեա՛ քո արարածոցս և ինձ բազմամեղիս։

Հոգի Աճ, Աճ ճշմարիտ, որ իջեր ի Յորդանան և ի վերնատունն, և լուսաւորեցեր զիս մկրտութբ սբ աւազանին, մեղայ յերկինս և առաջի քո, մաքրեա՛ զիս վերստին ածային հրով քով որպէս հրեղէն լեզուօք զառաքեալսն. և ողորմեա՛։

Անեղ բնութի, մեղայ քեզ մտօք իմովք, հոգւով և մարմնով իմով. մի՛ յիշեր զմեղս իմ զառաջինս վն անուանդ քում սրբոյ. և ողորմեա՛։

Տեսող ամի, մեղայ քեզ խորհրդով բանիւ և գործով. ջնջեա՛ զձեռագիր յանցանաց իմոց, և գրեա՛ զանուն իմ ի դպրութեան կենաց. և ողորմեա՛։

Քննող գաղտնեաց, մեղայ քեզ կամաւ և ակամայ, գիտութբ և անգիտութբ. Թողութի շնորհեա՛ մեղաւորիս. զի ի ծննդենէ աւազանին մինչեւ ցայսօր մեղուցեալ եմ առաջի ածութեդ քո զգայարանօք իմովք և ամ անդամօք մարմնոյս. և ողորմեա՛

Ամենախնամ Տէր, դի՛ր պահապան աչաց իմոց զերկիւղ քո սբ, ոչ ևս հայել յարատ. և ականջաց իմոց, ոչ ախորժել լսել զբանս չարութե. և բերանոյ իմոյ, ոչ խօսել զստութիւն. և սրտի իմոյ, ոչ խորհել զչարութի. և ձեռաց իմոց, ոչ գործել զանիրաւութի. և ոտից իմոց, ոչ գնալ ի ճանապարհս անօրէնութե, այլ ուղղեա՛ զշարժումն սոցա լինել ըստ պատուիրանաց քոց յամի. և ողորմեա՛։

Հուր կենդանի Քն, զհուր սիրոյ քո, զոր արկեր յերկիր, բորբոքեա՛ յանձն իմ, զի այրեսցէ զաղտ հոգւոյ իմոյ, և սրբեսցէ զխիղճ մտաց իմոց, և մաքրեսցէ զմեղս մարմնոյ իմոյ, և վառեսցէ զլոյս գիտութեան քո ի սրտի իմում. և ողորմեա՛։

Իմաստութի Հօր Յն, տո՛ւր ինձ իմաստութի զբարիս խորհել և խօսել և գործել առաջի քո յամ ժամ, և

*ի չար խորհրդոց և ի բանից և ի գործոց փրկեա՛ զիս. և ողորմեա՛։*

*Կամեցող բարեաց Տէր կամարար, մի՛ թողուր զիս ի կամս անձին իմոյ գնալ, այլ առաջնորդեա՛ ինձ լինել միշտ ըստ կամաց քոց բարեսիրաց. և ողորմեա՛։*

*Արքայ երկնաւոր, տո՛ւր ինձ զարքայութի̃ քո զոր խոստացար սիրելեաց քոց, և զօրացո՛ զսիրտ իմ ատել զմեղս և սիրել զքեզ միայն և առնել զկամս քո. և ողորմեա՛։*

*Խնամող արարածոց, պահեա՛ նշանաւ խաչի քոյ զհոգի և զմարմին իմ ի պատրանաց մեղաց և ի փորձութեանց դիւաց և ի մարդոց անիրաւաց և յամենայն վտանգից հոգւոյ և մարմնոյ. և ողորմեա՛։*

*Պահապան ա̃մի ք̃ս, աջ քո հովանի լիցի ի վերայ իմ ի տուէ և ի գիշերի, ի նստել ի տան և ի գնալ ի ճանապարհի, ի ննջել և յառնել, զի մի՛ երբէք սասանեցայց. և ողորմեա՛։*

*Ա̃ծ իմ, որ բանաս զձեռն քո, և լնուս զամենայն արարածս ողորմութ̃բ քով. քեզ յանձն առնեմ զանձն իմ. դո՛ւ հոգա և պատրաստեա՛ զպէտս հոգւոյ և մարմնոյ իմոյ յայսմհետէ մինչև յաւիտեան. և ողորմ։*

*Դարձուցիչ մոլորելոց, դարձո՛ զիս ի չար սովորութ̃ց իմոց ի բարի սովորութիւն, և բևեռեա՛ ի հոգի իմ զսոսկալի օր մահուն և զերկիւղ գեհենին և զսէր արքայութ̃ն, զի զղջացայց ի մեղաց և գործեցից զարդարութ̃ի. և ողորմեա՛։*

*Աղբիւր անմահութ̃ե, աղբերացո՛ ի սրտէ իմմէ զարտասուս ապաշխարութ̃ե որպէս պոռնկին, զի լուացից զմեղս անձին իմոյ յառաջ քան զելանելն իմ յաշխարհէս. և ողորմեա՛։*

*Պարգևիչ ողորմութ̃ե, պարգևեա՛ ինձ ուղղափառ հաւատով և բարի գործով և ս̃բ մարմնոյ և արեան քո հաղորդութ̃բ գալ առ քեզ. և ողորմեա՛։*

Բարերար Տէր, հրեշտակի բարւոյ յանձն արասցես զիս քաղցրութբ̃ աւանդել զհոգի իմ, և անխռով անցուցանել ընդ չարութի̃ այսոցն, որ են ի ներքոյ երկնից. * և ողորմեա քո արարածոցս և ինձ բազմամեղիս։

Լոյս ճշմարիտ Քն̃. արժանաւորեա զհոգի իմ ուրախութբ̃ տեսանել զլոյս փառաց քոց ի կոչման աւուրն, և հանգչել լուսով բարեաց յօթեվանս արդարոց մինչեւ յօր մեծի գալստեան քոյ. և ող։

Դատաւոր արդար, յորժամ գաս փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս, մի մտաներ ի դատաստան ընդ ծառայիս քոյ. այլ փրկեա զիս ի յաւիտենական հրոյն, և լսելի արա ինձ զերանաւէտ կոչումն արդարոց յերկնից արքայութի̃դ. և ող։

Ամենողորմ Տէր, ողորմեա ամ̃ հաւատացելոց ի քեզ, իմոց և օտարաց, ծանօթից և անծանօթից, կենդանեաց և մեռելոց. շնորհեա և թշնամեաց իմոց և ատելեաց զթողութի̃ որ առ իս յանցանաց. և դարձո զնոսա ի չարեացն զոր ունին վս̃ իմ զի ողորմութե̃ քում արժանի եղիցին. և ողորմեա։

Փառաւորեալ Տէր, ընկալ զաղաչանս ծառայիս քոյ, և կատարեա ի բարի զխնդրուածս իմ բարեխօսութբ̃ սրբուհւոյ Ա̃ծածնին և Յովհաննու մկրտչին և սրբոյն Ստեփանոսի նախավկային, և սրբոյն Գրիգորի մերոյ լուսաւորչին, և սրբոց առաքելոց, և մարգարէից, և վարդապետաց, և մարտիրոսաց, և սրբոց հայրապետաց, և ճգնաւորաց, և կուսանաց, և ամ̃ սրբոց քոց երկնաւորաց և երկրաւորաց։ Եւ քեզ փառք և երկրպագութի̃ անբաժանելի սուրբ Երրորդութե̃դ յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Մաղթանք։

Վս̃ սրբուհւոյ անարատ մօր քո և կուսի, Տէր ընկալ զաղաչանս մեր, և կեցո զմեզ։

Քարոզ։

Սբ զԱ՟ծածինն և զմ՟ նրս բարեխօս արարցուք առ Հայր ի յերկինս, զի կամեցեալ ողորմեսցի և գթացեալ կեցուսցէ զարարածս իւր։ Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա։

Աղօթք։

Ընկալ Տէր զաղաչանս մեր բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին անարատ ծնողի միածնի Որդւոյ քո, և աղաչանօք ամենայն սրբոց քոց։ Լո՛ւր մեզ Տէր և ողորմեա, ներեա՛, քաւեա՛ և թո՛ղ զմեղս մեր։ Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ և ընդ սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։

Մաղթանք։

Օհանգստեանզաղօթս և զաղաչանս ընկա՛լ, մարդասէր Ա՟ծ, ի հաճոյս բարերար կամաց քոց։ Եւ մեր մեղաց և բազում յանցանացն թողութի՟ շնորհեա՛։ Եւ քեզ փառք յաւիտեանս. ամէն։

Փառք քեզ Տէր Ա՟ծ, որ պարգեւեցեր զօրս բարեաւ և խաղաղութբ՟ անցուցանել։ Մարդասէր Ա՟ծ, զառաջակայ գիշերս՝ որ ի վերայ մեր գալոց է, ի մեղաց փրկեա՛, ի չարեաց ազատեա՛, ի գործս բարիս առաջնորդեա՛։ Առաւօտու օրհնութեանցն և փառաբանութեանցն արժանի արա զմ՟ հաւատացեալս անուանդ քում սրբոյ, և պահեա ի խաղաղութե՟։

Տէր Ա՟ծ մեր, տո՛ւր զքո խաղաղութի՟դ ա՟մ աշխարհի. բա՛րձ զցասումն և զպատուհասն ի յարարածոց։ Ողորմեա՛ հարց և եղբարց մերոց, կենդանեաց և հանգուցելոց։ Ողորմեա՛ զեկեղեցի շինողաց, երախտաւորաց, պտղատուից, սպասաւորաց, և այնոցիկ՝ որք ընդ հովանեաւ ն՟ք տաճարիս են հանգուցեալ։

Տէր Ած, օգնեա՛ թագաւորաց քրիստոնէից, և իշխանացն բարեպաշտից. զօրաց և զաւակացն նոցին պահելով ի խաղաղութեան։

Տէր Ած մեր, պահեա՛ զառաջնորդս և զեղբայրութիւնս մեր ամբողջ և անխռով ի կամս ողորմութե քո։ Նշանաւ նբ և պատուական խաչիւ քո հալածեա՛ զերեւելի և զաներեւոյթ թշնամին ի սահմանաց մերոց և ի բնակութենէս մերմէ։ Փրկեա՛ զմեզ ի հրոյն յաւիտենից։ Եւ քեզ փառք յաւիտեանս. ամէն։

Օրհնեա՛լ եղերուք ի շնորհաց նբ Հոգւոյն. հանգերո՛ւք խաղաղութեամբ, և Տէր եղիցի ընդ ամենեսեանդ. ամէն։



# ՔԱՂՈՒԱԾ
# ՀԱՆԳՍՏԵԱՆ ՇԱՐԱԿԱՆԱՑ

---

## ԱՁ

Քեզ վայելէ՝ Ա՟ծ օրհնութի՟. որ յարութիւնդ ես ձայնիւ յաւիտենից նընջեցելոց. Թագաւոր եւ իշխան վերօրհնեմք ըզքեզ։ Ի միւսանգամ գալըստեանըն քո Ք՟ս փառաց Թագաւոր. ի ձայն փողոյ նորոգին հոգիք նընջեցելոցն. և յառնեն ի մեռելոց անապական մարմնով։ Վասն որոյ եւ մեք ըզքեզ աղաչեմք Հայր երկնաւոր. դասաւորեա ըզնընջեցեալսն մեր ի վերինըդ քո Երուսաղէմ. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս։

Ձայն արկեալ կենարարին աստուածային բարբառովն. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ. ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին։ Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդըս վերինս. աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի լըսել ըզձայն երանաւէտ կոչմանն։ Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստունն Ե՟ կուսանսն. ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս։

Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դասս անդրանկաց գրելոց ի յերկինս։ Ընկալ վասըն սոցա ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութի՟ գտանել յաւուրըն յետնում։

Ակբ։ Ողորմեա ինձ Աստուած։ Որ զառաջինն ոչ պահելով ըզպատուիրանըն մեռաք. շնորհեցեր քեւ օրինակ մեզ պատուիրան կենաց. զի պահելով

կենդանասցուք. ողորմեա ինձ Աստուած։ Որ ի խոր-հուրդ քո կամաւոր մահուանն եկեղեցի քո Քրիստոս. մեռանելով օրինաց մեղաց. զի յարուցեալ ընդ քեզ նորոգեսցի ի փառս. ողորմեա ինձ Աստուած։

Աղէ։ Հայր բազումողորմ. խոստովանիմ առ քեզ որպէս զանառակ որդին. թող ինձ զմեղս իմ եւ ողորմեա։ Տէր որ գթացար ի կինն քանանացի. գթա եւ յիս ի մեղաւորս եւ ողորմեա։ Տէր որ դարձուցեր զմաքսաւորն ի գիտութիւն ճշմարտութեան. դարձո և զիս զմոլորեալս եւ ողորմեա։

Ղէջ։ Այսօր գոլով ի Բեթանիա քո ամենազօր հրամանաւդ. ձայնեցեր Ղազարու և դողացաւ մահ. դժոխք պարտեցաւ ապականութիւն լուծաւ. կենդանարար Քո կեցո զմեզ։ Այսօր գոլով ի Բեթանիա զքո զաշխարհակեցոյց նոր զյարութիւնդ. յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն ի թաղմանէ. կենդանարար Քո կեցո զմեզ։ Այսօր գոլով ի Բեթանիա Եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ ասէին. զՄարիամու զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ որդւոյն Մարիամու. կենդանարար Քո կեցո զմեզ։

Ցուց։ Անճառելի Հօր էակից. ի խաչ ելեր կամաւ հօր ողորմեա։ Անմահութեց տուող Քո ի գերեզման իջեր ոչ մարդ. ողորմեա։ Եւ յերրորդ աւուր յարեար. յոյս յարութեան ցուցար մեզ ողորմեա։

ՀՈԳ. Որ յամի ես ածութիւն. եւ ի ձայն հընչման իջեր յերկնից նոր Հոգի. ողորմեա մեզ։ Որ զամ լընուս զօրութիւն քո. եւ ի դաս առաքելոցն իջեր բընակել նոր Հոգի. ողորմեա մեզ։ Որ անբաժանելի ես յածութենէ. եւ ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն նոր Հոգի. ողորմեա մեզ։

Աձն։ Որ զաւետիս Հոգւոյն ի հրեղէն ի հրեշտակէն ընկալար ուրախ լեր. բերկրեայդ Տէր ընդ քեզ Մարիամ ամենօրհնեալ։ Անըսկիզբըն Բանըն հաճեցաւ առնուլ մարդեղութեամբըն ըսկիզբըն ի կուսէդ. Քրիստոս Աստուած Թագաւորն յաւիտենից։ Աղաչեմք ըզքեզ Մայր Ածածին առ քո բարեխօսեա փրկել ըզժողովուրդս իւր զոր գնեաց արեամբն իւրով։

Խղ։ Հրաշակերտ և զօրեղ փայտ խաչի քո Քրիստոս. գաւազան զօրութեան ի յերկրի երեւեալ. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Զոր Հրէիցըն ծածկեալ զանթաքչելի ըզգանձըն. փափագմամբ Թագուհւոյն փայտ կենաց յայտնեցաւ. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Փառք Հօր։ Սա է զէն յաղթութեան հաւատացելոց. անխոցեալ և կնիք յաղթող ընդդէմ Թշնամւոյն. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։

Այժմ և միշտ։ Հաստեա ի ձեռըն նր մարմնոյ և արեան քո Տր. եւ պարգեւեա նոցա դասիլ յաջակողմանըն քո։

---

### ԱԿ

Ձեռըք քո արարին եւ ըստեղծին զիս ի հողոյ. և յօրհնել ըզքեզ Աստուած յաւիտեան։ Իսկ պատրանօք բանսարկուին խափանեցայ յանձառ լուսոյն և դարձայ անդրէն ի հող յորմէ ստեղծայ։ Մխիթարիչ սուրբ Հոգի լուսաւորեա զմեր ննջեցեալսն. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

Հայր անոխակալ եւ բարեգութ. մաղթելով հայցեմք ի քէն վասըն մեր ննջեցելոցն. արժանաւորել հանգըստեան օթեվանի սրբոցն։ Անձառ ծընունդ Հօր Որդի. որ մահկանացուացս կեանքդ ես. զհոգիս

նընջեցելոց մեր ընկալ. եւ արժանաւորեա հանգըստեան օթեւանի սըրբոցն։ Եւ նորոգող սուրբ Հոգի յորժամ նորոգես զապականեալսն. յայնժամ շնորհեա և մեր նընջեցելոցն արժանաւորել հանգըստեան օթեւանի սըրբոցն։

Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցութի առնե-լով տիեզերաց ի դատաստան ահաւոր. յայնմ աւուր յահեղին յիշեա ՏէՔր եւ ըզմեր ըզնընջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ ճառագայթք ծնութեանըդ փայլեն ի յարեւելից. եւ դըրպրութիւնըք հրաշեցըն բանին. յայնմ աւուր յահեղին յիշեա ՏէՔր եւ ըզմեր ըզնընջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո։

Աէ։ Որ առաքեցար ի հայրական ծոցոյ ծածկեալ խորհուրդ ընդ Հօր յաւիտեան. եւ առեր մարմին զմեղուցելոյ նախաստեղծին յանապական կուսէն անճառ միութբ. վասըն մերոյ փըրկութեան ողորմեա։ Որ փոխանակ ճաշակացըն դառնութե մահաբեր պըտղոյն. անճաշակ լինելով քո քառասնօրեայ. քաղցրացուցեր յուսով ըզլուծ նոր քո օրինաց. վասըն մերոյ փըրկութե ողորմեա։ Որ աջակողմ աւազակին բացեր ըզդուռըն դրախտին կենաց. բաց եւ մեզ մեղաւորացս ողորմութբ. որք ընդ նըմին զքեզ դաւանեմք տէր և թագաւոր. աղաչեմք ըզքեզ ողորմեա։

Աղւ։ Ծով կենցաղոյս. հանապազ զիս ալէկոծէ։ Մըրըրկեալ ալիք. թըշնամին ինձ յարուցանէ։ Նաւապետ բարի. լեր անձին իմոյ ապաւէն։

Գա։ Այսօր կարգեցաւ օրինակ խոնարհութեան ի յուղղութի վարուց մերոց։ Այսօր Տէրըն մեր լըւանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս ասելով։

Մի ոմն ի ձէնջ եղբարցդ մատնելոց է զիս ի մահ. և որոշի յաշակերտացդ: Զայն լուեալ Պետրոսի ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ: Բանն զոր ասաց Յիսուս տրտմեցոյց զիւր զաշակերտսն և խռովեցան ամենեքեան:

Յոր: Իջեր յերկնից Որդի Աստուծոյ. և մարմնացար ի սրբոյ կուսէն. որ անմեկնելիդ ես ի Հօրէ. ողորմեա: Եկիր ի չարչարանս կամաւորապէս Աստուած. և խաչեցար վասն ազգի մարդկան. և ի գերեզման իջեր անապական. ողորմեա: Զմահ լուծեր և զաշխարհս ազատեցեր կարողապէս Տէր. և ի մեռելոց յարեար իշխանութեամբ. ողորմեա:

ՀՈԳ. Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ և համագոյ. աղաչանօք տնօրինաբար քում էակցին. լինել մխիթարիչ սուրբ առաքելոցն. աղաչեմք ընդ քեզ ողորմեա: Որ իջեր տիրաբար յերկնից սաստիկ հողմոյ նման Աստուած յայտնապէս. և ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար ի դասս առաքելոցն. աղաչեմք ընդ քեզ ողորմեա: Որ արբուցեր երկնաւոր գինեաւն իմաստութեան զհոգիս սրբոց քոց առաքելոցն. որք արբուցին տրտմեցելոց որդւոց Ադամայ ըզբաժակն ուրախարար յայգւոյն Եդեմայ. աղաչեմք ընդ քեզ ողորմեա:

Ածն: Ով զերահրաշ ծաղիկ բուրեալ յԵդեմայ. հոտ անմահութեան ծնընդոցս Եւայի յորմէ սփռեցաւ մահ ընդ տիեզերս. օրհնութիւն ընդ քեզ մեծացուցանեմք: Դու լուծիչ երկանց բարձող անիծից. ծագումն արեւուն լուսոյն ճըշմարտի. որով հերքեցաւ խաւարն առաջին. օրհնութիւն ընդ քեզ մեծացուցանեմք: Ընդ քեզ ունիմք բարեխօս կոյս ամէնօրհնեալ. մայր անարատ

է՛մմանուէլի. տաճար Բանին Հօրն երկնաւորի. օրհ-նութ̃բ ըզքեզ մեծացուցանեմք։

Խղ։ Սեղան քո Տէր զօրութեանց հաւատով կան-գնեցաւ ի խորանի քում. եկայք ժողովուրդք երկըր-պագեսցուք։ Վէմ պատուական ի խորանի քում հիմնեցաւ այսօր. եկայք ժողովուրդք երկըրպագես-ցուք։ Փառք Հօր։ Ի՛ սմա մատուցաւ ճըշմարիտ պա-տարագ և զենումն անապական. եկայք ժողովուրդք երկըրպագեսցուք։

Այժմ և միշտ։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սրովբէագոչ փողոյն. յորժամ հարկանէ հրեշ-տակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա Տէր եւ ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սրբս քո։

---

ԲՁ

Հրեշտակային ձայնիւ օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն. փառաւորելով ըզՀայր. որ վերա-կոչեաց զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց. Քրիստոսի երկըրպագելով. որ վերակոչեաց զամենե-սեան ի մահուանէ յանմահութիւն։ Սըրբասաց ձայնիւ օրհնեսցուք. հոգեւորական հընչմամբ գովեսցուք. սուրբ զՀոգին փառաւորելով. որ վերահանգոյց զա-մենեսեան ի մահուանէ յանմահութիւն։

Ի՛ ձայն փողոյ գալըստեան քո Տէր ամ̃ հոգիք զարթիցեն կալ ի դատաստանի քում Քրիստոս Աս-տըւած մեր։ Յորժամ հընչէ բարբառն ահագին. և հարկանի փող յարութե̃ մերոյ. եւ մեք գոչելով ասեմըք փառըք գալըստեան քո Տէր։ Յորժամ առ-

նես հատուցումն Տէր և սուրբք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փրկիչ կալ ի յաջմէ քումմէ:

Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից. մարդասիրութբդ քո խնայեա յանձինս մեր. ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ ննջեցելոց: Ի խաչին բեւեռեցար. զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզննջեցեալսն վերածեր յանմահ ի կեանս. ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ ննջեցելոց:

Ակ: Ըստ աւետեաց մարգարէին որ առ փրկեալքս արեամբ գառինդ. ցնծամք եւ մեք ծառք անտառի ընդ գալուստ Տեառնդ կրկնակի. շնորհեա մեզ Տէր ընդ արդարոցն ընդ առ ի քէն տնկեալ ծառոցն. այժմ յուսով զուարճանալ եւ յերկրորդին ընդ քեզ ցնծալ: Սըմին նման տայ աւետիս Զաքարիաս Նոր Սիոնի. եթէ ուրախ լեր ահա գայ առ քեզ խոնարհ եւ հեզ արքայ. նստեալ ի յէշ և յաւանակ կրկին ազանց գոլ օրինակ. նստեալդ յաթոռ քերովբէից նիստ գթութեամբ ի մեր հոգիս: Զահեղ փառաց քոց երեւումն որ լինելոց է յերկրորդումն. ետես Դաւիթ յառաջագոյն ծանոյց կանխաւ ազդմամբ Հոգւոյն. թէ յայտնապէս Աստուած գայցէ հուր առաջի իւր բորբոքէ. յայնժամ Յիսուս ի մեզ խնայեա գթած Քրիստոս եւ ողորմեա: Աստուածածին ամենօրհնեալ յերկրէ երկնից հարսն ընծայեալ. յորժամ բազմիս լուսոյ նման քո միածնիդ յաջակողման. յայնժամ մաղթեա ընդ մեր ըզգնոյն փրկել ըզմեզ յահեղ բոցոյն. համադասել ընդ արդարոցն երգել ըզփառս ընդ երկնայնոցն:

Աղչ: Դարձո զցասումն քո ի մէնջ յաղաղակել հողեղինացս. բազմագութ Տէր խնայեա և մի կո-

րուսանէր։ կանգնեա զանկեալս ի գլորմանէ զվէրաւորեալս ի թըշնամւոյն. որ բըժիշկդ ես հիւանդաց բըժըշկեա զիմ զհիւանդութիւնս։ Ի յանցանաց իմոց թախծեալ անձն իմ գոչեմ որպէս ըզմաքսաւորն. Աստուած քաւեա զիս ըզմեղաւորս։

Ղշր։ Յաստուածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով կարապետըք դըժոխոց. եւ մեռեալըն եկն արտաքս անապական։ Կացեալ ի դուրս այրին և ձայնէր ազդարարող բարբառովն ի գերեզմանն. Ղազարէ եկ արտաքս անապական։ Ելեալ ի գերեզմանէն երիզապինդ պատանօքըն մեռեալն. հրամայեաց լուծանել ի կեանսըն յաւիտենից։

Ցուր։ Իջեր յերկնից Որդի ԱՅ ազատեցեր զարարածս. անկանիմ առաջի քո ողորմեա ինձ Աստուած։ Ի խաչին բեւեռեցար Աստուած և ըզմարդն ի կապանաց մահու արձակեցեր. եւ զիս մի անտես առներ որ մեղօք եմ մեռեալ։ Ծագումըն Հօր յանմատոյց լուսոյն որ իջեր ի գերեզման. կենդանացուցեր զարարածըս քո. եւ զիս մի անտես առներ քանզի քեզ միայնոյ մեղայ։

ՀՈԳ. Սարսափելի հողմոյ նըման ահեղագոչ սաստիկ հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասան. որք առ ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց։ Էկեր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար. Ընդ արդարութեան և ընդ մեզաց և ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց։ Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն

զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես ինմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց։

Ածն։ Խոնարհեցար ի բարձանց եւ մարմնացար ի կուսէն. որ նըստէիր ի քրովբէս արարիչդ արարածոց։ Երկինք չէին բաւական փառաց անմահ անեղինդ արգանդ կուսին ժուժկալեալ ընդունել ըզգանձդ երկնային։ Յորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին մերձենալ. ի խանձարուրս պատեցար եւ եդար ի մսուր յանբանից։

Խչ։ Այսօր խընդրի պատուական փայտ խաչին աւանդեալն ի Գողգոթա ի ձեռն աստուածասէր դըշխոյին. եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային ս̃բ նըշանիս։ Այսօր ընծայէ Գողգոթայ ըզծածկեալն ի յերկրի. վերաբերեալ անուշահոտ խընկովք. ի ձեռն երանելւոյն Յուդայի. եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային ս̃բ նըշանիս։ Փառք Հօր։ Այսօր ի ձեռըն փրկական ս̃բ խաչին կենագործի պատանին մեռեալ. եւ ողբայ սատանայ ըզկործանումն իւր. իսկ մեք ք̃սի հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային ս̃բ նըշանիս։

Այժմ և միշտ։ Արժանաւորաց քոց աղօթիւք. յիշեա ըզմեր ըզնընջեցեալսն յորժամ գայցես անճառ փառօք հատուցանել մարդկան ըստ գործս. եւ մեր նընջեցելոցն շնորհեա դասել ընդ ս̃րբս քո։

---

ԲԿ

Քեզ վայելէ Աստուած օրհնութի̃ որ յանմատոյց աթոռ անմահից փառաբանիս ի բարձունս. զնընջե-

ցեալսն յանուն քո ընկալ. յերկնային քո ս̃բ յառագաստ. որ միայն ես մարդասէր: Որ ունիս իշխանութիւն մահու և կենաց. յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց. և հանգո ընդ սուրբս քո ի խորան քում սիրողաց. որ միայն ես մարդասէր: Որ յամի ես օրհնեալ Տէր. արժանի արա ըզծառայս քո վերըստին նորոգման. ի լսել ըզձայն ածային փողոյն. ընդ առաջ ելանել քոյ փառացդ. որ միայն ես մարդասէր:

Թագաւոր խաղաղութե̃ որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս. յիշեա Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ ս̃րբս քո. եւ դասաւորեա ի յաւուրն այցելութե̃: Որ կոչեցեր ի դրաց մահու ըզսիրելին քո զՂազարոս. եւ ծանուցեր զմեծութիւնդ ընդհանուր տիեզերաց. լուսաւորեա Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ ս̃րբս քո. եւ դասաւորեա ի յաւուրն այցելութե̃: Ի տաճարի քում սրբութե̃ մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ ս̃րբս քո. եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեան:

Ի գիշերաց կանխեալ սաղմոսիւք եւ արտասուօք հայցեմք ի քէն. Քրիստոս յիշեա զննջեցեալսն ի ս̃բ անունըդ քո. եւ հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո: Որ յանմարմնոց վերօրհնիս. առ քեզ կարդամք և պաղատիմք. Քրիստոս յիշեա զննջեցեալսն ի ս̃բ անունըդ քո. և հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո:

Ակն: Որ պատուիրան ճշմարտութեան աւանդեցեր եկեղեցւոյ քո Քրիստոս. անսահման ժամանակաւ աղօթել միշտ առ Աստուած հոգւով եւ մտօք: Որ ըզբան քո օրինաց հաստատեցեր գործով մեզ

օրինակ. հանելով ըզգիշերն ի գլուխ յաղօթսն Աստուծոյ. բնութբ՝ մերով տնօրինաբար որում կըրկնի ծունր ամենայն: Վասն որոյ եւ մեք պաղատեսցուք առ քեզ Քրիստոս. շնորհեա մեզ յամենայն ժամ լինել քեզ յանդիման մաքուր աղօթիւք ըստ անմարմնոցն որ յերկինս: Աղաչանօք Աստուածածնին անապական քում ծընողին. զիմանալի աչըս սըրտից մերոց. բացցես ողորմութեամբ հայել ի լոյս քո Քրիստոս:

Աղշ: Յամենայն ժամ աղաչանք իմ այս եւ:ամն. ի մեղաց իմոց սուրբ արա զիս Տէր: Ցանցանաց իմոց զարհուրի սիրտ իմ:ամն աղաչեմ ըզքեզ թող ինձ Տէր: Արտասուաց իմոց մի լռեր Տէ:ամր. զի պանդուխտ եմ ես յանցաւոր երկրի:

Ղշբ. Իմաստուն կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց. ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք: Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալք ի յիւղոյն. անպատրաստ գտան գալըստեան փեսային շիջեալ լապտերօք: Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր. զի մըտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք:

Ցոբ: Ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա: Որ ի յերկնից իջեր Բան Աստուած. եւ վասն մեր մարմնացար ի սըրբոյ կուսէն. ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա: Որ ի խաչին տարածեցեր զանարատ բազուկս քո. եւ վասն մեր հեղեր զարիւն քո սուրբ. ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա: Որ ի գերեզմանի եղար անապական. եւ յարուցեալ նորոգեցեր զաշխարհս. ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա: Որ ի յերկինս համբարձար ամենակա-

րող. և ընդ աջմէ Հօր նստար յաթոռ փառաց. ո-ղորմեա ինձ Աստուած իմ ողորմեա։

ՀՐԳ. Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհ. և ըղ-մեռեալ բնութիւս ի կեանս վերափոխեցեր։ Ելեր Տէր առ Հայր փառօք ի յերկինս. և մխիթարիչ ա-ռաքելոցն առաքեցեր սբ զՀոգիդ։ Բացեր Տէր այսօր ըզդրանդ երկնային. և բաշխեցեր առատապէս պար-գևս աղքատ բնութեանս։

ԱՓՆ. Որ ողորմեցար ի մեղս ծնեալ մարդկան Հայր երկնաւոր ըստ մարգարէին. և ետուր բնութեանս այսօր պարգև ըզկոյսն սուրբ ըզծնող Որդւոյդ մի-ածնի. * մաղթանօք սորա Տէր մեզ ողորմեա։ Որ ցօ-ղեցեր ի մեզ յամպոյ օրինաց Որդիդ այսօր զկոյսն Մարիամ. յորմէ ծնար մարմնով և բարձեր նովաւ ըզմեղս նախաստեղծին Ադամայ. մաղթանօք։ Որ մա-քրեցեր Հոգիդ սբ ըզսիրտ և զարգանդ մօր քո փա-ռակցին. այսօր ամուլ ծնողաց նորին ետուր ըզմայր Բանին զօրհնիչն Եւայի. մաղթանօք։

ԽՆ. Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ. * այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր։ Որ աննիւթ սրովբէից անհաս ես ի վեր քան ըզբան. ծառայի կերպիւ պարա-ծածկեալ ըզլոյսդ անըստուեր. այսօր։ Փառք Հօր։ Որ հրեղինացն անմերձենալի հուր ծածկութեանդ. ի հողե-ղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր ի։

Այժմ և միշտ։ Որ մարմնացար վասն մեր. աղաչա-նօք Ածածնին. Քրիստոս յիշեա զննջեցեալսն ի սբ անունդ քո. և հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

## ԳՁ

Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հընչումըն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին. *յայնմ աւուր յահեղին յիշեա Տէր և ըզմեր ըզնընջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ նըշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանիս. յայնմ աւուր։ Յորժամ ատեան դատաստանին դընի. և դըպրութիւնք հրաշեցըն բանին. յայնմ աւուր։

Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և անոխակալ. հանգո զհոգիս քոց ծառայից. *զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին։ Զյիշատակ հրաժարելոցն ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտըս մեր ընկալ որպէս զԱբէլին զՆոյին և զԱբրահամուն. զի մի դարձցի։ Ի խորան քում սիրողաց հանգուցես ըզծառայս քո. եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբըս քո. զի մի դարձցի։

Որ խոնարհեցար յերկնից Բանդ Աստուած. և առեր մարմին ի սըրբոյ կուսէն. *յիշեա ըզնընջեցեալսըն մեր յորժամ գայցես անճառ փառօք. զի դու ես Տէր ամենայն երկրի։ Որ ունիս իշխանութիւն մահու եւ կենաց. եւ խաչիւդ քո լուծեր զերկունս մահու. յիշեա ըզնընջ։

Ալէ։ Որ արարեր զօրութբ զիմանալեացն աշխարհ վերին. եւ ի նմին հաստատեցեր տընտես ըզպետըս հրեղինաց. *օրհնեմք զանհասանելի զօրութիդ։ Որ տիրապէս մեծատունդ ստեղծեր երկրորդ աշխարհ զգալի. եւ ի դրախտն որ յԱդենի տընտես եդեալ զմարդն առաջին. օրհնեմք։ Որ շինեցեր բարձրագոյն զեկեղեցի քո խորհրդեամբ. եւ ի սմա կար-

գեալ ընտես զքերովբս բանին ճշմարտութեան. օրհնեմք զանհասանելի զօրութիդ: Անտանելւոյն տաղաւար բարձող էիցըս բարձողին. որ ծընար զԱծ մարմնով զանմարմնաբար ծընունդըն Հօր. բարեխօսեա վասըն մեր Աստուածածին Մարիամ:

Աղշ: Զերծո զիս յորոգայթէ որսողին. եւ յա-մենայն վտանգից ապրեցո. եւ ողորմեա: Ցանե-րեւոյթ թշնամւոյն եւ ի գաղտնիներից բանսարկուին պահեա. եւ ողորմեա: Փրկեա զիս ի յանցանաց մեղաց իմոց. եւ նորոգեա զիս հոգւով գիտութե՝. եւ ողորմեա:

Դղ: Երկողդ ըղձյս որպէս զօթոց. այսօր անճառ խոնարհութբ ի վերնատունըն խորհրդոյ. ըզգեստ ծառայի ըսփածանիլ յանձն առեր. օրհնեմք զե-կեալդ ի կամաւոր չարչարանս: Որում երկրպագեն դամք հրեշտակաց. խոնարհեցար ի լուանալ զոտըս հողեղէնս. բըժշկել սրբօք ըզգարշապարս նախա-հօրն. բըժշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութի: Որ ի խորհրդըս փրկականս եկեղեցւոյ. բաշխեցեր աշա-կերտացն զմարմինըդ քո նորոգելով ըզմահացեալսն ի ճաշակմանէ. հաղորդս այսմ ընկալ ըզմեզ միայն մարդասէր:

Ցու: Յամենայնի բազումողորմ Աստուած. նայեա յիս գըթութեամբ և խնայեա. * զի դու միայն ես մարդասէր: Եւ խաչիւըդ քո. կենարարաւ պահեա. եւ յարութեբըդ քո փրկեա և ապրեցո. զի դու: Եւ ի միւսանգամ ի գալըստեան քո Տէր. վերըստին զիս նորոգեա և ապրեցո. զի դու:

ՀՈԳ. Որ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառա-բար բըղխումն ի միշտ Էէն. այսօր. բըղխեցեր ջուր

կենդանի յերուսաղէմ. * Հոգի Աստուծոյ ողոր-մեա։ Որ արարչակից ես Հօր և Որդւոյ. որով կեն-դանածնեալք ի ջրոյս արարածք. այսօր. որդիս Աստուծոյ ծնանիս ի ջուրց. Հոգի։ Որ փառակից ես Հօր և Որդւոյ. և քննես զխորս Աստուծոյ. այսօր. խորագէտս իմաստից զմիտս աշխարհի արարեր. Հոգի։

Աձն։ Գտաք անմարմնականք երկնաւոր զօրացն ի մէջ հովուացն օրհնէին ըզծագումըն լուսոյ. մեծին ի Հօրէ մեզ ի փրկութիւն։ Եւ մոգքն աստեղբ նշանաւ եկին ի բեթղեհէմ երկիր պագին Տեառն. եւ ի յայրին մատուցին զընծայս խորհրդոյ։ Եւ հովիւքն երգեին ընդ հրեշտակս փառք ի բարձունս մեծին Աստուծոյ. որ եկիր և փրկեցեր ըզտիեզերս քոյով յայտնութեամբդ։

Խղ։ Քեզ Քրիստոսի կաթողիկէ եկեղեցւոյ շնոր-հողի. զյաղթական ըզպատուական զաստուածընկալ սուրբ նշանս. մատուցանեմք զօրհներգութիւն միշտ ի բարձունս։ Այս կամաւ քո Քրիստոս եւ թեւօք ա-մենազօր սուրբ Հոգւոյն. եւ դասուք հրեշտակաց թռուցեալ եկաւորի. ի լեառն Վարագայ բնակել ի նմա։ Փառք Հօր։ Եկայք ժողովուրդք երկրպա-գեսցուք աստուածային սուրբ նշանիս. համբարձէք միաբան ըզձեռըս ձեր ի սըրբութի. եւ ըզընկեալն ի սմա միշտ փառաւորեսցուք։

Այժմ և միշտ։ Ի նըստել քո յատենի դատաւոր ահեղ. աղաչանօք սուրբ Աստուածածնին յիշեա ըզ-ննջեցեալսըն մեր յորժամ գայցես անձառ փա-ռօք. քանզի քո են փառք յաւիտեանս ամէն։

---

ԳԿ

Լոյս ի լուսոյ զմեզ լուսաւորեա. որ փառօք Հօր հանդերձեալ ես գալ ի դատել զերկիր. * արժանաւորեա եւ ըզմեր ըզնընջեցեալսն անճառ խոստմանց քոց ընդ նըրբս քո: Հօր եւ Հոգւոյ համագոյակից. ի տիեզերական ահեղ ատենին. արժանաւորեա: Երկնի եւ երկրի արդար դատաւոր յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց. արժանաւորեա:

Որ արարիչդ ես հրեղինաց եւ հողեղինաց. եւ մըշտընջենաւոր փառաբանիս ի բանաւոր պաշտօնէից. * Ի քէն հայցեմք թողութիւն շնորհեա նընջեցելոց մերոց: Որ ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան բընակեցար. և անմահութիւն պարգեւեցեր մեզ մահացելոցս. ի քէն հայց: Յորժամ նըստիս յաթոռ փառաց դատողական իշխանութբ. և փառաւորես առ ի քէն փառօք ըզգինս արեան քո Տէր. ի քէն:

Որ անբաւ քո մարդասիրութեամբըդ. գթացար յազգըս մարդկան. ծընար ի կուսէն. ըզծընեալս սբ աւազանաւն * ըզնընջեցեալըսն մեր ընդ սուրբըս քո հանդոյ թագաւոր յաւիտենից: Որ ի վերայ խաչին զենար որպէս գառն. եւ զմարմին և զարիւնըդ քո բաշխեցեր ի փրկութիւն աշխարհի. զհաղորդեալս մարմնոյ քո և արեան. ըզնընջեց:

Կէ: Օրհնեմք ըզքեզ անըսկիզբըն Հայր Որդւոյդ միածնի. զոր առաքեցեր ի դարձումըն մոլորեալ ոչխարին. դարձո եւ զմեզ ի մեղաց Որդւոյ քո չարչարանօքն: Գովեմք ըզքեզ Բան եւ լոյս որ զտիրական քո պատկեր. լուսով ճրագի քո գըտեալ վերականգնեցեր. կանգնեա զանկեալըս մեղօք քոյին սուրբ չարչարանօքն: Բարեբանեմք զփառակիցըդ

Հօր զՀոգիդ ճշմարիտ. որ նորոգեցեր զհնացեալքս մեղօք հընդին Ադամայ. նորոգեա եւ զմեզ ի մեղաց նորոգութեամբ քո շնորհաց: Ուրախացիր բարձրելոյն հովանացեալ զօրութիւն. եւ բնակարան սուրբ Հոգւոյն որով ծնար զԲանն Աստուած. բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ:

Աղչ: Քրիստոս Աստուած աստուածոց. ողորմեա: Անօրէնութեամբ ի մեղս երկնեաց զիս մայր իմ. աղաչեմ փրկիչ ողորմեա: Վիրաւորեալ մեղօք անկանիմ առ քեզ փրկիչ. մի անտես առներ. ողորմեա:

Աղչ: Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատաց օրինակին Ղազարու ժուժկալութի. զի կամաւոր աղքատութեամբ արքայութեանդ երկնից ընդ նմին լիցուք արժանի. * լուր մեզ և ողորմեա Քրիստոս Աստուած: Որ փոխանակ հացին կարօտութեան զհացն անմահութեան նմա շնորհեցեր. եւ ընդ մեծատանն անգթութեան ի գոգն Աբրահամու ըզնա ընկալար. լուր մեզ և: Լուսաւորեա զաչըս սրտից ստանալ մեզ ողորմութեամբ ի քէն Տէր զողորմութի. զի մի ընդ մեծատանըն հայցեսցուք ի բոց հնոցին ծագիւ մատին ջուր ի զովացումն. լուր մեզ և:

Ցոր: Որ տըրտմահաղորդ քո չարչարանօք խաչին. ազատեցեր զըմարդն ի տըրտմազգեաց փայտէն և ի մեղսաճաշակ պտղոյն. * Քրիստոս Աստուած եւ մեզ ողորմեա: Որ մահուամբ քո կենդանի և մեռելութեամբըն յերկրի. նորոգեցեր դարձեալ զաշխարհս եւ ըզհողացեալ բնութիւս. Քրիստոս: Որ երեքօրեայ յարութեամբ քո և համբարձմամբըդ յերկինս. վերածեր զըմարդն առ կենաց փայտն եւ անմահական ճաշակն. Քրիստոս:

ՀՈԳ. Զանսկզբնաբար բղխումն ի Հօրէ և յՈրդւոյ զՀոգին ճշմարիտ. որ հնչմամբ ձայնի էջ ի վերնատունն այսօր նման սաստիկ հողմոյ. * զոր փառաւորեմք հոգեւոր երգով։ Զհամագոյակիցըն Հօր եւ Որդւոյ զբաշխողըն շնորհաց. որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրութեան լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր փառաւ։ Զաղբերն իմաստութե ըզկատարեալն անձնաւորութբ. որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս և յաւետարանս. զոր փառ։

ԱՏՆ: Աստուածածին խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութե. եւ նորստեղծս ի խաւարի լոյս ծագեցեր. * վասն որոյ ամենեքեան ընդ քեզ միշտ մեծացուցանեմք։ Անապական տաճար եւ մորենի անկիզելի. որ զանշէջ հուր Աստուածութեն ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն որոյ։ Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտիս. որով եղեւ յերկիր աւետեաց հորդեալ. Հոգւով ի քեզ տպաւորեալ Բանին. վասն որոյ։

ԽՆ: Ով պահապան որ ծագեցար յԵդեմայ. նշան յաղթութե ընդդէմ աներեւոյթ թշնամւոյն։ Դու փականելոյ դրախտին բացող եւ առաջնորդ աւազակին. որ զբոցեղէն սուրըն կապտեաց անեղին հրամանաւ։ Փառք Հօր։ Քեւ ցընծան ըստորայինքս ամ ի միւսանգամ քո գալըստեանն. եւ յաւէժ զուարճանան դասք անմարմնոցն առէիցս։

Այժմ և միշտ։ Որ ըստ նմանութեան մահու քո տընկակից արարեր. եւ երկնից արքայութեբդ ժառանգորդ լինել խոստացար. զհաւատացեալս գալըստեան քո Տէր. ըզննջեցեալսըն մեր ընդ սուրբըս քո հանգո թագաւոր յաւիտենից։

ԴՁ

Քանզի զքեզ օրհնեն իշխանութիւնք երկնից թագաւոր փառաց. ամենակալդ ամենակարօղ թող ըզմեղս մեր ննջեցելոցն. * և հանգո ի խորանի քում ի յարքայական ի հանգրստեան: Որ ի նախնումն ըզմարգարէն Մովսէս լուսաւորեցեր ածային փառօք տեսլեամբ ածութեանդ քո. լուսաւորեա և ըզմեր ըզննջեցեալսն. և հանգո: Բարեխօսութեամբ Ածածնի ծնողի և մօր քո յիշեա զգինս արեան քո Տէր. և դասաւորեա յերանաւէտ յանթառամ և յանտրտում ի կեանսդ. ի յարքայական ի հանգրստեան:

Փառք քեզ Հայր. որ կենարարդ ես մարմնոց եւ գոյացուցիչ հոգւոց. * ընկալ զօրհնաբանող հոգիս յանմահական քո հանգիստդ: Մարդասէրն Հօր Որդի. որ պատկերակից եղեր հողեղինացս եւ խաչեցար. ընկալ: Ամենազօր սուրբ Հոգի որ անդորրիչ ես նեղելոց եւ մխիթարիչ հոգւոց. ընկալ:

Ի հանգիստ քո Տէր ուր ամենայն սուրբքդ քո հանգչին. հանգո զհոգիս ծառայից քոց * ընդ սուրբս քո մարդասէր: Դու Ած. որ իջեր ի դժոխս. զերկունս մահու լուծեր ըզկապեալսն արձակեցեր. և զհոգիս ծառայից քոց հանգո ընդ սուրբս:

Աէ: Որ զօրէնս սրբութեան պահոց նախ ի դրախտին աւանդեցեր. զոր ոչ պահելով նախաստեղծիցն ճաշակմամբ պտղոյն ճաշակեցին ըզդառնութիւն մեղաց եւ մահու. վասն որոյ շնորհեա մեզ Տէր ճաշակել ըզքաղցրութիւն քո պատուիրանաց: Որ զանազան վիրօք մեղաց հարաք յոգիս ի թշնամւոյն. եւ ի բազմապատիկ հիւանդութիւնս. կարօտացաք մարդասիրիդ բառնալ ըզցաւս մեր. վասն որոյ

բժշկեա զմեզ Քրիստոս որպէս մարդասէր: Որ
եկիր ի փրկութիւն մարդկան ծննդեամբ կուսին Մա-
րիամու. եւ կենդանարար քո յարութեամբդ. հրաւ-
իրեցեր զմահացեալքս ի յարութիւն անմահութեան.
վասն որոյ աղաչանօք մօր քո կեցո զմեզ փրկիչ:

Աղչ: Համբառնամ առ քեզ Տէր զաչս իմ. նայեա
յիս գթութեամբդ քո. եւ ողորմեա: Դու ես յոյս և
ապաւէն իմ. զերծո զիս յորոգայթէ մեղաց. եւ ո-
ղորմեա: Ապրեցուցիչ իմ եւ փրկիչ իմ. ապրեցո
զիս յորոգայթէ մեղաց. և ողորմեա:

Ղչր: Օ գալուստ քո Քս այսօր յԵրուսաղէմ նոր
եկեղեցի սուրբ. յաղթական երգով բարեբանեմք.
* օրհնեալ եկեալ անուամբ Տեառն: Որ վասն մե-
րոյ փրկութեան յաւանակի նստեալ յանձն առեր.
ընդ մանկունսն բարեբանեմք. օրհնեալ: Թագաւոր
երկնաւոր. զեկեղեցի քո անշարժ պահեա. եւ զեր-
կրպագուս անուանդ քում պահեա ի խաղաղութեան:

Ցուր: Օ յարութիւն Աստուածորդւոյն հրեշտակապետն այս-
օր աւետէր կանանցն ասելով. * յարուցեալ է Տէրն
ի գերեզմանէն: Ընթացեալ կանանցն խնդութեամբ
պատմէին աշակերտացն ասելով. յարոյց: Վն որոյ
եւ մեք ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւն
Քսի. որ փրկեաց զմեզ ի ձեռաց մահու:

ՀՈԳ. Կենդանարար Աստուած մարդասէր Հոգի.
զժողովեալսն միաբանական սիրով լուսաւորեցեր
հրեղինօք լեզուօք. * վասն որոյ եւ մեք այսօր տօ-
նեմք զգալուստ քո սուրբ: Զուարճացան քո գա-
լստեամբն սուրբ առաքեալքն. կոչելով ի միա-
սին զցրուեալսն ի միմեանց բազմաձայն լեզուօք.
վասն որոյ: Հոգեւորական սէր միրկրութեամբ զար-

դարձեցեր նոքօք ըզտինգերս. ի զգեստըս լուսափայլըս եւ նորափետուրս. վասն որոյ։

ԱՁՆ։ Ծագումըն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ. եւ Բանըն հայրական անըմբըռնելի. հուր փայլակնացեալ եւ ի մարմնի բնակեցաւ. անվընաս պահելով զարարածս ամենայն։ Ծագումըն հրաշագործ որ ի կուսէն ծագեցաւ. ճառագայթելով զարարածս ամենայն. երկինք ցընծային եւ երկիր ուրախանայր. եւ Քրիստոս Աստուած ընդ մարդկան շրջեցաւ։ Առ քեզ ապաւինիմք ամենասուրբուհի. գերագոյն եւ հրաշալի եւ բաշխող բարութեանց. աղբիւր ես ծառաւեաց եւ հանգիստ աշխատելոց. եւ եղեր վերընկալ աստուածային Բանին։

ԽՆ։ Օրհնութիւն ս՟բ խաչի քոյ Ք՟ս՝ որ կանգնեցեր ի փրկութիւն աշխարհի. * սա՟իկ պահեսցէ ըզմեզ յամ փորձութենէ։ Քանզի ի սմա բարձրացար Աստուած. եւ ի սմա հեղեր ըզպատուական զարիւնըդ. սա՟իկ պահեսցէ։ Փառք Հօր։ Եւ ըզքո միւսանգամ ըզգալուստըդ. նըշանաւ խաչի քո ցուցեր աշխարհի. սա՟իկ պահես։

Այժմ եւ միշտ։ Ընդ հոգւոցն արդարոց կատարելոց եւ զհոգիս ծառայից քոց հանգո ընդ սուրբըս քո մարդասէր։

ԴԿ

Հայր անըսկիզբըն բարեխնամ մարդասէր. որ ստեղծիչդ ես հոգւոց եւ մարմնոց. յիշեա զննջեցեալըն մեր. * եւ հանգո ընդ ս՟բըս քո։ Որդիդ միածին. որ գըթածդ ես առ ամենեսեան. եւ խաչիւ եւ արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս. յիշեա զգինս արեան քո Տէր. եւ հանգո։ Հոգիդ ճշմարիտ. որ աղբիւրդ ես

անըսպառելի. եւ լցուցիչ ամ բարութեանց. յիշեա զննջեցեալսն մեր. եւ հանգո ընդ սուրբս քո։

Խնդրեմք ի քէն թագաւոր փառաց փառաւորեալդ ի զուարթնոց. * զննջեցեալսն մեր ընկալ մարդասէր Տէր. եւ հանգո ընդ սուրբս քո։ Յորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդարութեամբ արեգակն. զննջեցեալսն։ Ի նստել քո յաթոռն դատաւոր ահեղ Քս փրկիչ մեր եւ յոյս. զննջեցեալսն։

Ո՛ր արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի հրեղէն կառս. * յիշեա զհոգիս ննջեցելոց մերոց. եւ հանգո ընդ սուրբս քո։ Ո՛ր երկայնամիտդ ես առ ամենեսեան. և ներող յանցանաց մերոց. յիշեա։

Ակ։ Բանն որ ընդ Հօր յէութեան եւ համագոյ ընդ Հոգւոյն. զպատկերն իւրական խառնեալ ընդ հողեղէն բնութեանս. զոր զարդարեալ փառօք եդ ի դրախտին փափկութեան։ Յորում ցնծայր զուարճացեալ աննախանձական խնդութեամբ. քանզի զԱծ տեսանէր մի՛շտ խոնարհեալ ի դրախտին. յորմէ զլուսոյն ճառագայթ տպաւորէր ի յինքեան։ Վասն որոյ աղաչեա մայր Աստուծոյ Մարիամ զմիածին քո զՈրդին զի՛ շնորհեսցէ 'սա աւազակին. ժառանգել վերստին մեզ զդրախտին վայելչութիւն։

Ագ։ Քրիստոս Աստուած յոյս անպաշտպանողաց. շնորհեա զթողութիւն բազում յանցանաց իմոց։ Առ քեզ բազմագութ ապաւինեալ կարդամք մի մերժեր զմեզ յողորմութենէ քումմէ։ Որպէս զաւազակն աղաղակեմ առ քեզ. յիշեա եւ զիս Տէր ի քում արքայութեանդ։

Դպ։ Յիսուսիւ միածինն անմահութեան պարգեւատուն երեւեցաւ մեզ. խափանեաց զզօրութի

մահու: Բղխմամբ արտասուաց Մարիամու և Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն. խնդրէին զնորոգումն եղբօրն: Բանիւ Բանն Ած կենագործեաց ըզՂազարոս ի թաղմանէ. և եկեալ արտաքս անապական:

Ցոր: Յորժամ եկին ի գերեզմանն իւղաբեր կանայքն. եւ բերին ըզխունկս ի խնկել զանապական մարմինն: Յայնժամ հրեշտակն աւետարանէր յարեաւ Քրիստոս. պատմեցէք աշակերտացն զյարութիւն Տեառն: Իսկ նոցա զարհուրեալ վս ահագին տեսլեանն. պամէին աշակերտացն զահագին տեսիլն:

ՀՈԳ. Ի համբառնալ Բանին յերկինս եւ ի նստել ընդ աջմէ Հօր. զուարճացեալ առաքելոցն երկրպագէին. օրհնելով * ըզՀայր զառաքող Հոգւոյն: Համահաւաքեալ գունդք սրբոցն ի վերնատունն խորհրդոյ. համբարձմամբ աչաց սպասէին Հոգւոյն. օրհնելով ըզՀայր: Ցանկարծահաս հնչմամբ հեղեալ կենդանարար աղբեր լուսոյ. անմահական կենաց լուսով զարդարեալ. որք օրհնէին ըզՀայր:

ԱՅՆ: Ածածին մայր եւ կոյս. ծագող արեգականն արդարութեան. որ լուսաւորեացն ըզմեզ. * Հոգեւոր երգով զքեզ բարեբանեմք. եւ փառաւորեմք ըզմիածին քո զՈրդին: Էլոյծ զօրէնս բնութեան մարդկան. հրաշափառ քո ծընունդ. եւ զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ. եւ կուսութեանդ քո ոչ խախտեցան կընիք. Հոգեւոր: Զքեզ մորենի անկէզ. լեառն վիմածին. դուռն փակեալ եւ աղբեր կնքեալ. նախատեսացըն գուշակեալ մայր եւ կոյս. Հոգեւոր:

ԽՂ: Խաչի քո Քս երկրպագեն արարածք ամենայն. որ ի փրկութիւն մեզ կանգնեցաւ. սա եղիցի մեզ

պահապան յաղթող. * ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց բանսարկուին։ Ի սմա բարձրացար բարձրողդ անիծից. որ փառաւորեալդ ես ընդ Հօր. ժողովել ըզհեռացեալսըն կենսաբեր փայտիւն. ապրեցուցանել։

Փառք Հօր։ Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա սպասէին արդարեալքն ի մեղսասէր բանտին. որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց բանսարկուին։

Այժմ և միշտ։ Ո՞ր միւսանգամ գալոց ես հայրենի փառօք նորոգել զնախաստեղծին ծընունդ. յիշեա զհոգիս ըննջեցելոց մերոց. և հանգո ընդ սուրբս քո։

Ի Հանգստեան պաշտաման յետ շարականացս Սաղմոս Եւ Աւետարան, Եւ ապա՝

Տեառն Ներսէսի երգ ասացեալ վասն ի Քրիստոս ննջեցելոց։

ԲԿ ԴԿ

Աստուած անեղ անժամանակ, Հայր անըսկիզբն և անքննին. Որդւոյ ըսկիզբն ծնընդեամբ անճառ, Հոգւոյ բըղխման աղբերաբար. աղաչեմք ըզքեզ գըթած, երկայնամիտ և ողորմած. * ողորմեա քո ստեղծուածոյս ի քեզ յուսով ննջեցելոյս։

Բանդ որ ի ծոց Հօր միածին, և կերպարան սկըզբնատըպին. որով երկինք գոյացան, աշխարհս լըրիւ հաստատեցան. հայցեմք ի քէն Տր և փըրկիչ, ամենողորմ և կեցուցիչ. ողորմեա քո։

Գերագոյն շնորհաց բաշխող, երկնաւորաց և երկրայնոցս. կեանք և կենաց տըւող Հոգի, Հօր և Որդւոյ արարչակից. խընդրեմք ի քէն աղբեր բարեաց, արբուցանողըդ ծարաւեաց. ողորմեա քո։

Դաւանեմք ընդ սրովբէից զկենդանարարըդ համայնից. երեքսըրբեան մի Տէրութիւն, Հայր և Որդի և սուրբ Հոգի. յոր հանգուցեալըս մըկըրտեալ և հաւատով խոստովանեալ. ողորմեա քո։

Երրակի՛ Թիւ կատարեալ, յերիս անձինըս բաժանեալ. ա̃ծութ̃ միաւորեալ, միով բնութեամբ հաւասարեալ. յորմէ կապեալք և արձակիմք և վերըստին անլոյծ կապիմք. ողորմեա քո։

Ջէակի՛ցըդ Հօր զՈրդի փառաւորեմք անըռելի. որ իջեր յարգանդ կուսին, զադամայինն առեր մարմին. աղաչանօք Աստուածածնին անապական քում ծընողին. ողորմեա քո։

Երեւեցար մարմնով յերկրի, որ ի Հօրէ անմեկնելի. ընդ հողեղէնըս բնակեցար՝ ի հրեղինաց երկրպագեալդ. պաղատանօք երկնաւորաց՝ փառաբանիչ քոց հրեշտակաց. ողորմեա քո։

Ըստ օրինացըն Մովսէսի ընծայեցար ի տաճարին, զի ըզըննութիւնըս մարդկային ընծայեսցես Հօր ի յերկինս. խընդըրուածովք ն̃ը ծերունւոյն քեւ ի կապից արձակելոյն. ողորմեա քո։

Թագաւո՛րըդ հրեղինաց, որ ընդ մարդկան հողեղինաց. շըրջեցար տնօրինաբար, կրեցեր ըզկիրըս մարդկաբար. որ վասըն մեր զայս ամենայն ի յանձն առեր խոնարհութեամբ. ողորմեա քո։

ԲՁ ԴՁ

Փո՞ղովեա՛լքս ի հրա՛ժա՛րումըն ծա՛ռա՛յի քո յաշխարհէ՛. հա՛յցեմք ի քէն ա՛րտա՛սուելով և պա՛ղա՛տիմք զայս ասելո՛վ. Ճա՛նա՛պա՞րհ ընդ քե՛զ ե՛լից, հանգո՛ւցե՛լոյս լեր ուղեկի՛ց, * ի՛ յօթեւանս Հօ՛ր քո՛ լուսոյ ը՛զնը՛նջեցեալը՛ս մե՛ր հանգո՛։

Ի փըրկութեան մերոյ սկըզբան մըկըրտեցար ի Յորդանան. զոր շնորհեցեր Նոր աւազան ի մաքրութիւն մեղաց մարդկան. հայցմամբ կըրկին կարապետին, մեծին ի ծնունդըս մըկըրտչին. ի յօթեւանս։

Լուսաւո՛ր ձայնիւ յերկնից զքեզ դաւանեաց Հայր էակից. աղաւնակերպ Հոգին իջեալ, առ համագոյդ

իւր հանգուցեալ. ըզմըկըրտեալս նովին Հոգւով յորդէգրութիւն Հօր հաւատով. * ի յօթեւանս Հօր քո լուսոյ ըզնընջեցեալըս մեր հանգո:

Խաւար մեղաց հալածեցաւ, լոյս գիտութեան քեւ ծագեցաւ. խայթուած օձին բըժշկեցաւ, հիւանդութիւն մեր ողջացաւ. կենդանարարըդ մեռելոց եւ լուսատուդ խաւարելոց. ի յօթեւանս:

Ծագումն անուն առ ի Հօրէ, որ ընտրեցեր ի յաշխարհէ. լուսաւորիչ տիեզերաց ըզդասս ընտրեալ աշակերտաց. աղաչանօք առաքելոցն, փող յարութեան մեր եղելոց. ի յօթեւանս:

Կեանք ի կենաց լոյս ի լուսոյ, որ ըստեղծեր զմեզ ի հողոյ. նորոգեցեր դարձեալ կըրկին ծնընդեամբ սըրբոյ աւազանին. զոր կեցուցեր շնորհիւ քոյին ի մահուանէն այն առաջին. ի յօթեւանս:

Հոգւով լըցեր զմարդն առաջին, զոր կորուսեալ խաբմամբ չարին. ըզնոյն Հոգի բանիւ քոյին հեղեր յոգիս մեր վերըստին. նովին Հոգւով սուրբ եւ բարի, առաջնորդեա հոգւոյ սորին. ի յօթեւանս:

Ձայնեցե՛ր առ Ղազարոս, որով ետուր մեռելոց յոյս. կենդանութեամբ չորեքօրեայն կենդանացան որք յԱդամայն. կենաց ձայնիւ վերջին փողոյ կոչեա ըզսա յայսըմ՝ հողոյ. ի յօթեւանս:

Ղօղեալ սարսեաց պահակ մահու, ի կենարար ձայնին լըրոյ. արագապէս զոյգ ընդ բանին, ետ ըզմեռեալն ըստ հրամանին. իշխանք օդոյս այս սարսեսցեն, զհոգիս սորա մի՛ արգելցեն. ի յօթեւանս:

ԱԿ ԳԿ

Ճա՛նապա՛րհ մոլո՛րե՛լոց և ճա՛ռա՛գայթ խաւարելո՛ց. հրա՛ւիրեցեր զո՛րդի՛ս լուսոյ ի յե՛րկնա՛յին հարսանիս քո՛. ը՛նդ զուա՛րճալե՛աց անդ ժո՛ղո՛վոց արժա՛նացո ըզսա դասո՛ւց. * լե՛ր լապտերօք մե՛ծ յա՛ռագաստ ընդ ի՛մաստուն նը՛բ կո՛ւսանա՛ց:

Մերով բնութեամբ զոր ըզգեցար ի փայտ խաչին բեւեռեցար. լուծանելով զմեզ ի մեղաց, ի Նախահօրըն կապանաց. լոյծ և ըզսա ի յանցանաց վասըն քո սուրբ չարչարանաց. լի լապտերօք։

Յետ կամաւոր մահու խաչի եդար ի նոր գերեզմանի. երեքօրեայ թաղմամբ յերկրի նոր ըստեղծեր զմեզ կենդանի. զիջեալս ընդ քեզ ի հող մահու՝ վերակոչեա ձայնիւ փողոյ. լի լապտերօք։

Նըստեալ կանանցն իւղաբերից և ողբային արտասուալից. իբր ըզմեռեալ անյուսալից, ըզկենդանիդ յաւիտենից. վասըն նոցին նա արտասուաց մաքրեա ըզսա ի յանցանաց. լի լապտերօք։

Շարժեալ հիմանցըն դըժոխոցն ի տեսանել ըզքեզ ներքնոցն. հաներ զհոգիսն որ ի բանդին, կապեալ զիշխանըն մահածին. ընդ հանգուցեալ հոգիս սըրբոց հանգո զհոգիս ննջեցելոյս. լի լապտերօք։

Ուրախութեամբ զօրք երկնային յերկնից յերկիր իջանէին. յորժամ յարեար ի մեռելոց, լոյս ծագեցար արարածոց. սուրբ յարութեամբ քո կենարար՝ յարո ըզսա ի կեանս անմահ. լի լապտերօք։

Զըհանդուրժեալ պահապանացն ի յերկիւղէ երկնաւորացն. որք աւետիս տային կանանց, թէ մահ լուծաւ մահկանացուաց. սա որ մահու քո տընկակից՝ լիցի կենացդ հաղորդակից. լի լապտերօք։

Պարակցեալ անմարմնականքն առ կենսատու սուրբ գերեզմանն, տան աւետիս ազգի մարդկան վասըն կենացն յաւէժական. դասաւորեա պարուց նոցին ըզնըննջեցեալս յօրըն վերջին. լի լապտերօք։

Ջահաւորեալ նըշան խաչին, յարեւելից փայլեալ ծագի. հաւատացեալքն ի քեզ բերկրին. և ուրացողքըն կոծեսցին. զերկըրպագուս սըրբոյ խաչին, պայծառացո լուսով նորին. լի լապտերօք։

## ԱՁ ԳՁ

Ուա՞հ գործեա՜լ երկնաւորաց գան առաջի քո նախընթաց. զընարեալըս քո ժողովելով քեզ ընդ առաջ բերեն ամպով. ընդ աղաւնեացն օդապարից խառնեալ ըզսա նբ երամից. * դասաւորեա ըզսա վերնոցն երգել ըզփառս ընդ զուարթնոցն:

Սարսափի՛ն տարերք երկրի, յորժամ փառօք գաս Հայրենի. արեգական լոյս խաւարի, լուսինն աստեղքըն նըւաղին. ըզսա յաւուրն աներեկի լուսաւորեա լուսով քոյին. դասաւորեա:

Վերնակա՛ն զօրացըն պետ փողէ բարբառ աւետաբեր. արիք մեռեալք որք յԱդամայ, քանզի ահա եկըն փեսայ. ընդ հարսնացեալ մաքուր հոգւոց կարգեա ըզսա ի թիւ սըրբոց. դասաւորեա:

Տիրակա՛ն յաթոռ նըստիս, յարարածոց երկրպագիս. արդարութ՟բ զաշխարհ դատես, վարձս ըստ գործոց հատուցանես. յայնժամ շնորհեա ողորմութ՟ի, ննջեցելոյս մեր թողութ՟ի. դասաւորեա:

Բամեալ մարդկան ազգ ժողովին, որք յԱդամայ ծընեալ լինին. և հրեղինաց դասք երկնային համանգամայն վայրաբերին. ի յայնմ ահեղ հրապարակին յիշեա ըզսա յօրն ահագին. դասաւորեա:

Ցուցանի՛ն գաղտնիք մարդկան իւրաքանչիւր որ գործեցան. բարեաց գործողքըն պըսակին, չարեացն ի հուրն անշէջ մատնին. յայնժամ յիշեա զսորա բարին. գործքս մեղացըն ջընջեսցին. դասաւորեա:

Իւսին պըսակք զանազանեալք, և պատմուճանք լուսափայլեալք. սուրբ վըկայիցն ի գլուխ եդեալ և արդարոցըն զարդարեալ. հաղորդս արա հայցմամբ նոցին ըզսա լուսոյ փառաց նոցին. դասաւորեա:

Փառաց ի փառըս բարձրանան, աջակողմեանքըն վերանան. յորժամ լըսեն զերանական ձայն օրհնութ՟ե ի քէն կոչման. ննջեցելոյս մեր լըսեցո զաստուածային

*բարբառըդ քո. դասաւորեա ըզսա վերնոցն երգել ըզփառս ընդ զուարթնոցն։*

*Քահանայք և ժողովուրդք հայցեմք ի քէն Տէր բարեգութ. ընդ ննջեցեալսըն հաւատով ընկալ ըզմեզ նովին յուսով. յԵրուսաղէմ քաղաք վերին յորում արդարքըն ժողովին. փառս վերերգել միշտ ընդ նոսին Երրորդութեանդ երրեակ անձին։*

ԴՁ

*Օրարիչ եւ մարդասէր. անոխակալ եւ բարեգութ. որ գովիսդ ի սրովբէից. Տէր դատաւոր արդարութեան. ընդ սրբոց առաքելոց. Տէր պըսակեա զմեր ննջեցեալսն.* ողորմեա Տէր ողորմեա. հոգւոցըն մեր ննջեցելոց։*

*Յորժամ գրեալքըն կատարին. որ զայնմ աւուր մեզ պատմեցին. մարգարէից բանքըն յարգին. առաքելոցըն վըճարին. ողորմած։*

*Ի վերինն Եդէմ ի բնակարանըս հրեշտակաց. ուր Ենովք և Եղիաս կան ծերացեալ աղաւնակերպ. ի դրախտին եդեմական. պայծառացեալ արժանապէս. ողորմած։*

*Թագաւոր փառաց Քրիստոս, որ ժամանեալ գաս ի յերկնից. ի վերայ թեւոց հողմոց. քո հայրենի կերպարանօք. և առնես հրափորձութեամբ. ըզքըննութիւն որդւոց մարդկան. ողորմած։*

*Ի դնել բեմին բազմի փեսայն. և առագաստըն զարդարի. գաբրիէլեան փողըն գոչէ. սուրբք ամենայն անդ հաւաքին. արդարոց դասքըն բերկրին. իսկ մեղսասէրքըն թախանձին. ողորմած։*

*Յորժամ հնչիւն փողոյն լինի. և ղեւտական գիրըն յայտնի. ճառագայթ սըրբոյ խաչին. յարեւելից փայլեալ ծագի. հրեշտակաց գունդք ծաւալին. հրեշտակապետք պարունակին. ողորմած։*

Ահեղ խորհուրդ քահանային. բազկատարած կայ ի բեմին. առաջի սուրբ սեղանոյն. հուր շիջանի խաւար մերժի. տրտմեալ հոգիքն ուրախանան. զի թողութիւն մեղաց լինի. * ողորմած Տէր ողորմեա. հոգւոցըն մեր ննջեցելոց:

Մովսէս աստուածախօս. և Ահարոնը ղեւտացին. մարգարէքն Իսրայէլի. և քահանայք հին օրինին. յառաջագոյն մեզ ծանուցին. ըզգալուստ սուրբ միածնիդ. ի փրկութի մեզ յայտնեցին. յանապատի կերակրէին. ողորմած:

Տրտմահաղորդ չարչարանօք. ի յանձն առեր ըզմահ խաչին. և փայտի՛ն բարձող եղեր. վասն Ադամայ նախաստեղծին. ողորմած:

Զարհուրեցան զօրք երկնայինք. յորժամ տեսին զՏէրդ ի խաչին. արեգական լոյս քօղարկեալ. և լոյս լուսնին նըւազեցաւ. յահեղ փառաց Աստուածոյդ. խաւար եղեւ ընդ տիեզերս. ողորմած:

Ուրախացան ազգըք մարդկան. յորժամ լըւան զքո յարութիդ. նորափետուր զարդարեցան. ի յարութեն սբ միածնիդ. ողորմած:

Աղաչանօք սրբոյ խաչին. և անբարբառ բարեխօսին. և սրբոյ Աստուածածնին և Յովհաննու կարապետին. և սրբոյն Ստեփանոսին. և առաջին մարտիրոսին. և սրբոյ Լուսաւորչին. Հայաստանեայց հայրապետին. և սրբոց առաքելոց. և համօրէն մարտիրոսաց. ողորմած Տէր ողորմեա հոգւոցըն մեր ննջեցելոց:

Ես մնացի ի վերանալ յինէն աւուրց իմոց. յորժամ երթայցեմ և ես այսօր. յառաջին օթեվանին զոր ոչ գիտէի. օգնեա և ինձ քո այսօր. յառաջին ճանապարհին. և ի միւսանգամ գալըստեանըն քո օգնեա ինձ:

Եկըն եհաս օր վախճանի իմոյ. լալումն ող–

բուռն եւ աշխարհուռն. սիրտ իմ խռովեցաւ յիս. եւ ոսկերք իմ ցամաքեցան. * օգնեա՛ և ինձ քս այսօր. յառաջին ճանապարհին. և ի միւսանգամ գալստեանն քո օգնեա՛ ինձ։

Ի մահիճս իմ զարթուցին զիս. պահանջողք հոգւոյ իմոյ. տանել զիս ճանապարհ հեռաւոր զոր ոչ գիտէի. օգնեա՛։

Նայեցայ եւ ոչ ոք էր որ օգնէր ինձ. ապաւինեցայ յԱծ փրկութեան իմոյ. ցընծասցէ հոգի իմ յարքայութեան քում. օգնեա՛ և ինձ քս այսօր յառաջին ճանապարհին. և ի միւսանգամ գալստեանն քո օգնեա՛ ինձ։

Գրեցայ ես ի գիր կենդանութեան. եւ մեկնեցայ երթալ առ արարիչն երկնի եւ երկրի. օգնեա՛։

Ցանկըստուեր եւ յանցեղ լուսոյն. հեռացայ խաւարամբ խաւարային. ճաշակեցի ըզմահառիթ պըտուղն. հողանայ պատկեր բարերար ստեղծողիդ. օգնեա՛։

Ցանջատման հոգւոյս ի մարմնոյս. ի քակտել գեղեցիկ շինուածոյս. զարհուրիմ ի սպառնալեաց թագաւորին. թէ պահանջէ յինէն զտաղանդ պատուիրանին. օգնեա՛։

Կուսածին մարդացեալ Ած իմ Յիսուս. յայնմ աւուր ահեղ ատենին. ընդ գինս արեան քո մի՛ դատապարտեր. օգնեա՛։

Սոսկալի է օր փախճանին. եւ ահեղ է օր դատաստանին. յայնմ աւուր ահեղ ատենին. ընդ գինս արեան քո մի՛ անտես առներ. զի պատկեր եմ բարերար ստեղծողիդ. օգնեա՛։

Զահաւոր դատաստան դատաւորին տեսի. եւ զարհուրեցայ. զի անպատրաստ եգիտ զիս. ի հրամանաց քոց Թագաւոր յաւիտենից. օգնեա եւ ինձ քո այսօր. յառաջին ճանապարհին. եւ ի միւսանգամ գալստեանն քո օգնեա ինձ։

Ա՛ծածին անարատ մայր Տեառն եւ կոյս ու բարեխօսեա առ Որդին քո միածին. զի փրկեսցէ զմեզ ի սպառնալեաց գեհենոյն. եւ պարգեւեսցէ մեզ զերկնից արքայութիւնն. եւ հանգուսցէ զհոգիս մեր ննջեցելոց. օգնեա եւ ինձ քո այսօր. յառաջին ճանապարհին եւ ի միւսանգամ գալստեանն քո օգնեա ինձ։



# Զ. ՇԱԲԱԹ
# ՔԱՌԱՍՆՈՐԴԱՑ, ԱԶ.

*Ցիշատակ է Ղազարու յարութեան:*

---

## Ի ԳԻՇԵՐԻ

### Օրհն—բի—ն ԱԶ:

Այսօր գոլով ի Բեթանիա քո ամենազօր հրամանաւըդ. ձայնեցեր Ղազարու և դողացաւ մահ. դըժոխք պարտեցաւ ապականութիւն լուծաւ.* կենդանարար Քո՛ կեցո զմեզ: Այսօր գոլով ի Բեթանիա զքո զաշխարհակեցոյց ձեռք զյարութիւնդ. յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն ի թաղմանէ. կենդանարար: Այսօր գոլով ի Բեթանիա Եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ ասէին. զՄարիամու զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ որդւոյն Մարիամու. կենդանարար:

† Կենդանութեանց բաշխող Քրիստոս ի Բեթանիա եկաւորեալ այսօր. բարեկամին Ղազարու պարգեւէ զկենդանութիւն: Տնօրինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու. ողբանկցէր և որպէս մարդ հարցանէր ուր եդիք զՂազարոս: Եւ որպէս զԱծ բարբառով յարուցանէ ի մեռելոց զչորեքօրեայն. և զուգընթաց ձայնին մեռեալն ելն արտաքս անապական:

Կցուրդ ԲԶ: Յածային ձայնէ գոչմանըն սարսեցին դողալով կարապետուք դըժոխոցն. Եւ մեռեալն ելն արտաքս անապական: Կացեալ ի դուրս այրին և ձայնէր ազդարարող բարբառովն ի գերեզմանն. Ղազարէ ել արտաքս անապական:

Գձր։ Նկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզհօրն ըզվըտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս արարչին. եւ զգեցաւ զթըզենւոյն ծածկոյթ փոխանակ անձառ լուսոյն։ Գովեցէք զՈրդին ԱՅ այսօր ցընծութեամբ որդիք Ադամայ. որ եկն ի խնդիր եղծեալ պատկերին. եւ գըտեալ նորոգեաց ի փառս առաջին պատմուճանին։ Նոր նորոգող բնութե մերոյ Յս. որ ի խորհուրդ հընութե մարդոյն. զանպըտուղն այսօր չորացուցեր զթըզենին. եւ ըզմեզ ի հնացեալ մեղաց նորոգեա ի կեանս անմահ։

Աէր։ Որ ըզխորհուրդ քո գալըստեանդ յառաջագոյն գուշակեցեր. մարգարէիւքն Իսրայէլի զօրս ընտրեցեր յետ Մովսեսի. որք խօսեցան Հոգւով սրբով բազմապատիկ օրինակօք. տուր մեզ փըրկիչ ողորմութիւն և ըզմեղաց ըզթողութիւն։ Ի մերձենալ ամաց վերջին զօր տեսանողքըն ծանուցին. ըզհասանել մեր փըրկողիդ առ ի վախճան ժամանակին. երեւեցար ի մէջ մարդկան զգեցեալ ըզկերպ ծառայական. տուր մեզ փըրկիչ ողորմութիւն և ըզմեղաց ըզթողութիւն։ Ի վեցերորդ աւուր զԱդամ. ստեղծեր ի տիպ քո տիրական. որ ոչ պահեալ ըզպատուիրանըն մերկացաւ ըզպատմուճանն. իսկ Նոր Ադամդ ի վեց դարուն այց արարեր կորուսելոյն. տուր մեզ փըրկիչ ողորմութիւն և ըզմեղաց ըզթողութիւն։ Տաճար լուսոյ անըստուերին և առագաստ անձառ Բանին. որ ըզնախնոյ մօրն Եւայի բարձեր զանէծսըն տըրտմալի. հայցեա յՈրդւոյ քո միածնի Հօր հաշտութեըն միջնորդի. բառնալ ի մէնջ ըզխռովութի և տալ զոգւոց խաղաղութիւն։

Ցոր։ Որ ի վերդ ես քան զամ ըզմիտս և ըզխորհուրդս. *փառաց թագաւոր խընայեա ի մեզ։ Որ

միայն ունիս զանմահութիւն և զանեղութիւն. փա-
ռաց թագ: Որ նըստիս ի քրովբէս Երրորդութի ան-
բաժանելի. փառաց: Որ երկըրպագեալդ ես ի հրեշ-
տակաց և ի մարդկանէ. փառաց:

ՀՈԳ. Սարսափելի հողմոյ նըման ահեզագոչ սաստիկ
հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն
երկոտասան. որք առ ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի
հրով մաքրեցան. մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ
ըզգեցո ըզլոյս փառաց: Էկիր յերկիր աստուածաբար
դատել զաշխարհս իշխանաբար. ՚նդ արդարութեան
և ընդ մեղաց և ընդ չարին դատաստանաց. բացեր
ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդ-
կան. մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզ-
լոյս փառաց: Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն
զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց
եօթըն սեամբ քո հաստատեաց. տըն տես ի նմա եդ զա-
ռաքեալսն եօթնեակ շնորհօք քո զարդարեաց. մա-
քրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց:

ՆՆՉ: Ի ձայն փողոյ գալըստեան քո Տէր ամ՟ հոգիք
զարթիցեն կալ ի դատաստանի քում Քս՟ Ած՟ մեր:
Յորժամ հընչէ բարբառն ահագին. և հարկանի փող
յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմք փառք
գալըստեան քո Տէր: Յորժամ առնես հատուցումըն
Տր՟ և սուրբք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնոր-
հեսցես փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ:

ԱՓՆ: Բանն առաքեալ ի Հօրէ՟ որ վասն մեր մար-
մնացաւ՟. եւ ցընծութի աշխարհի յայտնեցաւ. *ըզ-
քեզ բարեբանեմք Ածածին կոյս: Զի որում ոչըն
հանդուրժէին՟ բոցանըշոյլ սերովբէ՟քն. նա բնա-
կեցաւ ի քում յորովայնի. ըզքեզ: Յորմէ սարսեալ
դողային՟ն փայլակնացայտ ի լուսո՟յն. ի գիրկըս

քո ըզնա ընկալար. ըզքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս։

Խղ։ Այսօր խնդրի պատուական փայտ խաչին աւանդեալն ի Գողգոթա. ի ձեռն աստուածասէր դշխոյին. * Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային նշանիս։ Այսօր ընծայէ Գողգոթա ըզծածկեալն ի յերկրի՝. վերաբերեալ անուշահոտ խնկովք. ի ձեռն երանելւոյն Յուդայի՝. Եկայք։

Փառք Հօր։ Այսօր ի ձեռըն փրկական նշան խաչին կենագործի պատանին մեռեալ. եւ ողբայ սատանայ ըզկործանումն իւր. իսկ մեք քնի հաւատացեալք երկրպագեսցուք աստուածային նշանիս։

Այժմ և միշտ։ Ելեալ ի գերեզմանէն երիղապինդ պատանօքըն մեռեալն. հրամայեաց լուծանել ի կեանսըն յաւիտենից։

Մաղթանք. Փառք հրաշափառ գալստեան։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Բարձր առնեմ զքեզ Տր, զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։ Տէր Ած իմ կարդացի առ քեզ. և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ որք իջանեն ի գուբ։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Փ. Եհան զիս ի գբոյ տառապանաց. ի կաւոյ և ի տըղմոյ։ Հաստատեաց ի վերայ վիմի զոտս իմ. և ուղղեաց ըզգնացս իմ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։ Դասք հրեշտակաց օրհնեն ըզքեզ Քս. ալէլուիա. մարդկան ազգ սաղմոսեն քեզ. ալէլուիա։

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒ

Հարց ԲՁ:

Ընծային գոչմամբ ձայն արկեալ առ Ղազարոս. կոչեցեր ի թաղմանէ. Աստուած հարցըն մերոց: Որ զարտասուս Մարիամու և Մարթայի ոչ անտես արարեր բարերար. Աստուած հարցըն մերոց: Զչորեքօրեայ զմեռեալն իշխանութեամբ անապական կոչեցեր ի թաղմանէ. Աստուած հարցըն մերոց:

Գ. Գործք Տեառն ըզՏէր օրհնեցէք. Ե~~~ու բա~~~րձր արարէք ըզնա յաւիտեան: Փառք Հօր: Գործք ըզՏէր օրհնեցէք: Որ Հօրն է փառակից. ի Բեթանիա եկըն այսօր. յարութիւն առնելով Ղազարու. *օրհնեցէք և գովեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան: Այժմ և: Իսրայէլ ըզՏէր օրհնեսցէ: Եւ լուծեալ ըզզօրութիւս դըժոխոց. ածաբար կոչեաց ըզմեռեալ չորեքօրեայն ի թաղմանէ. օրհնեցէք:

Մեծացուսցէ ԲՁ: Ըզկուսութիւնդ քո Ածածին անարատ զոր ոչ բոցանկիզեաց հուր ածութեանն. մեծացուցանեմք: Փառք Հօր: Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ. Քն Աըծ. և փրկիչ անձանց մերոց. մեծացուցանեմք: Այժմ և: Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք:

Ողորմեա ԴՁ: Որ ի չորեքկերպեան կենդանեաց փառաբանիս ի բարձունս. այսօր մարդասիրապէս փըծ~~~րկիչ. ի Բեթանիա երթալ յանձն առեր. *աղբիւր կենաց մեր և յոյս ողորմեա մեզ: Փառք Հօր: Որ յարտասուս Մարիամանց գթացեալ արտասուեցեր և ասացեր ցնոս՝. ուր եծ~~~դիք. ես յարուցից ըզսիրելին իմ զՂազար. աղբիւր: Այժմ և. Ածային արար–

չամգործ ձայնիւըդ քո քն. ի թաղմանէ կոչեցեր զՂա-
զարոս. ցուցար կենդանացեալ եւ մեռելոց Արդ.
աղբիւր կենաց մեր եւ յոյս որոգմեան մեզ։

Տեղչեբրենէ Դ2. Աղբիւր անմահութեն բղխեալ
ի Բեթանիա. կենագործեաց ըզՂազարոս ի թաղմանէ։
փառք Հօր եւ։ կանխեալ Մարիամանցն արտասուալից
հառաչմամբ. գտին կենդանացեալ զչորեքօրեայ զմե-
ռեալն։ Այժմ եւ միշտ եւ։ Ցաստուածային ձայնէ գոչ-
մանըն սարսեցին դողալով դըժոխք. եւ երիզապինդ
մեռեալն ըզգեցաւ զանմահութիւն։

Առաւօտ։ Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. մ.
փրկեցեր զիս յայնցանէ որք իջանեն ի գուբ։
Բարձր առնեմ ըզքեզ Տր զի ընկալար զիս. եւ ոչ
ուրախ արարեր զթշնամիս իմ յիս։

Քարոզ. փառաւորեսցուք. հօր գանձ։

Մանկանց Դկ. ԱՏ։ Յիսուս միածինն անմահ-
ութեց պարգեւատուն երեւեցաւ մեզ. խափա-
նեաց զզօրուԹ մահու։ փառք Հօր։ Բըղխմամբ արտա-
սուաց Մարիամու եւ Մարթայի անկեալ առ ոտսըն
Տեառն. խընդրէին զնորոգումն եղբօրն։ Այժմ եւ։
Բանիւ Բանն Ած կենագործեաց ըզՂազարոս ի
թաղմանէ. եւ եկեալ արտաքս անապական։

Քարոզ. Վն խաղաղութեան։ Աղ. Սուրբ ես Տէր։

Զկնի աղօթիցն ակսանին է Նե Սաղմոս ԻԹ։

ԿՑ. Տր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս
յայնցանէ, որք իջանեն ի գուբ։

Փխ. Բարձր առնեմ զքեզ Տր, զի ընկալար զիս. եւ
ոչ ուրախ զթշնամիս իմ յիս։

Տէր Աձ իմ կարդացի առ քեզ եւ բժշկեցեր զիս.
Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայն-
ցանէ, որք իջանեն ի գուբ։

Սաղմոս ասացէք Տեառն սուրբք նորա. խոստովան եղերուք յիշատակի սրբութ՟ն ն՟ր։

Սրտմտութիւն է ի բարկութեան նորա. և կենանք են ի կամաց նորա։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք. առաւօտուց եղիցի ուրախութ՟ի։

Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յաւիտեան։

Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն. դարձուցեր զերեսս քո յինէն, և ես եղէ խռովեալ։

Ես առ քեզ Տ՟ր կարդացի, առ Ա՟ծ իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապականութիւն։

Մի՛ թէ հո՞ղ խոստովան առնիցի առ քեզ. կամ պատմեսցէ զճշմարտութ՟իս քո։

Լուաւ ինձ Տ՟ր և ողորմեցաւ. և Տ՟ր եղև ինձ օգնական։

Դարձոյց զսուգ իմ յուրախութ՟ի. զերծ յինէն զքուրձ. և ինձ զգեցոյց զուրախութ՟ի։

Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ. և այլ մի՛ ևս զղջացայց. Տէր Աստուած իմ, յաւիտեան խոստովան եղէց քեզ։

Ընթերցուածս յԱռակաց։ (Իմաստ.) Թ. 9։

Իմաստութիւն զողոքիչս իւր փրկեաց ի ցաւոց։ Նա փախուցելոյ ի բարկութ՟է եղբօր՝ առաջնորդեաց արդարոյն ի շաւիղս ուղիղս։ Եցոյց նմա զարքայութիւն Ա՟յ, և ետ զգիտութ՟ի սրբ՟ց։ Յաջողեաց նմա ի վաստակոց իւրոց. և բազմացոյց զպտուղ ն՟ր։ Յագահութեան բռնաւորաց ն՟ր պաշտպանեաց նմա, և մեծացոյց։ Եւ պահեաց զնա ի թշնամեաց. և ի դարանակալաց ն՟ր զգուշացաւ։ Եւ ի զօրաւոր պատերազմի արար զնա յաղթող. զի գիտասցէ թէ քան զա՟մ ինչ զօրաւոր է ա՟ծպաշտութ՟ի։ Նա զարդարն վաճառեալ ոչ եթող ի

ձեռանէ. այլ ի մեղաց փրկեաց զնա. ընդ նմա էջ ի գուբ: Եւ ի կապանս ոչ եթող զնա ի ձեռանէ. մինչեւ բերեր նմա զգաւազան թագաւորութեան, և իշխանութիւն ի վ՟ր բռնաւորաց ն՟ր: Սուտ եցոյց զբամբասողս նորա, և ետ նմա զփառս յաւիտենական: Նա զժողովուրդն ն՟բ և զզաւակն անարատ փրկեաց յազգէ նեղչաց: Եւ եմուտ յոգի ծառայի Տ՟ն. և ընդդէմ դարձաւ թագաւորաց ահաւորաց՝ արուեստիւք և նշանօք: Հատոյց սրբ՟ցն զվարձս վաստակոց ն՟ց. առաջնորդեաց ն՟ց ընդ ճանապարհ սքանչելի. եղև ն՟ց հովանի ի տուէ, և բոց աստեղաց ի գիշերի: Անցոյց զնոսա ընդ ծով կարմիր. և տարաւ զն՟ս ընդ ջուրս բազումս: Զթշնամիս նոցա ընկղմեաց. և ի խորոց անդնդոց ած զն՟ս ի վեր: Վասն այնորիկ արդարք կողոպտեցին զամբարիշտս. և օրհնեցին Տէր զանուն քո սուրբ. և զձեռն քո՝ որ մարտնչէր ի վերայ նոցա՝ օրհնեցին միանգամայն: 20:

Պօղոսի առաքելոյն ի Թեսաղոնիկեցւոց առաջին թըղթոյն է ընթերցուածս: Դ. 12:

Ոչ կամիմ, եղբարք, եթէ տգէտք իցէք վ՟ս ննջեցելոցն. զի մի՛ տրտմիցիք ո՟պ և այլքն՝ որոց ոչ գո՟յ յոյս: Եթէ հաւատամք՝ եթէ Յ՟ս մեռաւ և յարեաւ. նոյնպէս և Ա՟ծ զննջեցեալսն ի ձեռն Յ՟սի ածցէ ընդ նմա: Բայց զայս ասեմ Տ՟ն բանիւ, եթէ մեք՝ որ կենդանիքս եմք մնացեալք՝ ի գալստեանն Տ՟ն ոչ ժամանեմք ննջեցելոցն: Զի ինքն Տ՟ր հրամանաւ, ի ձայն հրեշտակապետի և ի փող Ա՟յ իջանէ յերկնից. և մեռեալք ի Ք՟ս յարիցեն յառաջագոյն: Ապա և մեք որ կենդանւոյն մնացեալ իցեմք՝ նոքօք հանդերձ յափշտակեսցուք ամպովք ընդ առաջ Տ՟ն յօդս. և այնպէս յա՟մ ժամ ընդ Տ՟ն լինիցիմք: Այսուհետեւ մխիթարեցէք զմիմեանս բանիւքս այսոքիւք: 17:

ԱԼԷԼ. ալէլ. ալէլ:
Եհա՛ն զխ ի գբղ տառապանաց. ի կաւղ և ի տղմղ:
ԶՆՒ ՈՐԹԻՒ:
Աւետարան ըստ Յովհաննու: ԺԱ. 1:
Վասն փառաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս ի Բեթանիայ, ի գեղջէ Մարեմայ և Մարթայի քեռ նր: Այս այն Մարիամ էր որ օծ զՏրն իւղով, և ջնջեաց զոտս նր հերով իւրով. որոյ եղբայրն Ղազարոս հիւանդ էր: Առաքեցին առ նա քորք նր և ասեն. Տէր՝ ահաւասիկ զոր դուն սիրէիր՝ հիւանդացեալ է: Իբրև լուաւ Յս, ասէ. այն հիւանդութի չէ ի մահ, այլ վս փառացն ԱՅ. զի փառաւոր լիցի որդի ԱՅ այնուիկ: Եւ սիրէր Յս զՄարթա և զքոյր նր զՄարիամ և զՂազար: Իբրև լուաւ թէ հիւանդացեալ է, զտեղի կալաւ անդէն ուր էրն՝ աւուրս երկուս: Ապա յետ այնորիկ ասէ ցնս. եկայք երթիցուք միւսանգամ ի Հրէաստան: Ասեն ցնա աշակերտքն. Ռաբբի, այժմ եւս խնդրէին զքեզ Հրեայքն քարկոծ առնել. և դարձեալ երթաս անդրէն: Պատասխանի ետ Յս. ո՞չ երկոտասան ժամ է յաւուր. եթէ ոք գնայ ի տուընջեան՝ ոչ գայթագղի, զի զլոյս աշխարհիս այսորիկ տեսանէ. ապա թէ ոք գնայ ի գիշերի՝ գայթագղի, զի լոյս ոչ գոյ ընդ նմա: Զայս իբրեւ ասաց, յետ այսորիկ ասէ ցնս. Ղազարոս բարեկամ մեր ննջեաց, այլ երթամ զի զարթուցից զնա: Ասեն ցնա աշակերտքն. Տէր՝ եթէ ննջեաց՝ ապա ապրի: Այլ Յս վս մահուն նր ասէր. նք այսպէս թուեցաւ՝ թէ վս ննջելոյ քնոյն ասէ: Յայնժամ ասէ ցնս Յս յայտնապէս: Ղազարոս մեռաւ. և ես ուրախ եմ վս ձեր, զի դուք հաւատասջիք ինձ, զի ես չէի անդ. բայց արդ եկայք երթիցուք առ նա: Ասէ Թովմաս անուանեալն երկուորեակ՝ ցաշակերտակիցսն. ե՛ն եկայք և մեք՝ զի ընդ նմա մեռցուք: Եկն Յս՝ եգիտ զնա չորեք-

քօրեայ ի գերեզմանի։ Եւ էր Բեթանիա մերձ յԵրուսաղէմ, իբրեւ ասպարիսօք հնգետասան։ Բազումք ի ի Հրէից անտի եկեալ էին առ Մարթա և Մարիամ, զի մխիթարեսցեն զնս վս եղբօրն։ Մարթա իբրև լուաւ՝ թէ Յս գայ, ընդ առաջ գնաց նր. բայց Մարիամ նստէր անդէն ի տան։ Ասէ Մարթա ցՅս. Տէ՛ր՝ եթէ աստ լինեալ էիր, եղբայրն իմ չէր մեռեալ. այլ և արդ գիտեմ, եթէ զոր ինչ խնդրեսցես յԱյ՝ տացէ քեզ Աճ։ Ասէ ցնա Յս. յարիցէ եղբայրն քո։ Ասէ ցնա Մարթա. գիտեմ զի յարիցէ ի յարութեան՝ յաւուրն յետնում։ Ասէ ցնա Յիսուս. ես իսկ եմ յարութի և կեանք. որ հաւատայ յիս, թէպէտ և մեռանի՝ կեցցէ. և ամ որ կենդանի է և հաւատայ յիս, մի՛ մեռցի ի յաւիտեան. հաւատամս այսմիկ։ Ասէ ցնա. այո՛ Տէ՛ր, ես հաւատացի՝ եթէ դու ես Քսն Որդի Այ, որ յաշխարհ գալոց էիր։ Եւ զայս իբրեւ ասաց, գնաց կոչեաց զՄարիամ զքոյր իւր լռելեայն և ասէ. վարդապետն եկեալ է և կոչէ զքեզ։ Նա իբրեւ լուաւ՝ յարեաւ վաղվաղակի, և եկն առ նա։ Չեւ եւս էր եկեալ Յս ի գեօղն, այլ էր անդէն ի տեղւոջն՝ ուր ընդ առաջ եղեւ նմա Մարթա։ Իսկ Հրեայքն՝ որ էին ընդ նմա ի տան անդ և մխիթարէին զնա, իբրեւ տեսին զՄարիամ՝ թէ յարեաւ վաղվաղակի և գնաց, գնացին և նոքա զհետ նր. համարէին թէ ի գերեզմանն երթայ՝ զի լացցէ անդ։ Իսկ Մարիամ իբրեւ եկն ուր էրն Յս, և ետես զնա, անկաւ առ ոտս նր և ասէ. Տէ՛ր, եթէ աստ էիր դիպեալ՝ ոչ էր մեռեալ եղբայրն իմ։ Յս իբրեւ ետես զնա զի լայր, և որ ընդ նմա էին Հրեայքն՝ լային, խռովեցաւ յոգի իւր իբրեւ զայրացեալ, և ասէ. ո՞ւր եդիք զնա։ Ասեն ցնա. Տէ՛ր՝ եկ և տես։ Եւ արտասուեաց Յս։ Ասէին Հրեայքն. տեսէ՛ք՝ որչափ սիրէր զնա։ Կէսքն ի նոցանէ ասէին. ո՞չ կարէր սա՝ որ եբաց զաչս կուրին, առնել՝ զի և սա մի մեռցի։ Յս դարձեալ զայ-

րացեալ ընդ միտս իւր, գայ ի գերեզմանն. և էր այր մի, և վէմ մի եդեալ ի վ̃ր Ն̃ր։ Եւ ասէ Յս̃. ի բաց արարէք զվէմդ։ Ասէ ցնա Մարթա՝ քո՛յր մեռելոյն. Տէ՛ր՝ արդ հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ է։ Ասէ ցնա Յս̃. ո՞չ ասացի քեզ՝ եթէ հաւատասցես, տեսցես զփառսն Ա̃Յ։ Եւ իբրեւ ի վեր առին զվէմն, Յս̃ ամբարձ զաչս իւր ի վեր, և ասէ. Հա՛յր՝ գոհանամ զքէն, զի լուար ինձ, և ես գիտէի՝ զի յամ̃ ժամ լսես ինձ. այլ վ̃ն ժողովրդեանս որ շուրջ կան՝ առնեմ, զի հաւատասցեն թէ դու առաքեցեր զիս։ Զայս իբրեւ ասաց, ի ձայն մեծ աղաղակեաց և ասէ. Ղա՛զարէ՝ արի՛ եկ արտաքս։ Եւ ել մեռեալն ոտիւք կապելովք, և ձեռօքն երիզապնդօք, և երեսօքն վարշամակապատօք։ Եւ ասէ ցն̃ս Յս̃. լուծէ՛ք զդա և թողէ՛ք երթալ։ Բազումք ի Հրէիցն՝ որ եկեալ էին առ Մարեմանս, իբրեւ տեսին զոր արարն՝ հաւատացին ի նա։ Եւ ոմանք ի նոցանէ գնացին առ փարիսեցիս, և պատմեցին նց̃՝ զոր արա՛րն Յս̃։ Ժողովեցին քահանայապետքն և փարիսեցիքն ատեան, և ասեն. զի՞նչ արասցուք զի այրն այն բազում նշանս առնէ։ Եթէ թողումք զնա այնպէս, ամենեքին հաւատան ի նա. և գայցեն Հոռոմք և բառնայցեն զազգս մեր և զտեղի։ Մի ոմ̃ն ի նոցանէ՝ անուն Կայիափա, որ քահանայապետ էր տարւոյն այնորիկ, ասէ ցնոսա. դուք ոչինչ գիտէք, և ոչ բնաւ խորհել խոկ, թէ լաւ է մեզ, զի այր մի մեռանիցի ի վ̃ր ժողովրդեանս, և մի՛ ամ̃ ազգս կորիցէ։ Զայս ոչ յանձնէ ինչ ասաց. այլ զի քահանայապետ էր տարւոյն այնորիկ, մարգարէացաւ՝ եթէ մեռանելոց էր Յս̃ ի վ̃ր ազգին. և ոչ ի վերայ ազգին միայն, այլ զի և զորդիսն Ա̃Յ զցրուեալսն ժողովեսցէ ի մի։ Ապա յայնմ օրէ խորհուրդ արարին՝ զի սպանցեն զնա։ Եւ Յս̃ այնուհետեւ ոչ եթէ համարձակ շրջէր ի մէջ Հրէիցն, այլ գնաց անտի յերկիր մի որ մերձ էր յանապատ, ի

քաղաք մի՝ որում անուն էր Եփրայիմ. և անդ լինէր աշակերտօքն հանդերձ: 54:

Երգ. Տէր յետ ստեղծման:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո Տէր՝ է Նե: Աղ. Քում ամենազօր և հրաշալի գալստեանդ:

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

Խոնարհեցո եւ Արբեցո:

Կիրակամտէ փառ:

Բարեբանեալ որ եկիր և գալոց ես ի յերկնէ աստուածային քո փառօք. շնորհեա ամենեցուն զյարութիւն Քրիստոս, որպէս մարդասէր: Եւ է կցորդ փառքին ուխտանին Լոյս զուարթ:

Մեղեդի Գալստեան: Օրհնեալ որ գաս:

Քարոզ յայնժամ. Ասասցուք, ձայն Գանձ:

Եւ զգենուն միաբան զհանդերձն, եւ ելանեն յատեան խաչիւ եւ աւետարանաւ, խնկովք եւ մոմեղինօք եւ ամենայն զարդուք: Եւ ասեն Համբարձին, յորում է աւետարանն քարշեն զվարագոյրն, եւ բանան զխորանն:

Համբարձի ԱՁ. Ո՛ր վե՛րօրհնի՛ս յա՛թոռը՛ս քերո՛վբէի՛ց. ի՛ վե՛ր նըստել յա՛ւանակի՛ հա՛ճեցա՛ր. * բա՛րեբանեա՛լ ո՛ր եկի՛րդ ի՛ կե՛ցուցա՛նե՛լ: Ո՛ւստի և մե՛ք զյա՛ղթա՛կա՛ն օ՛րհնութեա՛նցն ը՛զձա՛յն. մա՛տուցա՛նե՛մք քեզ Թագա՛ւո՛ր փառաց ընդ տղա՛յսն օ՛րհնաբանե՛լո՛վ. բա՛րեբան: Ո՛վսաննա՛ ի՛ բա՛րձունս ա՛լէ՛լո՛ւիա. բա՛րեբանեա՛լ եկեա՛լ անուա՛մբ Տե՛ն ա՛լէ՛լո՛ւիա՛. և օ՛րհնութի՛ ո՛ր գա՛լո՛ցդ ե՛ս անուա՛մբ Տեա՛ռն ա՛լէ՛լո՛ւիա՛:

Ա՛յսօր զա՛նըսկի՛զբըն Բա՛նն որ յաթոռ փառաց ընդ Հօր յե՛րկրի՛ երեւեալ տեսա՛ք. քրո՛վբէա՛կա՛ն ձայնի՛ւ օ՛րհնե՛սցո՛ւք. * օ՛րհնեա՛լ եկեա՛լ ա՛նուա՛մբ Տեա՛ռն:

Փառք Հօր: Ա՛յսօր յաւա՛նա՛կ քերովբէ՛ և տը՛ղա՛յք

Եբրայեցւոց բարբառնեն. օրհնութիւն որդւոյ Դաւթի օրհնեալ եկ։ Այժմ և։ Այսօր զուարճացան տիեզերք գալստեամբ Ածորդւոյն յեղէմ. և գոչէին հընչմամբ երգով. օրհնեալ եկ։

Քրզ. խնդրեսցուք։ կեցո յայնժ։ Աղ. Թագաւոր խաղ։
Եւ տրյակին։



# ԿԻՐԱԿԷ ԾԱՂԿԱԶԱՐԴ, ԱԿ.

## Ի ԳԻՇԵՐԻ

Հոխուամն է. Եւ դնի սրբութիւնն ի վերայ բազմոցի յատեանն։
Հետեւեալ շարականն Դ Ձ։

Թագաւոր գոլով քո յաշխարհս. մտեր ի քաղաքն Երուսաղէմ. Նստեալ ի վյ հողեղէն նոր յաւանակի. կոչել զհեթանոսս յերկրպագութիւն։ Ծերքն ոստովք ձիթենեօք. եւ տղայքն ոստովք արմաւենեօք. եւ երամ երամ դասուքն աղաղակէին. ովսաննա օրհնեալ եկեալ ի յանուն Տն։ Ցնծացաւ նա Սիոն. բերկրեցան նա եկեղեցի. եւ խնդութիւն բազմաւ եղեն ընդ առաջ. օրհնէին զգալուստ քո փրկչի յաշխարհս։

Յորժամ եկն Տն յեղէմ ի քաղաքն. ընդ առաջ ելին ծերքն ոստովք ձիթենեօք. և զԱծորդին փառաւորէին։ Ի լեռնէ ձիթենեաց տարածանէին մանկունքն ըզհանդերձս իւրեանց. և ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին. Ածորդւոյն նա՝ թագաւորին։ Ոստովք և տերեւեալ ձիթենեօք. Եբրայեցւոց մանկունք օրհնէին. ուրախ լեր Երուսաղէմ քաղաք. և ցնծա Սիոն մայր եկեղեցի։

Օգալուստ քո Քս այսօր յԵրուսաղէմ նոր եկեղեցին. յաղթական երգով բարեբանեմք. * օրհնեալ եկեալ անուամբ Տն։ Որ վասն մերոյ փրկութեան յաւանակի նըստել յանձն առեր. ընդ մանկունսըն բարեբանեմք. օրհնեալ ես։ Թագաւոր երկնաւոր զեկեղեցի քո անշարժ պահեա. և զերկըրպագուս անուանըդ քո պահեա ի խաղաղութեան։

Ի յարութե յաւուր գալըստեան փրկչին. տարածանէին մանկունքն ըզհանդերձս. * և անդադար ձայնիւ օրհնէին. օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին. Ածորդւոյն առ ճանապարհաւն. և անդադար ձայնիւ։ Ի ծերոց բըղխեալ օրհնութի. եւ ի տղայոց փառաբանութի. և անդադար ձայնիւ։

Զկնի Սրկ. տուրողէ. Եւ եւս խաղաղ։ Օրհնութիւն և փառք Հօր։ Եւ ապա ասեն յափեանն՝

Օրհնութիւն ԱԶ։

Որ վերօրհնիս յաթոռըս քերովբէից. ի վերայ նըստել յաւանակի հաճեցար. * բարեբանեալ որ եկիրդ ի կեցուցանել։ Ուստի և մեք զյաղթական օրհնութեցն ըզձայն. մատուցանեմք քեզ Թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարեբան։ Ովսաննա ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ Տեառն ալէլուիա. և օրհնութի որ գալոցդ ես անուամբ Տեառն ալէլուիա։

† Այսօր զանըսկիզբըն Բանն որ յաթոռ փառաց ընդ Հօր յերկրի երեւեալ տեսաք. քրովբէական ձայնիւ օրհնեսցուք. * օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։ Այսօր յաւանակ քերովբէ և տըղայք Եբրայեցւոց բարեբանեն. օրհնութի որդւոյ Դաւթի. օրհնեալ։

Ղզ։ Այսօր գոլով ի Բեթանիա քո ամենազօր հրամանաւդ. ձայնեցեր Ղազարու և դողացաւ մահ. դժոխք պարտեցաւ ապականութի լուծաւ.* կենդանարար քո՝ կեցո ըզմեզ։ Այսօր գոլով ի Բեթանիա զքո զաշխարհակեցոյց ձր զյարութի՛դ. յառաջագոյն ծանուցեր անապականաբար կոչմամբ զչորեքօրեայն ի թաղմանէ. կենդանարար։ Այսօր գոլով ի Բեթանիա Եբրայեցւոց մանկունքն ըսքանչացեալ ասէին. զՄարիամու զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ որդւոյն Մարիամու. կենդանարար։

Ղզ։ Կենդանութեա՛ց բաշխող Քրիստոս ի Բեթանիա եկաւորեալ այսօր. բարեկամին Ղազարու պարգևէ զկենդանութիւն։ Տնօրինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու. ողբանկցէր և որպէս մարդ հարցանէր ուր եդիք ըզՂազարոս։ Եւ որպէս զԱծ բարբառով յարուցանէ ի մեռելոց ըզչորեքօրեայն. և զուգընթաց ձայնին մեռեալն եկն արտաքս անապական։

Վքր։ Որ ի լերինն այլակերպեալ ցուցեր զածային քո զօրութի՛դ.* զքեզ փառաւորեմք իմանալի լոյս։ Որ ըզճառագայթ փառաց քոց ցուցեր. արեգակնակերպ փայլմամբ զարարածըս լուսաւորեցեր. զքեզ փառ։ Որ ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո զաշակերտսն. ի թըմբրութի հրաշիցն ի սէր ածային փառաց քոց. զքեզ փառ։

Օրհ։ Օ փառաւորեալըն յամ արարածոց. և ի ծագաց մինչ ի ծագս երկրի զերկըրպագեալն. զմարմնացեալ Բանն ի կուսէն ձայնիւ երգով օրհնեսցուք։ Որ դիմեալ գայ յԵդովմայ բարձրացեալ փողով. յարուցեալ ի պատերազմ ընկըղմեաց զաներևոյթն Ամա-

ղէկ. զիջեալ բանն ի՝ դժոխս ձայնիւ երգով օրհնեսցուք: Ծագումն ի Հօրէ փառակից սբ Հոգւոյն. կենդանութիւն ազգի մարդկան. որ յարեան այսօր ի մեռելոց. զհամբարձեալ բանն ի յերկինս ձայնիւ երգով օրհնեսցուք:

ՀՈԳ. Որ ի քրովբէական կառսդ հանգչիս. այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցն սբ Հոգի. * օրհնեալ ես Թագաւոր անման: Որ գնաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն սբ Հոգի. օրհնեալ: Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սբ Հոգի. օրհնեալ:

ՆՆՉ: Զայն արկեալ կենարարին ածածային բարբառովն. ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ. ժառանգեցէք պատրաստեալ ձեզ ըզկեանսն ի հանդերձեալ երկրին: Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդըս վերինս. աստուածազգեաց լուսով պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի լսել ըզձայն երանաւէտ կոչմանն: Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սբ կուսանսն. ի լուսեղէն առագաստին պայծառացեալ ի դասս անմարմնոցն. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս:

ԱԺՆ: Մարմնացեալդ ի կուսէն նախայաւիտեան բանդ. այսօր ի տաճարն եկիր կատարել զօրէնս. վասըն փրկութեան հեթանոսաց: Որ յանարուեստ աթոռ նըստիս բարեբանեալդ ի հրեշտակաց. այսօր ի Սիմէոնէ բառնալով ի գիրկս. որ ընծայեսցես ըզմեզ ի կեանսըդ յաւիտենից: Որ արձակիչդ ես կապելոց պարգեւատու ամենեցուն. այսօր հայցմամբ ծերունւոյն արձակեա և զիս ըզբազմամեղս. ի կապանաց մահու ի կեանսըդ յաւիտենից:

Խչ․ Ի՛ խորանի՛ քում սրբութեան զո՛ր ընտրեցե՛ր գա՛լըստեա՛մբըդ քո Քն․ * ի՝ սմա՛ միաձայնեա՛լ ա՛ղա-չեմք ըզքե՛զ․ լո՛ւր ձա՛յնի՛ աղաչանա՛ց մերոց․ ընկա՛լ եւ կե՛ցո՛ ըզմե՛զ։ Ածայի՛ն լուսո՛վ քո՛վ պա՛յծառ քան զարե՛գա՛կըն լուսաւորեցեր զքո՛ սբ զե՛կեղե՛ցի․ ի՝ սմա՛ միաձայն։ Փառք Հօր։ Ա՛յսօր եւ հրեշտա՛կք ո՛ւրախա-նա՛ն ը՛նդ պայծառութե՛ի՝ քոյ սբ ե՛կեղե՛ցւոյ․ ի՝ սմա՛։

Այժմ եւ։ Ա՛յսօր զուարճա՛ցա՛ն տիե՛զերըք գա՛լըս-տեա՛մբ Ածորդւո՛յն յԲէ՛մ․ եւ գոչէ՛ի՛ն հընչմա՛մբ եր-գո՛վ․ օրհնեա՛լ եկեա՛լ անուա՛մբ Տեա՛ռն։

Մաղ․ Փառք հրաշափառ գալստեան։

Ալէ՛լուիա․ ալէ՛լուիա․ ալէ՛լուիա։

Տէ՛ր Ած մեր երեւեցաւ մեզ․ արարէք տօնս ուրախու-թեան կանխաւ մինչեւ յանկիւնս սեղանոյ։ Ած՛ իմ ես դու, խոստովան եղէց քեզ․ Ած իմ ես դու, եւ բարձր արարից զքեզ։

Ալէ՛լուիա․ ալէ՛լուիա․ ալէ՛լուիա։

Փ․ Լերի՛նք ցնծասցեն առաջի Տեառն զի գայ․ եւ հասեալ է Տր ի դատե՛լ զերկիր։ Դատէ՛ զաշխարհս արդարութբ․ եւ զժողովուրդըս իւր ուղղութբ։

Փա՛ռք եւ։ Ա՛յժմ եւ․ ալէ՛լուիա։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

Հարց Դկ։

Ո՛ր ի քրո՛վբէական աթոռ ը՛նդ Հօ՛ր նըստէի՛ր Բա՛նդ Ա՛ծ․ այսօ՛ր խոնարհութեա՛մբ նըստա՛ր մա՛րմնո՛վ նո՛ր յա՛ւանակի՝․ ըզքե՛զ բա՛րեբանե՛մք Ա՛ծ հա՛րցըն մե-րո՛ց։ Ո՛ր ի սրո՛վբէի՛ցըն սրբասա՛ց ձա՛յնի՛ւ անդա՛դա՛ր օրհնա՛բանի՛ս․ ա՛յսօր ի՛ դասու՛ց Եբրայե՛ցւոց որդւ՛ի Դա՛ւթի՛ փառա՛բանեցա՛ր․ ըզքե՛զ բա՛րեբանեմք Ա՛ծ

հարցըն մերոց։ Ո՞ր ի հրաշկերպիցն երգաբանեալ հնչմամբ ի բարձունս օրհնաբանիս. այսօր ի ծերոց և ի տղայոց գովեցար ովսաննա երգով. ընդ քեզ բարեբանեմք Աստուած հարցըն մերոց։

Գ. Ը զՏէր օրհնեցէք բարձր արարէք ընդ նմա յաւիտեան։ Այսօր ընդգայլուստ փրկչին մերոյ ցընծութիւ տօնէ նոր Երուսաղէմ. ժողովուրդք որք ի հեթանոսաց. բարձր արարէք ընդ նմա յաւիտեան։ Փառք Հօր։ Այսօր ընդ մանկանցն Եբրայեցւոց. զհինաւուրցն եկեալ նոր արքայ ի Սիովն. մանկունք մեք եկեղեցւոյ. բարձր արարէք ընդ նմա յաւիտեան։ Այժմ և։ Այսօր ընդ ծերոցն օրհնաբանիւ. ուրախութեամբ բարեբանեցէք. զանմահ թագաւորն եկեալ. քահանայք հոգևոր երգով բարձր արարէք ընդ նմա յաւիտեան։

Մեծացո. ԱՁ։ Ուրախ լեր յոյժ դուստր Սիովնի. պայծառացիր Երուսաղէմ. զարդարեա ըզդրունըս քո քաղաքդ Աստուծոյ։ Փառք Հօր։ Քանզի Քն որ էն ի յաթոռ փառաց. այսօր մտանէ ի քեզ նստեալ ի վր յաւանակի նորոյ։ Այժմ և։ Ծերք և տղայք ոստովք ձիթենեօք միաբանութբ երգէին. օրհնութի որդւոյ Դաւթի օրհնեալ եկեալ անուամբ Տեառն։

Ի–ղ–ջերէց –եւ. Ղ––կ։ Եւ ահա այր մի։ 45։

Աղ– Երգ։ Փառք յարութեան քո Տէր. ոչ դադար։

Գիշերէ ժ–ւ–պէ–ն։ Դասք լուսեղէն զուարթնոցն սպասէին մեծի գալըստեանըն Տեառն։ Եւ երգէին երգ նոր. օրհնեալ է քո մեք գալուստդ։

Ողորմ. ԲԿ։ Ուրախ լեր եկեղեցի սուրբ. ի գալըստեան սուրբ միածնին. ուրախ լեր եւ ցընծա. հանդերձ ամենայն սըրբովք։ Փառք Հօր։ Խընդա յոյժ դուստըր վերին Սիովնի. ահա թագաւոր քո գայ

նըստեալըն յաւանակի նորոյ. արդար եւ փըրկիչ. փըրկէ եւ կեցուցանէ։ Այժմ և։ Զուարճացիր եւ բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զոստըս ծաղկեալըս հաւատով եւ ասա. օրհնեալ որ եկիրըդ թագաւոր տիեզերաց։

Տէրյերկ. ԲԿ։ Օ Քրիստոս թագաւորըն որ էին ի յաթոռ փառաց. տեսաք ի յերկրի նըստեալ ի նոր յաւանակի։ Փառք Հօր։ Ընդ առաջ ելեալ արքային դասք Եբրայեցւոցն. ծերքն ոստովք ձիթենեօք և տղայքն արմաւենեօք։ Այժմ և։ Միաբանական ձայնիւ գոչէին երգ նոր. բարեբանելով զանըմահ թագաւորն։

Այլ է Տէրյերկնիցն մէջ դասն զգեստուն մտեան եւ ելանեն ի դուրս խաչիւ եւ աւետարանաւ, խնկով եւ մոմեղինօք եւ ամենայն զարդու ի տեղի ինչ բարձրաւանդակ եւ պատշաճաւոր. եւ անդ դադարեն մինչեւ կարդան զաւետարանն։

Առաւ. Երգ։ Այսօր մըտանէ թագաւորըն մեր Քրիստոս. ի յԵրուսաղէմ նոր քաղաք Դաւթի։

Ընդ առաջ ելին ծերքն ոստովք ձիթենեօք. եւ զԱստուածորդին փառաւորէին։

Քարոզ. Ասասցուք. կամ գանձ։

Զկնի սորա Աւետարանին՝ Շարական ԱՁ։

Որ վերօրհնիս յաթոռըս քերովբէից. ի վերայ նըստեալ յաւանակի հանգեցար. բարեբանեալ որ եկիրդ ի կեցուցանել։ Ուստի և մեք զյաղթական օրհնութեանցն ըզձայն. մատուցանեմք քեզ թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարեբանեալ որ եկիրդ ի կեցուցանել։ Ովսաննա ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ Տն ալէլուիա. և օրհնութիւն որ գալոցդ ես անուամբ Տն. ալէլուիա։

Սաղմոս ՂԷ։

ԿՑ. Տեսին ամ՟ ծագք երկրի զփրկութ՟ի Ա՟Յ մերոյ։

Փխ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, զի սքանչելիս արար։

Փրկեաց նմա աջ իւր. և բազուկ սուրբ իւր։

Եցոյց Տէր զփրկութիւն իւր. առաջի՝ ազգաց յայտնեաց զարդարութիւն իւր։

Յիշեաց ողորմութեամբ իւրով զՅակոբ, ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայէլի. և տեսին ամ՟ ծագք երկրի զփրկութիւն Ա՟Յ մերոյ։

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր. օրհնեցէք, ցնծացէք և սաղմոս ասացէք։

Սաղմոս ասացէք Ա՟Յ մերոյ օրհնութեամբ. օրհնութեամբ և ի ձայն սաղմոսաց։

Ի ձայն օրհնութեան կռածոյ փողոյ. օրհնութեամբ ցնծութեամբ և ի ձայն եղջեր փողոյ աղաղակեցէք առաջի Թագաւորին Տեառն։

Խռովեսցի ծով լրիւ իւրով, տիեզերք և ամ՟ բնակիչք ն՟ր. և գետք ծափս հարցեն ի միասին ձեռամբ։

Լերինք ցնծասցեն առաջի Տեառն, զի գայ. և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Դատի զաշխարհս արդարութեամբ և զժողովուրդս իւր ուղղութեամբ։

Ընթերցուած յԵրգոց երգոյն Սողոմոնի։ Բ. 8։

Ձայն եղբօրորդւոյ իմոյ. ահաւասիկ սա եկն վազելով ի վ՟ր լերանց՝ խայտալով ի վ՟ր բլրոց։ Նման է եղբօրորդին իմ այծեման կամ որթուց եղանց ի վ՟ր լերանց Բեթելայ։ Արի՛, եկ մերձաւոր իմ, գեղեցի՛կ իմ, աղաւնի իմ. վ՟ն զի ահա ձմեռն էանց. անձրեւք անցին, և գնացեալ մեկնեցան։ Ծաղիկք երեւեցան յերկրի. ժամանակ յատանելոյ եհաս։ Ձայն տատրակի լսելի եղեւ յերկրի մերում։ Թզենի ընձիւղեաց զբողբոջ իւր.

այգիք մեր ծաղկեցան և ետուն զհոտս իւրեանց։ Արի՛,
եկ մերձաւո՛ր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ. եկ ընդ
հովանեաւ վիմին՝ մերձ առ նախապարիսպն։ Ցո՛յց ինձ
զդէմս քո. լսելի՛ արա ինձ զբարբառ քո. վն՟ զի ձայն
քո քաղցր է, և դէմք քո գեղեցիկ։ Կալարո՛ւք մեզ
աղուեսունս փոքունս՝ զապականիչս այգեաց. և այգիք
մեր ծաղկեսցին։ Եղբօրորդին իմ ինձ և ես նմա. որ
հովուէն ի մէջ շուշանաց։ Իջցէ եղբօրորդին իմ ի պար-
տէզ իւր. և կերիցէ զպտուղս ծառոց իւրոց։ Տեսին զնա
դստերք և երանեցին նմա. թագուհիք և հարճք գո-
վեցին զնա։ Ո՞վ է սա՝ որ երեւեալս է իբրեւ զառաւօտ.
գեղեցիկ ոպ՟ զլուսին. ընտիր իբրեւ զարեգակն. իբրեւ
զհիացումն՟ կարգեալ։ Ի պարտէզս ընկուզաց իջի հայել
յարմտիս ուղխից. տեսանել թէ ծաղկեա՛լ իցէ որթն,
թէ ծաղկեալ իցեն նռնենիք։ Անդ տաց զստինս իմ։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ։ ԿԲ. 11։

Ասացէք դստեր Սիովնի, ահաւասիկ փրկիչ քո հա-
սեալ գայ և ունի զվարձս իւր ընդ իւր. և գործ իւր
առաջի երեսաց իւրոց։ Եւ կոչեսցէ զնա ժողովուրդ
սուրբ փրկեալ ի Տեառնէ. և դու կոչեսցիս խնդրեալ
քաղաք և ոչ լքեալ։ 12։

Պօղոսի առաքելոյն յԵփեսացւոց թղթոյն է ընթեր-
ցուածս։ Ա. 3։

Օրհնեալ է ԱԾ՟ և Հայր Տեառն մերոյ Յս՟ի Քս՟ի, որ
օրհնեաց զմեզ ամ՟ հոգեւոր օրհնութ՟ք յերկնաւորս
ի Քս՟։ Որպէս ընտրեաց զմեզ նովաւ յառաջ քան զլի-
նելն աշխարհի, լինել մեզ սբ՟ս և անարատս առաջի նր՟
սիրով։ Յառաջագոյն սահմանեաց զմեզ յորդէգրու-
թ՟ի ի ձեռն Յս՟ի Քս՟ի, ի նոյն ըստ հաճութ՟ե կամաց իւ-
րոց, ի գովեստ փառաց շնորհաց իւրոց. որով զուար-
ճացոյց զմեզ սիրելեաւն։ Որով ունիմք զփրկութ՟ի ի
ձեռն արեան նր՟, զթողութ՟ի մեղաց՝ ըստ մեծու՟ե շնոր-

Հաց իւրոց. որ առաւելաւ ի մեզ ամենայն իմաստութեամբ և գիտութեամբ։ Եցոյց մեզ զխորհուրդս կամաց իւրոց՝ ըստ հաճութե՟ իւրում, զոր յառաջագոյն եդ նովաւ ի տնտեսութի՟ լրման ժամանակաց, բովանդակել զամենայն Քրիստոսիւ, որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի՝ ի նոյն։ 10։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն. օրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն. և օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն։

Ձ՟նի՟ Որթիւ։

Աւետարան ըստ Մարկոսի։ Ժ. 46։

Վասն գալստեան Տեառն մերոյ Յս՟ի Քս՟ի։

Եւ գան յԵրիքով. և ընդ ելանելն նորա յԵրիքովէ աշակերտօքն և բազում ժողովրդով, որդի Տիմէի Բարտիմէոս կոյր նստէր մուրացիկ յանցս ճանապարհի։ Իբրև լուաւ՝ թէ Յս՟ Նազովրեցի է, սկսաւ աղաղակել և ասել. որդի՛ Դաւթի Յս՟՝ ողորմեա՛ց ինձ։ Եւ սաստէին նմա բազումք՝ զի լռեսցէ. և նա առաւել եւս աղաղակէր. որդի՛ Դաւթի ողորմեա՛ց ինձ։ Զտեղի առ Յս՟՝ և հրամայեաց կոչել զնա։ Կոչեն զկոյրն և ասեն ցնա. քաջալերեա՛ց, արի՛, կոչէ զքեզ։ Եւ նորա ընկեցեալ զձորձս իւր, յարեաւ և եկն առ Յս՟։ Պատասխանի ետ նմա Յս՟ և ասէ. զի՞նչ կամիս՝ թէ արարից քեզ. ասէ ցնա կոյրն. ռաբունի, զի բացայց։ Եւ Յս՟ ասէ ցնա. երթ՝ հաւատք քո կեցուցին զքեզ. և վաղվաղակի բացաւ, և երթայր զհետ նորա ի ճանապարհին։ Եւ յորժամ մերձ եղեն յԵրս՟ղէմ, ի Բեթփագէ և ի Բեթանիա՝ մօտ ի լեառն Ձիթենեաց, առաքէ երկուս յաշակերտաց անտի, և ասէ ցնս՟. երթա՛յք դուք ի գեօղդ՝ որ ընդդէմ ձեր կայ. և նոյնժամայն իբրև մտանիցէք ի նա, գտանէք յաւանակ մի կապեալ, յորոյ վ՟ր ոչ ոք ի մարդկանէ նստաւ, լուծէ՛ք զնա և ածէ՛ք։ Եւ եթէ ոք ա-

սասցէ ձեզ՝ թէ զի՞ լուծանէք զյաւանակդ. ասասջի՛ք՝ թէ տ՟ն իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ զնա այսր: Չոգան և գտին զյաւանակն կապեալ առ դուրս արտաքոյ ի փողոցի անդ, և լուծին զնա: Եւ ոմանք յորոց անդն կային՝ ասեն ցն՟ս. զի՞ գործէք, զի՞ լուծանէք զյաւանակդ: Եւ նոքա ասեն ցն՟ս որպ՟ ասացն Յ՟ս. և թոյլ ետուն ն՟ց: Ածեն զյաւանակն առ Յ՟ս. և արկանեն ի վ՟ր ն՟ր հանդերձս, և նստաւ ի վ՟ր ն՟ր: Եւ բազումք զհանդերձ իւրեանց տարածանէին ի վ՟ր ճանապարհին, և այլք ոստս ի ծառոց հատանէին և արկանէին զճանապարհաւն: Եւ որ առաջին և զկնի երթային, աղաղակէին և ասէին. ովսաննա բարձրելոյն: Օրհնեալ որ գաս դ յանուն Տ՟ն. օրհնեալ թագաւորութի՟դ եկեալ հօր մերոյ Դաւթի. խաղաղութի՟ յերկինս և փառք ի բարձունս: Եւ եմուտ Յ՟ս յԵ՟մ ի տաճարն, և հայեցաւ շուրջ զամենեքումբք. և զի էր երեկոյացեալ ժամ՟ն՝ ել ի Բեթանիա երկոտասանիւքն հանդերձ: ԺԱ. 11:

Զկնի աւետարանին սարկաւագն քարոզէ. Եւ եւս խաղաղութե՟: Վ՟ն ի վերուստ: Եւ քահանայքն զանդաստանն խաչիւ եւ աւետարանաւ, եւ օրհնեն զչորս կողմն աշխարհի: Զկնի քրզ. Մ՟ր խաչիւ: Աղ. Պահպանեա՛:

Եւ ապա ասեն:

Յորժամ եկեալ կենարարն ի գերեզմանն Ղազարու. յորժամ եկեալ կենարարն ի գերեզմանն Ղազարու՝ աւետաւոր ձայնիւն ազաղակէր ասելով. Ղա՛զարէ, արի՛ ե՛կ արտաքս: Իսկ մեռեալն ի գերեզմանէն յարեաւ. և նոյն ինքն զանմահութե՟ պարգեւսն ետ սիրելոյն. և ա՟ծային ձայնիւն ի գերեզմանէն կոչեաց. վ՟ն որոյ և մանկունք Եբրայեցւոց ոստովք օրհնէին զանմահ թագաւորութի՟ քո. ովսաննա օրհնեալ է գալուստ քո, օրհնութի՟ ի բարձունս. օրհնեալ որ գալոցդ ես անուամբ Տեառն:

Հր. Դկ. ՍՏ: Յիսուս միածինն անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ մեզ. խափանեաց զզօրութիւն մահու: Բղխումն արտասուաց Մարիամու և Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն. խնդրէին զնորոգումն եղբօրն: Բանիւ Բանն Ած կենագործեաց զՂազարոս ի թաղմանէ. և եկեալ արտաքս անապական:

ԱՃՆ: Դու ծաղիկ անթառամ տոհմի սեռիս մարդկութեան. և շառաւիղ օրհնութեան նախնւոյ ծնողին մեր բնութեան. *բարեխօսեա միածնին Ածածին մայր Բանին: Երկնաւոր արքային եղեր տաճար ըստ երգողին. յանկարծակի փեսային ի յառագաստ բազմեալ քոյին. բարեխօսեա: Զօրք երկնից անմարմնոց իմանալեացն զուարթնոց. իջեալ յերկնից ի յերկիր սպասաւորել մեծ արքային. բարեխօսեա:

Խչ: Այսօր նշան յաղթող երեւեալ ի յերկրի. պայծառացոյց զտիեզերս. զէն յաղթութեան ետուր զխաչ քո Տէր. *ապրեցուցանել զմեզ ի պատրանաց թշնամւոյն: Փառք Հօր: Փայտ կենաց կանգնեալ ի մէջ տիեզերաց յոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սա պահեսցէ զմեզ յամենայն վտանգից մերոց. ապրեց: Այժմ և միշտ: Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա զմեզ Քս Ած. որ տարածեցեր զձեռս քո ի նմա. եւ լուծեր զկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեց:

Եւ երգեն ի գերեզմանին. եւ ասեն յայնժամ՝

Սաղմոս ՃԻԹ:

Կց. Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց:

Փխ. Ի խորոց կարդացի առ քեզ Տէր. Տէր լուր ձայնի իմում:

Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց։ Թէ զանօրէնութիւս քննես Տէր. Տէր ո՞ կարէ կալ առաջի քո, զի ի քէն է քաւութի։

Վն անուան քոյ համբերի Տր. համբեր անձն իմ բանի քում, յուսացաւ անձն իմ ի Տր։ Ի պահէ առաւօտու մինչև յերեկոյ. ի պահէ առաւօտու յուսացաւ Իսրայէլ ի Տէր։

Ի Տեառնէ է ողորմութիւն բազում, և ի նմանէ է փրկութիւն. — և նա փրկեսցէ զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա։

Զկնի՝ Որթիւ։

Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԱ. 1։

Վասն փառաց Տեառն մերոյ Յսի Քսի։

Էր ոմն հիւանդ Ղազարոս. Երես 157։

Զկնի՝ Մաղթանք. Հոգւոցն հանգուց։ Քարոզ. Վասն հոգւոցն։ Աղօթք. Քս Որդի Այ։

Եւ է դառնալն յեկեղեցին ասանին Շարական ԲԿ։

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանէին ծերքն ստորինք և տղայքն արմաւենեօք. * ովսաննա. օրհնեալ եկեալ ի յանուն Տն։

Զոր սերովբէքն ծածկաբար ընդունել ոչ բաւէին, ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարբառնեցաւ ի տղայոց. ովսաննա։ Այսօր ընդ ծերոց և ընդ տղայոց օրհնաբանութեանցն վերերգեմք նորոյ արքայիդ եկեալ յԵրուսաղէմ. ովսաննա։

Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն. օրհնեալ որ գալոցդ ես։ — Զօրհնեալ եկեալն Երես ...։

Եւ ասա Նորաստեղծեալ։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո՛ յայնին։ Աղ. Քում ամենազօր և հրաշալի գալստեանդ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի յէնն ժամն ժողովքն է դասուն եկեղեցւոյն. եւ ասեն
Սաղմոս ՂԷ։

Կց․ Լերինք ցնծասցեն առաջի Տ՟ռն զի գայ․ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Փխ․ Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, զի սքանչելիս արար։

Փրկեաց նմա աջ իւր, և բազուկ սուրբ իւր։

Եցոյց Տէր զփրկութիւն իւր․ առաջի ազգաց յայտնեաց զարդարութիւն իւր։

Յիշեաց ողորմութ՟բ իւրով զՅակովբ․ ճշմարտութ՟բ իւրով զտունն Իսրայէլի․ և տեսին ամենայն ծագք երկրի զփրկութիւն Ա՟յ մերոյ։

Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր․ օրհնեցէք, ցնծացէք և սաղմոս ասացէք։

Սաղմոս ասացէք Ա՟յ մերոյ օրհնութեամբ․ օրհնութեամբ և ի ձայն սաղմոսաց։

Ի ձայն օրհնութեան կուածոյ փողոյ․ օրհնութեամբ ցնծութեամբ և ի ձայն եղջեր փողոյ աղաղակեցէք առաջի թագաւորին Տեառն։

Խռովեսցի ծով լրիւ իւրով, տիեզերք և ա՟մ բնակիչք ն՟ր․ և գետք ծափս հարցեն ի միասին ձեռամբ։

Լերինք ցնծասցեն առաջի Տ՟ռն, զի գայ․ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Դատի զաշխարհս արդարութեամբ․ և զժողովուրդս իւր ուղղութեամբ։

### Ընթերցուածս յԱռակաց։ Ը․ 22։

Տէր ստացաւ զիս ի սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր․ յառաջ քան զյաւիտեանս հաստատեաց զիս։ Ի սկզբանէ յառաջ քան զերկիր առնել, և նախ քան զանդունդս գործել, և յառաջ քան զբղխել աղբերաց ջուրց։ Եւ նախ քան զլերինս հաստատել, և

յառաջ քան զա՟մ բլուրս ծնաւ զիս։ Տէր արար զշէնս և զանշէնս, և զեզերս զբնակեալս ի ներքոյ երկնից։ Յորժամ պատրաստէր զերկինս՝ ընդ նմա էի. և մինչ զատուցանէր զաթոռ իւր ի վ՟ր հողմոց։ Եւ յորժամ զօրացուցանէր զամպս վերինս. յորժամ անսխալ դնէր զաղբիւրս ի ներքոյ երկնից։ Ի դնել ծովու զգուշութ՟ն ն՟ր. զի ջուրք մի՛ անցցեն ընդ ափն ն՟ր. ի ժամանակի՝ յորժամ հաստատուն դնէր զհիմունս երկրի։ Ես էի առ նմա պատշաճեալ. ես էի՛ որով ուրախ լինէր Տէր հանապազ. և ցնծայի առաջի նորա յամենայն ժամ։ Յորժամ զուարճացեալ էր զտիեզերս բովանդակել. և ուրախ լինէր յորդիս մարդկան։ 31.

ընթերցուած յԵրեմեայ մարգարէէ։ (Բարուք Գ. 36։)

Հայեա՛ց ընդ արեւելս Եղ՟էմ, և տե՛ս զեկեալ ուրախութ՟ին քեզ յԱ՟Յ։ Ահաւադիկ գան որդիք քո զորս յուղարկեցեր. գան ժողովեալք յարեւելից մինչեւ ի մուտս արեւու բանիւ սրբոյն. խնդացեալք փառօքն Ա՟Յ։ Մերկեա՛ Եղ՟էմ զհանդերձ սգոյ և լլկանաց քոց. և զգեցի՛ր զվայելչութիւն փառացն Ա՟Յ ի յաւիտեան։ Եւ ա՛րկ զքեւ զկրկնոցն արդարութեան յԱ՟Յ. դի՛ր խոյր ի գլուխ քո զփառաց յաւիտենականին։ Զի ցուցցէ Ա՟Ծ ի ներքոյ երկնից զա՟մ լուսաւորութիւն քո։ Եւ կոչեսցի քեզ անուն յԱ՟Յ ի յաւիտեան. խաղաղութիւն արդարութեան և փառք ա՟ծպաշտութեան։ Ե. 4։

Պետրոսի առաքելոյն ի կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս։ Ա. 3։

Օրհնեալ է Ա՟Ծ և Հայր Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի, որ ըստ բազում ողորմութեան իւրում ծնաւ զմեզ վերստին ի յոյս կենդանի՝ ի ձեռն յարութ՟են Յ՟ի Ք՟ի ի մեռելոց. յանեղծ և յանարատ և յանթառամ ժառանգութիւնն՝ որ պահեալ է յերկինս ի ձեզ. որ զօրութ՟բն Ա՟Յ պահեալ էիք հաւատովք ի պատրաստեալ փրկու-

թ՟ին, յայտնեալ ի յետին ժամանակս։ Որով ուրախ լինիջիք, որ այժմ սակաւիկ ինչ ըստ պատշաճի իրացդ֊տրտմեալ էք ի պէսպէս փորձութ՟իս։ Զի հանդէս ձերոց հաւատոցն առաւել քան զոսկի կորստական՝ պատուա֊կան է. որ հրով փորձեալ՝ գտաւ ի գովութիւն և ի փառս և ի պատիւ ի յայտնութ՟են Յ՟ի Ք՟ի։ Զոր ոչն տեսէք՝ և սիրեցէք. ընդ որ այժմ ոչ հայեցեալք՝ բայց հաւատացէք. և ուրախ էք անճառ և փառաւորեալ խնդութ՟բն. ընկալեալ զկատարումն հաւատոցն ձերոց զոգւոցն փրկութ՟ի։ 9։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Տ՟ր՛ ի տաճար ս՟բ իւրում. Տ՟ր յերկինս յաթոռ իւրու՛մ։

Զ՟նէ՝ Ո՛րթիւ։

Աւետարան ըստ Ղուկասու։ ԺԹ. 29։

Վասն գալստեան Տեառն մերոյ Յ՟ի Ք՟ի։

Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ ի Բեթփագէ և ի Բե֊թանիա մօտ ի լեառն որ կոչի Ձիթենեաց, առաքեաց երկուս յաշակերտացն իւրոց, և ասէ։ Երթա՛յք դուք ի գեօղն՝ որ հանդէպ մեր կայ. յոր իբրեւ մտանէք՝ գտանիցէք յաւանակ կապեալ, յորում ոք ի մարդ֊կանէ երբեք ոչ նստաւ, լուծէք զնա և ածէք։ Եւ եթէ ոք հարցանիցէ զձեզ՝ թէ ընդէ՞ր լուծանէք, այսպէս ասասջիք ցնա, թէ տ՟ռն իւրում պիտոյ է։ Իբրև չոգան որ առաքեցանն՝ գտին ո՟պ ասացն ցնոսա, կայր յաւ֊անակն։ Եւ մինչդեռ լուծանէին զյաւանակն, ասեն տեարքն ն՟ր ցն՟ս. զի՞ լուծանէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն, տ՟ռն իւրում պիտոյ է։ Եւ ածին զնա առ Յ՟ս. և արկին զնովաւ հանդերձս, և հեծուցին զՅ՟ս։ Եւ մինչ֊դեռ երթայր՝ զհանդերձս իւրեանց տարածանէին զճանապարհաւն։ Եւ իբրեւ այն ինչ մերձ եղեւ ի զառ֊իվայր լերինն Ձիթենեաց, սկսաւ ա՟մ բազմութ՟ի ա֊շակերտացն ուրախութ՟բ օրհնել զԱ՟ծ ի ձայն մեծ՝ վ՟ս ա՟մ եղելոց զօրութ՟եցն զոր տեսին. և ասէին. օրհնեալ

որ գայ թագաւորդ յանուն Տ՟ռն. խաղաղութ՟ի յերկինս և փառք ի բարձունս: Եւ ոմանք ի Փարիսեցւոցն յամբոխէ անտի ասեն ցնա. վա՛րդապետ՝ սաստեա՛ աշակերտացդ քոց: Պատասխանի ետ և ասէ. ասեմ ձեզ՝ զի եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն: Եւ իբրև մերձեցաւ, տեսեալ զքաղաքն՝ ելաց ի վ՟ր ն՟ր, և ասէ. եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութ՟ին քո. բայց այժմ ծածկեցաւ յերեսաց քոց: Զի եկեսցեն աւուրք ի վ՟ր քո, և պատեսցեն զքեւ թշնամիք քո պատնէշ, և պաշարեսցեն զքեզ, և նեղեսցեն զքեզ յա՟մ կողմանց. և յատակեսցեն զքեզ և զորդիս քո ի քեզ. և ոչ թողուցուն քար ի քարի վ՟ր յա՟մի ի քեզ. փոխանակ զի ոչ ծաներ զժամանակ այցելութ՟ե քո: Եւ մտեալ ի տաճարն սկսաւ հանել զաղաւնէվաճառսն և զգնողս. և զսեղանս հատավաճառացն ցրուեաց: Եւ ասէ ցն՟ս. գրեալ է՝ Եւ եղիցի տուն իմ տուն աղօթից. և դուք արարէք զդա այրս աւազակաց: Եւ ուսուցանէր զնոսա հանապազ ի տաճարին. իսկ քահանայապետքն և դպիրք և գլխաւորք ժողովրդեանն խնդրէին զնա կորուսանել: Եւ ոչ գտանէին՝ թէ զինչ արասցեն. զի ժողովուրդն ա՟մ կախեալ կային զնմանէ ի լսել: 48:

Եւ ելանեն խնկով եւ աւետարանաւ եւ ամենայն զարդուք ի դուռն յանդաստանն՝ ասելով շարական: Եւ դադարեն ի տեղի ինչ մինչև ասի Շարականն ԱԶ:

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից. ի վ՟ր նստեալ յաւանակի հանգեար. * բարեբանեալ որ եկիրդ ի կեցուցանել: Ուստի և մեք զյաղթական օրհնութ՟ե՟ցն ըզձայն. մատուցանեմք քեզ թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարեբան: Ովսաննայ ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ Տ՟ռն ալէլուիա. և օրհնութի որ գալոցդ ես անուամբ Տ՟ռն ալէլ:

### Ձնէ՝ Որթիւ։

### Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԱ. 1։

### Վասն գալստեան Տեառն մերոյ Յսի Քսի։

Իբրեւ մօտ եղեն յԵրուսաղէմ, և եկին ի Բեթփագէ մերձ ի լեառն Ձիթենեաց, յայնժամ Յս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց։ Եւ ասէ ցնս. երթա՛յք ի գեօղդ՝ որ առաջի ձեր է. և անդէն գտանէք էշ կապեալ, և յաւանակ ընդ նմին. լուծէ՛ք ածէ՛ք ինձ։ Եւ եթէ ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջի՛ք, եթէ տեառն իւրեանց պիտոյ են. և վաղվաղակի առաքեսցէ զնոսա։ Բայց այս ամ եղեւ, զի լցցի բան մարգարէին՝ որ ասէ. Ասացէ՛ք դստեր Սիովնի. ահա թագաւոր քո գայ քեզ հեզ, և հեծեալ յէշ և յաւանակի իշոյ։ Գնացին աշակերտքն, և արարին որպէս հրամայեաց նոցա Յիսուս։ Եւ ածին զէշն և զյաւանակն, և արկին զնոքօք զձորձս իւրեանց. և նստաւ ի վերայ նոցա։ Եւ բազում ժողովուրդք տարածեցին զհանդերձս իւրեանց ի ճանապարհին, և այլք հատանէին ոստս ի ծառոց և տարածանէին ի ճանապարհին։ Եւ ժողովուրդքն որ առաջի և զկնի երթային՝ աղաղակէին և ասէին. օրհնութիւն որդւոյ Դաւթի. օրհնեալ որ գայ յանուն Տեառն. օրհնութիւն ի բարձունս։ 9։

Եւ երգեն յայլ հանգիստս՝ ասելով Շարական Դ.Զ։

Թագաւոր գոլով քո յաշխարհս. մտեր ի քաղաքն Երուսաղէմ. նստեալ ի վր հողեղէն նոր յաւանակի. կոչել զհեթանոսս յերկրպագութիւն։ Ծերքն ոստովք ձիթենեօք. և տղայքն ոստովք արմաւենեօք. և երամ երամ դասուքն աղաղակէին. ովսաննա օրհնեալ եկեալ ի յանունն Տեառն։ Ցնծացաւ նոր Սիովն. բերկրեցան նոր եկեղեցիք. և խնդութեամբ բազմաւ ելին ընդ առաջ. օրհնէին զգալուստ քո փրկիչ յաշխարհ։

ՁԿՆԷ՛ ՈՐԹԻՒ։

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԱ. 1։

Վասն գալստեան Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ յորժամ մերձ եղեն յԵրուսաղէմ ի Բեթփագէ և ի Բեթանիա մօտ ի լեառն Ձիթենեաց, առաքէ երկուս յաշակերտաց անտի. և ասէ ցնս. երթա՛յք դուք ի գեօղդ՝ որ ընդդէմ ձեր կայ. և նոյնժամայն իբրև մտանիցէք ի նա, գտանիցէք յաւանակ մի կապեալ. յորոյ վր ոչ ոք ի մարդկանէ նստաւ, լուծէք զնա և ածէք։ Եւ եթէ ոք ասասցէ ձեզ՝ եթէ զի՞ լուծանէք զյաւանակդ. ասասջի՛ք՝ եթէ տռն իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ զնա այսր։ Չոգան, և գտին զյաւանակն կապեալ առ դուրս արտաքոյ ի փողոցի անդ, և լուծին զնա։ Եւ ոմանք յորոց անդն կային՝ ասեն ցնս. զի՞ լուծանէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն ցնս ոպ ասացն Յս. և թոյլ ետուն նց։ Ածեն զյաւանակն առ Յս. և արկանեն ի վր նր հանդերձս. և նստաւ ի վր նր։ Եւ բազումք զհանդերձս իւրեանց տարածանէին ի վր ճանապարհին, և այլք ոստս ի ծառոց հատանէին և արկանէին զճանապարհաւն։ Եւ որ առաջին և զկնի երթային աղաղակէին՝ և ասէին. ովսաննա բարձրելոյն։ Օրհնեալ որ գասդ յանուն Տռն. օրհնեալ թագաւորութիդ եկեալ հօր մերոյ Դաւթի. խաղաղութի յերկինս և փառք ի բարձունս։ 10։

Եւ Երգման յայլ հանգիստ՝ ասելով Ղուկաս Դ2։

Յորժամ եկն Յս՝ յԵէմ ի քաղա՛քն. ընդ առաջ ելին ծերքն ոստովք ձիթենեո՛ւք. և զԱ՛ծորդին փառաւորէին։ Ի՛ լեռնէ ձիթենեաց տարածանէին մանկունքն ըզհա՛նդերձս իւրեա՛նց. և ոստս ի ծառոց բերեալ մատուցանէին. Ա՛ծորդութին նր՝ թագաւորին։ Ոստովք և տերևեալ ձիթենեօք. Նբրայեցւոց մանկունք օրհնէին զն. ուրախ լեր Երուսաղէմ քաղաք. և ցընծա Սիոն մայր եկեղեցի։

Զնչ՝ Ո՛րթի՛ւ։

Աւետարան ըստ Ղուկասու։ ԺԸ. 31։

Տէրն մեր Յս Քս

Առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնս. ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ. և կատարեսցին ամենայն գրեալքն մարգարէիւք վն որդւոյ մարդոյ։ Զի մատնեսցի հեթանոսաց և կատակեսցի. և հարկանիցեն և սպանանիցեն զնա, և յերիր աւուր յարիցէ։ Եւ նոքա ոչինչ իմացան յայնցանէ, այլ էր բանն ծածկեալ ի նոցանէ, և ոչ գիտէին զասացեալսն։ Եւ եղեւ ի մօտելն նր յԵրիքով՝ կոյր ոմն նստէր առ ճանապարհաւն մուրացիկ։ Իբրեւ լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր թէ զի՞նչ իցէ այն։ Եւ պատմեցին նմա, թէ Յս Նազովրեցի անցանէ։ Աղաղակեաց և ասէ. Յս որդի՛ Դաւթի՛ ողորմեա՛ց ինձ։ Եւ որ առաջին երթային՝ սաստէին նմա զի լռեսցէ. և նա ևս առաւել աղաղակէր. որդի՛ Դաւթի՛ ողորմեա՛ց ինձ։ Զտեղի առ Յս, և հրամայեաց ածել զնա առ իւր. և իբրեւ մերձ եղեւ առ նա, եհարց զնա և ասէ։ Զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ. և նա ասէ. Տէ՛ր՝ զի բացցին աչք իմ և տեսից։ Եւ Յս ասէ ցնա. հայեա՛ց, հաւատք քո կեցուցին զքեզ։ Եւ առժամայն ետես. երթայր զհետ նորա, և փառաւոր առնէր զԱծ. և ամ ժողովրդեանն տեսեալ՝ տայր օրհնութի Այ։ Եւ մտեալ շրջէր ընդ Երիքով։ Եւ ահա այր մի անուն կոչեցեալ Զակքէոս, և նա էր մաքսապետ, և ինքն մեծատուն. և խնդրէր տեսանել՝ եթէ ո՛վ իցէ Յս, և ոչ կարէր ի բազմութէն, զի կարճ էր հասակաւ։ Եւ ընթացեալ յառաջս՝ ել ի ժանտաթզենին՝ զի տեսանիցէ զնա. քանզի ընդ այն իսկ անցանելոց էր։ Իբրեւ եկն ի տեղին, հայեցաւ ի վեր Յս և ասէ ցնա. Զա՛կքէ՝ փութա՛ էջ այտի, զի այսօր ի տան քում արժան է ինձ ագանել։ Փութացաւ և էջ, և ընկալաւ զնա ուրախութբ։ Իբրեւ տեսին ամե-

նեքին, տրտնջէին և ասէին՝ թէ առ առն մեղաւորի ե֊մուտ լուծանել։ Եկն եկաց Զակքէոս՝ և ասէ ցՏէր. Տէր՝ ահա զկէս ընչից իմոց տաց աղքատաց. և եթէ զոք զրկեցի, հատուցից չորեքկին։ Եւ ասէ ցնա Յս. այսօր եղեւ փրկութի տանս այսմիկ. քանզի և սա որդի Աբրահամու է։ Զի եկն որդի մարդոյ խնդրել և կե֊ցուցանել զկորուսեալն։ Եւ մինչդեռ նոքա զայն լսէին, յաւել առակ մի և ասէ, վն մերձենալոյ նր յԵրմ, և համարելոյ նց եթէ առժամայն յայտնելոց է արքայ֊ութի Այ։ Ասէ. այր ոմն ազնուական գնաց յաշխարհ հեռի՝ առնուլ իւր թագաւորութիւն և դառնալ։ Եւ կոչեցեալ զծառայս իւր՝ ետ նոցա տասն մնաս. և ասէ ցնոսա. յարդեցէք զայդ՝ մինչեւ եկից։ Եւ քաղաքա֊ցիքն նր ատէին զնա, առաքեցին հրեշտակս զկնի նր և ասեն, թէ ոչ կամիմք թագաւորել դմա ի վերայ մեր։ Եւ եղեւ դառնալ նմա՝ առեալ զթագաւորութի, և կոչեալ զծառայսն՝ որոց տուեալ էր զարծաթն, զի գի֊տասցէ թէ ո զինչ շահեցաւ։ Եկն առաջինն և ասէ. տէր՝ մնասն քո տասն մնաս արար։ Եւ ասէ ցնա, ազ֊նիւ ծառայ և բարի, զի ի փոքուդ հաւատարիմ եղեր՝ լինիջիր իշխանութի ունել ի վերայ տասն քաղաքի։ Եկն երկրորդն և ասէ. մնասն քո արար հինգ մնաս։ Ասէ և ցնա. և դու լինիջիր ի վր հինգ քաղաքաց։ Եկն միւսն և ասէ. տէր՝ ահա մնասն քո՝ զոր ունէի ծրարեալ ի վար֊շամակի. երկնչէի ի քէն, զի այր ստամբակ ես. բառ֊նաս զոր ոչ եդիր, և հնձես զոր ոչ սերմանեցեր։ Եւ ասէ ցնա, ի բերանոյ քումմէ դատեցայց զքեզ ծառայ անհաւատ. գիտէիր թէ ես այր մի ստամբակ եմ, բառ֊նամ զոր ոչ եդի, և հնձեմ ուր ոչ սերմանեցի։ Եւ ընդէր ոչ ետուր զարծաթն իմ ի սեղանաւորս. և ե֊կեալ ես տոկոսեօք պահանջէի։ Եւ ասէ ցսպասաւորսն. առէք ի դմանէ զմնասն, և տարայք տուք այնմ որ ունիցի զտասն մնասն։ Եւ ասեն ցնա. տէր՝ ունի տասն

մնաս։ Ասեմ ձեզ. եթէ ամի որ ունիցի տացի. և յայնմանէ որ ոչն ունիցի՝ և զոր ունիցին բարձցի ի նմանէ։ Բայց զթշնամիսն իմ զայնոսիկ, որ ոչն կամէին զիս թագաւորել ի վերայ նոցա, ածէք այսր և սպանէք առաջի իմ։ Եւ իբրեւ զայս ասաց. գնաց յառաջ՝ ելանել յԵրուսաղէմ։ ԺԹ. 28։

Եւ երգեն յայլ հանգիստ՝ ասելով Շարական ԴՁ։

Օգա՛լուստ քո՛ Քս այսօր յԵ՛րուսաղէմ նո՛ր եկե՛ղեցի՛ նբ. յա՛ղթա՛կա՛ն երգով բա՛րե՛բանեմք. * օ՛րհնեա՛լ եկեալ ա՛նուա՛մբ Տ՛ն։ Ո՛ր վա՛սն մերո՛յ փրկութեա՛ն յաւանակի՛ նստե՛լ յանձն ա՛ռեր. ընդ մանկա՛նցն բա՛րեբանե՛մք. օ՛րհնեա՛լ ես։ Թագաւո՛ր երկնաւո՛ր զե՛կեղեցի՛ քո անշա՛րժ պա՛հեա. և զերկրպա՛գուս անուա՛նդ քո՛ պա՛հեա՛ ի խա՛ղա՛ղութեա՛ն։

ՁՆԻ՝ Ո՛ՐԹԻՒ։

Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԲ. 12։

Վասն գալստեան Տեառն մերոյ Յսի Քսի։

Ի վաղիւ անդր ժողովուրդ բազում որ եկեալ էր ի տօնն, իբրեւ լուան թէ գայ Յս յԵրուսաղէմ, առին ոստս արմաւենեաց և ելին ընդ առաջ նորա. աղաղակէին և ասէին. ովսաննա, օրհնեալ որ գաս յանուն Տեառն՝ թագաւորդ Իէլի։ Եւ գտեալ Յսի էշ մի՝ նստաւ ի վր նր. ոպ և գրեալ է. Մի՛ երկնչիր դուստր Սիովնի, ահաւադիկ թագաւոր քո գայ նստեալ ի վր յաւանակի իշոյ։ Եւ զայն ինչ ոչ գիտացին աշակերտքն նր զառաջինն, այլ յորժամ փառաւորեցաւ Յս՝ յայնժամ յիշեցին, եթէ այն էր որ գրեալն էր վս նր. և զայն արարին նմա։ Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ նմա, թէ զՂազար կոչեաց ի գերեզմանէն, և յարոյց զնա ի մեռելոց։ Եւ վս այնորիկ ընդ առաջ ելեւ նմա ժողովուրդն, զի լուան եթէ զայն նշանս արարեալ էր նր։ Իսկ Փարիսեցիքն ասէին ընդ միմեանս. տեսանէք՝

զի ոչ ինչ օգտիք. ահաւասիկ աշխարհ ամ զկնի նր գնաց։ Էին անդ ոմանք և հեթանոսք յելելոցն անդր, զի երկիր պագանիցեն ի տօնին։ Նոքա մատեան առ Փիլիպպոս՝ որ ի Բեթսայիդայ Գալիլեացւոցն էր, աղաչէին զնա և ասէին. տէ՛ր՝ կամիմք զՅիսուս տեսանել։ Գայ Փիլիպպոս և ասէ ցԱնդրէաս. Անդրէաս և Փիլիպպոս ասեն ցՅիսուս։ Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա և ասէ. եհաս ժամ զի փառաւորեսցի որդի մարդոյ։ 23։

Շարական ԴՁ։

Ի՛ յարութե՛ն յաւո՛ւր գալստեան փրկչի՛ն. տա՛րածանէի՛ն մանկո՛ւնքն ըղհա՛նդե՛րձս.* և ա՛նդադա՛ր ձա՛յնիւ օրհնէ՛ին. օրհնեա՛լ եկեալ ա՛նուա՛մբ Տեա՛ռն։ Ո՛ստս ի՛ ծառո՛ց բերեա՛լ մատո՛ւցանէի՛ն. Ա՛ծորդւո՛յն առ ճա՛նա՛պարհաւն. և ա՛նդադա՛ր ձա՛յնիւ։ Ի՛ ծերո՛ց բը՛ղխեա՛լ օրհնութի՛. ե՛ւ ի տղայո՛ց փառա՛բա՛նութի. և ա՛նդադա՛ր ձայնիւ։

Սաղմոս Դ։

ԿՑ. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութի սրտից մերոց։

Փխ. Ի կարդալ իմում լուաւ ինձ Ած ըստ արդարութեան. ի նեղութե ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ և լո՛ւր աղօթից իմոց։

Որդիք մարդկան մինչեւ յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութի և խնդրէք զստութի։ Ծաներո՛ւք՝ զի սքանչելիս արար Տէր սրբոյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա։

Բարկանայք և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք։ Մատուցէք պատարագս արդարութեան, և յուսացարո՛ւք ի Տէր։

Բազումք ասէին, թէ ո՞ ցուցցէ մեզ զբարութի Տռն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրա-

խութի սրտից մերոց։ Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. — զի դու Տէր միայն առանձինն յուսով քով բնակեցուցեր զմեզ։

Ձնի՝ Որթիւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԴ. 27։

Տէրն մեր Յս Քս ասէ.

Զի որպ̃ փայլակն՝ որ ելանէ յարեւելից և երեւի մինչեւ յարեւմուտս՝ այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ։ Զի ուր գէշն իցէ՝ անդր ժողովեսցին արծուիք։ Վաղվաղակի յետ նեղութե աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից, և զօրութիւք երկնից շարժեսցին։ Եւ ապա երեւեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ամ ազգք երկրի. և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վր ամպոց երկնից զօրութբ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նր ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչեւ ի ծագս նց։ Ի թզենւոյ անտի ուսարուք զառակն. զի յորժամ նր ոստքն կակղասցին և տերեւն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամ. գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչեւ այս ամ եղիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն։ 35։

Ապա ասէ քարոզ. Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչ։ Վասն ի վերուստ։ Եւ [illegible] զանդաստանն, և օրհնեն զչորս կողմն աշխարհի։

Քարոզ. Սուրբ խաչիւս։ Աղօթք. Պահպանեա։

Եւ է դառնալն յեկեղեցին՝ ասասցեն. Եւ եւս խաղաղու-
թեան։ Օրհնութիւն և փառք։

Սաղմոս ՁԵ։

Խոնարհեցո Տր̅ զունկն քո և լուր ինձ, զի աղքատ և տնանկ եմ ես։

Պահեա զանձն իմ Տր̅, Տր̅. փրկեա զծառայս քո Ած̅ իմ, որ ի քեզ յուսացայ։

Ողորմեա ինձ Տր̅, զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ. ուրախ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ Տր̅ համբարձի զանձն իմ։

Զի դու Տր̅ քաղցր և ուղիղ ես. բազումողորմ առ ամենեսեան որք կարդան առ քեզ։

Ո՛ւնկն դիր աղօթից իմոց, և նայեա՛ց ի ձայն խնդրուածաց իմոց։

Յաւուր նեղութե̅ իմոյ կարդացի առ քեզ և լուար ինձ։

Շարական ԲԿ։

Որպէս լեր ընկերեցի ընդ. ի գամլոյստեան ընդ միածնին. որպէս լեր եւ ցընծա հանդերձ ամենայն սրբովք։ Երէցս կրկնեա։

Ոչ ոք է նման քեզ յաստուածս Տր̅. և ոչ ոք է որպէս զգործս քո։

Զամենայն ազգս՝ զոր արարեր, եկեսցեն և երկիր պագցեն առաջի քո Տէր, և փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։

Մեծ ես դու Տր̅, և առնես սքանչելիս, և դու միայն ես Աստուած։

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, և գնացից ի ճշմարտութե̅ քում. և ուրախ եղիցի սիրտ իմ երկնչել յանուանէ քումմէ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ. բոլորով սրտիւ իմով փառաւոր արարից զանուն քո յաւիտեան։

Մեծ եղեւ ի վերայ իմ ողորմութ՟ի քո, և փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց։

Շարական ԲԿ։

Խընդա յոյժ դուստըր վերին Սիովնի. ահա թագաւորն քո գայ նըստեալ յաւանակի նորոյ. արդար եւ փըրկիչ փըրկէ եւ կեցուցանէ։ Երեքօ՟ կրկնել։

Ա՟ծ, անօրէնք յարեան ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ. և ոչ համարեցան զքեզ Ա՟ծ առաջի իւրեանց։

Այլ դու Տ՟ր Ա՟ծ իմ, գթած ես և ողորմած. երկայնամիտ բազումողորմ և ճշմարիտ. նայեաց առ իս, և ողորմեա ինձ։

Տուր զօրութ՟ի ծառայի քո. կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տ՟ր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Շարական ԲԿ։

Զուարճացիր եւ բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զոստըս ծաղկեալըս հաւատով եւ ասա. օրհնեալ որ եկիրըդ թագաւոր տիեզերաց։ Երեքօ՟ կրկնել։

Եւ ասա Մաղթանս։

Փառք քեզ Աստուած, փառք քեզ. յաղագս ամենայնի Տէր, փառք քեզ։

Եւ ևս խաղաղութ՟ե զՏէր աղաչեսցուք, ընկալ։

Օրհնութ՟ի և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյ։

Սաղմոս ՃԼԹ։

Ապրեցո զիս Տ՟ր ի մարդոյ չարէ. յառնէ անիրաւէ փրկեա զիս։

Խորհեցան զանօրէնութ՟ի ի սիրտս իւրեանց. զօր ա՟մ պատրաստեցան ի պատերազմ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի, և թոյնք իժից ի ներքոյ շրթանց նոցա։

Պահեա՛ զիս Տր ի ձեռաց մեղաւորի, և ի մարդոյ չարէ փրկեա՛ զիս։

Խորհեցան խափանել զգնացս իմ. թաքուցին ամբարտաւանք որոգայթ ինձ։

Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց. շուրջ զշաւղօք իմովք. եդին ինձ գայթագղութի։

Ասացի Տէր Ած իմ ես դու. ունկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց։

Տէր Տէր զօրութի փրկութե իմոյ. հովանի գլխոյ իմոյ յաւուր պատերազմի։

Մի՛ մատներ զիս Տէր ի ցանկութի մեղաւորաց, զք խորհեցան վն իմ ընդ վայր հարկանել զիս։

Ձի մի՛ երբէք բարձրասցին, և խորհուրդք նոցա մի՛ կատարեսցին. վախճան կատարածի նոցա վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնս։

Արկցես ի վերայ նոցա կայծակունս հրոյ, և կործանեսցես զնս. ի տառապանաց մի՛ կարասցեն կեալ։

Մարդոյ լեզուանւոյ մի՛ յաջողեսցի ի վր երկրի. զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ի կորուստ։

Հարական ԲԿ։

Օ՛ քրի՛ստոս թագա՛ւո՛րն որ է՛նն ի յա՛թոռ փա՛ռաց. տե՛սաք ի յե՛րկրի նը՛ստեա՛լ ի նո՛ր յա՛ւանա՛կի։ Եղէգ. կէնե.։

Ծանեայ, զի առնես Տէր դատաստանս աղքատի, և իրաւունս տնանկի։

Արդարք գոհասցին զանուանէ քումմէ, և բնակեսցին ուղիղք առաջի երեսաց քոց։

Տէր կարդացի առ քեզ, և լո՛ւր ինձ. նայեա՛ց ի ձայն աղօթից իմոց ի կարդալ իմում առ քեզ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ որպ խունկ առաջի քո Տէր. համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի։

Դի՛ր Տէր պահապան բերանոյ իմոյ, և դուռն ամուր շրթանց իմոց. զի մի՛ խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան։

Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութի͞ն. և ոչ եղէց կցորդ ընտրելեաց ն͞ց։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութ͞բ, և յանդիման արասցէ. իւղ մեղաւորի մի՛ օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս նորա։

Արգելան մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն բանից իմոց և քաղցրասցին։

Որպէս թանձրութիւն հողոյ զի սփռեալ է ի վերայ երկրի. ցրուեսցին ոսկերք նոցա մերձ ի դժոխս։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ. մի՛ հաներ զհոգի յինէն։

Պահեա՛ զիս յորոգայթէ, որ թագուցաւ ինձ. ի գայթագղութենէ գործողին զանօրէնութիւն։

Անկցին ի ցանցս նորա մեղաւորք. միայն եմ ես՝ մինչեւ անցից։

Շարական ԲԿ։

Ընդ առաջ ելեալ արքայից դասք Եբրայեցւոցն. ծերքն ոստովք ձիթենեօք եւ տղայքն արմաւենեօք։ Եւէյս կրկնեա։

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի. ձայնիւ իմով զՏէր աղաչեցի։

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ, և զնեղութի͞ս իմ առաջի նորա պատմեցից։

Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ՝ դու Տէր ծանեար զշաւիղս իմ. ի ճանապարհ՝ յոր և գնայի, թագուցաւ ինձ որոգայթ։

Հայէի յաջմէ՝ տեսանէի, և ոչ ոք ճանաչէր զիս. կորեաւ յինէն փախուստ իմ, և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ։

Աղաղակեցի առ քեզ Տէր, և ասացի. դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց։

Նայեաց Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ եղէ յոյժ. ապրեցո զիս ի հալածչաց իմոց, զի հզօր եղեն քան զիս։

Տէր հան ի բանտէ զանձն իմ. գոհանալ զանուանէ քումմէ։

Եւ քեզ սպասեն արդարք, մինչև հատուսցես ինձ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Շարական Բկ։

Միաբանական ձայնիւ գոչէին երգ նոր. բարեբանելով զանմահ Թագաւորն։ Երկիցս կրկնել։

Եւ ապա Մաղթանք. Օրհնեալ Տէր, որ բնակեալ։

Մեծացուցէ գովութեան։ Օրհնեալ որ գաս. Երես 96։

Քարոզ. Ասասցուք։

Համբարձի Բկ։

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանէին ծերքն ոստովք եւ տղայքն արմաւենեօք. * ովսաննա. օրհնեալ եկեալդ ի յանուն Տեառն։

Փառք Հօր։ Զոր սերովբէքն ծածկաբար ընդունել ոչ բաւէին. ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարեբանեցաւ ի տղայոց. ովսաննա։

Այժմ և։ Այսօր ընդ ծերոց և ընդ տղայոց օրհնաբանութեանցն վերերգեսցուք նորոյ արքայիդ եկեալ յԵրուսաղէմ. ովսաննա։

Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն. օրհնեալ որ գալոցդ ես։ — ԶՕրհնեալ եկեալն երկիցս ասա։

Ապա Քրզ. Վասն խաղաղ։ Աղօթ. Հայր գթած։

Դի՛ր Տէր պահապան բերանոյ իմոյ, և դուռն ամուր շրթանց իմոց. զի մի՛ խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան:

Ի պատճառել զպատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութի՟. և ոչ եղէց կցորդ ընտրելեացն՟:

Խրատեսցէ զիս արդարն ողորմութ՟, և յանդիմանարասցէ. իւղ մեղաւորի մի՛ օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս Նորա:

Արգելան մերձ առ վիմին դատաւորք Նոցա. լուիցեն բանից իմոց և քաղցրասցին:

Որպէս թանձրութիւն հողոյ զի սփռեալ է ի վերայ երկրի. ցրուեսցին ոսկերք Նոցա մերձ ի դժոխս:

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ. մի՛ հաներ զհոգի յինէն:

Պահեա զիս յարոգայթէ, որ թագուցաւ ինձ. ի գայթագղութենէ գործողին զանօրէնութիւն:

Անկցին ի ցանցս Նորա մեղաւորք. միայն եմ ես՝ մինչեւ անցից:

Շարական ԲԿ:

Ընդ առաջ ելեալ արքային դասք Երկրայնեցւոցն. ծերքն ոստովք ձիթենեօք եւ տղայքն արմաւենեօք: Երէցս կրկնէ:

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի. ձայնիւ իմով զՏէր աղաչեցի:

Սփռեցից առաջի Տեառն զաղօթս իմ, և զնեղութիս իմ առաջի Նորա պատմեցից:

Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ՝ դու Տէր ծանեար զշաւիղս իմ. ի ճանապարհ՝ յոր և գնայի, թագուցաւ ինձ որոգայթ:

Հայէի յաջմէ՝ տեսանէի, և ոչ ոք ճանաչէր զիս. կորեաւ յինէն փախուստ իմ, և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ:

Աղաղակեցի առ քեզ Տէր, և ասացի. դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց:

Նայեաց Տէր յաղօթս իմ, զի ես խոնարհ եղէ յոյժ. ապրեցո զիս ի հալածչաց իմոց, զի հզօր եղեն քան զիս:

Տէր հան ի բանտէ զանձն իմ. գոհանամ զանուանէ քումմէ:

Եւ քեզ սպասեն արդարք, մինչեւ հատուցես ինձ:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ:

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Շարական Բկ:

Միաբանական ձայնիւ գոչէին երգ նոր. բարեբանելով զանճառ թագաւորն: Երիցս կրկնեա:

Եւ ասա Մաղթանս. Օրհնեալ Տէր, որ բնակեալ:

Մեսեդի Գալստեան: Օրհնեալ որ գաս. Երեք 96:

Քարոզ. Ասասցուք:

Համբարձի Բկ:

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանէին ծերքն ոստովք եւ տղայքն արմաւենեօք. * Ովսաննա. օրհնեալ եկեալ ի յանուն Տեառն:

Փառք Հօր: Զոր սերովբէքն ծածկաբար ընդունել ոչ բաւէին. ի վերայ յաւանակի նորոյ նստեալ բարեբանեցաւ ի տղայոց. Ովսաննա:

Այժմ և: Այսօր ընդ ծերոց և ընդ տղայոց օրհնաբանութեանցն վերերգեմք նորոյ արքային եկեալ յԵրուսաղէմ. Ովսաննա:

Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն. օրհնեալ որ գալոցդ ես: — ԶՕրհնեալ եկեալն Երիցս ասա:

Ալէ. Քրզ. Վասն խաղաղ: Աղօթ. Հայր գթած:

---

# ԿԱՐԳ ԴՌՆԲԱՑԻ

## ՄԵԾԻ ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԵՐԵԿՈՅԻՆ

*Ըստ խորհրդածութեանն, որ կատարի ի սուրբ քաղաքն Երուսաղէմ:*

Զկնի Հայր մերին զգեցուցանեն զեպիսկոպոսն՝ եթէ լինի. կամ զմի ի պատուաւոր քահանայիցն. եւ լուցանեն մոմեղէնս եւ տան ի ձեռս ամենեցուն: Եւ միաբան յարեալ ելանեն խնկովք եւ մոմեղինօք եւ ամենայն զարդու: Եւ գան ի դուռն եկեղեցւոյն՝ ունելով քահանային ի ձեռն զսուրբ խաչն: Եւ փակի դուռն եկեղեցւոյն:

Եւ ասեն բարձր ձայնիւ Սաղմոս ՃԺԷ:

48. *Օրհնեալ որ գալոց ես անուամբ Տն, և օրհնեցաք զքեզ ի տանէ Տն:*

Փխ. *Խոստովան եղերուք Տն, զի բարի է, զի յաւիտեան է ողորմութի նր:*

*Ասասցէ տունն Իէլի՝ զի յաւիտեան է ողորմուի նր:*

*Ասասցէ տունն Ահարոնի՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա:*

*Ասասցեն երկիւղածք Տն՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա:*

*Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, և լուաւ ինձ յանդորր:*

*Տէր է իմ օգնական, և ես ոչ երկեայց. զի՞ արասցէ ինձ մարդ:*

*Տր է իմ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ:*

*Բարի է յուսալ ի Տր՝ քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տր՝ քան յուսալ յիշխանս:*

*Ամենայն ազինք շրջեցան զինև, և անուամբ Տեառն յաղթեցի նոցա:*

*Շրջելով շրջեցան զինև, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տեառն վանեցի զնոսա:*

Շուրջ եղեն զինեւ ոպ մեղուք. վառեցան, բորբոքեցան ոպ փուշք ի հուր. և անուամբ Տն̃ մերժեցի զնս̃:

Ի մերժելն դրդուեցայ, և եղէ մերձ ի գլորել. և Տր̃ ընկալաւ զիս:

Զօրուի̃ իմ և օգնուի̃ իմ Տր̃, և եղեւ ինձ ի փրկուի̃:

Ձայն ցնծուե̃ թ փրկուե̃ թ ի յարկս արդարոց:

Աջ Տն̃ արար զօրուի̃ թ, աջ Տն̃ բարձր արար զիս. և աջ Տն̃ արար զօրուի̃ թ:

Ոչ մեռայց, այլ կեցից, և պատմեցից զգործս Տն̃:

Խրատելով խրատեաց զիս Տր̃. և ի մահ ոչ մատնեաց:

Բացէք ինձ զդրունս արդարուե̃ թ, զի մտից ընդ այն և խոստովան եղէց Տեառն:

Եւ ապա ասեն մաղթան Շարական ԲՁ:

Շնորհեա մեզ Տէր արթնուի̃ թ ընդ իմաստուն կուսանացն. եւ զհոգւոց մերոց լապտերըս պայծառացո:

Երկրպագեսցուք ի քեզ Տէր զարհուրեալք ի պատասխանոյն. զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ զձեզ:

Յորժամ գաս փառօք Հօր դատել զաշխարհս ամ̃. շնորհեա և մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ: Բացցէ մեզ դուռն ողորմութեան երկնաւոր փեսայիւն. և մտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն:

Ժամանեսցուք ընդ առաջ փեսային և մտցուք ի յառագաստ նորա. զի մի՛ մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն: Պայծառասցին լապտերըք հոգւոց մերոց. և բազմեցուսցես զմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից:

Այս եղանակաւորն կամ զգեցեալ քահանայն արտաքոյ առ դուրս եկեղեցւոյն կալով, ասէ ողորմ յայտնի եւ դողդողեամբ. քանզի կատարածի գալստեանն եւ դատաստանի աւուրն նշանակ է:

Բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր զդուռն ողորմուե̃ թ. որ ողբալով կարդամք առ քեզ:

Ե. մի ոճ է թանանայէցն կամ է սարկաւագաց փոխակալ է ներքո կոչեալ յայնէ սռելով:

Ո՛վ են սոքա զի բացին. զի այս դուռն Տեառն է. և արդարք մտանեն ընդ սա:

Ե. ղփեցեալ թանանայն, Ե. որք առ պատրս եկեղեցւոյն են, արփատուսափ տուէն ողջնայն:

Ոչ թէ միայն արդարք մտանեն. այլ և մեղաւորք խոստովանութբ և ապաշխարութբ արդարացեալ մտանեն ընդ սա:

Ե. սարկաւագն է. ներքոսափ ասէ:

Զի սա է դուռն երկնից և հովիտ արտմութե. զոր ուխտեաց Ած Յակովբայ. արդարոց հանգիստ. մեղաւորաց քաւարան. հրեշտակաց բնակարան. Քնի արքայարան. սբց ժողովարան. տեղի ապաւինի. լեառն Տեառն և տուն Աստուծոյ:

Ե. թանանայն արփատուսափ ասէ:

Քանզի արժան է և ճշմարիտ զոր ասես վն նբ եկեղեցւոյս. զի սա է մեզ յոյս կենաց. և սովաւ գտանեմք զփրկութի հոգւոց. և սա է մեզ մայր անարատ. և ի սմանէ ծնանիմք որդիք լուսոյ և ճշմարտութե. և սովաւ ելանեմք առ Քն հայր մեր երկնաւոր:

Ե. առեն է պասուն եկեղեցւոյն միաբան Շարականն ԲԿ:

Ի մաստուն կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց. ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք: Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալք ի յիւղոյն. անպատրաստ գտան գալըստեան փեսային շիջեալ լապտերօք: Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր. զի մտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք:

Յոյս իմ ես դու Տէր քաւիչ յանցանաց իմոց. մի անտես առներ զըղջումն արտասուաց իմոց. ողորմեա

ինձ Ած։ Առ քեզ ապաւինեցայ ոչ զանառակ որդին. Հայր մեղայ յերկինս և առաջի քո. ողորմեա ինձ Ած։ Փրկեա զիս Ած ի բազում մեղաց իմոց. արա արժանի քոյին սուրբ արքայութեանդ. ողորմեա ինձ Աստուած։

Մեղք իմ բազում են յոյժ ծանր են քան զաւազ ծովու. * քանզի քեզ միայնոյ մեղայ. ողորմեա ինձ Ած։ Բաց Տէր ըզդուռն ողորմութեան որ ողբալով կարդամ առ քեզ. քանզի քեզ։ Հեղ յիս ըզգըթութիւնս քո բազումողորմ եւ մարդասէր. քանզի։

Ե– ապա ասէ զՓեցեալ քահանայն բարձր ձայնիւ։

Բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր. բաց մեզ Տէր զդուռն ողորմութեան. որ ողբալով կարդամք առ քեզ։

Ե– սարկաւագն ի ներքուստ ասէ։

Ահա տեսանեմք զՏէրն մեր Քս. որ բազմեալ կայ ի վր սբ սեղանոյս. և կոչէ առ ինքն զկամարարս իւր. թէ ուր եսն եմ անդ և պաշտօնեայն իմ եղիցի։

Ե– քահանայն արտաքուստ ասէ։

Գին եմք անապական արեան Որդւոյն Աստուծոյ. ցնծութեամբ օրհնեսցուք զփրկիչն մեր Քրիստոս. և ասասցուք ամենեքեան. փառք սոսկալի գալստեանն քո Տէր։

Ե– ասեն միաբան Շարական ԲՁ։

Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութեամբ. ’նդառաջել որ գաս ի դատել զերկիր։ Անաղօտ վառեալ լապտերբք հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացն. մտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային։ Փութասցուք կանխել յառաջ քան ըզձայն ծայրին բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ շիջման հինգ կուսանացն։

Եւ ի կատարման շարականին զգեցեալ քահանայն ասէ արտա-
քուստ բարձր ձայնիւ։

Բա՛ց մե՛զ Տէ՛ր. բա՛ց մե՛զ Տէ՛ր. բա՛ց մե՛զ Տէ՛ր զդո՛ւռն ո՛ղո՛րմութե՟. որ ո՛ղբալով կարդա՛մք առ քե՛զ։

Եւ սարկաւագն ի ներքուստ ասէ։

Փողն ե՛րկնաւորին ԱՅ ահագի՛ն ձայնիւ գոչէ՛ ասե՛լով. ահա փեսա՛յ գայ. արի՛ք ընդ առա՛ջ նորա՛։

Եւ զգեցեալ քահանայն ասէ ահիւ եւ դողութեամբ. բայց է
մեծ ահեղ օր աւուրն։

Ահա՛ ես եւ մանկո՛ւնք իմ զոր ետ ինձ Ա՟Ծ. կա՛մք ամենեքեա՛ն. եւ ա՛կն ունիմք տեսոյն Քի՟. եւ լսե՛լ զե-րանաւէտ բարբառն նորա՛։

Եւ սարկաւագն ի ներքուստ պատասխանէ ասելով։

Զա՛յն արարչին ԱՅ գոչէ ասելո՛վ. եկա՛յք օրհնեալք Հօր իմո՛յ. ժառանգեցէ՛ք զպատրաստեալ ձեզ զար-քայութի՛ն երկնից ի սկզբանէ աշխարհի՛։

Եւ ապա քահանայն ասէ ի բեմ։

Բացէ՛ք ինձ զդրունս արդարութե, զի մտից ընդ այն եւ խոստովան եղէց Տ՟ն։

Եւ բանայ զդուռն խաչամբ իւրով. զի իշխանութիւն է նորա
փակելոյ եւ բանալոյ։ Եւ ամենայն ժողովուրդն մտանեն յե-
կեղեցին ցնծութեամբ եւ ուրախութեամբ։ Եւ ասեն
Շարական Դ՟Կ։

Ողորմութե՛ քո զդուռըն բա՛ց մեզ Տ՟ր. եւ ա՛ր-ժանի ա՛րա զմե՛զ լուսեղէն յարկացդ քոց ընդ սուր-բըս քո։ Ի պատրաստեա՛լ քո յօթեւա՛նըս սըրբոց քոց. ընկա՛լ եւ զմեզ փըրկի՛չ յորդէգրութիւն ի դըպրութեա՛ն կենաց։ Ի նըստե՛լ քո յատենի դա-տաւոր ահե՛ղ խնայեա՛ յարարածըս քո. բարեխօսու-թ՟բ եւ աղօթիւք ս՟բ ճըգնաւորացն։

Ձ̃ն՝ Ո՛րթի՛ւ։

Ս̃բ Աւետարանիս որ ըստ Յովհաննու։ Ժբ․ 44։

Տէրն մեր Յ̃ս Ք̃ս

Աղաղակէր և ասէր․ որ հաւատայ յիս, ոչ հաւատայ յիս, այլ յայն որ առաքեացն զիս։ Եւ որ տեսանէ զիս, զայն տեսանէ՝ որ առաքեացն զիս։ Ես լոյս յաշխարհ եկի․ զի ամ̃ որ հաւատայ յիս՝ ի խաւարի մի՛ մնասցէ։ Եւ եթէ ոք լուիցէ բանից իմոց և ոչ պահեսցէ, ես ոչ դատիմ զնա․ քանզի ոչ եկի՝ թէ դատեցայց զաշխարհ, այլ զի փրկեցից զաշխարհ։ Որ անարգէ զիս, և ոչ ընդունի զբանս իմ․ գոյ որ դատի զնա․ բանն զոր ես խօսեցայ՝ նա դատի զնա յաւուրն յետնում։ Զի ես յանձնէ իմմէ ոչ խօսեցայ․ այլ որ առաքեացն զիս Հայր՝ նա ետ ինձ պատուէր՝ զի՛նչ ասացից և զի՛նչ խօսեցայց։ Եւ գիտեմ եթէ պատուէրն այն կեանք են յաւիտենականք։ Արդ՝ զոր եսն խօսիմ, որպ̃ ասաց ինձ Հայրն՝ այնպէս խօսիմ։ 50։

Ձ̃նի քարոզ․ Խնդրեսցուք։

Եւ ամենեքեան բարձր ձայնիւ ասեն․ կեցո՛ Տէ՛ր։

Տէր ողորմեա․ Տէ՛ր ողորմեա՛․ Տէ՛ր ողորմեա՛։

Աղօթ․ Թագաւոր խաղաղութե̄ օգնական։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։

Եւ արձակին ի խաղաղութիւն։

# ԱՒԱԳ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ, ԲԶ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն ԲՁ:

Անեղն ի Հօրէ ծնեալ Որդի յանէից գոյացոյց զեղեալքս զերկնային և զերկրաւորս էութի. * արարածք ամենայն տուք փառս արարչին յաւիտենից: Պատկեր աներեւոյթ փառացն Հօր ի պատկեր բարերարութե իւրոյ. արար ըզմարդկային բնութիւնս. արարածք: Լոյսն ի Հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զԱդամ. ի դրախտին եդեալ անմահ տընկոցն երկրագործ. արարածք:

† Եկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզհօրն ըզվըտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս արարչին. եւ զգեցաւ զթըզենւոյն ծածկոյթ փոխանակ անձառ լուսոյն: Գովեսցէք զՈրդին Այ՝ այսօր ցնծութեամբ որդիք Ադամայ. որ եկն ի խնդիր եղծեալ պատկերին. և գտեալ նորոգեաց ի փառս առաջին պատմուճանին:

Ղւր: Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութե. ’Նդառաջել որ գաս ի դատել զերկիր: Անաղօտ վառեալ լապտերօք հաւատոյ ընդ դաս իմաստուն կուսանացն. մըտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային: Փութասցուք կանխեալ յառաջ քան ըզձայն ծ՝ծային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ շիջման հինգ կուսանացն:

Որ նըստիս ի քրովբէս Աստուած Բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձիթենեաց. * օրհնեմք ըզքեզ անդադար երգով: Որ

համագոյդ ես խորհրդոցըդ հայրենի՝. աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալստեանն. օրհնեմք: Որ ամենայնց ես արարիչ և ըստեղծիչ կենդանութե՝. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութե՝ըդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբյ քո. օրհնեմք:

Շնորհեա մեզ Տէր արթնութի՝ ընդ իմաստուն կուսանացն. և զհոգւոց մերոց լապտերըս պայծառացո: Երկընչիմք ի՝ քէն Տէր զարհուրեալք ի պատասխանոյն. զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ: Յորժամ գաս փառօք Հօր դատել ըզտիեզերս ամ՝. շնորհեա և մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ: Բացցէ մեզ դուռն ողորմութեան երկնաւոր փեսային. և մըտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն: Ժամանեսցուք ընդ առաջ փեսային և մըտցուք ի յառագաստ նորա. զի մի մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն: Պայծառասցին լապտերըք հոգւոց մերոց. և բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից:

Աղչ: Որ ի՝ վերդ ես քան զամ ըզմիտս և զխորհուրդս. * փառաց թագաւոր խընայեա ի մեզ: Որ միայն ունիս զանմահութիւն և զանեղութիւն. փառաց թագ: Որ նըստիս ի քրովբէս Երրորդութի անբաժանելի. փառաց: Որ երկըրպագեալդ ես ի հրեշտակաց և ի մարդկանէ. փառաց թագ:

ՀՈԳ. Նոյն և նըման Հօր և Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բըղխումըն Հօր անքըննաբար առող յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց առաքելոց. արբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութե՝: Էից ստեղ-

ծօղ արարածոց որ շրջէիր ի վր̃ ջրոց. նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. գրգռեաս սիրով ազատնակերպ զմարդիկ ծնանիս ածա-կերպ. * աւրհնեա և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութե̃ն: Բարուն վերնոցն իմանալեաց և ըս-տորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի ձրկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. աւրհնեա և:

ՆՆԸ: Հրեշտակային ձայնիւ օրհնեսցուք զամենասր զԵրրորդութիւնն. փառաւորելով ըզհայր. որ վերա-կոչեաց * զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն: Երգեսցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սրբեցելոց. Քրիստոսի երկրպագելով. որ վերակոչեաց զամենե-սեան: Արբամասաց ձայնիւ օրհնեսցուք. հոգեւորական հրնչմամբ գովեսցուք. սուրբ զհոգին փառաւորելով. որ վերահանգոյց զամենեսեան:

ԱՁՆ: Ըզքեզ կոյս և մայր և բնակարան ածային ներմարդութեանն. գոհաբանեմք և վերօրհնեմք զե-ղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան. * վս̃ որոյ ըզքեզ Ածածին և կոյս բարեբանեմք ըզմայր և զաղախին փրկչին մերոյ: Ծընունդըն Հօր և հինաւ-ուրց անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորո-վայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ. վս̃ որոյ: Ծընեալն ի քէն ի խաչ ելեալ. եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր. անարգել ի մարդկանէ փառաւորու-թբ̃ էութբ̃ երկրպագեալ. վս̃ որոյ: Ըզքեզ ոչ մի-այն որդիք մարդկան այլ և վերին զօրութիք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց. գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւո-րեն ըզմայր և զաղախին փրկչին մերոյ:

խչ: Բանալի արքայութեան տուաւ հողածին մար-
դոյն. ուստի յառաջին ճաշակմանէն արտաքս անկեալ
ի յաւէժ կենդանութեանն. * որ ձեւացոյց մեզ.
սովաւ մըտանել ընդ դուռն անեղաշէն դրախտին
Տեառն: Գաւազանաձեւ երեւեալ եգիպտական ազ-
գին. ցուցանելով զզօրութիւն սըրբոյ խաչին. յափըշ-
տակելով ըզգաւազանըն դիւթականն. որ ձեւ-
ացոյց: փառք Հօր և: Գրոշմ ըզգայութեն օրինակեալ
ի վերայ սեմոց դրանց նոցա. աներկիւղ պահելով
ըզժողովուրդն յանդրանկածախ սատակմանէն.
որ ձեւացոյց:

Այժմ և միշտ: Նոր նորոգող բնութեան մերոյ Յս.
որ ի խորհուրդ հընուեն մարդոյն. զանպըտուղն այսօր
չորացուցեր զթըզենին. եւ ըզմեզ ի հնացեալ մեղաց
նորոգեա ի կեանս անմահ:

Մաղթանք. փառք հրաշափառ տէրութեն:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Զի նա ասաց և եղեն, հրամայեաց և հաստատեցան:
կարգեաց ըզնս յաւիտեան. սահման եդ որք ոչ ան-
ցանեն:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Փ. Ի սկզբանէ Տր զհիմունս երկրի հաստատեցեր.
և գործք ձեռաց քոց երկինք են: Նոքա կորընչին. և
դու կաս և մնաս յաւիտեան:

փառք և: Այժմ և. ալէլուիա:

---

## ՑԱՌԱԻՕՏՈՒՆ

Հարց ԲՁ:

Որ արարիչդ ես յաւիտենից. եւ ստեղծեր զարա-
րածս ամենայն յոչընչէ. ըզքեզ օրհնեմք Ած
հարցըն մերոց: Որ թագաւորդ ես թագաւորաց. եւ

շնորհես բանաւոր կենդանի մարդ ի հողոյ. * Ընդ քեզ օրհնեմք Աստուած հարցն մերոց: Որ ապաւէնդ ես մոլորելոց. եւ խնամես զյուսացեալս ի քեզ քո տեսչութեամբդ. ընդ քեզ օրհն:

Գ. Ընդ Տր օրհնեցէք * Եւ՛ բարձր արարէք զնա յաւիտեանս: Փառք Հօր: Օրհնեցէք. Զթագաւորն եւ զԱստուածն որ նովաւ միայնոյ վայելէ օրհնութիւն. Եւ՛ բարձր արարէք: Այժմ եւ միշտ: Օրհնեսցէ. Զի ծանուցեր մեզ սքանչելի խորհուրդ նոր Երրորդութեան եւ մի աստուածութեանն քո. Եւ՛ բարձր:

Մեծացո. Բ Ձ: Օ՛ քեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն * Աստուած աստուածոց եւ Տէր տերանց փրկիչ գովելի: Փառք Հօր: Առաքեցեր զքո միածինդ մարմնանալ ի նոր կուսէն. եւ անարատ ծննդեամբ յորովայնէ անապական. բառնալով զմեր ներղութիւնս. Աստուած աստ: Այժմ եւ: Շնորհք բարի յերուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց, զի արարիչն յաւիտենից տղայ եղեալ յորդեգրութիւն կենաց կոչէ. Աստուած աստ:

Ողորմ. Բ Ձ: Ը՛ռ ամենեսեան գթած քո թագաւոր խաղաղութեան. ընդ քեզ աղաչեմք միայն մարդասէր: Փառք Հօր: Որում այսօր փափագեալ ցանկայր հոգւով եւ մարմնով. մայր որդւովք իւրովք խնդրէր զբարձրագոյն զփառս յերկրին կենդանեաց: Այժմ եւ միշտ: Տուողդ զկեանս անմահ առ քեզ աղաղակեմք եւ միաբան հայցեմք. շնորհեա եւ մեզ Տէր կալ ի յաջմէ քումմէ:

Տէրունեան. Բ Ձ: Ի քեզ օրհնեմք որ բաշխողդ ես բարութեանց. եւ հայցեմք որպէս ի մարդասիրէ. ընդ մօր քո ընտրելոցն զիմանալի աշխարհն: Զի դու ես

Տէր յորժամ հայցէր մայրըն հաւատով հանդերձ որդւովք սրբեցելովք. 'նդ այժմ քո զփառս եւ յաւհեկէ. ընդ որս և մեք աղաչեմք զի դասեսցես ընդ նըրս քո։ Այլ դու բարձրեալ փրկիչ. որ վասըն մեր խոնարհեցար. արժանի արա ըզմեզ ըմպել զբաժակ պատուիրանի կենաց քոց Տր. որով կացցուք յաջմէ քումմէ ի հանդերձեալ քում գալըստեանն։

Աւ... երգ։ Ի սկըզբանէ Տր զհիմունս երկրի հաստատեցեր. եւ գործք ձեռաց քոց երկինք են։ Նոքա կորընչին. և դու կաս և մնաս յաւիտեան։

Քարոզ. Փառաւորեսցուք. կամ գանձ։

Մանկ. Բ2։ Ցէք զանունըն Տեառն։* Ա լէ-լուիա. ալէ լո ուիա. ա ալէլուիա։ Փառք Հօր։ Այսօր ընդ զօրս երկընից համաձայնեալ. միաբանական ձայնիւ երգեմք ասելով. ա լէ։ Այժմ և միշտ։ Երկրաւորքս ընդ երկնայինսըն հողեղէնքս ընդ հրեղէնսն. միաբանական ձայնիւ երգեմք ասելով. ա լէլ։

Քարոզ. Վս խաղաղութե։ Աղօթ. Սր ես Տէր։

Այս Սաղմոս ՃԳ. ողջոյն ասա։

Կ8. Խոստովանութի և մեծվայելչութի զգեցար. արկար զլոյս ոպ զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան, և յարկար ի վր ջուրց զվերնայարկս նր։

Փխ. Օրհնեա անձն իմ զՏէր. Տէր Ած իմ մեծ եղեր յոյժ։

Խոստովանութի և մեծվայելչութի զգեցար. արկար զլոյս ոպ զօթոց. ձգեցեր զերկինս ոպ խորան, և յարկար ի վր ջուրց զվերնայարկս նր։

Ո դնէ յամպս զգնացս իւր. և շրջի նա ի վր թեւոց հողմոց։

Որ արար զհրեշտակս իւր յոգիս․ և զպաշտօնեայս իւր ի հուր կիզելոյ։

Հաստատեաց զերկիր ի վերայ հաստատութե̃ իւրոյ, զի մ̃ի սասանեսցի յաւիտեան։

Խորք ոպ̃ զգեստ վերարկու է նորա․ ի վերայ լերանց կացցեն ջուրք։

Ի սաստէ քումմէ փախիցեն․ և ի ձայնէ որոտալոյ քումմէ սարսեսցեն։

Ելանեն լեռնանան և իջանեն դաշտանան․ ի տեղի յոր հաստատեցեր զնոսա։

Սահման եդիր և ոչ անցանեն․ և ոչ եւս դառնան ի ծածկել զերկիր։

Առաքեցեր զաղբերս ընդ ձորձորս․ ի մէջ լերանց գնասցեն ջուրք։

Արբուցանել զա̃մ գազանս վայրի․ յագեսցին ցիռք ի ծարաւս իւրեանց։

Անդ թռչունք երկնից բոյնս դիցեն․ և ի միջոյ վիմաց տացեն զձայնս իւրեանց։

Արբուցանել զլերինս ի շտեմարանաց իւրոց․ ի պտղոյ գործոց լցցի երկիր։

Բուսուցեր զխոտ ի լերինս, զդալարի ի ծառայութ̃ի մարդկան։

Հանել զհաց յերկրէ․ գինի ուրախ առնէ, իւղ զուարթ․ և հաց հաստատէ զսիրտ մարդոյ։

Յագեսցին ծառքն անտառի․ և մայրքն Լիբանանու՝ զորս դու տնկեցեր։

Անդ թռչունք երկնից ձագս հանցեն․ և բոյն արագլի ապաւէն է նոցա։

Լերինք բարձունք են եղջերուաց, և վէմք ապաւէն նապաստակաց։

Արարեր զլուսին վասն ժամանակի․ արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ։

Արարեր զխաւար և եղեւ գիշեր. ի նմա գնան ամ գազանք անտառի:

Կորիւնք առիւծուց մռնչեն և յափշտակեն. և խնդրեն յԱՅ զկերակուր իւրեանց:

Ի ծագել արեւու ժողովին. և ի մորխս իւրեանց դադարեն:

Ելանէ մարդ ի գործս իւր. և ի վաստակս ձեռաց իւրոց մինչեւ յերեկոյ:

Որպէս զի մեծ են գործք քո Տէր. և զամենայն ինչ իմաստութեամբ արարեր. և լցաւ երկիր ստեղծուածովք քովք:

Այս ծով մեծ և անդորր. ի սմա են սողունք որոց ոչ գոյ թիւ. գազանք մեծամեծք և մանունք. ի սմա և նաւք գնան. վիշապն զոր ստեղծեր խաղալ նովաւ:

Ամենեքեան քեզ սպասեն, և դու տաս նոցա կերակուր ի ժամու:

Տաս դու նց և կերակրին. բանաս զձեռն քո, և լցուցանես զամենեսեան քաղցրութբ կամօք քո:

Դարձուցանես զերեսս քո ի նոցանէ, և խռովին. Հանես զոգի քո ի նոցանէ, պակասին և ի հող դառնան:

Առաքես զոգի քո և ստանաս զնոսա. և նորոգես զերեսս երկրի:

Եղիցին փառք Տն յաւիտեան. Տէր ուրախ եղիցի յարարածս իւր:

Ո հայի յերկիր և տայ դողալ սմա. մերձի ի լերինս և ծխեսցին:

Օրհնեցից զՏր ի կեանս իմ. սաղմոս ասացից ԱՅ իմոյ մինչեւ եմ ես:

Քաղցր եղիցի նմա օրհնութի իմ. և ես ուրախ եղէց ի Տէր:

Պակասեսցին մեղաւորք յերկրէ, ամբարիշտ մի՛ եւս գտցի ի սմա. օրհնեա անձն իմ զՏէր:

Զհն՝ Որթիւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԱ. 18։

Տէրն մեր Յս̃ Քս̃

Ընդ այգուցն իբրեւ դարձաւ անդրէն ի քաղաքն՝ քաղցեաւ։ Եւ տեսեալ թզենի մի ի վ̃ր ճանապարհին՝ եկն ի նա, և ոչ ինչ եգիտ ի նմա բայց միայն տերեւ, և ասէ ցնա. մի՛ այսուհետեւ ի քէն պտուղ եղիցի յաւիտեան. և առժամայն չորացաւ թզենին։ Իբրեւ տեսին աշակերտքն՝ զարմացան և ասեն, թէ զիա՛րդ վաղվաղակի ցամաքեցաւ թզենին։ Պատասխանի ետ Յս̃ և ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ, եթէ ունիցիք հաւատս և ոչ երկմտիցէք՝ ոչ միայն թզենւոյդ առնիցէք. այլ թէպէտ և լերինդ ասիցէք, բարձի՛ր և անկի՛ր ի ծով, եղիցի։ Եւ զա̃մ ինչ զոր և խնդրիցէք յաղօթս հաւատովք՝ առնուցուք։ Եւ իբրեւ եկն ի տաճարն, մատեան առ նա՝ մինչդեռ ուսուցանէր, քահանայապետքն և ծերք ժողովրդեանն, և ասեն. որո՞վ իշխանութբ̃ առնես զայդ. և ո՞վ ետ քեզ զիշխանութի̃դ զայդ։ Պատասխանի ետ Յս̃ և ասէ ցնս̃. հարցից և ես զձեզ բան մի. զոր թէ ասիցէք ինձ, և ես ձեզ ասացից որո՛վ իշխանութբ̃ առնեմ զայս։ Մկրտութի̃ն Յովհաննու ուստի՞ էր, յերկնի՞ց թէ ի մարդկանէ։ Եւ նոքա խորհէին ընդ միմեանս և ասէին. եթէ ասեմք յերկնից, ասէ ցմեզ. իսկ ընդէ՞ր ոչ հաւատացէք նմա. և եթէ ասեմք ի մարդկանէ, երկնչիմք ի ժողովրդենէն. զի ամենեքին զՅովհաննէս իբրեւ զմարգարէ ունէին։ Պատասխանի ետուն Յս̃ի և ասեն. ոչ գիտեմք։ Ասէ ցնոսա և նա. և ոչ ես ասեմ ձեզ՝ որո՛վ իշխանութբ̃ առնեմ զայս։ Բայց զիա՞րդ թուի ձեզ. առն միոջ էին երկու որդիք, և մատուցեալ առ առաջինն ասէ. ո՛րդեակ՝ ե՛րթ այսօր գործեա՛ յայգւոջ։ Նա պատասխանի ետ և ասէ. երթամ տր̃ և ոչ չոգաւ։ Մատեաւ և առ միւսն, և ասէ նոյնպէս. նա պատասխանի ետ և ասէ.

ոչ կամիմ. բայց յետոյ զղջացաւ և չոգաւ յայգին։ Արդ՝ ո՞ յերկոցունց արար զկամս հօրն։ Ասեն՝ յետինն։ Ասէ ցնոսա Յս՟. ամէն ասեմ ձեզ, զի մաքսաւորք և պոռնիկք յառաջեսցեն քան զձեզ յարքայութի՟ երկնից։ Զի եկն Յովհաննէս ճանապարհաւ արդարութե՟ և ոչ հաւատացէք նմա. և մաքսաւորք և պոռնիկք հաւատացին նմա, և դուք տեսէք և ոչ զղջացարուք յետոյ հաւատալ նմա։ Այլ առակ լուարո՛ւք. այր մի էր տանուտէր, որ տնկեաց այգի և ցանգով պատեաց զնա, և փորեաց ի նմա հնձան, և շինեաց աշտարակ. և ետ զնա ցմշակս. և գնաց ի տար աշխարհ։ Իբրև մերձեցաւ ժամանակ պտղոյ՝ առաքեաց զծառայս իւր առ մշակսն առնուլ զպտուղս նորա։ Եւ կալեալ մշակացն զծառայս նր՟՝ զոմ՟ն տանջեցին, զոմ՟ն սպանին, զոմ՟ն քարկոծեցին։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս բազումս քան զառաջինսն, և արարին նշ՟ նոյնպ՟։ Յետոյ առաքեաց առ նոսա զորդի իւր և ասէ, թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։ Իսկ մշակքն իբրև տեսին զորդին՝ ասեն ընդ միտս. սա է ժառանգն, եկա՛յք սպանցուք զսա, և կալցուք զժառանգութի՟ սորա։ Եւ առեալ հանին զնա արտաքոյ քան զայգին և սպանին։ Արդ՝ յորժամ եկեսցէ տէր այգւոյն՝ զի՞նչ արասցէ մշակացն այնոցիկ։ Ասեն ցնա. զչարսն չարաւ կորուսցէ. և զայգին տացէ այլոց մշակաց, որք տացեն նմա զպտուղս ի ժամու իւրեանց։ Ասէ ցնոսա Յս՟. չիցէ՞ երբէք ընթերցեալ ձեր ի գիրս՝ Զվէմ՟ն զոր անարգեցին շինողքն՝ նա եղև գլուխ անկեան. ի Տռ՟նէ եղև այս, և է սքանչելի յաչս մեր։ Վասն այսորիկ ասեմ ձեզ, զի բարձցի ի ձէնջ արքայութի՟ն Այ՟, և տացի ազգի՝ որ առնիցէ զպտուղս նր՟։ Եւ որ անկցի ի վ՟ր վիմիս այսորիկ՝ փշրեսցի, և յոյր վ՟ր անկցի՝ հոսեսցէ զնա։ Իբրև լուան քահանայապետքն և դպիրք և փարիսեցիք զառակս նորա՝ գիտացին թէ վասն նշ՟ ասաց։

Եւ խնդրէին զնա ունել, բայց երկեան ի ժողովրդոցն. քանզի իբրեւ զմարգարէ ունէին զնա։ Դարձեալ պատասխանի ետ Յս̃, և ասէ ցնոսա առակօք։ Նմանեցաւ արքայութի̃ երկնից առն թագաւորի՝ որ արար հարսանիս որդւոյ իւրում։ Եւ առաքեաց զծառայս իւր կոչել զհրաւիրեալսն ի հարսանիս. և ոչ կամեցան գալ։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս և ասէ. ասացէք հրաւիրելոցն. ահաւասիկ զճաշ իմ պատրաստեցի. զուարակք իմ և պարարակք զենեալ են, և ա̃մ ինչ պատրաստ է. եկա՛յք ի հարսանիսս։ Եւ նոքա յուլացեալ գնացին՝ ոմ̃ յագարակ իւր, և ոմ̃ ի վաճառ իւր։ Եւ այլք կալան զծառայս նորա, թշնամանեցին և սպանին։ Իսկ թագաւորն իբրև լուաւ՝ բարկացաւ, և առաքեաց զզօրս իւր և սատակեաց զսպանողսն զայնոսիկ, և զքաղաքն նց̃ այրեաց։ Յայնժամ ասէ ցծառայս իւր. հարսանիքս պատրաստ են, և հրաւիրեալքն չէին արժանի։ Արդ՝ երթա՛յք յանցս ճանապարհաց, և զո՛րս միանգամ գտանիցէք՝ կոչեցէք ի հարսանիսս։ Եւ ելեալ ծառայքն ի ճանապարհս՝ ժողովեցին զամենեսեան զո՛րս և գտին՝ զչարս և զբարիս. և լցան հարսանիքն բազմականօք։ Եւ մտեալ թագաւորն հայել զբազմականօքն, ետես անդ այր մի՝ որ ոչ էր զգեցեալ հանդերձ հարսանեաց։ Եւ ասէ ցնա. ընկեր, զիա՞րդ մտեր այսր, զի ոչ ունէիր հանդերձ հարսանեաց. և նա պապանձեցաւ։ Յայնժամ ասէ թագաւորն ցսպասաւորսն. կապեցէք զդորա զոտս և զձեռս, և հանէք զդա ի խաւարն արտաքին, անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Զի բազումք են կոչեցեալք և սակաւք են ընտրեալք։ Իբ. 14։

Երգ. Արարչական։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո Տէ—։ Աղ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեանդ։

—

Արեւագալի կանոն յաւագ շաբաթուս ոչ գոյ։ Իսկ զճաշու-ժամն ցերեկին յիններորդ ժամուն ժողովեալ ի սուրբ մատրանն՝ ասեն հանդերձ շարականօք եւ մեծ աղօթիւքն։

---

## ՑԵՐԵԿՈՑԻՆ

Ի դրան ժամուն ասանին *Խոնարհեցո* եւ *Ապրեցո*։

Մեսեդի պահոց է յայնէն։

*Բերան արդարոյ խորհի զիմաստութիւն. և լեզու նորա խօսեսցի զիրաւունս։*

*Մի՛ նախանձիր ընդ չարս. և մի՛ ընդ այնոսիկ՝ ոյք գործեն զանօրէնութիւն։*

Ցայս շաբաթու՝ երեկոյի քերթն աջակերան դասուն է, որ զ*Ապրեցոյն* ասանի. եւ աւետարանն ահեկերեան դասուն՝ որ զ*Խոնարհեցոյն* ասանի։

*Ընթերցուածս ի Ծննդոց։* Ա. 1։

*Ի սկզբանէ արար Ած զերկին և զերկիր։ Եւ երկիր էր աներեւոյթ և անպատրաստ. և խաւար ի վր անդընդոց, և Հոգի Այ շրջէր ի վր ջուրց։ Եւ ասաց Ած. եղիցի լոյս. և եղեւ լոյս։ Եւ ետես Ած զլոյսն զի բարի է. և մեկնեաց Ած ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին։ Եւ կոչեաց Ած զլոյսն տիւ. և զխաւարն կոչեաց գիշեր։ Եւ եղեւ երեկոյ և եղեւ վաղորդայն՝ օր մի։ Եւ ասաց Ած, եղիցի հաստատութիւն ի մէջ ջրոցդ. և եղիցի մեկնել ի մէջ ջուրցդ և ջուրց։ Եւ եղեւ այնպէս։ Եւ արար Ած զհաստատութիւն. և անջրպետեաց Ած ի մէջ ջրոյն որ էր ի ներքոյ հաստատութեանն, և ի մէջ ջրոյն որ ի վերոյ հաստատութեանն։ Եւ կոչեաց Ած զհաստատութիւն երկին. և ետես Ած զի բարի է։ Եւ եղեւ երեկոյ և եղեւ վաղորդայն՝ օր երկրորդ։ Եւ ասաց Ած. ժողովեսցին ջուրքդ որ ի ներքոյ երկնից ի ժողով մի. և երեւեսցի ցամաքն։ Եւ եղեւ այնպէս. և ժողովեցան ջուրքն որ ի ներքոյ երկնից՝ ի ժողովս իւրեանց. և ե-*

րեւեցաւ ցամաքն։ Եւ կոչեաց Ած զցամաքն երկիր, և զժողովս ջուրցն կոչեաց ծովս. և ետես Ած զի բարի է։ Եւ ասաց Ած. բղխեսցէ երկիր զբանջար խոտոյ՝ սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան. և ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ ազգի իւրում. որոյ սերմն իւր ի նմին ըստ ազգի ի նմանութի ի վր երկրի։ Եւ եղեւ այնպէս։ Եւ եհան երկիր զբանջար խոտոյ. սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութե. որ է ի վերայ ամ երկրի. և փայտ պտղաբեր առնել պտուղ. որոյ սերմն իւր ի նմին ըստ ազգի ի վր երկրի. և ետես Ած զի բարի է։ Եւ եղեւ երեկոյ և եղեւ վաղորդայն՝ օր երրորդ։ Եւ ասաց Ած. եղիցին լուսաւորք ի հաստատութե երկնից ի լուսաւորութի ի վերայ երկրի և մեկնել ի մէջ տուընջեան և ի մէջ գիշերոյ. և եղիցին ի նշանս և ի ժամանակս և յաւուրս և ի տարիս։ Եւ եղիցին ի լուսաւորութի ի հաստատութե երկնից ծագել յերկիր։ Եւ եղեւ այնպէս։ Եւ արար Ած զերկուս լուսաւորսն զմեծամեծս. զլուսաւորն մեծ՝ յիշխանութի տուընջեան. և զլուսաւորն փոքր՝ յիշխանութի գիշերոյ. և զաստեղս։ Եւ եդ զնս Ած ի հաստատութե երկնից՝ լուսատու լինել յերկիր։ Եւ իշխել տուընջեան և գիշերոյ, և մեկնել ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին. և ետես Ած զի բարի է։ Եւ եղեւ երեկոյ և եղեւ վաղորդայն՝ օր չորրորդ։ Եւ ասաց Ած. Հանցեն ջուրք զեռունս շնչոց կենդանեաց. և թռչունս թեւաւորս ի վր երկրի ըստ հաստատութե երկնից։ Եւ եղեւ այնպէս։ Եւ արար Ած կէտս մեծամեծս. և զամ շունչ զեռնոց կենդանեաց, զոր հանին ջուրք ըստ ազգի իւրեանց, և զամ թռչունս թեւաւորս ըստ ազգի. և ետես Ած զի բարի են։ Եւ օրհնեաց զնս Ած և ասէ. աճեցէք, և բազմացարու՛ք, և լցէք զջուրս որ ի ծովս. և թռչունքդ բազմասցին ի վր երկրի։ Եւ եղեւ երեկոյ և եղեւ վաղորդայն՝ օր հինգերորդ։ Եւ ասաց

Ած. Հանցէ երկիր շունչ կենդանի ըստ ազգի չորքո-
տանի և սողունս, և գազանս երկրի ըստ ազգի։ Եւ
եղեւ այնպէս։ Եւ արար Ած զգազանս երկրի ըստ ազգի,
և զանասունս ըստ ազգի, և զամ սողունս երկրի ըստ
ազգի իւրեանց. և ետես Ած զի բարի են։ Եւ ասաց
Ած. արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ
նմանութե, և իշխեսցէ ձկանց ծովու և թռչնոց երկնից,
և անասնոց, և ամ երկրի, և ամ սողնոց՝ որ սողին ի
վր երկրի։ Եւ արար Ած զմարդն ի պատկեր իւր. ըստ
պատկերի Այ արար զնա. արու և էգ արար զնս։ Եւ
օրհնեաց զնս Ած՝ և ասէ. աճեցէք՝ և բազմացարուք
և լցէք զերկիր. և տիրեցէք դմա. և իշխեցէք ձկանց
ծովու, և թռչնոց երկնից, և ամ անասնոց, և ամ եր-
կրի, և ամ սողնոց՝ որ սողին ի վր երկրի։ Եւ ասաց
Ած. ահաւադիկ ետու ձեզ զամ խոտ սերմանելի սեր-
մանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան, որ է ի
վր ամ երկրի. և ամ փայտ որ ունիցի յինքեան պտուղ
սերման սերմանելոյ՝ ձեզ լիցի ի կերակուր։ Եւ ամ
գազանաց երկրի, և ամ թռչնոց երկնից, և ամ սող-
նոց որ սողին ի վր երկրի՝ որ ունիցի շունչ կենդանի.
և ամ խոտ դալար ի կերակուր։ Եւ եղեւ այնպէս։ Եւ
ետես Ած զամ զոր արար. և ահա բարի են յոյժ։ Եւ
եղեւ երեկոյ, և եղեւ վաղորդայն, օր վեցերորդ։ Եւ
կատարեցան երկինք և երկիր և ամ զարդ նց։ Եւ կա-
տարեաց Ած յաւուրն վեցերորդի զամ զգործս իւր
զոր արար. և հանգեաւ յաւուրն եօթներորդի յամ
գործոց իւրոց զոր արար։ Եւ օրհնեաց Ած զօրն եօթ-
ներորդ, և սրբեաց զնա. զի ի նմա հանգեաւ յամ
գործոց իւրոց զոր սկսաւ առնել Ած։ Այս է գիր ա-
րարածոց երկնի և երկրի, յաւուր յորում արար Ած
զերկին և զերկիր։ Եւ զամ բանջար վայրի՝ մինչ չեւ
լեալ էր ի վր երկրի, և զամ խոտ վայրի՝ մինչ չեւ
բուսեալ էր, զի չեւ եւս էր տեղացեալ Տրն. Այ ի

վերայ երկրի. և մարդ չէր՝ որ գործէր զերկիր: Բայց աղբիւր ելանէր յերկրէ՝ և ոռոգանէր զա̃մ երեսս երկրի: Եւ ստեղծ Տէր Ա̃ծ զմարդն հող յերկրէ. և փչեաց յերեսս ն̃ր շունչ կենդանի. և եղեւ մարդն յոգի կենդանի: Եւ տնկեաց Ա̃ծ զդրախտն յԵդեմ ընդ-արեւելս, և եդ անդ զմարդն զոր ստեղծ: Եւ բուսոյց եւս Տ̃ր Ա̃ծ յերկրէ զա̃մ ծառ գեղեցիկ ի տեսանել՝ և քաղցր ի կերակուր. և զծառն կենաց ի մէջ դրախտին, և զծառն գիտելոյ զգիտութ̃ի բարւոյ և չարի: Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտն. և անտի բաժանի ի չորս առաջս: Անուն միում̃ն Փիսոն. Նա է՝ որ պատէ զա̃մ երկիրն Եւիլատայ. անդ ուր ոսկին է. և ոսկի երկրին այնորիկ ազնիւ. և անդ է ակն սուտակ և ակն դահանակ: Եւ անուն գետոյն երկրորդի Գեհոն. Նա պատէ զա̃մ երկիրն Եթովպացւոց: Եւ գետն երրորդ՝ Տիգրիս. նա է՝ որ երթայ յանդիման Ասորեստանի: Եւ գետն չորրորդ՝ Եփրատէս: Եւ առ Տէր Ա̃ծ զմարդն զոր արար, և եդ զնա ի դրախտին փափկութ̃ե, գործել զնա և պահել: Եւ պատուիրեաց Տէր Ա̃ծ Ադամայ՝ և ասէ. յա̃մ ծառոց որ է ի դրախտիդ՝ ուտելով կերիցես. բայց ի ծառոյն գիտութ̃ե բարւոյ և չարի մի՛ ուտիցէք. զի յորում աւուր ուտիցէք ի նմանէ՝ մահու մեռանիցիք: Եւ ասաց Տէր Ա̃ծ. ոչ է բարւոք մարդոյդ միայն լինել. արասցուք դմա օգնական ըստ դմա: Եւ ստեղծ եւս Տէր Ա̃ծ զա̃մ գազանս վայրի, և զա̃մ թռչունս երկնից. և ած զն̃ս առ Ադամ, տեսանել զի՛նչ կոչեսցէ զն̃ս. և ա̃մ շնչոյ կենդանւոյ՝ զինչ և անուանեաց Ադամ՝ այն անուն է ն̃ր: Եւ կոչեաց Ադամ անուանս ա̃մ անասնոց, և ա̃մ թռչնոց երկնից, և ա̃մ գազանաց վայրի. բայց Ադամայ ոչ գտաւ օգնական նման նմա: Եւ արկ Տէր Ա̃ծ թմբրութ̃ի ի վ̃ր Ադամայ, և ննջեաց. և առ մի ի կողից ն̃ր և ելից ընդ այնր մարմին: Եւ շինեաց Տէր Ա̃ծ զկողն զոր

առ յԱդամայ՝ ի կին. և ած զնա առ Ադամ: Եւ ասէ Ադամ. այս այժմիկ ոսկր յոսկերաց իմոց և մարմին ի մարմնոյ իմմէ. սա կոչեսցի կին, զի յառնէ իւրմէ առաւ: Վասն այնորիկ թողցէ այր զհայր իւր և զմայր իւր. և երթիցէ զհետ կնոջ իւրոյ. և եղիցին երկոքին ի մարմին մի: Եւ էին երկոքեան մերկ՝ Ադամ և կին իւր, և ոչ ամաչէին: Եւ օձն էր իմաստնագոյն քան զա̃մ գազանս որ ի վ̃ր երկրի, զոր արար Տէր Ա̃ծ. և ասէ օձն ցկինն. զի՞ է զի ասաց Ա̃ծ՝ թէ յա̃մ ծառոց որ իցեն ի ներքս ի դրախտի այդր՝ մի՛ ուտիցէք: Եւ ասէ կինն ցօձն. ի պտղոյ ծառոց դրախտիդ կերիցուք. բայց ի պտղոյ ծառոյն որ է ի մէջ դրախտին՝ ասաց Ա̃ծ, մի՛ ուտիցէք ի նմանէ. և մի՛ հուպ լինիցիք՝ զի մի՛ մեռանիցիք: Եւ ասէ օձն ցկինն. ոչ եթէ մահու մեռանիցիք. զի գիտէր Ա̃ծ, թէ յորում աւուր ուտիցէք ի նմանէ՝ բանայցեն աչք ձեր, և լինիցիք իբրև զա̃ծս՝ ճանաչել զբարի և զչար: Եւ ետես կինն, զի բարի էր ծառն ի կերակուր, և հաճոյ աչաց հայելոյ, և գեղեցիկ· ի տեսանել. և առ ի պտղոյ ն̃ր և եկեր. և ետ առն իւրում ընդ իւր, և կերան: Եւ բացան աչք երկոցունց. և գիտացին զի մերկ էին. և կարեցին տերևս թզենւոյ, և արարին իւրեանց սփածանելիս: Եւ լուան զձայն զգնալոյ Տ̃ն Ա̃յ ի դրախտի անդ ընդ երեկս. և թաքեան Ադամ և կին իւր յերեսաց Տ̃ն Ա̃յ՝ ի մէջ ծառոց դրախտին: Եւ կոչեաց Տէր Ա̃ծ զԱդամ. և ասէ ցնա. ո՞ւր ես: Եւ ասէ. լուայ զձայն քո ի դրախտի աստ՝ և երկեայ. քանզի մերկ էի՝ և թաքեայ: Եւ ասէ ցնա, ո պատմեաց քեզ թէ մերկ ես. բայց թէ ի ծառոյն՝ յորմէ պատուիրեցի քեզ անտի եւեթ չուտել, կերա՞ր արդեօք ի նմանէ: Եւ ասէ Ադամ. կինս զոր ետուր ընդ իս՝ սա ետ ինձ ի ծառոյ անտի և կերայ: Եւ ասէ Տէր Ա̃ծ ցկինն. զի՞նչ գործեցեր զայդ: Եւ ասէ կինն. օձն խաբեաց զիս, և կերայ: Եւ ասէ

Տէր Ա͞ծ ցօձն. փոխանակ զի արարեր դու զայն՝ անիծեալ լիցիս դու յա͞մ անասնոց և յա͞մ գազանաց երկրի. ի վ͞ր լանջաց և որովայնի քո գնասցես. և հող կերիցես զա͞մ աւուրս կենաց քոց: Եւ եդից թշնամութիւն ի մէջ քո և ի մէջ կնոջդ. և ի մէջ զաւակի քո և ի մէջ զաւակի դորա. նա սպասեսցէ քում գլխոյ, և դու սպասեսցես ն͞ր գարշապարի: Եւ ցկինն ասէ. բազմացուցանելով բազմացուցից զտրտմութ͞իս քո և զհեծութ͞իս քո. տրտմութ͞բ ծնցիս որդիս. և առ այր քո դարձ քո. և նա տիրեսցէ քեզ: Եւ ցԱդամ ասէ. փոխանակ զի լուար ձայնի կնոջդ քո. և կերար ի ծառոյ անտի, յորմէ պատուիրեցի քեզ անտի միայն չուտել, և կերար ի նմանէ. անիծեալ լիցի երկիր ի գործս քո. տրտմութեամբ կերիցես զնա զա͞մ աւուրս կենաց քոց: Փուշ և տատասկ բուսուսցէ քեզ. և կերիցես զբանջար վայրի: Քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո. մինչև դարձցիս յերկիր ուստի առար. զի հող էիր և ի հող դարձցիս: Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ կեանս. զի նա է մայր ա͞մ կենդանեաց: Եւ արար Ա͞ծ Ադամայ և կնոջ ն͞ր հանդերձս մաշկեղէնս, և զգեցոյց զնոսա: Եւ ասէ Տէր Ա͞ծ. ահա Ադամ եղև իբրև զմի ի մէնջ՝ գիտել զբարի և զչար. և արդ՝ գուցէ ձգիցէ զձեռն, և առնուցու ի ծառոյն կենաց, ուտիցէ և կեցցէ յաւիտեան: Եւ եհան արձակեաց զնա Տէր Ա͞ծ ի դրախտէ անտի փափկութ͞ե՝ գործել զերկիր՝ ուստի առաւ: Եւ եհան զԱդամ, և բնակեցոյց յանդիման դրախտին փափկու͞ե: Եւ հրամայեաց քերովբէից և բոցեղէն սրոյ շուրջանակաւ պահել զճանապարհս ծառոյն կենաց: Գ. 24:

Ընթերցուածս յԱռակաց: Ա. 1:

Ճանաչել զիմաստութ͞ի և զխրատ. իմանալ զբանս հանճարոյ: Ընդունել զդարձուածս բանից, ի միտ առնուլ զարդարութ͞ի ճշմարիտ, և ուղղել զիրաւունս: Զի

տացէ անմեղաց զխորագիտութի՟. մանկանց տղայոց զմիտս և զհանճար: Որոց իբրև լուիցէ իմաստունն, իմաստնագոյն լիցի. իսկ որ հանճարեղն է՝ զառաջնորդութի՟ ստասցի: Ի միտ առցէ զառակս՝ և զբանս խորինս, զճառս իմաստնոց՝ և զառակս նց՟: Սկիզբն իմաստութե՟ երկիւղ Տն՟. հանճար բարի ամենեցուն՝ որ առնեն զնա. պաշտօն բարի առ Ած՟ սկիզբն զգօնութե՟. զիմաստութի՟ և զխրատ ամպարիշտք անգոսնեն: Լո՛ւր որդեակ խրատու հօր քո, և մի՛ մերժեր զօրէնս մօր քո: Զի պսակ շնորհաց ընկալցի գլուխ քո. և մանեակ ոսկի ի պարանոցի քում: 9:

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Խ. 1:

Մխիթարեցէ՛ք, մխիթարեցէ՛ք զժողովուրդ իմ, ասէ Ած՟: Քահանայքդ խօսեցարո՛ւք ի սիրտ Եմի՟. և մխիթարեցէ՛ք զդա, զի լի եղեւ տառապանօք. թողեալ լիցին դմա մեղք իւր. զի ընկալաւ ի ձեռանէ Տն՟ կրկին զհատուցումն՟ մեղաց իւրոց: Ձայն բարբառոյ յանապատի. պատրա՛ստ արարէ՛ք զճանապարհս Տն՟. և ուղի՛ղ արարէ՛ք զշաւիղս Այ՟ մերոյ: Ամենայն ձորք լցցին, և ա՟մ լերինք և բլուրք խոնարհեսցին. և եղիցին ա՟մ դժուարինք ի դիւրինս. և առապարքն ի դաշտս: Եւ երեւեսցին փառք Տն՟. և տեսցէ ա՟մ մարմին զփրկութի՟ Այ՟՝ զի Տէր խօսեցաւ: Ձայն որ ասէ՝ գոչեա՛. և ասեմ, զի՞նչ գոչեցից: Գոգջի՛ր՝ ա՟մ մարմին խոտ է՝ և ա՟մ փառք մարդոյ իբրև զծաղիկ խոտոյ: Ցամաքեցաւ խոտն և թօթափեցաւ ծաղիկ նր՟. զի ոգի Տն՟ շնչեաց ի նա. արդարեւ խոտ է ժողովուրդս այս: Ցամաքեցաւ խոտն և թօթափեցաւ ծաղիկն. և բան Տեառն մնայ յաւիտեան: 8:

Աղ՟ ղՈ–ղղէյէն ՟՟՟: Քրղ. Աղաչեսցուք. հմ՟ գան՟ջ:

Համբարձի Բ2: Ո՛ր յա՛նէից գոյա՛ցուցեր զքո զարարա՛ծս ի սկզբա՛նէ. ի՛ պա՛տկե՛ր ա՟ծո՛ւթե՟ղդ քո ստեղծե՛ր

զմարդ ի հողոյ. ժառանգել նըմա զանպատում ըղ-կեանսն: Իսկ պատրանօք բանսարկուին ի դրախտէն արտաքս անկեալ. ի յաւէժ կենդանութեանըն մահ-աւիթ պըտղով մեռեալ. մերկացաւ ըզփառս անըս-տուեր լուսոյն: Այլ դու փրկիչ բարերար. որ մար-մնացար ի սբ կուսէն. և հեղմամբ արեանըդ քո բար-ձեր զյանցանս նախաստեղծին. փրկելով ըզմեզ յա-նիծից նորա: Փառք Հօր: Որ ըստ պարտեաց նախա-հօրըն յանձն առին յօժարութբ. ըմպել զբաժակ չար-չարանաց ընդ քեզ որդիքըն Զեբեդեայ. շնորհեա մեզ Տր ըղբաժակ քո փրկութեան: Այժմ և միշտ: Ի միւսանգամ քո գալըստեանըն յորժամ գաս դա-տել զերկիր. ընդ նոսին դասաւորեա ըզմեզ ի փառս յաջակողմանն. որով հանցուք քեզ զօրհնութիւն յանըսպառ յաւիտեանսն:

Քարոզ. Վն խաղաղութե: Աղօթ. Հայր գթած:

Ապա օրհնեն յայնժմ սաղմոսն Սաղմոս ԿԴ:

ԿԸ. Լուր մեզ Այ փրկիչ մեր. յոյս ամ ծագաց երկրի, և որ ի ծով հեռի:

Փխ. Քեզ վայելէ օրհնութի Այ ի Սիոն. և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ:

Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամ մարմին եկեսցէ:

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր. զամբարշ-տութիւնս մեր դու քաւեսցես:

Երանի զորս ընտրեցեր և ընկալար. և բնակեսցեն ի գաւիթս քո:

Լցցուք մեք ի բարութենէ տան քո. սբ է տաճար քո սքանչելի արդարութբ:

Լուր մեզ Այ փրկիչ մեր. յոյս ամ ծագաց երկրի, և որ ի ծով հեռի:

Ո պատրաստէ զլերինս զօրութբ իւրով. զգեցեալ է զզօրութիւն:

Ո խռովեցուցանէ զմեծութի ծովու. և զձայն ալեաց Նորա ցածուցանէ:

Խռովեսցին հեթանոսք. և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց:

Ելս առաւօտու ընդ երեկոյս զուարճասցին. հայեցար յերկիր, արբեցուցեր զնա. և բազում արարեր զմեծութիւն Նորա:

Գետն ԱՅ լի եղեւ ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր Նր, զի այսպէս է պատրաստութիւն:

Զակօս Նր արբեցուցեր, և բզմ արարեր զարմտիս Նր:

Ի ցօղել Նորա զուարթ եղէցի բոյս Նորա. օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութե քո:

Դաշտք քո լցցին պարարտութբ. պարարտասցին գեղեցկութիք անապատի:

Բլուրք ցնծութի զգեցցին. և զգեցցին խոյք մաքեաց:

Հովիտք բազում արասցեն ցորեան, աղաղակեսցեն և օրհնեսցեն:

## ԶԿՆԷ ՈՐԹԻՒ:

### Աւետարան ըստ Մատթէոսի: Ի 17:

### Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Իբրեւ ելանէր յԵրէմ՝ առ զերկոտասանսն առանձինն, և ի ճանապարհին ասէ ցնս: Ահաւասիկ ելանեմք յԵրէմ. և որդի մարդոյ մատնեսցի քահանայապետիցն և դպրաց. և դատապարտեսցեն զնա ի մահ. և մատնեսցեն զնա հեթանոսաց՝ այպանել և հարկանել և ի խաչ հանել, և յերրիր աւուր յարիցէ: Յայնժամ մատեաւ առ Նա մայր որդւոցն Զեբեդեայ որդւովքն իւրովք հանդերձ. երկիր պագանէր և խնդրէր ինչ ի Նմանէ: Եւ Նա ասէ ցնա. զի՞նչ կամիս: Ասէ ցնա. ասա զի նստցին սոքա երկու որդիքս իմ, մի ընդ աջմէ քումմէ՝ և մի ընդ ահեկէ յարքայութե քում: Պատասխանի ետ Յն և ասէ. ոչ գիտէք զինչ խնդրէք. կարէ՞ք ըմպել զբաժակն՝ զոր ես ըմպելոցն եմ, կամ

զմկրտութիւն զոր ես մկրտելոց եմ մկրտել. ասեն ցնա. կարող եմք։ Ասէ ցնս Յս. զբաժակն իմ ըմպիջէք, և զմկրտութիւն զոր ես մկրտելոց եմ մկրտիցիք, բայց նստուցանել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝ ոչ է իմ տալ, այլ որոց տուեալ է ի Հօրէ իմմէ։ Եւ լուեալ տասանցն՝ բարկացան ի վր երկուցն եղբարց։ Յս կոչեաց զնոսա առ ինքն՝ և ասէ. գիտէ՞ք՝ զի իշխանք ազգաց տիրեն նց, և մեծամեծքն իշխեն նց։ Ոչ այնպէս իցէ և ի ձերում միջի. այլ որ կամիցի ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշտօնեայ։ Եւ որ կամիցի ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ձեր ծառայ։ Ոպ որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ՝ այլ պաշտել. և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց։ 28։

Քրզ. Խնդրեսց։ Կեցո՛ Տէ–։ Աղօթ. Թագաւոր խաղ։
Եւ արժանին։



# ԱՒԱԳ ԵՐԵՔՇԱԲԱԹԻ, ԲԿ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

Օրհնութիւն ԲԿ։

Իմաստուն կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց. ելին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք։ Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալք ի յիւղոյն. անպատրաստ գտան գալըստեան փեսային շիջեալ լապտերօք։ Վասն որոյ եւ մեք պատրաստեսցուք իւղ հոգեւոր. զի մտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապտերօք։

† Յորժամ յերկնից փառօք գաս Քս նստիս յաթոռ դատողական. և բաժանես զազգս ամենայն. յաջակողմանըն քում դասեա ըզմեզ ընդ օդեացն։

Յորժամ զտաղանդ պատուիրանին պահանջեսցես ի ծառայից. ընդ կորկնաշահ քանքարացն. արժանացո ըզմեզ Քն ուրախութեամբ քո յերկինս:

Վրք: Ճառագայթ փառաց Հօր Որդիդ միածին. որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ. * այսօր ի Թաբօր փառօք փայլեցեր: Որ աննիւթ սրովբէից անհաս ի վեր քան ըզբան. ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր. այսօր: Որ հրեղինացն անմերձենալի հուր աստուածութեամբդ. ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր ի:

Գլ: Ուրախ լեր եկեղեցի սուրբ. ի գալըստեան սուրբ միածնին. ուրախ լեր և ցընծա. հանդերձ ամենայն սըրբովք: Խընդա յոյժ դուստր Սիովնի. ահա Թագաւոր քո գայ նըստեալ յաւանակի նորոյ. արդար և փըրկիչ. փըրկէ և կեցուցանէ: Զուարճացիր և բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զուտըրս ծաղկեալըս հաւատով և ասա. օրհնեալ որ եկիրըդ Թագաւոր տիեզերաց:

Փխ: Դատաւոր արդարութեան հաստատեցեր ի մեզ ըզմիտըս մեր. դատել զհոգի և ըզմարմին. արդարապէս դատաստանաւ ըստ օրինաց քոց Քրիստոս: Իսկ անիրաւ դատաւորին որ ի քաղաք բնութեան մերոյ. ոչ ունելով զերկիւղ քո սուրբ. և անպատկառ ի մարդկանէ ոչ առնելով դատ զորկելոյն: Այլ անմահ սուրբ փեսայիդ այրի հոգի իմ պաղատի. ուսո զիրաւունըս քո իմում դատաւորիս. առնել ինձ դատաստան արդար ընդ ոսոխի մարմնոյ իմոյ: Մարմին կոյս անարատ զանապական փեսայդ աղաչեա. զի հաշտեսցի ընդ այրի եղեալ հոգիս. և միաւորեսցի դարձեալ սիրով ընդ հեռացեալս ի նմանէ:

Աղչ: Ամենայն երկիր. տուք փառս ամենակալին. որ եկն եւ փրկեաց զմեզ: Ամենայն հոգիք. ձայնիւ ցնծութեամբ. բարեբանեցէք զՏէր: Զի եցոյց մեզ Տէր. զփրկութիւն եւ զկեանս. յազգէ տանն Իսրայէլի:

ՀՈԳ. Իջեր Տէր ողորմութեամբ քո յաշխարհ. եւ զմեռեալ բնութիւնս ի կեանս վերափոխեցեր: Ելեր Տէր առ Հայր փառօք ի յերկինս. եւ մխիթարիչ առաքելոցն առաքեցեր սուրբ զՀոգին: Բացեր Տէր այսօր զգանձդ երկնային. եւ բաշխեցեր առատապէս պարգեւս աղքատ բնութեանս:

ՆՆՉ: Գալոց է միածինն փողով եւ փառօք Հօր. եւ զհողեղէն բնութիւնս հրեղէն նորոգէ: Լուսաւորք են ճանապարհք արդարոց. եւ ի բիւրաւոր բանակս հրեշտակաց ամպովք ընթանան: Ի վերինն Եդեմ թռուչին ամպովք ընդ առաջ Տեառն յօդս. եւ այնպէս յամենայն ժամ ընդ Տեառն լինին:

ԱՁՆ: Ըզքեզ Ածածին որ վերօրհնիս ի զօրաց հրեշտակաց. * ազգ մարդկան կենդանեաց մեծացուցանեմք: Ըզքեզ բնակ հրեղէն ածութեանն յիմանալի զօրացն երանեալ. ազգ մարդ: Ըզքեզ մայր Էմմանուէլի մարգարէին յառաջ գուշակեալ. ազգ մարդկան կենդ:

ԽՉ: Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր զքո Սուրբ զեկեղեցի. զսա պահեա ի խաղաղութեան: Որ շնորհեցեր ողորմութիւն ի բնակարանս հրեշտակաց եւ մարդկան քաւարան. տուր սմա զանշարժ քո զխաղաղութիւն: Փառք Հօր. եւ: Ի տաճարի փառաց սրբութեան քո քեզ երգեն մանկունք. տուր սոցա զառատ քո զողորմութիւն:

Այժմ եւ միշտ: Ցորժամ կոչես զհրաւիրեալսն ի

սկզբանէ աշխարհի. ժառանգել զպատրաստեալն. շնորհեա մեզ ընդ նոսին զարքայութիւն քո Քս։

Մաղթանք. փառք հրաշափառ տէրութեան։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ. ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ։

Լուր դուստր և տես. խոնարհեցո զունկն քո. մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քո. զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քո։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Փ. Տարցին թագաւորի կուսանք զհետ նր. և զընկերըս նր տարցին նմա։

Ածցեն ցնծութբ և ուրախութբ. և տարցին ի տաճար թագաւորի. և փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո։

Փառք և։ Այժմ և միշտ. ալէլուիա։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

Հարց ԲՁ։

Որ սքանչելիդ ես ի բարձունս Տէր և ահաւոր ի մէջ երկրի անուն քո է. * օրհնեալ ես Աստուած հարցն մերոց։ Որ զհաւատացեալսն ի քեզ պահեալ և ըզչարսըն պատժեալ. գործակցօք ջրովք սուզմամբ յանդունդս. օրհնեալ։ Որ հաստատեցեր ազգի մարդկան հրով փորձիլ ի յերկրորդումն. պահեա անարատ զմեզ փրկեալս. օրհնեալ։

Գ. Ըզտէր օրհնեցէք. * եւ բարձր արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք. Զթագաւորըն յաւիտենից Քրիստոս որ եկն և փրկեաց զամենայն արարածս. եւ բարձր։ Փառք Հօր։ Օրհնեցէք. Որ արար գալստեամբն իւրով զփրկութիւն որդւոց մարդկան. եւ բարձր։ Այժմ և։ Նոր արարածք պատուեալք

ի հրեշտակաց զերծեալք ի խաւարէ առ լոյսն. եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։

Մեծացո. ԲՁ։ Ըզկուսութիւնդ քո Ածածին անարատ զոր ոչ բոցակիզեաց հուր ածութեանն. Մեծացուցանեմք։ Փառք Հօր և։ Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ Քս Ած և փրկիչ անձանց մերոց. Մեծացուցանեմք։ Այժմ և։ Անհասանելի տէրունական յայտնութիւնն աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեսցուք։

Ողորմ. ԲՁ։ Թինս իմ։ Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութբ. ՚նդառաջել որ գաս ի դատել զերկիր։ Փառք Հօր։ Անաղօտ վառեալ լապտերբք հաւատոյ ընդ դասս իմաստուն կուսանացն. մտանել ի յառագաստ ընդ երկնաւոր փեսային։ Այժմ և։ Փութասցուք կանխեալ յառաջ քան ըզձայն Ածային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ շիջման հինգ կուսանացն։

Տէրյէրէն. ԲՁ։ Որ նստիս ի քրովբէս Ած բանդ. այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար ի լերինն ձիթենեաց. *օրհնեմք ըզքեզ անդադար երգով։ Փառք Հօր։ Որ համագոյդ ես խորհրդոցդ հայրենի. աշակերտաց քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալստեանն. օրհնեմք։ Այժմ և։ Որ ամենայնց ես արարիչ և ստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութեանդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քո. օրհնեմք։

Ա——. Եւթ։ Տարցին թագաւորի կուսանք ըզհետ նորա. եւ ըզընկերս նորա տարցին նմա։

Ածցեն ցընծութեամբ եւ ուրախութեամբ. եւ տարցին ի տաճար թագաւորին։

Քարոզ. Փառաւորեսցուք. Կամ գանձ:

Մանկ. ԳՁ: Ա՛հաւոր ես Թագաւոր քրովբէական ձայնիւ օրհնեալ. ի յերկինս ի յերկրի եւ յամենայն ժամանակի: Փառք Հօր: Ահաւոր ես Թագաւոր որ նորոգես զքո զարարածս. հաստատես ի հաւատս ի գիտութիւն ճշմարտութեան: Այժմ և: Լուսաւորեա ըզմեզ Քն ի միւսանգամ քո գալըստեանն. յորժամ ծագիս ի յերկնից եւ նորոգես զքո զարարածս:

Քարոզ. Վն խաղաղութն: Աղօթ. Մք ես Տր:

Այգ Սաղմոս ԽԴ. ողջոյն:

ԿԸ. Տարցին Թագաւորի կուսանք զհետ նր, և զընկերս նորա տարցին նմա.

Փխ. Բղխեաց սիրտ իմ բան բարի. և ասեմ զգործս իմ Թագաւորի:

Լեզու իմ ոպ գրիչ երագագիր դպրի. գեղեցիկ տեսլեամբ քան զամ որդիս մարդկան:

Սփռեցան շնորհք ի շրթանց քոց. վն այսորիկ օրհնեաց զքեզ Ած յաւիտեան:

Ա՛ծ զսուր ընդ մէջ քո հզօր. վայելչութն և գեղոյ քո:

Լարեա ուղղեա և Թագաւորեա վն ճշմարտութն, հեզութն և արդարութն. և առաջնորդեսցէ քեզ սքանչելապէս աջ քո:

Նետք քո սրեալ են հզօր. և ժողովուրդք ի ներքոյ անկցին ի սիրտս Թշնամեաց Թագաւորի:

Աթոռ քո Ած յաւիտեանս յաւիտենից. գաւազան ուղղութն գաւազան արքայութն քո:

Սիրեցեր զարդարութի, և ատեցեր զանիրաւութի:

Վասն այսորիկ օծ զքեզ Ած, Ած քո իւղով ուրախութն առաւել քան զընկերս քո:

Զմուռս և ստաշխ և կասիա ի զգեստէ քումմէ. ի տաճարաց փղոսկրէից, ուստի ուրախ արարին զքեզ դըստերք Թագաւորաց ի պատիւ:

կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ. ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ:

Լո՛ւր դուստր և տե՛ս՝ խոնարհեցո՛ զունկն քո. մոռա՛ ցժողովուրդ քո, և զտուն հօր քո. զի ցանկացաւ Թագաւոր գեղոյ քո:

Սա ինքն է Տէր քո՝ երկիր պագցես սմա. և դուստր Ծուրայ երկիր պագցէ սմա. և պատարագօք զերեսս սո՛ պաշտեսցեն մեծամեծք ի ժողովրդոց:

Ամենայն փառք դստեր Թագաւորի ի ներքոյ. ի վերջաւորս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ:

Տարցին Թագաւորի կուսանք զհետ նր. և զընկերս նորա տարցին նմա:

Ածցեն ցնծութբ և ուրախութբ. և տարցին ի տաճար Թագաւորի. և փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո:

Կացուսցես զնս իշխանս ընդ ամ երկիր. յիշեսցի անուն քո ընդ ամ ազգս ազգաց:

Վն այսորիկ ժողովուրդք խոստովան եղիցին առ քեզ յաւիտեան. և յաւիտեանս յաւիտենից:

Զնի Ո՛րթիւ:

Աւետարան ըստ Մարկոսի: ԺԲ. 13:

Առ Տէրն մեր Յն Քն

Եւ առաքեն զոմանս ի փարիսեցւոց անտի՝ և ի Հերովդիանոսաց, զի զնա որսասցեն բանիւ: Եւ նոքա եկեալ հարցանէին զնա նենգութբ՝ և ասէին. վա՛րդապետ՝ գիտեմք զի ճշմարիտ ես, և ոչ ինչ փոյթ է քեզ զումեքէ. զի ոչ հայիս յերեսս մարդկան, այլ ճշմարտութբ զճանապարհն Այ ուսուցանես. արդ՝ ասա՛ մեզ, արժա՞ն է հարկս տալ կայսեր՝ եթէ ոչ. տացո՞ւք՝ եթէ ոչ տացուք: Եւ Յն գիտաց զկեղծաւորութիւն նց, ասէ ցնոսա. զի՞ փորձէք զիս կե՛ղծաւորք, բերէ՛ք ինձ դահեկան մի՝ զի տեսից: Եւ նոքա բերին: Եւ ասէ ցնոսա. ո՞յր է պատկերս այս կամ գիր: Եւ նոքա ասեն ցնա. կայսեր: Պատասխանի ետ Յն և ասէ ցնոսա. երթա՛յք

տուք զկայսերն՝ կայսեր, և զԱյն՝ Այ։ Եւ զարմացան ընդ նա։ Գան առ նա Սադուկեցիքն որ ասեն՝ թէ չիք յարութի. հարցանէին ցնա և ասէին։ Վարդապետ, Մովսէս գրեաց մեզ. եթէ ուրուք եղբայր մեռանիցի և թողուցու կին և որդի ոչ թողուցու, զի առցէ եղբայր նորա զկին նորա, և յարուսցէ զաւակ եղբօր իւրում։ Արդ՝ եղբարք եօթն էին առ մեզ. առաջինն առ կին՝ և մեռաւ, և ոչ եթող զաւակ։ Եւ երկրորդն առ զնոյն՝ և մեռաւ, և ոչ նա եթող զաւակ. նոյնպէս և երրորդն առ զնոյն. և եօթնեքեան իսկ, և ոչ թողին զաւակ։ Յետ ամենեցուն մեռաւ և կինն։ Արդ՝ ի յարութեն յորժամ յառնիցեն, ո՞յր ի նոցանէ լինիցի կինն. զի եօթնեքեան կալան զնա կին։ Պատասխանի ետ Յս և ասէ ցնոսա. ո՞չ վասն այդորիկ իսկ մոլորեալ էք, զի ոչ գիտէք զգիրս և ոչ զզօրութի Այ։ Զի յորժամ ի մեռելոց յարիցեն՝ ոչ արք կանայս առնեն, և ոչ կանայք արանց լինին. այլ իբրև զհրեշտակս իցեն, որ յերկինս են։ Այլ վասն յարութեան մեռելոց զի յառնեն՝ ո՞չ իցէ ընթերցեալ ձեր ի գիրսն Մովսեսի ի մորենւոջն. ոպ ասաց ցնա Ած. Ես եմ, ասէ, Ած Աբրահամու, և Ած Իսահակայ, և Ած Յակովբայ։ Եւ ոչ է Ած մեռելոց՝ այլ կենդանեաց. և արդ դուք յոյժ մոլորեալ էք։ Եւ մատուցեալ մի ոմն ի դպրացն՝ լսէր նց մինչ վիճէինն. իբրև ետես եթէ բարւոք ետ նց զպատասխանին, եհարց ցնա և ասէ. ո՞ր պատուիրան է առաջին։ Եւ Յս ասէ ցնա. առաջին քան զամ. Լուր Իէլ, Տէր Ած մեր Տէր մի է, և սիրեսցես զՏէր Ած քո յամ սրտէ քումմէ, և յամ անձնէ քումմէ, և յամ մտաց քոց, և յամ զօրութէ քումմէ. այս է առաջին պատուիրան։ Եւ երկրորդն նման սմին. Սիրեսցես զընկեր քո՝ իբրև զանձն քո. մեծ քան զսոսա այլ պատուիրան ոչ գոյ։ Եւ ասէ ցնա դպիրն. բարւոք է վարդապետ. ճշմարտութբ ասացեր՝ թէ մի է Ած, և ոչ

գոյ այլ բաց ի նմանէ։ Եւ սիրելն զնա յամ զօրուէ և յամ մտաց, և սիրելն զընկերն իբրեւ զանձն՝ առաւել է քան զողջակէզս և զզոհս։ Եւ տեսեալ Յսի թէ իմաստութբ ետ զպատասխանին՝ ասէ ցնա. չես հեռի յարքայութէ Այ. և ոչ եւս ոք իշխէր ինչ հարցանել ցնա։ Պատասխանի ետ Յս և ասէ մինչ ուսուցանէր ի տաճարին. զիա՞րդ ասեն դպիրքն, եթէ Քն որդի Դաւթի է։ Եւ ինքն Դաւիթ Հոգւովն սրբով ասէ. Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ աջմէ իմմէ՝ մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։ Արդ՝ եթէ ինքն իսկ Դաւիթ զնա Տէր կոչէ՝ զիա՞րդ իցէ որդի նր։ Եւ բազում ժողովուրդ լսէր նմա քաղցրութբ։ Եւ ասէր ուսուցանելով ի վարդապետութե իւրում. զգո՛յշ լերուք ի դպրաց անտի, որ կամին ի հանդերձս երեւելիս շրջել, զնախողջոյնս խնդրել ի հրապարակս և զնախաթոռս ի ժողովուրդս և զգահաւորակս յընթրիս։ Որ ուտեն զտունս այրեաց, պատճառանօք յերկարեալ զաղօթս, զի աւելի եւս դատաստանս ընկալցին։ Կայր Յս ընդդէմ գանձանակին, տեսանէր թէ զիա՛րդ ժողովուրդն արկանէր պղինձ ի գանձանակն. և բազում մեծատունք արկին բազում ինչ։ Եկն այրի մի՝ և արկ երկուս լումայս, որ է նաքարակիտ մի։ Եւ կոչեցեալ առ ինքն զաշակերտսն, ասէ ցնս. ամէն ասեմ ձեզ, զի այրին այն տառապեալ՝ շատ արկ քան զամենեսեան՝ որ արկին ի գանձանակն։ Քանզի ամենեքին յաւելորդաց իւրեանց արկին. այլ նա ի չքաւորութե իւրմէ՝ զամ ինչ զոր ունէր՝ արկ գոյիւ չափ զկեանս իւր։ 44։

Երգ. Էական Բանն որ ընդ Հօր։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո՝ Տէր։ Աղօթ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեդ։

---

# ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի տօն ծածկ ծողովքն եւ ամէն խոնարհեցո եւ Ապրեցո։

Մեղեդի պահոց է յայնէն։

Քաղցրութի արարեր ընդ ծառայի քում Տէր ըստ բանի քում։

Քաղցր ես դու Տէր. և քաղցրութեամբ քով խրատեա զիս։

## Ընթերցուածս ի Ծննդոց։ Զ. 9։

Եւ այս են ծնունդք Նոյի. Նոյ այր արդար կատարեալ էր յազգի անդ իւրում. և հաճոյ եղեւ Նոյ Այ։ Եւ ծնաւ Նոյ երիս որդիս զՍէմ, զՔամ, զՅաբեթ։ Եւ ապականեցաւ երկիր առջի Այ. և լցաւ երկիր անիրաւութք։ Եւ ետես Տր Ած զերկիր, և էր ապականեալ. զի ապականեաց ամ մարմին զճանապարհս իւր ի վր երկրի։ Եւ ասէ Տէր Ած ցՆոյ. Ժամանակ ամ մարդոյ հասեալ է առաջի իմ. զի լցաւ երկիր անիրաւութք ի նոցանէ. և ահա ես ապականեցից զնս և զերկիր։ Արդ՝ արա դու քեզ տապան ի չորեքկուսի փայտից. խորշս խորշս գործեսցես զտապանն. և նաւթիւ ծեփեսցես զնա ներքոյ և արտաքոյ։ Եւ այսպէս արասցես զտապանն. յերեքհարիւր կանգնոյ զերկայնութի տապանին. և ի յիսուն կանգնոյ զլայնութի. և յերեսուն կանգնոյ զբարձրութի։ Քաղելով գործեսցես զտապանն. և ի մի կանգուն կատարեսցես զնա ի վերուստ. և զդուռս տապանին ի կողմանէ արասցես. ներքնատունս և միջնատունս և վերնատունս գործեսցես ի նմա։ Եւ ահա ես ածից ջրհեղեղ ջրոյ ի վր երկրի. ապականել զամ մարմին, յորում է շունչ կենդանի ի ներքոյ երկնից. և ինչ որ իցէ ի վերայ երկրի սատակեսցի։ Եւ եդից զուխտ իմ ընդ քեզ. և մտցես ի տապանն. դու և որդիք քո և կին քո և կանայք որդւոց քոց ընդ քեզ։ Եւ յամ անասնոց և յամ գազանաց, և յամ մարմնոյ երկուս երկուս յամէ մուծցես ի տապանն

բուծանել ընդ քեզ. արու և էգ լինիցին։ Յամ՟ հաւուց թռչնոց ըստ ազգի. և՛ յամ՟ անասնոց ըստ ազգի. և յամ՟ սողնոց երկրի ըստ ազգի իւրեանց. երկու երկու յամէ՟ մտանիցեն առ քեզ կերակրել ընդ քեզ, արու և էգ։ Եւ դու առնուցուս քեզ յամենայն կերակրոց զոր ուտիցէք. և ժողովեսցես դու առ քեզ. և եղիցի քեզ և նոցա կերակուր։ Եւ արար Նոյ զամ՟ զոր միանգամ պատուիրեաց նմա Տէր Ած՟. նոյնպէս և արար։ Եւ ասէ Տէր Ած՟ ցՆոյ. մուտ դու և ամ՟ տուն քո ի տապանդ. զի զքեզ տեսի արդար առաջի իմ յազգիդ յայդմիկ։ Եւ յամ՟ անասնոց սրբոց մոյծ ընդ քեզ եօթն եօթն՝ արու և էգ. և յամ՟ անասնոց որ ոչ են սուրբ, երկուս երկուս՝ արու և էգ։ Եւ ի թռչնոց երկնից սրբոց, եօթն եօթն՝ արու և էգ. և ի թռչնոց որ ոչ սուրբ են, երկուս երկուս՝ արու և էգ. բուծանել զաւակ ի վր՟ ամ՟ երկրի։ Եւ այլ եւս եօթն օր. և ածից անձրեւ ի վր՟ երկրի զքառասուն տիւ և զքառասուն գիշեր. և ջնջեցից զամ՟ հասակ, զոր արարի՝ յերեսաց երկրէ։ Եւ արար Նոյ զամ՟, զոր միանգամ պատուիրեաց նմա Տէր Ած՟։ Նոյ էր ամաց վեց հարիւրոց. և ջրհեղեղ ջուրցն եղեւ ի վր՟ երկրի։ Եւ եմուտ Նոյ և որդիք իւր և կին նր՟ և կանայք որդւոց նր՟ ընդ նմա ի տապանն, վս՟ ջուրցն հեղեղի։ Եւ ի թռչնոց սբց՟, և ի թռչնոց որ ոչ սբ՟ էին, և յամ՟ սողնոց՝ որ սողէին ի վր՟ երկրի՝ երկու երկու մտին առ Նոյ ի տապան անդր՝ արու և էգ. որպ՟ պատուիրեաց նմա Տէր Ած՟։ Եւ եղեւ յետ եօթն աւուր և ջուր ջրհեղեղին եղեւ ի վր՟ երկրի։ Յամին վեցհարիւրորդի կենաց Նոյի, յերկրորդում ամսեանն ի քսան և եօթն ամսոյն. և պատառեցան ամ՟ աղբիւրք անդնդոց բազմաց. և սահանք երկնից բացան։ Եւ եղեւ անձրեւ ի վր՟ երկրի զքառասուն տիւ և զքառասուն գիշեր։ Յաւուր յայնմիկ եմուտ Նոյ, Սէմ, Քամ, Յաբեթ, որդիք

Նոյի, և կին Նոյի, և երեք կանայք որդւոց նր̃ ընդ նմա ի տապան անդր։ Նոքա և ա̃մ գազանք ըստ ազգի. և ա̃մ անասուն ըստ ազգի իւրեանց. և ա̃մ սողուն շարժուն ի վր̃ երկրի ըստ ազգի իւրեանց. և ա̃մ հաւ թռչուն ըստ ազգի իւրում։ Մտին առ Նոյ ի տապան անդր երկու երկու յա̃մ մարմնոյ, յորում է շունչ կենդանի։ Եւ որ մտանէինն՝ արու և էգ յա̃մ մարմնոյ մտանէին. ո̃պ պատուիրեաց Ած Նոյի։ Եւ փակեաց Տր̃ Ած արտաքոյ նր̃ զտապանն. և եղեւ ջրհեղեղ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր ի վր̃ երկրի. և բազմացաւ ջուրն և վերացոյց զտապանն. և բարձրացաւ յերկրէ։ Եւ զօրանայր ջուրն և բազմանայր յոյժ ի վր̃ երկրի. և շրջէր տապանն ի վր̃ ջրոց։ Եւ սաստկանայր* ջուրն յոյժ յոյժ ի վերայ երկրի. և ծածկէր զամենայն լերինս բարձունս որք էին ի ներքոյ երկնից։ Հնգետասան կանգուն բարձրացաւ ջուրն ի վեր. և ծածկեաց զա̃մ լերինս։ Եւ մեռաւ ա̃մ մարմին շարժուն ի վր̃ երկրի, թռչնոց և անասնոց և գազանաց. և ա̃մ սողուն զեռուն ի վր̃ երկրի, և ա̃մ մարդ։ Եւ ա̃մ որ ունէր շունչ կենդանի յռնգունս իւր, և ա̃մ որ ինչ էր ի վր̃ ցամաքի մեռաւ։ Եւ ջնջեաց զա̃մ հասակ՝ որ էր ի վր̃ երեսաց երկրի. ի մարդոյ մինչեւ յանասուն. և ի սողնոց մինչեւ ի թռչունս երկնից. և ջնջեցան յերկրէ. և մնաց միայն Նոյ, և որ ընդ նմա էին ի տապանի անդ։ Եւ բարձրացաւ ջուրն ի վերայ երկրի աւուրս հարիւր և յիսուն։ Եւ յիշեաց Ած զՆոյ և զա̃մ գազանս և զա̃մ անասունս և զա̃մ թռչունս, որ էին ընդ նմա ի տապանի անդ. և ած Ած հողմ ի վր̃ երկրի, և դադարեաց ջուրն։ Եւ խցան աղբիւրք անդնդոց և սահանք երկնից. և արգելաւ անձրեւ յերկնից։ Եւ զիջանէր տակաւ. երթայր ջուրն և թողանայր յերկրէ. և նուազէր ջուրն յետ հարիւր և յիսուն աւուր։ Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեանն ի քսան և

եօթն ամսոյն ի լերինս Արարատայ։ Եւ ջուրն երթայր և նուազէր մինչև ի տասներորդ ամիսն։ Իսկ յամսեանն մետասաներորդի, որ օր առաջին էր ամսոյն, երեւեցան գլուխք լերանց։ Եւ եղեւ յետ քառասուն աւուր՝ եբաց Նոյ զպատուհան տապանին զոր արար։ Եւ արձակեաց զագռաւն. և ել և անդրէն ոչ դարձաւ մինչև ցցամաքել ջրոյն յերկրէ։ Եւ արձակեաց զաղաւնին զհետ նր̅ տեսանել թէ ցածուցեա՞լ իցէ ջուրն յերեսաց երկրի։ Եւ չգտեալ աղաւնւոյն հանգիստ ոտից իւրոց, դարձաւ անդրէն առ Նա ի տապան անդր. զի ջուր դեռ ունէր զա̅մ երեսս երկրի. և ձգեաց զձեռն և ընկալաւ զնա. և առ զնա անդրէն առ իւր ի տապան անդր։ Եւ դադարեաց եւս աւուրս եօթն. և դարձաւ արձակեաց զաղաւնին ի տապանէ անտի։ Եւ դարձաւ առ Նա աղաւնին ընդ երեկս. և ունէր տերեւ ձիթենւոյ շիղ ի բերան իւրում. և գիտաց Նոյ, թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ։ Եւ դադարեաց աւուրս եօթն եւս. և դարձեալ արձակեաց զաղաւնին. և ոչ եւս յաւել դառնալ առ Նա։ Եւ եղեւ ի վեցհարիւրորդի և ի միում ամի կենաց Նոյի, յամսեանն առաջնում, որ օր մի էր ամսոյն, նուազեաց ջուրն յերեսաց երկրէ. և եբաց Նոյ զձեղուն տապանին զոր արար։ Եւ ետես զի նուազեալ էր ջուրն յերեսաց երկրի։ Իսկ յամսեանն երկրորդի, որ օր քսան և եօթն էր ամսոյն՝ ցամաքեցաւ երկիր։ Եւ խօսեցաւ Տէր Ա̅ծ ընդ Նոյի, և ասէ։ Ե՛լ ի տապանէ այտի դու և կին քո, և որդիք քո, և կանայք որդւոց քոց ընդ քեզ։ Եւ զա̅մ գազանք որ են ընդ քեզ. և զա̅մ մարմին ի թռչնոց մինչև ցանասունս. եւ զա̅մ սողուն զեռուն երկրի հա̅ն ընդ քեզ. և զեռասցեն ի վ̅ր երկրի։ Եւ աճեցէք և բազմացարո՛ւք ի վերայ երկրի։ Եւ ել Նոյ, և կին նորա, և որդիք նորա և կանայք որդւոց նորա ընդ նմա։ Եւ ամենայն գազան, և ամենայն սողուն շարժուն, և ամե-

Նոյն թռչուն յերկրէ ըստ ազգի իւրեանց, ելին ի տա-
պանէ անտի։ Եւ շինեաց Նոյ սեղան Աստուծոյ. և առ
յամ անասնոց սրբոց. և յամ թռչնոց սրբոց. և եհան
ողջակէզ ի վր սեղանոյն։ Եւ հոտոտեցաւ Տր Ած ի հոտ
անուշից. և ասէ Տր Ած, ածեալ զմտաւ, ոչ եւս յա-
ւելից անիծանել զերկիր վն գործոց մարդկան. զի միտք
մարդկան հաստատեալ են ի խնամս չարի ի մանկու-
թենէ իւրմէ, արդ ոչ եւս յաւելից հարկանել զամ
մարմին կենդանի, ոպ արարի։ Այսուհետեւ զամ ա-
ւուրս երկրի՝ սերմն և հունձք, ցուրտ և տօթ, ամառն
և գարուն՝ զտիւ և զգիշեր մի դադարեսցեն։ Եւ օրհ-
նեաց Ած զՆոյ և զորդիս նորա. և ասէ ցնս. աճեցէք
և բազմացարուք և լցէք զերկիր և տիրեցէք դմա։ Եւ
ահ և երկիւղ ձեր եղիցի ի վր ամ գազանաց երկրի,
և ի վր ամ թռչնոց երկնից, եւ ի վր ամ զեռնոց
երկրի, և ի վր ձկանց ծովու. զորս ընդ ձեռամբ ձե-
րով ետու։ Եւ ամ զեռուն որ է կենդանի, ձեզ լիցի
ի կերակուր. իբրեւ զբանջար խոտոյ ետու ձեզ զամ։
Բայց զմիս արեամբ շնչոյ մի՛ ուտիցէք։ Քանզի և զձեր
արիւն շնչոյ խնդրեցից. ի ձեռաց ամ գազանաց խըն-
դրեցից զնա. և ի ձեռաց մարդոյ, ի ձեռաց առն զշունչ
արեան եղբօր իւրոյ խնդրեցից։ Որ հեղու զարիւն մար-
դոյ՝ փոխանակ արեան նր հեղցի արիւն նր. զի ի պատ-
կեր Այ արարի ես զմարդն։ Այլ դուք աճեցէք և
բազմացարուք և լցէք զերկիր. և բազմացարուք ի
վր դորա։ Եւ խօսեցաւ Տէր Ած ընդ Նոյի, և ընդ որ-
դիս նր որ ընդ նմա էին, եւ ասէ։ Եւ ահաւասիկ ես
հաստատեմ զուխտ իմ ընդ ձեզ և ընդ զաւակի ձե-
րում յետ ձեր։ Եւ ընդ ամ շնչոյ կենդանւոյ որք ընդ
ձեզ են. ի թռչնոց և յանասնոց և յամ գազանաց
երկրի որ ընդ ձեզ. եւ յամենեցունց որ ելին ի տա-
պանէ անտի. և յամ անասնոց երկրի։ Եւ հաստատե-
ցից զուխտ իմ ընդ ձեզ. և ոչ եւս մեռանիցի ամ

մարմին ի ջրհեղեղ. և ոչ ևս եղիցի ջրհեղեղ ջուրց ապականել զա̅մ երկիր: Եւ ասէ Տ̅ր Ա̅ծ ցՆոյ. այս է նշան ուխտին, զոր ես տաց ընդ իս և ընդ ձեզ. և ի մէջ ա̅մ շնչոյ կենդանւոյ որ է ընդ ձեզ. յազգս յաւիտենից: Զաղեղն իմ եդից յամպս, և եղիցի ի նշանակ յաւիտենական ուխտին ընդ իս և ընդ ա̅մ երկիր: Եւ եղիցի ի գումարել ինձ զամպս ի վ̅ր երկրի, երեւեսցի աղեղն իմ յամպս: Եւ յիշեցից զուխտ իմ որ ընդ իս և ընդ ձեզ. և ի մէջ ա̅մ շնչոյ կենդանւոյ յա̅մ մարմին. և ոչ ևս եղիցի ջրհեղեղ ի սատակել զա̅մ մարմին: Եւ եղիցի աղեղն իմ յամպս. և տեսից յիշել զուխտն յաւիտենական, ի մէջ իմ և ի մէջ ա̅մ շնչոյ կենդանւոյ. յա̅մ մարմնի որ է ի վ̅ր երկրի: Եւ ասէ Ա̅ծ ցՆոյ. այս է նշան ուխտին. զոր ուխտեցի ես ընդ իս և ընդ ձեզ. և ի մէջ ա̅մ մարմնոյ որ է ի վերայ երկրի: Թ. 17:

Ընթերցուածս յԱռակաց: Թ. 1:

Իմաստութիւն շինեաց իւր տուն. և կանգնեաց սիւնս եօթն: Եզեն զզենլիս իւր. և խառնեաց ի խառնարանս զգինի իւր. և պատրաստեաց զսեղան իւր: Եւ առաքեաց զծառայս իւր՝ կոչել բարձր քարոզութ̅բ ի խառնելիս իւր: Եւ ասէ. որ ոք իցէ անզգամ եկեսցէ առ իս: Եւ ցպակասամիտս ասէ. եկա՛յք կերա՛յք ի հացէ իմմէ, և արբէ՛ք զգինի իմ, զոր խառնեցի ձեզ: Թողէ՛ք զանզգամութիւն, և կեցջի՛ք. խնդրեցէ՛ք զիմաստութի̅. զի ապրեսջի՛ք. և ուղղեցէ՛ք գիտութ̅բ զհանճար. և ուղիղ ճանապարհաւ իմացարո՛ւք զխրատ: Որ խրատէ զչարս՝ առցէ անձին իւրում անարգանս. և որ յանդիմանէ զամբարիշտն, ատեայ զանձն: Մի՛ յանդիմաներ զչարս՝ զի մի՛ ատեսցեն զքեզ. յանդիմանեա՛ զիմաստունն, և սիրեսցէ զքեզ. զանմիտն, և յաւելցէ ատել զքեզ: Տո՛ւր իմաստնոյն պատճառս, և իմաստնագոյն ևս լիցի. ծանո՛ արդարոյն, և յաւելցէ ընդունել:

Սկիզբն իմաստութեան՝ երկիւղ Տեառն. և խորհուրդ նորա հանճար. իմանալ զօրէնս՝ մտաց առատաց է: Այսու օրինակաւ բազում ժամանակս կեցցես. և յաւելցին քեզ ամք կենաց: 11:

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: Խ. 9:

Ի՛վ ի վե՛ր լերինդ բարձու՝ աւետարանիչդ Սիովնի. բարձրացո՛ զօրութեամբ զբարբառ քո՛ աւետարանիչդ Երուսաղեմի. բարձրացուցէ՛ք. մի՛ երկնչիք: Ասա՛ ցքաղաքդ Յուդայ. ահաւասիկ Աստուած ձեր. ահաւասիկ Տէր Տէր՝ գայ զօրութեամբ, և բազուկն տէրութեամբ իւրով. ահաւասիկ վարձք իւր ընդ իւր. և գործք առաջի նորա: Իբրև հովիւ մի հովուեսցէ զխաշինս իւր. և բազկաւ իւրով ժողովեսցէ զգառինս. և ի ծոց իւր կրեսցէ զնոսա. և մխիթար լիցի յղեաց: Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս, և զերկինս թզաւ և զերկիր ամենայն քլաւ. ո՞ կշռեաց զլերինս կշռով, և զդաշտս կշռորդօք: Ո՞ գիտաց զմիտս Տեառն. և ո՞ եղև նմա խորհրդակից՝ եթէ խելամուտ արասցէ զնա: Կամ ընդ ո՞ւմ խորհեցաւ և արար զնա խելամուտ. կամ ո՞ եցոյց նմա զդատաստան և զճանապարհ իմաստութեան. կամ ո՞ ետ նմա փոխ յառաջագոյն, և հատուցանիցէ նմա: Եթէ ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի ի դուլէ են. և իբրև զմէտ մի ի կշռոց համարեցան. և իբրև շիթք ի բերանոյ համարեսցին: Եթէ Լիբանան չէ բաւական յայրուածս. և ամենայն չորքոտանիք չեն բաւական յողջակէզս: Եւ ամենայն հեթանոսք ոչինչ են. և յոչինչ համարեցան նմա: 17:

Աղօ ըՍ–ըղէչին տօնա: Քարոզ. Աղաչեսցուք. Կամ Փառք:

Համբարձի Բ2: Ընորհեա մեզ Տէր աղօթնութիւն. ընդ իմաստուն կուսանացն. և զհոգւոց մերոց լապտերս պայծառացո: Երկրպագեմք ի քեզ Տէր. զարհուրեալք ի պատասխանոյն. զամենն ասելով եթէ ոչ գիտեմ զձեզ: Յորժամ գաս փառօք Հօր. դատել զաշխար-

[illegible] ամ. [illegible] և մեզ Տէր եղև ի [illegible] [illegible] ամ: [illegible] մեզ [illegible] [illegible]ութե՛ [illegible] [illegible]. և [illegible] ի [illegible] ընդ [illegible] [illegible]: Փառք Հր: [illegible] ընդ [illegible] [illegible] և [illegible] ի [illegible] [illegible]. [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible]: Այժմ և միշտ: [illegible] [illegible] [illegible] [illegible]. և [illegible] [illegible] [illegible] ընդ [illegible] ի [illegible] [illegible]ութեան [illegible]:

Քարոզ. Վն խաղաղութե: Աղօթ. Հայր գթած:

Առ [illegible] Սաղմ ԻԴ. ողորմեա:

Առ քեզ Տէր համբարձի զանձն իմ. Ած իմ ի քեզ յուսացայ, մի՛ ամաչեցից, և մի՛ ծիծաղեսցեն զինեւ թշնամիք իմ:

Ամենեքեան որ համբերեն քեզ՝ մի՛ ամաչեսցեն, այլ ամաչեսցեն անօրէնք յունայնութե իւրեանց:

Զճանապարհս քո Տէր ցոյց ինձ. և զշաւիղս քո ուսո ինձ:

Առաջնորդեա ինձ ի ճշմարտութեան քում, և ուսո զիս. զի դու ես Ած փրկիչ իմ. և ես քեզ համբերեալ զօրհանապազ:

Յիշեա Տէր զգթութիւնս քո. և զողորմութիւնս՝ որ են յաւիտենից:

Զմեղս մանկութե և զանգիտութե իմոյ մի՛ յիշեր. այլ յիշեա զիս Տէր ըստ ողորմութե քում, վն քաղցրութե քո. զի քաղցր և ուղիղ ես Տէր:

Վն այսորիկ օրէնսդէտ առնես զմեղաւորս ի ճանապարհի. առաջնորդես հեզոց ի դատաստանի. և ուսուցանես հեզոց զճանապարհս քո:

Ամենայն ճանապարհք Տեառն ողորմութեամբ և ճշմարտութեամբ են այնոցիկ որ խնդրեն զուխտս և զվկայութիւն նորա:

վ՟ն անուան քո Տէր քաւեա՛ զմեղս իմ, զի բազում եղեն. ո՞վ է մարդ որ երկնչի ի Տ՟նէ. օրէնսդէտ առնէ զնա ի ճանապարհի՝ յոր և հաճեցաւ։

Անձն Ն՟ր ի բարութ՟են հանգիցէ. և զաւակ Ն՟ր ժառանգեսցէ զերկիր։

Զօրութ՟ի է Տէր երկիւղածաց իւրոց. և զկտակարանս իւր ուսուցանէ Ն՟ց։

Աչք իմ յա՟մ ժամ առ Տէր. և Նա հանէ յորոգայթէ զոտս իմ։

Նայեա՛ առ իս, և ողորմեա՛ ինձ. զի միամօր և աղքատ եմ ես։

Նեղութ՟իք սրտի իմոյ բազում եղեն յոյժ. և ի վշտաց իմոց հա՛ն զիս։

Տե՛ս զխոնարհութ՟ի իմ և զվաստակ իմ. և թո՛ղ ինձ զա՟մ մեղս իմ։

Տե՛ս զթշնամիս իմ՝ զի բազում եղեն. ատելութ՟ի զոր ի Նանիր ատեցին զիս։

Պահեա՛ զանձն իմ, և փրկեա՛ զիս, և մի՛ յամօթ եղէց՝ զի յուսացայ ի քեզ։

Անբիծք և ուղիղք կցորդք եղեն ինձ. և ես քեզ համբերի. փրկեա՛ Ա՟ծ զԻսրայէլ յա՟մ նեղութ՟եց Ն՟ր։

Զ՟նի՝ Ո՛րթիւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԴ. 1։

Տէրն մեր Յ՟ս Ք՟ս

Եւ ելեալ արտաքս ի տաճարէն գնայր. և մատեան աշակերտքն ցուցանել Նմա զշինուածս տաճարին։ Եւ Նա պատասխանի ետ և ասէ ց՟նս. տեսանէ՞ք զայդ ամենայն ամէն ասեմ ձեզ. ոչ մնասցէ այդր քար ի քարի վ՟ր՝ որ ոչ քակտեսցի։ Եւ մինչդեռ Նստէր ի լերինն ձիթենեաց, մատեան առ Նա աշակերտքն առանձինն և ասեն. ասա՛ մեզ՝ ե՞րբ լինիցի այդ. և կամ զի՞նչ նշան իցէ քոյ գալստեանն, և վախճանի աշխարհիս։ Պատասխանի ետ Յ՟ս և ասէ ց՟նս. զգո՛յշ լերուք՝ գուցէ ոք

զձեզ խաբիցէ: Զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ քն՟. և զբազումս մոլորեցուցանիցեն: Լսելոց էք պատերազմունս և համբաւս պատերազմաց. զգոյշ լերուք՝ մի՛ խռովեսջիք, զի պարտ է լինել այնմ ա՟մի, այլ չեւ է կատարած: Յարիցէ ազգ յազգի վ՟ր, և թագաւորութ՟ի ի թագաւորութ՟ե վ՟ր. և եղիցին սովք և սրածութ՟իք և սասանութ՟իք ի տեղիս տեղիս: Սակայն և այն ա՟մ սկիզբն է երկանց: Յայնժամ մատնեսցեն զձեզ ի նեղութ՟իս, և սպանանիցեն զձեզ. և եղիջիք ատեցեալք յա՟մ ազգաց վ՟ն անուան իմոյ: Եւ յայնժամ գայթագղեսցեն բազումք, և զմիմեանս մատնեսցեն, և ատեսցեն զմիմեանս: Եւ բազում սուտ մարգարէք յարիցեն, և զբազումս մոլորեցուսցեն: Եւ վ՟ն բազմանալոյ անօրէնութ՟են՝ ցամաքեսցի սէր բազմաց: Բայց որ համբերեսցէ ի սպառ, նա կեցցէ: Եւ քարոզեսցի աւետարանս արքայութ՟ե ընդ ա՟մ տիեզերս՝ ի վկայութիւն ա՟մ հեթանոսաց, և ապա եկեսցէ կատարած: Արդ՝ յորժամ տեսանիցէք զպղծութ՟ի աւերածոյն, որ ասացեալն է ի ձեռն Դանիէլի մարգարէի. զի կայցէ ի տեղւոջն սրբութ՟ե. որ ընթեռնուն՝ ի միտ առցէ: Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս. և որ ի տանիս կայցէ՝ մի՛ իջցէ առնուլ ինչ ի տանէ իւրմէ: Եւ որ յանդի իցէ՝ մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս իւր: Բայց վա՜յ իցէ յղեաց և ստնտուաց յաւուրսն յայնոսիկ: Յաղօթս կացէք՝ զի մի՛ լինիցի փախուստ ձեր ձմերանի, և մի՛ ի շաբաթու: Զի եղիցի յայնժամ նեղութ՟ի մեծ, որպիսի ոչ եղեւ ի սկզբանէ արարածոց աշխարհի մինչեւ ցայժմ, և ոչ այլ լիցի: Եւ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ, ոչ ապրէր ա՟մ մարմին. բայց վ՟ն ընտրելոցն կարճեսցին աւուրքն այնոքիկ: Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ՝ ահաւասիկ աստ է քն՟ կամ անդ, մի՛ հաւատայցէք: Զի յարիցեն սուտ քն՟ք և սուտ մարգարէք.

և տայցեն նշանս մեծամեծս և արուեստս, մինչև մոլորեցուցանել՝ թէ հնար իցէ և զընտրեալսն։ Ահա յառաջագոյն ասացի ձեզ։ Ապա թէ ասիցեն ձեզ, ահաւանիկ յանապատի է, մի՛ ելանիցէք. և թէ ահա ի շտեմարանս է, մի՛ հաւատայցէք։ Զի ոպ՟ փայլակն՝ որ ելանէ յարեւելից, և երեւի մինչև յարեւմուտս, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ։ Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին արծուիք։ Վաղվաղակի յետ նեղութ՟ն աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի, և լուսին ոչ տացէ զլոյս իւր, և աստեղք անկցին յերկնից, և զօրութիք երկնից շարժեսցին։ Եւ ապա երեւեսցի նշան որդւոյ մարդոյ յերկինս, և յայնժամ կոծեսցին ա՟մ ազգք երկրի. և տեսցեն զորդի մարդոյ եկեալ ի վ՟ր ամպոց երկնից զօրութ՟բ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ, և ժողովեսցեն զընտրեալս նր՟ ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նց՟։ Ի թզենւոյ անտի ուսարո՛ւք զառակն. զի յորժամ նր՟ ոստքն կակղասցին և տերեւն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ա՟մ, գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս մինչև այս ա՟մ եղիցի։ Երկինք և երկիր անցցեն, և բանք իմ մի՛ անցցեն։ Բայց վ՟ն աւուրն այնորիկ և ժամուն, ոչ ոք գիտէ. ոչ հրեշտակք երկնից և ոչ Որդի, բայց միայն Հայր։ Այլ ոպ՟ աւուրքն Նոյի, այնպէս եղիցի գալուստն որդւոյ մարդոյ։ Զի ոպ՟ էին յաւուրսն որ յառաջ քան զջրհեղեղն, ուտէին և ըմպէին, կանայս առնէին և արանց լինէին, մինչև յօրն՝ յորում՛ եմուտ Նոյ ի տապանն. և ոչ գիտացին մինչև եկն ջրհեղեղն և եբարձ զամենեսին, այնպէս եղիցի և գալուստն որդւոյ մարդոյ։ Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առնուցու և միւսն թողուցու։ Եւ եթէ երկու աղայցեն ի մի երկանս, մին առնուցու և միւսն

թողուցու։ Արթուն կացէք՝ զի ոչ գիտէք յորում ժա-
մու Տէրն ձեր գայ։ Զայն գիտասջիք, եթէ գիտէր տա-
նուտէրն՝ յորում պահու գող գայ, սկէր և ոչ տայր
ական հատանել զտան իւրոյ։ Վն այսորիկ և դուք ե-
ղերուք պատրաստք, զի յորում ժամու ոչ ակն ունի-
ցիք գայ որդի մարդոյ։ Իսկ ո՞վ իցէ հաւատարիմ ծա-
ռայ և իմաստուն, զոր կացոյց տէր իւր ի վր ծառայից
իւրոց՝ տալ նց կերակուր ի ժամու։ Երանի՛ իցէ ծա-
ռային այնմիկ՝ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ
այնպէս։ Ամէն ասեմ ձեզ, զի ի վր ամ ընչից իւրոց
կացուսցէ զնա։ Ապա թէ ասիցէ ծառայն չար ի սրտի
իւրում, տէր իմ յամէ զգալ. և սկսանիցի հարկանել
զծառայակիցս իւր, ուտիցէ և ըմպիցէ ընդ արբեցողս։
Գայցէ տէր ծառային այնորիկ, յաւուր՝ յորում ոչ ակն
ունիցի, և ի ժամու՝ յորում ոչ գիտիցէ. և կտրեսցէ
զնա ընդ մէջ, և զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ։
Անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Յայնժամ նմա-
նեսցի արքայութի երկնից տասն կուսանաց, որոց ա-
ռեալ զլապտերս իւրեանց ելին ընդ առաջ փեսայի և
հարսին։ Հինգն ի նոցանէ յիմարք էին և հինգն իմաս-
տունք։ Յիմարքն առին զլապտերսն, և ձէթ ընդ իւ-
րեանս ոչ բարձին։ Իսկ իմաստունքն առին ձէթ ամա-
նօք ընդ լապտերս իւրեանց։ Եւ ի յամել փեսային,
նիրհեցին ամենեքեան և ի քուն մտին։ Եւ ի մէջ գի-
շերի եղեւ բարբառ, ահա փեսայ գայ՝ արի՛ք ընդ ա-
ռաջ նր։ Յայնժամ յարեան ամ կուսանքն, և կազմե-
ցին զլապտերս իւրեանց։ Ասեն յիմարքն ցիմաստունսն,
տուք մեզ յիւղոյդ ձերմէ, զի ահա շիջանին լապտերքս
մեր։ Պատասխանի ետուն իմաստունքն և ասեն. գուցէ
ոչ իցէ մեզ և ձեզ բաւական. այլ երթայք ի վաճա-
ռականս և գնեսջիք ձեզ։ Իբրեւ նոքա գնացին գնել՝
եկն փեսայն, և պատրաստքն մտին ընդ նմա ի հար-
սանիսն, և փակեցաւ դուռն։ Յետոյ գան և այլ կու-

սանքն և ասեն. տէր տէր, բաց մեզ: Նա պատասխանի ետ և ասէ. ամէն ասեմ ձեզ՝ թէ ոչ գիտեմ զձեզ: Արթո՛ւն կացէք՝ զի ոչ գիտէք զօրն և ոչ զժամն: Ոպ̃ այր մի գնացեալ ի տար աշխարհ, կոչեաց զծառայս իւր, և ետ ն̃ց զինչս իւր: Ումեմն ետ հինգ քանքար, և ումեմն երկուս, և ումեմն մի, իւրաքանչիւր ըստ իւրում կարի, և գնաց: Չոգաւ վաղվաղակի՝ որ առ զհինգն՝ գործեաց նոքօք, և շահեցաւ այլ ևս հինգ: Նոյնպէս և որ զերկուսն, շահեցաւ այլ ևս երկուս: Եւ որ զմին առ՝ գնաց փորեաց զերկիր, և թագոյց զարծաթ տն̃ իւրոյ: Յետ բազում ժամանակի գայ տէր ծառայիցն այնոցիկ, և առնէ համարս ի մէջ ն̃ց: Եւ մատուցեալ՝ որ զհինգ քանքարն առ, մատոյց այլ ևս հինգ քանքար, և ասէ. տէր հինգ քանքար ետուր ցիս, արդ՝ աւասիկ հինգ այլ ևս քանքար ի վ̃ր շահեցայ: Ասէ ցնա տէրն իւր. ազնի՛ւ, ծառայ բարի և հաւատարիմ, որովհետեւ ի սակաւուդ հաւատարիմ ես, ի վ̃ր բազմաց կացուցից զքեզ. մո՛ւտ յուրախութի̃ տն̃ քո: Մատուցեալ և որոյ զերկուս քանքարսն առեալ էր, և ասէ. տէ՛ր՝ երկուս քանքարս ետուր ցիս, ահաւասիկ երկուս ևս այլ քանքարս՝ զոր ի վ̃ր շահեցայ: Ասէ ցնա տէրն իւր. ազնի՛ւ, ծառայ բարի և հաւատարիմ, որովհետեւ ի սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մո՛ւտ յուրախութի̃ տն̃ քո: Մատուցեալ եւ որոյ զմի քանքարն առեալ էր, և ասէ. տէ՛ր՝ գիտէի, զի այր մի խիստ ես, հնձես՝ զոր ոչ սերմանեցեր, եւ ժողովես՝ ուստի ոչ սփռեցեր. երկեայ՝ գնացի և թագուցի զքանքարն քո յերկրի. արդ՝ աւասիկ քոյդ ցքեզ: Պատասխանի ետ տէրն և ասէ ցնա. ծառա՛յ չար և վատ, գիտէիր եթէ հնձեմ՝ ուստի ոչ սերմանեցի, եւ ժողովեմ՝ ուստի ոչ սփռեցի. պարտ էր քեզ արկանել զարծաթդ իմ ի սեղանաւորս, և եկեալ ես տոկոսեօք պահանջէի զիմն: Արդ՝

առէք ի դմանէ զքանքարդ, և տուք այնմ որ ունիցի զտասն քանքարն։ Զի ամի որ ունիցի՝ տացի և յաւելցի, և որ ոչն ունիցի՝ և զոր ունիցին բարձցի ի նմանէ։ Եւ զծառայդ անպիտան հանէք ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Եւ յորժամ եկեսցէ որդի մարդոյ փառօք իւրովք, և ամ հրեշտակք ընդ նմա, յայնժամ նստցի յաթոռ փառաց իւրոց։ Եւ ժողովեսցին առաջի նր ամ ազգք, և մեկնեսցէ զնս ի միմեանց, որպ հովիւ զի մեկնեսցէ զօդիս յայծեաց։ Եւ կացուսցէ զօդիսն ընդ աջմէ իւրմէ, և զայծիսն ի ձախմէ։ Յայնժամ ասասցէ Թագաւորն ցայնոսիկ՝ որ ընդ աջմէն իցեն. եկա՛յք օրհնեալք Հօր իմոյ՝ ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւն ի սկզբանէ աշխարհի։ Զի քաղցեայ, և ետուք ինձ ուտել. ծարաւեցի, և արբուցէք ինձ. օտար էի, և ժողովեցէք զիս. մերկ, և զգեցուցէք զիս. հիւանդ էի, և տեսէք զիս. ի բանտի էի, և եկիք առ իս։ Յայնժամ պատասխանի տացեն նմա արդարքն և ասասցեն. տէ՛ր, ե՞րբ տեսաք զքեզ քաղցեալ, և կերակրեցաք. կամ ծարաւի, և արբուցաք։ Ե՞րբ տեսաք զքեզ օտար, և ժողովեցաք. կամ մերկ, և զգեցուցաք։ Ե՞րբ տեսաք զքեզ հիւանդ կամ ի բանտի, և եկաք առ քեզ։ Պատասխանի տացէ Թագաւորն և ասասցէ ցնս. ամէն ասեմ ձեզ, որովհետեւ արարէք միում յեղբարցս այսոցիկ փոքրկանց՝ ինձ արարէք։ Յայնժամ ասասցէ և ցայնոսիկ՝ որ ընդ ահեկէն իցեն, երթա՛յք յինէն անիծեալք ի հուրն յաւիտենական, որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նր։ Զի քաղցեայ, և ոչ ետուք ինձ ուտել. ծարաւեցի, և ոչ արբուցէք զիս. օտար էի, և ոչ ժողովեցէք զիս. մերկ էի, և ոչ զգեցուցէք զիս. հիւանդ և ի բանտի, և ոչ տեսէք զիս։ Յայնժամ պատասխանի տացեն և նոքա և ասասցեն. տէ՛ր, ե՞րբ տեսաք զքեզ քաղցեալ կամ ծարաւի կամ

օտար կամ մերկ կամ հիւանդ կամ ի բանտի, և ոչ պաշտեցաք զքեզ։ Յայնժամ պատասխանի տացէ նցա և ասասցէ. ամէն ասեմ ձեզ, որովհետեւ ոչ արարէք միում ի փոքրկանցս յայսցանէ, և ոչ ինձ արարէք։ Եւ երթիցեն նոքա ի տանջանսն յաւիտենականս, և արդարքն ի կեանսն յաւիտենականս։ Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յս զամ զբանս զայսոսիկ, ասէ ցաշակերտսն իւր։ Գիտէք, զի յետ երկուց աւուրց զատիկ լինի. և որդի մարդոյ մատնի ի խաչ ելանել։ ԻԶ. 2։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո՛ Տէր։ Աղ. Թագաւոր խաղաղ։

Եւ արձակէն։

# ԱՒԱԳ ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ, ԳԶ.

## Ի ԳԻՇԵՐԻ

Օրհնութիւն Գ2։

Որ յաթոռ փառաց բազմեալ ընդ Հօր անըսկըզբնակից Բանդ. այսօր բազմել ընդ հողեղէնսըն յանձն առեր. * օրհնեմք զեկեալդ ի փրկութիւն աշխարհի։ Որ զանճառ ծնութեամբդ օծեալ զքո ծառայական կերպ. այսօր հաճեցար օծանիլ իւղով ի մեղաւորաց. օրհնեմք։ Որ կենարար թաղման քո գուշակ զիւղոյն ծանուցեր զօծումն. այսօր Յուդայի՛ն յայտնեցաւ խորհուրդ արծաթսիրութեան. օրհնեմք։

† Որ խորհրդակցեամբ ընդ Հօր և Հոգւոյն. արար ի պատկեր իւր զմարդն առաջին. այսօր որդիք մարդկան ժողովեալ խորհին մատնել ի մահ զՈրդին Աստուծոյ։ Յուդայ սիրոյն աշակերտ. փոխանակեաց զատելութիւն. առ վարդապետին. մատնելով քահանայիցն ընդ երեսուն արծաթոյ։

Ղչ: Վերամձգողն երկնից միշտնջենաւոր Հօր Որդին. ներգործեալ խմիւս ի վեր քան զհրաշս. ծառայի առեալ զկերպ անկողոպտելի ածութբն: Բանին զմաքրեցելոցն ջրով զոտըս լուանայ. զն զխոնարհութի ի նոսա տպաւորեսցէ. Եւ զորորդութեն գոլ օթեվան: Բաշխէ զմարմին իւր եւ զարիւնն նոր ուխտ անուանեալ. եւ յիշատակ կամաւոր մահուանն. մերձեցելոցս ի նմա սրբութեամբ:

Երկողդ ըզլցյս որպէս զօթոց. այսօր անճառ խոնարհութեամբ ի վերնատունն խորհրդոյ. ըզգեստ ծառայի ըսփածանիլ յանձն առեր. օրհնեմք զեկեալդ ի կամաւոր չարչարանս: Որում երկրպագեն դասք հրեշտակաց. խոնարհեցար ի լուանալ զոտըս հողեղէնս. բըժըշկել սոքօք ըզգարշապարս նախահօրն. բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութի: Որ ի խորհրդըս փըրկականս եկեղեցւոյ. բաշխեցեր աշակերտացն զմարմին որդ քո. նորոգելով ըզմահացեալսն ի ճաշակմանէ. հաղորդս այսմ ընկալ ըզմեզ միայն մարդասէր:

Որ անըսկիզբն յէութեն դ ես Աստուած. այսօր ըզգեցար ըզգեստ հողեղէն ծառայի. ծածկելով ըզմերկութի նախահօրն. * օրհնեալ եկեալդ ի փըրկութի ազգի մարդկան: Որ վերօրհնիս ի հրեղէն քերովբէից. այսօր եկիր կամաւ ի վերնատունն խորհրդոյ. լուացեր զաշակերտսն յօրինակ վասն մեր. օրհնեալ եկեալդ: Որ յաթոռ փառաց նըստիս ընդ Հօր. այսօր բազմել ընդ աշակերտսն յանձն առեր. բաշխելով ըզմարմին և զարիւն քո սբ. օրհնեալ:

Եկեալ ի փըրկութիւն ազգի մարդկան. ի ծառայէ յանձն առնու մատնիլ ի դատաստան. համբերելով վասն ըզմեզ կեցուցանել: Մատնեալ Պի-

ղատոսի ոչ՝ մահապարտ. ի յԱննայէ և ի կայիափայ դատապարտեալ. * համբերելով վասն ըզմեզ կեցուցանել: կացեալ ի յատենի երկրորդ Ադամ. վասն առաջինն Ադամայ պարտեացըն թողուլ. համբերեր:

ՀՈԳ. Արեգակն արդարութեան քն ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութե՝. եւ յետ մահու եւ յարութե համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկրպագի յերկնաւորաց և յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. * վասն որոյ և մեք երկիր պագանեմք Հօր հոգւով եւ ճշմարտութեամբ: Որ փոխանակ ծոցածին բանին որ եղ յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հոգին ճշմարտութե՝. մխիթարել զորս յԱդամայ տըրտմեցելոց եւ հրազինել զընորեալ դասս առաքելոցն. վն որոյ: Այսօր տըրտմական և գիշերայն լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծընեալըն մարմնով ի մահ եւ յապականութի՝. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի՝. վն որոյ և:

ՆՉ: Իձայն մեծի զուարթնոյն և ի հընչումըն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին. *յայնժամ աւուր յահեղին յիշեա Տէր և ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբըս քո: Յորժամ նըշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և թագաւորըդ թագաւորաց փառօք տեսանիս. յայնժամ աւուր: Յորժամ ատեան դատաստանին դընի. և դըպրութիւնք հրաշիցըն բանին. յայնժամ աւուր:

ԱՅՆ: Այսօր Գաբրիէլ ցընծութեամբ երգեաց սըրբոյն կուսին աւետիս բերկրեաց ասելով. որ ծընաւ ըզփըրկիչ անձանց մերոց: Անբաւելին երկնի եւ

երկրի ի կուսական արգանդէ մեզ կեանք յայտնեցաւ. Աստուած այցելու մարդկան: Ցառաջընթաց փայլումըն լուսատեսիլ աստեղն. մոգուցըն հետեւելով նըշանին ի ծընունդ Աստուածորդւոյն:

Խղ: Այսօր ցընծան դասք հրեշտակաց ընդ հաստատել քո ի յերկրի. որով լուսեղէն խորան երկնանըման եկեղեցի սուրբ. ուրախ լեր վէմ պատուական հովանի մեր և յոյս: Զուարճացիր հարսն աննարատ ընսքօղարկեալ փայլեցապէս. զարդարեալ հանդերձ փառօք և ել ընդ առաջ երկնաւոր փեսային. ուրախ լեր ամուլ բազմածին ահա փեսայն գայ առ քեզ: Փառք Հօր: Աստանօր նորոգեցաւ մեզ աւազան մըկըրտութեան. յարգանդ մօր հոգւովն յըղացեալ ծնանելով վերըստին զհաւատացեալքս ի քն. ուրախ լեր անմայր յառաջնումն ահա Որդին գայ առ քեզ:

Այժմ և միշտ: Որ զամենայն տնօրինաբար. կամաւ յանձն առեր փրկել ընդ մեղաւորաց. վն աննման խոնարհութեանդ քո և մեզ ողորմեա:

Մողնան. Փառք հրաշափառ տէրութեան:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Որ ուտէր ըզհաց իմ. յաճախեաց առնել ինձ խաբէութիւն: Այլ դու Տէր ողորմեա ինձ և կանգնեա զիս, և ես հատուցից նոցա:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Փ. Խորհեցան և խօսեցան զչարութի. և զապիրատութի ի բարձունըս խորհեցան: Եդին յերկինս զբերանս իւրեանց. և զլեզուս իւրեանց ածէին զերկրաւ:

Փառք և: Այժմ և. ալէլուիա:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

### Հարց Գձ։

Ո՛ր խօրհրդոց ես Տէր Աստուած անման. զծածկեալ խորհուրդ չարին ապականեալ վանեա. * ըզքեզ օրհնեմք Ած հարցն մերոց։ Ո՛ր ըզնախնեացն Աբրահամու զհանդէս խորագոյնըս ծանուցեր աւետեօք որդւոյն պատուեալ. ըզքեզ օրհ։ Ո՛ր շնորհես ծածկելոց յայտնի գոլ. Յուդաս արծաթոյ զանհասանելիդ մատնէր. ըզքեզ օրհ։

Գ. Ը՛զՏէր օրհնեցէք. * եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Փառք Հօր և։ Զբնակեալն ի վերին զօրսըն ծածկապէս խորհուրդ. քահանայքըն հոլոնեալ վաճառէին զԱծ. եւ բարձր։ Այժմ և միշտ։ Ո՛ր վասըն մեր համբերեաց բանսարկուին. կամաւ վաճառի Աստուած Բանն. եւ բարձր։

Մեծաց. Գձ։ Ըծածին երկնային դուռն ածային ձայնիւն աւետարանէր հրեշտակն. * ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ։ Փառք Հօր։ Ի՛ քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակեալ հաճեցաւ ի քում յորովայնի. ուրախ։ Այժմ և միշտ։ Ո՛ր բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր. այսօր ի մէջ մարդկան ի գիրկըս հողեղինի յայտնեալ. ուրախ լեր։

Ողորմ. Գձ։ Ը՛զքէն խորհեցան ի չարութի Աստուած յաւիտենից. որ բանիւ զարարածըս խորհրդով հիմնեցուցեր։ Փառք Հօր։ Ըզքեզ որ արարիչդ ես մեծութե արծաթոյ վաճառէին. յանձն առեր զամ համբերելով վասըն մեր։ Այժմ և։ Ըզքեզ որ թագաւորդ թագաւորաց ի ծառայէ դատապարտեալ. զի ըզմեզ փրկեսցես ի յանիծից Ադամայ։

Տէրյերկն. Գ.Զ: Այսօր եկեալ կամաւ փրկիչն առ ի մատնիլ յանօրէն ժողովրդէն. վասն փրկութեան հեթանոսաց: Փառք Հօր: Այսօր մատնի Բանն ի բանաւոր հօտէ. և յառաջնոյ դատապարտի յանօրինաց ժողովրդէն. վասն փրկութեան հեթանոսաց: Այժմ և: Այսօր հողն ըզՏէրըն դատապարտէ. և արծաթոյ վաճառի արարիչն արարածոց. վասն փրկութեան հեթանոսաց:

Առաւ. Երգ: Խորհեցան, եւ խօսեցան ըզչարութիւն. և զապիրատութիւն ի բարձունս խորհեցան:
Եդին յերկինս զբերանս իւրեանց. եւ զլեզուս իւրեանց անցին զերկրաւ:

Քարոզ. Փառաւորեսցուք. կամ Տանչ.

Մանկ. Գ.Զ: Որ ըսքանչելիք այսօր տեսանեմք յաշխարհի ի մէջ հողեղինաց. արարածք արարչին սպանութեան խորհին զխորհուրդ: Փառք Հօր: Որ բանիւն իւրով զերկինս և զերկիրըս հաստատեաց յոչընչէ գոյացուցեալ. վաճառի այսօր դիւրագին ընդ երեսուն արծաթոյ: Այժմ և: Ով Յուդաս արտասուելի երկնաւոր վարդապետին սպանութեան խորհի զխորհուրդ. մատնելով անօրինաց զի խաչեսցի ի մէջ երկրի:

Քարոզ. Վասն խաղաղութեան: Աղօթ. Մի ես Տէր:

Այս Սաղմոս Խ. ողբայոյն:

ԿԶ. Որ ուտէր ընդ իս հաց. յաճախեաց առնել ինձ խաբէութիւն:

Փխ. Երանի որ լսորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր:
Տէր փրկէ զնա և կեցուցանէ. երանելի առնէ զնա ի վերայ երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց:

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց. զամ անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութէ նորա:

Ես ասացի Տէր ողորմեա ինձ. և բժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ:

Թշնամիք իմ ասացին ինչ չար. երբ իցէ զի մեռցի, և կորիցէ անուն նորա:

Մտանէր տեսանել զնանրութիւն. խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր:

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր. զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ:

Խորհեցան չար ի վերայ իմ. բան անօրէնութեան եդին ի վերայ իմ:

Մի՛ թէ որ ննջիցէն ոչ եւս յաւելուցու յառնել. քանզի և այրն խաղաղութեան իմոյ՝ յոր և եսն յուսացայ:

Որ ուտէր ընդ իս հաց. յաճախեաց առնել ինձ խաբէութիւն:

Այլ դու Տէր ողորմեա ինձ. կանգնեա զիս, և հատուցից նոցա:

Յայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս. զի մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ:

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար. հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան:

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի յաւիտենականս յաւիտենից. եղիցի եղիցի:

ԶՆԷ ՈՐԹԻՒ:

Աւետարան ըստ Մարկոսի: ԺԴ. 1:

ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց աւուրց. խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ եթէ զիա՛րդ զնա նենգաւ կալեալ սպանանիցեն: Բայց ասէին՝ թէ մի՛ ի տօնի աստ, զի մի՛ խռովութիւն լինիցի ի ժողովրդեանն: Եւ մինչ էր ի Բեթանիա ի տան Սի-

մօտնի բորոտի բազմեալ, եկն կին մի, որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, և բեկեալ զշիշն՝ եհեղ ի վ՟ր գլխոյ նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ՞ր եղեւ կորուստ իւղոյդ այդորիկ։ Մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան երեքհարիւր դահեկանի, և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա. թո՛յլ տուք դմա, զի՞ աշխատ առնէք, զի գործ մի բարի գործեաց դա յիս։ Յա՟մ ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, և յորժամ կամիք՝ կարող էք առնել ն՟ց բարիս. այլ զիս ոչ յա՟մ ժամ ընդ ձեզ ունիք։ Դա զոր ունէրդ՝ արար. յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան պատանաց։ Ամէն ասեմ ձեզ. ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ա՟մ աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի վ՟ն յիշատակի դորին։ Եւ Յուդա Սկարիովտացի մի յերկոտասանից անտի, գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա ն՟ց։ Նոքա իբրեւ լուան՝ խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ։ Եւ խնդրէր՝ թէ զիա՞րդ պարապով մատնեսցէ զնա։ 11։

Երգ. Խաւարն անգոյ։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո Տէ՟ր. Աղօթ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեանդ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի տասն ժամն ասէ Խոնարհեցո Եւ Ապրեցո։

Մեսեդի պահոց է յայնէն։

Նայեա՛ց և լո՛ւր ինձ Տէր Աստուած իմ։

Մինչեւ յե՞րբ Տէր մոռանաս զիս իսպառ. մինչեւ յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն։

Ընթերցուածս ի Ծննդոց։ ԺԲ. 1։

Եւ երեւեցաւ Ա՟ծ (Աբրահամու) առ կաղնեաւն Մամբրէի, մինչդեռ նստէր առ դուրս խորանին իւրոյ

*ի միջօրէի։ Ամբարձեալ զաչս իւր և ետես. և ահա արք երեք կային ի վերոյ քան զնա. և իբրև ետես՝ ընթացաւ ընդ առաջ նց ի դրանէ խորանին իւրոյ. և երկիր եպագ ի վր երկրի և ասէ. Տէր եթէ գտի շնորհս առաջի քո՝ մի՛ զանց առնէր ի ծառայէ քումմէ։ Այլ առից սակաւ մի ջուր, և լուասցեն զոտս ձեր, և զովասջի՛ք ընդ ծառովս։ Եւ առից հաց և կերիջիք. և ապա երթիջիք զճանապարհ ձեր, փոխանակ զի դարձայք առ ծառայ ձեր։ Եւ ասեն՝ այդպէս արա՛, ոպ ասացերդ. Եւ պնդեցաւ Աբրահամ ի խորանն առ Սարրա, և ասէ ցնա. փութա՛ թրեա՛ գրիւս երիս ալեր նաշհոյ. և արա՛ նկանակս։ Եւ յանդեայ ընթացաւ Աբրահամ. և ա՛ռ որթ մի մատաղ և բարի. և ետ ցպատանին. և փութացոյց վաղվաղակի հասուցանել։ Եւ ա՛ռ կոգի և կաթն, և զորթն զոր հասոյց, և եդ առաջի նց, և կերան. և նա կայր առաջի նց ընդ ծառովն։ Եւ ասեն ցնա. ո՞ւր է Սարրա կին քո։ Նա պատասխանի ետ և ասէ. ահաւանիկ ի խորանի անդ է։ Եւ ասէ. դարձեալ եկից առ քեզ ի ժամանակի յայսմիկ ի սոյն աւուրս, և ունիցի որդի Սարրա կին քո։ Եւ Սարրա ունկն դնէր առ դրան խորանին. քանզի յետոյ նր կայր։ Եւ Աբրահամ և Սարրա ծերացեալք էին և անցեալք զաւուրբք. և պակասեալ էր ի Սարրայէ լինել ի կանանց օրինի։ Ծիծաղեցաւ Սարրա ընդ միտս և ասէ. որ ինչ ցայժմ ոչ եղեւ ինձ՝ ա՞րդ լինիցի. և տէր իմ ծերացեալ է։ Եւ ասէ Տր ցԱբրահամ. զի՞ է զի ծիծաղեցաւ Սարրա ընդ միտս իւր և ասէ. թէ արդարեւ ծնանիցի՞մ, զի ահա ես պառաւեալ եմ։ Մի՛ թէ տկարանայցէ՞ առ ի յԱՅ բան. ի ժամանակի յայսմիկ դարձայց առ քեզ ի սոյն աւուրս. և եղիցի Սարրայի որդի։ Ժխտեաց Սարրա և ասէ՝ թէ ոչ ծիծաղեցայ. քանզի երկեաւ։ Եւ ասէ. ոչ այդպէս է, այլ ծիծաղեցար։ Եւ յարուցեալ անտի արանցն՝*

հայեցան ընդ երեսս Սոդոմմացւոցն և Գոմորացւոց. և Աբրահամ երթայր ընդ նս՟՝ յուղարկել զնս՟: Եւ ասէ Տէր. մի՞ թէ թագո՞ւստ ինչ իցէ յԱբրահամէ ծառայէ իմմէ՝ զոր ինչ գործելոց եմ: Այլ Աբրահամ լինելով եղիցի յազգ մեծ և ի բազում, և օրհնեսցին ի նա ամ՟ ազգք երկրի: Քանզի գիտէի եթէ պատուիրեսցէ որդւոց իւրոց և տան իւրոյ յետ իւր՝ պահել զճանապարհս Տ՟ն և առնել զարդարութ՟ի և զիրաւունս. և ածցէ Տ՟ր Ա՟ծ ի վ՟ր Աբրահամու զամ՟ զոր խօսեցաւ ընդ նմա: Եւ ասէ Տէր. աղաղակ Սոդոմմացւոց և Գոմորացւոց յաճախեաց. և մեղք նց՟ մեծացան յոյժ: Եւ արդ իջեալ տեսից եթէ ըստ աղաղակին նց՟ որ յիս հասանէ՝ վճարիցե՞ն. ապա թէ ոչ՝ զի գիտացից: Եւ դարձեալ արանցն անտի՝ եկին ի Սոդոմ. և Աբրահամ կայր առաջի Տ՟ն: Եւ մատուցեալ Աբրահամ ասէր. մի՞ թէ կորուսանիցե՞ս զարդարն ընդ ամպարշտին. և լինիցի արդարն իբրև զամպարիշտն: Եթէ իցեն յիսուն արդար ի քաղաքի՝ կորուսանիցե՞ս զնս՟. և ո՞չ ներեսցես ամ՟ տեղեացն վս՟ յիսուն արդարոցն, եթէ իցեն ի նմա: Քա՛ւ լիցի քեզ առնել զայն բան, սպանանել զարդարն ընդ ամպարշտի. և լինիցի արդարն իբրև զամպարիշտն. քա՛ւ լիցի քեզ՝ որ դատիս զամ՟ երկիր. մի՞ արասցես զայն դատաստան: Եւ ասէ Տէր. եթէ գտցի ի Սոդոմ յիսուն արդար ի քաղաքի անդ, թողացուցից ամ՟ տեղեացն վս՟ նց՟: Պատասխանի ետ Աբրահամ և ասէ. այժմ սկսայ խօսել ընդ Տ՟ն. բայց ես հող եմ և մոխիր: Եթէ պակաս իցեն քան զյիսուն արդար՝ հնգիւ չափ, կորուսանիցե՞ս վս՟ հնգիցն զամ՟ քաղաքն: Եւ ասէ. ոչ կորուսից՝ եթէ գտցի անդ քառասուն և հինգ: Եւ յաւել եւս խօսել ընդ նմա և ասէ. իսկ եթէ գտցի անդ քառասո՞ւն: Եւ ասէ. ոչ կորուսից վս՟ քառասնիցն: Եւ ասէ. մի՞ թէ իցէ՞ ինչ Տէր եթէ խօսիցիմ. իսկ եթէ գտցին անդ երեսո՞ւն: Եւ ա-

սէ. ոչ կորուսից՝ եթէ գտցի անդ երեսուն։ Եւ ասէ. որովհետեւ կալայ խօսել ընդ Տն̃, եթէ գտցի անդ քսա՞ն։ Եւ ասէ. ոչ կորուսից վն̃ քսանիցն։ Եւ ասէ. մի՛ թէ իցէ՞ ինչ Տէր, եթէ խօսեցայց եւս միւսանգամ. եթէ գտանիցի անդ տա՞սն։ Եւ ասէ. ոչ կորուսից վն̃ տասանցն։ Եւ գնաց Տէր՝ իբրեւ լռեաց ի խօսելոյ անտի ընդ Աբրահամու. և Աբրահամ դարձաւ ի տեղի իւր։ Եւ եկին երկու հրեշտակքն ի Սոդոմ ընդ երեկս. և Ղովտ նստէր առ դրան Սոդոմացւոցն. իբրեւ ետես Ղովտ՝ յարեաւ ընդ առաջ նց̃. և երկիր եպագ ի վր̃ երեսաց իւրոց յերկիր, և ասէ։ Ահաւասիկ ես տեառք, եկա՛յք ի տուն ծառայի ձերոյ, հանգերո՛ւք, և լուացից զոտս ձեր. և կանխեալ ընդ առաւօտս երթիջիք զճանապարհ ձեր։ Եւ ասեն. ոչ, այլ ի քաղաքամիջի աստ ագցուք։ Եւ բռնադատեաց զնս̃ յոյժ. և խոտորեցան առ նա. և մտին ի տուն նորա, և արար նց̃ ընթրիս. և բաղարջ եփեաց նոցա, և կերան։ Մինչ չեւ ի քուն մտեալ էր նց̃. և արք քաղաքին Սոդոմացւոց պատեցին զտունն յերիտասարդաց մինչեւ ցծերս. ա՛մ ժողովուրդն ի միասին։ Եւ կոչէին արտաքս զՂովտ. և ասէին ցնա. ո՞ւր են արքն որք մտին առ քեզ գիշերի. ա՛ծ զնս̃ առ մեզ, զի գիտասցուք զնս̃։ Եւ ել առ նոսա Ղովտ արտաքոյ դրանն. և զդուռն ձգեաց զկնի իւր։ Եւ ասէ ցնոսա. քա՛ւ լիցի ձեզ ե՛ղբարք. մի՛ գործէք զայդ չարիս. են իմ երկու դստերք, որք զայր ոչ գիտեն. հանից զնս̃ առ ձեզ, և արարէք ընդ նս̃ ոպ̃ և հաճոյ իցէ ձեզ. բայց միայն արանցդ այդոցիկ մի՛ ինչ մեղ առնիցէք. որովհետեւ մտին ընդ յարկաւ գերանաց իմոց։ Եւ ասեն. ի բա՛ց կաց. մտեր բնակել պանդխտութբ̃, մի՛ թէ և դատաստա՞ն եւս դատել. այժմ և զքեզ եւս չարչարեսցուք առաւել քան զնս̃։ Եւ բռնադատէին զայրն զՂովտ յոյժ. և մերձ էին զդուռն խորտակել։ Եւ ձգեալ արանցն զձեռս իւրեանց՝ կոր-

զեցին յինքեանս զՂովտ ի տուն անդր․ և զդուրս տանն փակեցին։ Եւ զարսն որք առ դուրս տանն կային՝ հարին կուրութբ՟, ի փոքուէ մինչև ցմեծն․ և լքան խնդրել զդուրսն։ Եւ ասեն արքն ցՂովտ․ է՞ ոք քո աստ փեսայ կամ որդիք կամ դստերք կամ այլ ոք որ քո իցէ՝ ի քաղաքի աստ․ հա՛ն զնս՟ ի տեղւոջէ յայսմանէ։ Զի կործանելոց եմք մեք զքաղաքս զայս․ զի բարձրացաւ աղաղակ սց՟ առաջի Տռն՟․ և առաքեաց զմեզ Տէր սատակել զսա։ Ել Ղովտ, և խօսեցաւ ընդ փեսայս իւր՝ որք առնլոց էին զդստերս նր՟․ և ասէ․ արի՛ք ելէ՛ք ի տեղւոջէ աստի յայսմանէ, զի սատակէ Տէր զքաղաքս։ Եւ թուէր ծաղր առնել յաչս փեսայից իւրոց։ Եւ իբրև եղև առաւօտ՝ փութացուցանէին հրեշտակքն զՂովտ՝ և ասէին․ արի՛ ա՛ռ զկին քո և զերկուս դստերս քո զոր ունիս, և ե՛լ աստի, զի մի՛ և դու կորնչիցիս ընդ անօրէնութ՟ս քաղաքիդ։ Եւ նոքա խռովեցան․ և կալան հրեշտակքն զձեռանէ նր՟ և զձեռանէ կնոջ նր՟ և զձեռանէ երկուց դստերաց նր՟․ զի խնայեաց Տէր ի նա․ և հանին զնա, և եդին արտաքոյ քաղաքին։ Եւ եղև իբրև հանին զնս՟ արտաքս՝ ասեն․ ապրեցո՛ զանձն քո․ մի՛ դառնայցես յետս, և մի՛ կայցես յա՛մ կողմանս աշխարհիդ․ զերծի՛ր ի լեառն, գուցէ ընդ նս՟ ըմբռնիցիս։ Եւ ասէ Ղովտ ցնս՟․ աղաչեմ Տէր իմ, որովհետև եգիտ ծառայ քո ողորմութ՟ի առաջի քո․ և մեծ արարեր զարդարութ՟ի քո՝ զոր առնես յիս ապրել անձին իմոյ․ և արդ ես ոչ կարեմ զերծանել ի լեառն․ գուցէ հասանիցեն ինձ չարիք, և մեռանիցիմ։ Ահա քաղաքս այս մերձ է անկանել ի նա, որ է փոքրիկ․ անդ ապրեցայց․ և չէ փոքր, և կեցցէ անձն իմ վս՟ քո։ Եւ ասէ ցնա․ ահաւադիկ արարի մեծարանս երեսաց քոց, և ի բանի յայդմիկ չկործանել զքաղաքն վս՟ որոյ խօսեցար։ Եւ արդ փութա՛ զերծանել ի նա․ զի ոչ կարեմ առ-

նել իրս ինչ՝ մինչեւ անկանիցիս անդր. վասն այնորիկ կոչեցաւ զանուն քաղաքին այնորիկ Սեգովր։ Արեգակն ծագեաց յերկիր. եւ Ղովտ եմուտ ի Սեգովր։ Եւ Տէր տեղաց ի Սոդոմ եւ ի Գոմոր ծծումբ եւ հուր ի Տեառնէ յերկնից։ Եւ կործանեաց զքաղաքսն զայնոսիկ եւ զա՟մ կողմանս, եւ զա՟մ բնակիչս քաղաքացն եւ զա՟մ բոյս երկրին։ Եւ դարձաւ կինն Ղովտայ յետս. եւ եղեւ արձան աղի։ Եւ կանխեաց Աբրահամ ընդ առաւօտն ի տեղին ուր կայր առաջի Տեառն. եւ հայեցաւ յերեսս Սոդովմացւոց եւ Գոմորացւոց, եւ յա՟մ երեսս երկրի գաւառին. եւ ետես, եւ ահա ելանէր բոց երկրին իբրեւ մրրիկ հնոցի։ Եւ եղեւ ի սատակել Տեառն զա՟մ զքաղաքս շուրջ զբնակութ՟ն՝ յիշեաց Ա՟ծ զԱբրահամ, եւ եհան արձակեաց զՂովտ ի միջոյ կործանմանն. ի կործանել Տեառն զքաղաքսն յորս բնակեալ էր ի նոսա Ղովտ։ Եւ ել Ղովտ ի Սեգովրայ, եւ նստէր ի լերինն. եւ երկոքին դստերք Ն՟ր ընդ նմա. քանզի երկեաւ բնակել ի Սեգովր. եւ բնակեաց յայրի անդ ինքն եւ երկոքեան դստերք նորա ընդ նմա։ ԺԹ. 30։

ընթերցուած յԱռակաց։ Ա. 10։

Որդեակ, մի խաբեսցեն զքեզ արք ամպարիշտք. եւ մի ախորժեսցիս. եթէ կոչեսցեն զքեզ եւ ասասցեն. ե՛կ ընդ մեզ՝ կցո՛րդ լեր արեան. ծածկեսցո՛ւք յերկրի զայր արդար ի տարապարտուց։ Կլցուք զնա կենդանւոյն իբրեւ դժոխք. եւ բարձցուք զյիշատակս Ն՟ր յերկրէ։ Եւ զստացուածս Ն՟ր զպէսպէսս ըմբռնեսցուք. լցցուք զտունս մեր աւարաւ։ Զվիճակ քո ա՛րկ ընդ մեզ. քսակ հասարակաց ստասցուք ամենեքեան. գանձարան ի միասին եղիցի մեր։ Որդեակ, մի երթար ճանապարհ ընդ Ն՟ա. խոտորեա՛ զոտն քո ի շաւղաց Ն՟ց։ Զի ոտք Ն՟ց ի չարիս ընթանան, եւ երագունք են ի հեղուլ զարիւն։ Զի ոչ եթէ տարապարտուց ձգեն

գործիս Թուչնոց։ Քանզի Նոքին իսկ որք սպանութեան հաղորդին, գանձեն անձանց իւրեանց չարիս։ Կործանումն անօրինաց չար է։ Այս ճանապարհք են ամենեցուն՝ որք գործեն զանօրէնս. զի ամպարշտութք զանձինս իւրեանց սատակեն։ 19։

Ընթերցուածս ի Զաքարեայ մարգարէէ։ ԺԱ. 11։

Եւ ծանիցեն Քանանացիքն զխաշինս պահեստի իմոյ. զի բան Տռն է։ Եւ ասացի ցնս. թէ բարւոք թուի յաչս ձեր՝ տուք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զոյց արարէք։ Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի։ Եւ ասէ ցիս Տէր. արկ դու զայդ ի բովս. և քննեա թէ փորձ իցէ որպէս գտայ փորձ վնս նց։ Եւ առի զերեսուն արծաթին, և արկի ի տուն Տռն ի բովս։ Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ զվիճակն՝ ցրել զուխտ իմ ի մէջ Յուդայ և ի մէջ Իէլի։ 14։

Ապա Ողորմեա ասա։ Քրզ. Աղաչեսցուք. ձայն գանձ։

Համբարձի Գ.Զ։ Որ ըսքանչելիք այսօր տեսանեմք յաշխարհի ի մէջ հողեղինաց. արարածք արարչին սպանութե խորհին զխորհուրդ։ Փառք Հօր։ Որ բանիւն իւրով զերկինս և զերկիրս հաստատեաց յոչընչէ գոյացուցեալ. վաճառի այսօր դիւրագին ընդ երեսուն արծաթոյ։ Այժմ և միշտ։ Ով Յուդաս արտասուելի երկնաւոր վարդապետին սպանութեան խորհի զխորհուրդ. մատնելով անօրինաց զի խաչեսցի ի մէջ երկրի։

Քարոզ. Վն խաղաղութե։ Աղօթ.։ Հայր գթած։

Ապա ստորոգէ Սաղմոս Խ. ողբերգական։

Կ8. Ես ասացի Տէր ողորմեա ինձ. բժշկեա զանձն իմ, ես մեղայ քեզ։

Փխ. Երանի որ խորհի զաղքատն. Տէ ի Ն–Ն 244։

Զ՟Ւ՟Է՝ Որթիւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԶ։ 3։

Վ՟ն Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի.

Յայնժամ ժողովեցան քահանայապետքն և դպիրքըն և ծերք ժողովրդեանն ի սրահ քահանայապետին՝ որում անուն էր Կայիափա։ Եւ արարին խորհուրդ՝ զի նենգութ՟բ կալցին զՅ՟ս և սպանցեն։ Բայց ասէին՝ թէ մի՛ ի տօնի աստ՝ զի մի՛ խռովութ՟ի լինիցի ի ժողովըրդեանն։ Իբրեւ եկն Յ՟ս ի Բեթանիա՝ ի տուն Սիմոնի բորոտի, մատեաւ առ նա կին մի, որ ունէր շիշ իւղոյ ծանրագնի, և թափեաց ի գլուխ նորա ի բազմականին։ Իբրեւ տեսին աշակերտքն՝ բարկացան և ասեն. ընդէ՞ր է կորուստդ այդ իւղոյդ։ Զի մարթ էր վաճառել զդա մեծագնի և տալ աղքատաց։ Գիտաց Յ՟ս և ասէ ցն՟ս. զի՞ աշխատ առնէք զկինդ, գործ մի բարի գործեաց դա յիս։ Յ՟մ ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք. բայց զիս ոչ հանապազ ընդ ձեզ ունիք։ Արկանել դորա զիւղդ ի մարմին իմ՝ առ ի թաղելոյ զիս նշանակեաց։ Բայց ամէն ասեմ ձեզ. զի ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ա՟մ աշխարհ՝ խօսեսցի և զոր արար դա՝ ի յիշատակ դորա։ Յայնժամ գնաց մի յերկոտասանից անուանեալն Յուդա Սկարիովտացի՝ առ քահանայապետսն, և ասէ. զի՞նչ կամիք տալ ինձ, և ես մատնեցից զնա ձեզ. և նոքա կշռեցին նմա երեսուն արծաթի։ Եւ յայնմ հետէ խնդրէր պարապ՝ զի մատնեսցէ զնա նոցա։ 16։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո Տէր։ Աղօթ. Թագաւոր խաղաղութեան։

Եւ արձակէն։



# ԱՒԱԳ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ, ԳԿ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն Գձ:

Սերաձգողն երկնից մշտնջենաւոր Հօր Որդին. ներգործեալ իմաստս ի վեր քան ըզհրաշս. ծառայի առեալ ըզկերպ անկողոպտելի աստուածութեամբն: Բանին զմաքրեցելոցն ջրով զոտս լուանայ. զի զխոնարհութիւն ի նոսա տպաւորեսցէ. երրորդութեանն գոլ օթեվան: Բաշխէ զմարմին իւր եւ զարիւնն նոր ուխտ անուանեալ. եւ յիշատակ կամաւոր մահուանն. մերձեցելոցս ի նա սրբութեամբ:

† Աղբեր լուսոյ և ճառագայթ անշիջանելի լոյս. որ լուանալ յանձն առեր զոտս աշակերտացն. * Մաքրեա ի մէնջ ըզմէգ խաւարին խորհրդոց եւ լուսաւորեա զմեզ: Որ մարմնով և արեամբ քո ցուցեր ըզթողութիւն մեղաց. որով միշտ պատարագիս ի մեզ անծախապէս. մաքրեա ի մէնջ: Որ քաւիչ զայս նոր ուխտ ցուցեր յետ առաջնոյ քո. մահացելոցս ի ճաշակմանէ նախահօրն. մաքրեա ի մէնջ:

† Որ եսդ ի յերկինս եւ ի վերայ երկրի. այսօր յանձն առեր լուանալ զոտս աշակերտացն. եւ զիս լուա Քրիստոս ի մեղաց իմոց: Որ բարեբանիս յիմանալի զուարթնոցն. հաճեցար մարմնով պատարագիլ. արա եւ զիս արժանի ճաշոյն շնորհիդ: Որոյ աթոռ քերովբէ ի վերնատունն բազմեցար. կենարար բաժակաւն ըզմեզ փրկեցեր. փրկեա եւ զիս յաւիտենից ի հրոյն:

† Քրիստոս Աստուած որ վասն մեր խոնարհեցար ի կամաւոր չարչարանս. լուացեր զոտս աշակերտացն

* այսօր ի սուրբ վերնատունն. աղաչեմք փրկիչ ո-
ղորմեա։ Որ կազմեցեր սեղան խորհրդոյ և ար-
բուցեր յանմահական բաժակէն. սրբոց քոց առա-
քելոց այսօր ի։ Մաքրեա ըզմիտս եւ ըզխորհուրդս.
զի եւ մեք հաղորդեսցուք սրբութեան. ընդ սրբոց քոց
առաքելոց այսօր ի սուրբ։

† Որ վասն մեր յերկրի երեւեցար. զամենայնըն
կատարեցեր ըստ օրինացն. այսօր կատարումն ստուե-
րական տօնիցն. * Որդի Աստուծոյ ողորմեա։ Մարդ
ճըշմարիտ և գառն անարատ. որ դատապարտեցեր
ըզմեղս ի մարմնի. այսօր խոնարհեցար ի լուանալ
զոտս աշակերտացն. Որդի։ Բան Հօր և քահանայա-
պետ ճըշմարիտ. որ զաշխարհակեցոյց ըզմարմին և
զարիւնըդ քո բաշխեցեր յառաքելոցն. այսօր հա-
ղորդին հողեղէնք ճաշակին խորհրդոյդ. Որդի։

† Յորմէ սարսեալ սերովբէքն ոչ իշխէին նայել.
այսօր ի ծառայի կերպարանս երեւեալ նախայաւի-
տեան Բանն. * օրհնեցէք ըզՏէր հոգեւոր երգով։
Որ զըստուերակերպն այսօր ճըշմարտապէս կատա-
րեաց. լուանալով զոտս աշակերտացն ի պատրա-
նաց թըշնամւոյն. օրհնեցէք։

ՀՈԳ. Որ համագոյդ ես Հօր և Որդւոյ. անճառա-
բար բըղխումն ի միշտ Էէն. այսօր. բըղխեցեր ջուր
կենդանի յԵրուսաղէմ. * Հոգի Աստուծոյ ողոր-
մեա։ Որ արարչակից ես Հօր և Որդւոյ. որով կեն-
դանածնեալք ի ջուրս արարածք. այսօր. որդիս
Աստուծոյ ծնանիս ի ջուրց. Հոգի։ Որ փառակից
ես Հօր և Որդւոյ. և քըննես ըզխորս Աստուծոյ.
այսօր. խորագէտս իմաստից զյիմարս աշխարհի
արարեր. Հոգի։

ՆՆՉ: Որ երկայնամիտդ ես Տէր. քաղցր և անոխակալ հանգո՛ զհոգիս քոց ծառայից. * զի մի դարձցի տնանկ ամաչեցեալ յաւուրն ահեղ ատենին: Զյիշատակ հրաժարելոցն ի հաճոյս քեզ ընկալցիս. եւ զուխտս մեր ընկալ որպէս զԱբէլին զՆոյին և զԱբրահամուն. զի մի դարձ: Ի խորան քում սիրողաց հանգուսցես ըզծառայս քո. եւ զհոգիս նոցա դասեսցես ընդ սուրբս քո. զի մի դարձ:

ԱՁՆ: Որ յէութեանդ ես ընդ Հօր և սուրբ Հոգւոյն անըսկիզբն Որդի. խոնարհեցար ի հայրական ծոցոյ. մարդ եղեալ մարմնացար ի կուսէն. բառնալով զյաղթումըն մահու յանցանաց նախահօրն. * քեզ երգեմք ընդ զօրս հրեշտակացն ի մէջ հովուացն օրհնեալ ես քս նախայաւիտեան Բանդ: Այսօր ծընար որ ի Հօրէ յառաջ քան զյաւիտեանս Որդի. ճառագայթ փառաց և ծագումըն անմեկնելի լուսոյն. աստղագուշակ տեսլեամբըն յայրին իջեվանի եւ ի մըսուր յանբանից բազմեալ. քեզ երգեմք: Թագաւոր փառաց քս և արարիչ բոլորից. Ած հըզօր իշխան հայր հանդերձեալ լուսոյն. մանուկ երեւեալ այսօր անփոփոխելիդ ի յէութեան. քեզ երգեմք:

ԽՆ: Այսօր ուրախացեալ ցընծան երկնից բազմութիւնքն. ի նաւակատիս սուրբ եկեղեցւոյ. քանզի շնորհեցաւ մեզ քահանայապետ յաւիտենից. ի լուսաւորել զկաթուղիկէ սուրբ զեկեղեցի. * փառք գալըստեան քո Տէր: Այսօր սիւն լուսոյ հովանի եղեւ մեզ ի բարձանց. քանզի թագաւորն երանաւոր եկաւորի ի նմ եկեղեցի. եւ զօրք հրեշտակաց ծաւալեալ տօնեն ընդ մարդկան. փառք: Փառք Հօր: Այսօր քահանայապետ ճըշմարիտ

ածային օրհնօքըն պատուեալ. կանգնէ ըզքառանկիւն սեղան խաչին. արժանապէս պատարագեալ բաշխէ զմարմին և զարիւնըն Տեառն. մաքրապէս մերձեցարուք փրկեալըք նորա ժողովուրդք. և հայցեցէք ի Քրիստոսէ զի շնորհեսցէ ըզսա մեզ ընդ երկայն աւուրս։

Այժմ և միշտ։ Այսօր վերըստին նորոգեցաք ի յաննիծից նախահօրն ճաշակելով ըզմարմին և զարիւն Որդւոյն Աստուծոյ. օրհնեցէք ըզնա հոգեւոր երգով։

Մաղթանք. փառք հրաշափառ տէրութեան։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Լուացայց սրբութեամբ ըզձեռս իմ. և շուրջ եղէց ըզսեղանով քո Տէր։ Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո. և զտեղի յարկի փառաց քոց։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Փ. Պատրաստ արարեր առաջի իմ սեղան. ակն յանդիման նեղչաց իմոց։ Օծեր իւղով ըզգլուխ իմ. բաժակ քո ոպ անապակ արբեցոյց զիս։

Փառք և։ Այժմ և. ալէլուիա։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒՆ

### Հարց ԲՁ։

Լոյս ի հայրական ծոցոյ ծագեալ հալածելով զխաւար մեղաց. կենարարըդ յայտնեցեր այսօր զխորհուրդ ընթրեալ քո աշակերտացն. * օրհնեալ եկեալդ ի փրկութիւն մեզ Աստուած հարցըն մերոց։ Զոր օրհնեն դասք լուսեղէնք. զոտըս տաժանեալըս լուացեր զանիծիցըն մերկացեալ ի մէնջ ծածկոյթ ըզգեստ ծառայի սփածար. օրհնեալ եկեալդ։ Անապականութե աղբիւր զկենդանարարըդ բաշխեցեր զմարմինըդ

քո. նորոգելով ըզմահացեալսըն յանցանօք ի պա-
տրանաց թըշնամւոյն. օրհնեալ եկեալդ ի փըրկութի
մեզ Աստուած հարցըն մերոց:

Գ. Եցէք: Ճառագայթ փառաց Հօր և պատկեր բա-
րերարութե. որ ըզգեցաւն այսօր ըզգեստ ծառայա-
կան կերպի. * ըզնա ամենայն ազինք օրհնեցէք հո-
գեւոր երգով: Փառք Հօր: Որ անճառ խոնարհու-
թեամբ ի մաքրուհին ոտից աշակերտացն. ըզմարդկային
ազգի գընացս ուղղեաց ի յերկինս. ըզնա ամենայն:
Այժմ և: Որ բաշխմամբ կենդանարար խորհրդոյ
անապական ճաշակմամբն. հրաւիրեաց ըզմեզ յերկ-
նից յարքայութիւնն. ըզնա ամենայն:

Մեծացո. Բ Ձ: Օ քեզ Հայր յառաջ քան զյաւի-
տեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց.
ձայնիւ երգով գոչեն և աղաղակեն. * Ած աստուծոց
և Տր տերանց փըրկիչ գոլով: Փառք Հօր: Առաքեցեր
զքո միածինըդ մարմնանալ ի սբ կուսէն. եւ անարատ
ծընանիլ յորովայնէ անապական. բառնալով ըզմեր
նեղութիւն. Ած աստ: Այժմ և: Շնորհք բարի յեդէմ
երեւեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըղայ
եղեալ յորդէգրութի կենաց կոչէ. Ած աստու:

Ողորմ. Գ Ձ. Երկողդ ըզլոյս ոտք զօթոց. այսօր ան-
ճառ խոնարհութբ ի վերնատունըն խորհրդոյ. ըզգեստ
ծառայի ըսփածանիլ յանձն առեր. օրհնեմք զե-
կեալդ ի կամաւոր չարչարանս: Փառք Հօր: Որում
երկըրպագեն դասք հրեշտակաց. խոնարհեցար ի լըւ-
անալ ըոտըս հողեղէնս. բըժըշկել սոքօք ըզգարշա-
պարս նախահօրըն. բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւան-
դութի: Այժմ և միշտ: Որ ի խորհուրդըս փըրկականս
եկեղեցւոյ. բաշխեցեր աշակերտացն զմարմինըդ քո.

Նորոգելով զմահացեալսն ի ճաշակմանէ․ հաղորդս այսմ ընկալ զմեզ միայն մարդասէր։

Տէրյերգն․ Գ2։ Որ անըսկիզբն յէութեանդ ես Աստուած․ այսօր զգեցար զգեստ հողեղէն ծառայի․ ծածկելով զմերկութիւն նախահօրն․ * օրհնեալ եկեալդ ի փրկութիւն ազգի մարդկան։ Փառք Հօր և։ Որ վերօրհնիս ի հրեղէն քերովբէից․ այսօր եկիր կամաւ ի վերնատունն խորհրդոյ․ լուացեր զաշակերտսն յօրինակ վասն մեր․ օրհնեալ։ Այժմ և։ Որ յաթոռ փառաց նստիս ընդ Հօր․ այսօր բազմեալ ընդ աշակերտսն յանձն առեր․ բաշխելով զմարմին և զարիւն քո սուրբ․ օրհնեալ։

Առաւ․ երգ։ Որսացան զանձն արդարոյ․ և զարիւն ամբիծ պարտաւոր առնէին։

Եղեւ Տր ապաւէն իմ․ Աձ օգնական յուսոյ իմոյ։

Քարոզ․ Փառաւորեսցուք․ կամ գանձ։

Մանկ․ Ակ։ Այսօր կարգեցաւ օրինակ խոնարհութե ի յուղղութիւն վարուց մերոց։ Այսօր Տէրն մեր լուանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս ասելով։ Մի ոմն ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս ի մահ․ և որոշի յաշակերտացդ։ Փառք Հօր։ Զայն լուեալ Պետրոսի ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ։ Այժմ և։ Բանն զոր ասաց Յիսուս տրտմեցոյց զեւր զաշակերտսն եւ խռովեցան ամենեքեան։

Աղօ Քարոզ․ Վն խաղաղութե։ Աղ․ Մբ ես Տէր։

Սաղմոս ԴԳ․ ողբալոյն ———։

ԿԹ․ Որսացան զանձն արդարոյ, և զարիւն ամբիծ պարտաւոր առնէին։

Փխ․ Աձ վրէժխնդիր․ Տր Աձ վրէժխնդիր յայտնեցար։ Բարձր լեր, որ դատիս զերկիր․ հատո զհատուցումն ամբարտաւանից։

*Մինչեւ յե՞րբ մեղաւորք Տէր, մինչեւ յե՞րբ մեղաւորք պարծեսցին։*

*Բարբառեալ խօսէին զանիրաւութիւն. խօսեսցին ամենեքեան որ գործեն զանօրէնութիւն։*

*Զժողովուրդս քո Տէր խոնարհ արարին. եւ զժառանգութիւն քո չարչարեցին։*

*Զայրին եւ զպանդուխտն սպանին, զորբն կոտորեցին, եւ ասացին ոչ տեսանէ զայս Տէր, եւ ոչ ի միտ առնու Աստուած Յակոբայ։*

*Իմացարո՛ւք անզգամք ժողովրդոց եւ անմիտք. մինչեւ յե՞րբ ոչ առնուք ի միտ։*

*Ո՞ր զի թէ որ տնկեաց զունկն՝ ինքն ո՞չ լուիցէ. կամ որ ստեղծ զակն՝ ինքն ո՞չ տեսանիցէ։*

*Որ խրատէն զազգս, ո՞ր թէ ո՞չ յանդիմանեսցէ. ուսուցանէ մարդոյ զգիտութիւն. Տէր ճանաչէ զխորհուրդս մարդկան զի են ընդունայն։*

*Երանի մարդոյ զոր խրատես դու Տէր. եւ յօրինաց քոց ուսուցանես դու նմա։*

*Ցածուցանես դու նմա զաւուրսն չարութեան, մինչեւ փորեսցի խորխորատ մեղաւորի։*

*Ոչ մերժէ Տէր զժողովուրդ իւր. եւ զժառանգութիւն իւր ոչ առնէ անտես։*

*Մինչեւ դարձցին իրաւունք յարդարութիւն. ընկալցին զնա ամենեքեան որ ուղիղ են սրտիւք։*

*Ո՞ յարիցէ ընդ իս ի վերայ չարաց. կամ ո՞ հաւասարեսցէ ինձ ի վերայ այնոցիկ որ գործեն զանօրէնութիւն։*

*Թէ ոչ Տեառն օգնեալ էր ինձ, փոքր միւս եւս բնակեալ էր անձն իմ ի դժոխս։*

*Թէ ասէի թէ ահա սասանեցան ոտք իմ, ողորմութիւն քո Տէր օգնէր ինձ։*

*Ըստ բազում ցաւոց սրտի իմոյ՝ մխիթարութիւն քո ուրախ առնէր զանձն իմ։*

Մի՛ հաւասարեսցի քեզ աթոռ անօրէնութե՟, ո պատճառէ զվաստակս ընդդէմ հրամանի։

Որսացան զանձն արդարոյ, և զարիւն ամբիծ պարտաւոր առնէին։

Եղեւ Տէր ապաւէն իմ. Ա՟ծ օգնական յուսոյ իմոյ։

Հատուսցէ նց՟ Տէր ըստ անօրէնութե՟ նց՟, ըստ չարութե՟ նց՟ կործանեսցէ զնս՟ Տէր Աստուած մեր։

Ձ՟նէ՝ Ո՛րթիւ։

Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԲ. 27։

Տէրն մեր Յս՟ Քս՟ ասէ.

Բայց այժմ անձն իմ խռովեալ է, և զի՞նչ ասացից, եթէ Հա՛յր՝ ապրեցո՛ զիս ի ժամէ աստի յայսմանէ. այլ վասն այնորիկ եկի ի ժամս յայս։ Հա՛յր, փառաւորեա՛ զանուն քո։ Եկն բարբառ յերկնից. Եւ փառաւոր արարի, և դարձեալ փառաւոր արարից։ Եւ ժողովուրդն որ կայր և լսէր՝ ասէին որոտումն լինել. կէսքն ասէին, հրեշտակ խօսեցաւ ընդ նմա։ Պատասխանի ետ Յս՟՝ և ասէ. ոչ վն՟ իմ ինչ եկն բարբառս այս, այլ վն՟ ձեր։ Այժմիկ դատաստան է աշխարհիս այսորիկ. այժմիկ իշխան աշխարհիս այսորիկ ընկեսցի արտաքս։ Եւ ես յորժամ բարձրացայց յերկրէ, զամենեսին ձգեցից առ իս։ Զայս ասէր, նշանակեալ՝ թէ որով մահու մեռանելոց իցէ։ Պատասխանի ետ նմա ժողովուրդն. մեք լուաք յօրինաց՝ եթէ Քսն՟ յաւիտեան կայ, և դու զիա՞րդ ասես՝ թէ պարտ է բարձրանալ որդւոյ մարդոյ. ո՞վ է այն որդին մարդոյ։ Ասէ ցնս՟ Յս՟. փոքր միւս եւս ժամանակ լոյս ընդ ձեզ է. գնացէ՛ք՝ մինչդեռ զլոյսն ունիք, զի մի՛ խաւար ձեզ հասցէ. զի որ գնայ ի խաւարի՝ ոչ գիտէ յո՛ երթայ։ Մինչդեռ զլոյսն ընդ ձեզ ունիք՝ հաւատացէ՛ք ի լոյսն, զի որդիք լուսոյ եղիջիք։ Զայս խօսեցաւ Յս՟, և չոգաւ թագեաւ ի նոցանէ։ Եւ այնչափ նշանս արարեալ էր առաջի նոցա. և նոքա ոչ հաւատային ի նա. զի լցցի

բանն Եսայեայ մարգարէի՝ զոր ասացն. Տէ՛ր ո՞ հաւա-
տաց ի լուր մեր, և բազուկ Տ՟ն ո՞ւմ յայտնեցաւ։ Վ՟ն
այնորիկ ոչ կարէին հաւատալ, զի միւսանգամ ասէ
Եսայի թէ՝ Կուրացոյց զաչս Ն՟ց. և ապշեցոյց զսիրտս
Ն՟ց. զի մի՛ տեսցեն աչօք, և իմասցին սրտիւք, և դարձ-
ցին և բժշկեցից զն՟ս։ Զայս ասաց Եսայի՝ զի ետես
զփառս Ն՟ր, և խօսեցաւ վ՟ն Ն՟ր։ Բայց սակայն և յիշ-
խանաց անտի բազումք հաւատացին ի Նա. այլ վասն
փարիսեցւոցն ոչ յայտնէին, զի մի՛ ի ժողովրդենէն
ելանիցեն։ Քանզի սիրեցին զփառս մարդկան առաւել
քան զփառսն Աստուծոյ։ 43։

Երգ. Ճառագայթեալ։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո Տէր։ Աղ. Քում ամենազօր
և հրաշալի տէրութեանդ։

---

ԿԱՐԳ ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹԻՆ

# ԶԱՊԱՇԽԱՐՈՂՍՆ ԱՐՁԱԿԵԼՈՅ

ՑԵՐԵԿՆ

Յերրորդ ժամուն ժողովին ի դասուն եկեղեցւոյն վասն արձա-
կելոյ զապաշխարողսն։ Բայց թէ լինի ապաշխարող եւ թէ ոչ՝
զկարգն կատարել պարտ է։

Եւ նախ ասէ. Օրհնեալ Հոգիդ։ Սղմ. Ծ. Ողորմեա՛ ինձ
Ած. է թէ։ Եւ ապա Օրհնեմք զքեզ։ Մաղթանք. Յամ
ժամու։ Արհ. Եւ եւս խաղաղ։ Քհն. Օրհնութի և փառք։
Եւ ապա ասեն Սաղմոս է թէ՝ գոբիղայս մէջ։

Առաջին գոբիղայ։ Սաղմոս ԻԴ։

Առ քեզ Տ՟ր համբարձի զանձն իմ. Ած իմ ի քեզ
յուսացայ. մի՛ ամաչեցից, և մի՛ ծիծաղեսցին զինեւ
թշնամիք իմ։

Ամենեքեան որք համբերեն քեզ՝ մի՛ ամաչեսցեն.
այլ ամաչեսցեն անօրէնք յունայնութե իւրեանց։

Զճանապարհս քո Տէր ցո՛յց ինձ. և զշաւիղս քո ուսո՛ ինձ։

Առաջնորդեա՛ ինձ ի ճշմարտութեան քում, և ուսո՛ զիս. զի դու ես Աստուած փրկիչ իմ. և ես քեզ համբերեմ զօրհանապազ։

Յիշեա՛ Տէր զգթութիւնս քո. և զողորմութիւնս որ ենն յաւիտենից։

Զմեղս մանկութեան և զանգիտութե՟ իմոյ մի՛ յիշեր. այլ յիշեա՛ զիս Տէր ըստ ողորմութեան քում, վասն քաղցրութե՟ քո. զի քաղցր և ուղիղ ես Տէր։

Վասն այսորիկ օրէնսդէտ առնես զմեղաւորս ի ճանապարհի. առաջնորդես հեզոց ի դատաստանի. և ուսուցանես հեզոց զճանապարհս քո։

Ամենայն ճանապարհք Տեառն ողորմութեամբ և ճշմարտութեամբ են այնոցիկ, որք խնդրեն զուխտս և զվկայութիւն նորա։

Վ՟ն անուան քո Տէր քաւեա՛ զմեղս իմ, զի բազում եղեն. ո՞վ է մարդ որ երկնչի ի Տեառնէ. օրէնսդէտ առնէ զնա ի ճանապարհի՝ յոր և հաճեցաւ։

Անձն նորա ի բարութեան հանգիցէ. և զաւակ նորա ժառանգեսցէ զերկիր։

Զօրութիւն է Տէր երկիւղածաց իւրոց. և զկտակարանս իւր ուսուցանէ նոցա։

Աչք իմ յամենայն ժամ առ Տէր. և նա հանէ յորոգայթէ զոտս իմ։

Նայեա՛ց առ իս և ողորմեա՛ ինձ. զի միամօր և աղքատ եմ ես։

Նեղութիւնք սրտի իմոյ բազում եղեն յոյժ. և ի վշտաց իմոց հան զիս։

Տե՛ս զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ. և թո՛ղ ինձ զամենայն մեղս իմ։

Տե՛ս զթշնամիս զի բազում եղեն. ատելութիւն զոր ի նանիր ատեցին զիս։

Պահեա՛ զանձն իմ, և փրկեա՛ զիս. և մի՛ յամօթ եղէց՝ զի յուսացայ ի քեզ:

Անբիծք և ուղիղք կցորդք եղեն ինձ. և ես քեզ համբերի. փրկեա՛ Ած զԻէլ յամ նեղութեց նորա:

Սաղմոս ԻԵ:

Դատ արա ինձ Տէր զի ես յամբծութեան իմում գնացի. ի Տէր յուսացայ, մի՛ եղէց հիւանդ:

Փորձեա՛ զիս Տէր և քննեա՛ զիս. փորձեա՛ զերիկամունս իմ և զսիրտ իմ:

Ողորմութի քո Տէր առաջի աչաց իմոց, և հաճոյ եղէց ճշմարտութե քում:

Ոչ նստայց ես յաթոռս նանրաց. և ընդ անօրէնս ես ոչ մտից:

Ատեցի ես զժողովս չարաց. ընդ ամբարիշտս ես ոչ նստայց:

Լուացայց սրբութբ զձեռս իմ. և շուրջ եղէց զսեղանով քո Տէր:

Լսել ինձ զձայն օրհնութե քո. և պատմել զամենայն սքանչելիս քո:

Տէր սիրեցի զվայելչութի տան քոյ. և զտեղի յարկի փառաց քոց:

Մի՛ կորուսաներ ընդ ամբարիշտս զանձն իմ. և մի՛ ընդ արս արիւնահեղս զկեանս իմ:

Որոց ձեռք յանօրէնութե են. և աջ նց լի է կաշառօք:

Ես յամբծութեան իմում գնացի. փրկեա՛ զիս Տէր և ողորմեա՛ ինձ:

Ոտն իմ կացցէ յուղղութեան. յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ:

Սաղմոս ԻԶ:

Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումմէ՞ երկեայց. Տէր ապաւէն կենաց իմոց, ես յումմէ՞ դողացայց:

Ի մերձենալ առ իս չարաց ուտել զմարմին իմ. նեղիչք իմ և թշնամիք իմ՝ նոքա տկարացան և անկան:

Թէ պատրաստեսցի ի վերայ իմ պատերազմ, ոչ երկիցէ սիրտ իմ. Թէ յարիցէ ի վերայ իմ ճակատամարտ, սակայն և այսուիկ ի քեզ Տէր յուսացայ:

Զմի խնդրեցի ի Տեառնէ և զայն աղաչեմ, բնակել ինձ ի տան Տեառն զա̃մ աւուրս կենաց իմոց:

Տեսանել ինձ զվայելչութի̃ Տեառն, և հրաման տալ ի տաճարի Նորա:

Ծածկեաց զիս ի խորանի իւրում յաւուր չարի. ընդ յարկաւ արար զիս ի ծածկոյթ խորանի իւրում:

Ի վիմէ բարձր արարեր զիս. և այժմ բա́րձր արա զգլուխ իմ ի վերայ Թշնամեաց իմոց:

Շուրջ եղէց և մատուցից ի խորանի Նորա պատարագ օրհնութե̃. օրհնեցից և սաղմոս ասացից Տեառն:

Լո́ւր Տէր ձայնի իմում, զի կարդացի առ քեզ. ողորմեա́ ինձ և լո́ւր ինձ. զի քեզ ասաց սիրտ իմ. և խնդրեցին երեսք իմ. զերեսս քո Տէր խնդրեցից:

Մի́ դարձուցաներ զերեսս քո յինէն. և մի́ խոտորիր բարկութեամբ ի ծառայէ քումմէ:

Օգնական իմ լեր Տէր. մի́ անարգեր զիս, և մի́ թողուր զիս Աստուած փրկիչ իմ:

Հայր իմ և մայր իմ թողին զիս, և Տր̃ ընկալաւ զիս:

Օրէնսգէ́տ արա զիս Տէր ի ճանապարհի քում. և առաջնորդեա́ ինձ ի շաւիղս քո ուղիղս:

Վասն թշնամեաց իմոց մի́ մատներ զիս ի ձեռս նեղչաց իմոց:

Յարեան ի վերայ իմ վկայք մեղաց. և ստեցին ինձ յանօրէնութեան իւրեանց:

Հաւատացի տեսանել զբարութիւն Տեառն յերկրին կենդանեաց. համբե́ր Տեառն և քաջալերեա́ց. զօրասցի սիրտ քո, և համբե́ր Տեառն:

Փառք Հօր: Այժմ և միշտ:

Եւ եւս խաղաղութե̃: Օրհնութի̃ և փառք:

Երկրորդ ժողովոյ: Սաղմոս ԻԷ:

Առ քեզ Տէր կարդացի, Աստուած իմ մի՛ լռեր յինէն. մի՛ երբեք լռիցես յինէն. նմանիցիմ այնոցիկ որ իջանեն ի գուբ:

Լո՛ւր Տէր ձայնի խնդրուածոց իմոց՝ յաղաչել իմ առ քեզ. ի համբառնալ ձեռաց իմոց ի տաճար սբ̃ քո:

Մի՛ համարիր ընդ ամբարիշտս զանձն իմ. և մի՛ ընդ այնոսիկ ոյք գործեն զանօրէնութի̃՝ կորուսաներ զիս:

Ոյք խօսէին զխաղաղութի̃ ընդ ընկերս իւրեանց. և չարութիւն է ի սիրտս նոցա:

Տո՛ւր նոցա Տէր ըստ գործս նոցա. ըստ անօրէնութե̃ գնացից նոցա հատո՛ նոցա:

Ըստ գործոց ձեռաց նոցա հատո՛ նոցա. զհատուցումն նոցա նոցին:

Ոչ իմացան նոքա զգործս Տն̃. և ոչ ի գործս ձեռաց նր̃ հայեցան. կործանեսցես զնս̃, և այլ մի՛ շինեսցին:

Օրհնեալ է Տէր՝ զի լուաւ ձայնի աղօթից իմոց. Տէր օգնական իմ և պաշտպան իմ:

Ի նա յուսացաւ սիրտ իմ. օգնեցաւ և զուարճացաւ մարմին իմ. և ես կամօք իմովք խոստովան եղէց նմա:

Տէր զօրութիւն ժողովրդեան իւրոյ. ապաւէն փրկութեան օծելոյ իւրոյ:

Փրկեա՛ զժողովուրդս քո. և օրհնեա՛ զժառանգութիւնս քո. հովուեա՛ և բարձրացո՛ զնոսա մինչև յաւիտեան:

Սաղմոս ԻԸ:

Մատուցէ՛ք Տեառն՝ որդիք Այ̃. մատուցէ՛ք Տեառն զորդիս խոյոց:

Մատուցէ՛ք Տն̃ զփառս և զպատիւ. մատուցէ՛ք Տն̃ զփառս անուան նր̃. և երկի՛ր պագէք Տն̃ ի սրահ սրբութե̃ նորա:

Ձայն Տն̃ ի վր̃ ջուրց՝ և Ած̃ փառաց որոտաց. և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց:

Ձայն Տռն զօրութեմբ, և ձայն Տռն մեծվայելչութեմբ:

Ձայն Տռն փշրէ զմայրս. և մանրեսցէ Տէր զմայրսն Լիբանանու:

Մանրեսցէ զնս ոպ զմատաղատունկն Լիբանանու. որ սիրելին է ոպ զորդիս միեղջերուի:

Ձայն Տռն հատանէ զբոց ի հրոյ. ձայն Տռն շարժէ զանապատ. և խռովեցուցանէ Տէր զանապատն Կադէս:

Ձայն Տռն հաստատէ զեղջերուս. և յայտնի առնէ զանտառս:

Ի տաճարի Նր ամենեքեան ասասցեն փառս Նմ:

Տէր զջրհեղեղս զնստուցանէ և ցածուցանէ. թագաւորեսցէ Տէր յաւիտեան:

Տէր զօրութի ժողովրդեան իւրում տացէ. և օրհնեսցէ զժողովուրդ իւր ի խաղաղութի:

Սաղմոս ԻԹ:

Բարձր առնեմ զքեզ Տէր, զի ընկալար զիս. և ոչ ուրախ արարեր զթշնամին իմ յիս:

Տէր Ած իմ կարդացի առ քեզ և բժշկեցեր զիս. Տէր հաներ ի դժոխոց զանձն իմ. փրկեցեր զիս յայնցանէ որք իջանեն ի գուբ:

Սաղմոս ասացէք Տռն սրբք Նր. խոստովան եղերուք յիշատակի սրբութե Նր:

Սրտմտութի է ի բարկութեան նորա. և կեանք են ի կամաց նորա:

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք. առաւօտու եղիցի ուրախութի:

Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յաւիտեան:

Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն. դարձուցեր զերեսս քո յինէն, և ես եղէ խռովեալ:

Ես առ քեզ Տէր կարդացի. առ Ածդ իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապականութիւն:

Մի՛ թէ հո՞ղ խոստովան առնիցի առ քեզ. կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո։

Լուաւ ինձ Տր̅ և ողորմեցաւ. և Տր̅ եղեւ ինձ օգնական։

Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն. զերծ յինէն զքուրձ. և ինձ զգեցոյց զուրախութի̅։

Ո՛չ սաղմոս ասասցեն քեզ փառք իմ. և այլ մի՛ եւս զղջացայց. Տէր Աստուած իմ, յաւիտեան խոստովան եղէց քեզ։

Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Եւ եւս խաղաղութե̅։ Օրհնութի̅ և փառք։

Երրորդ ժողովոյ։ Սաղմոս Լ։

Ի քեզ Տէր յուսացայ, մի՛ ամաչեցից յաւիտեան. յարդարութե̅ քում փրկեա՛ զիս և ապրեցո՛ զիս։

Խոնարհեցո՛ առ իս զունկն քո. վաղվաղեա՛ կեցուցանել զիս.

Լե՛ր իմ Ա̅ծ պաշտպան և տուն ապաւինի՝ ապրեցուցանել զիս. զի հզօրիչ իմ և ապաւէն իմ ես դու։

Վ̅ս անուան քոյ Տր̅ առաջնորդեսցես ինձ և սնուցես զիս. և հանցես զիս յորոգայթէ յայսմանէ՝ որ թագուցաւ ինձ։

Դու ես պաշտպան իմ Տէր. և ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։

Փրկեցեր զիս Տէր Ա̅ծ ճշմարտութե̅բ քով. ատեցեր զայնոսիկ որք պահեն զերկիւղ ի սնոտիս։

Ես ի Տէր յուսացայ. ցնծացայց և ուրախ եղէց ի փրկութե̅ քում։

Զի հայեցար ի խոնարհութի̅ իմ, և փրկեցեր ի վշտաց զանձն իմ. ոչ մատնեցեր զիս ի ձեռս նեղչաց իմոց. և կացուցեր յանդորրու զոտս իմ։

Ողորմեա՛ ինձ Տէր զի նեղեալ եմ ես. խռովեցաւ ի սրտմութէ̅ ակն իմ, անձն իմ և փոր իմ։

Պակասեցան ի ցաւոց կեանք իմ. և ամք իմ յոգւոց ելանելոյ։

Աղքատացաւ ի տկարութ՟է զօրութ՟ի իմ. և ոսկերք իմ խռովեցան։

Քան զա՟մ թշնամիս իմ եղէ ես Նախատ դրացեաց իմոց յոյժ. ահ և երկիւղ ծանօթից իմոց։

Ամենեքեան ոյք տեսանէին զիս՝ արտաքս փախչէին յինէն։

Մոռացեալ եղէ ես ո՟չ մեռեալ ի սրտէ. և եղէ ես ո՟չ զանօթ կորուսեալ։

Զի լուայ ես զբամբասանս բազմաց, որք շուրջ էին զինեւ. ի ժողովել ն՟ց ի միասին, առնուլ զանձն իմ խորհեցան. այլ ես ի քեզ Տէր յուսացայ։

Ասացի դու ես Ա՟ծ իմ. և ի ձեռս քո է ժառանգու՟ի իմ։

Փրկեա՛ զիս ի ձեռաց թշնամեաց իմոց. և ի հալածչաց իմոց։

Երեւեցո՛ զերեսս քո ի ծառայս քո. ապրեցո՛ զիս Տէր ըստ ողորմութ՟ե քում. Տ՟ր մի՛ յամօթ եղէց՝ զի կարդացի առ քեզ։

Ամաչեսցեն ամբարիշտք և իջցեն ի դժոխս. համր եղիցին շրթունք նենգաւորք, ոյք խօսէին զարդարոյ զանիրաւութիւն յամբարտաւանել և յանգոսնել իւրեանց։

Որպէ՜ս զի բազում է ողորմութ՟ի քաղցրութ՟ե քո Տ՟ր, զոր պահեցեր երկիւղածաց քոց։

Արարեր դու այնոցիկ ոյք յուսացեալ են ի քեզ, առաջի որդւոց մարդկան։

Ամրացուսցես զնոսա ի ծածկոյթ երեսաց քոց, ի խռովութենէ մարդկան։

Ծածկեսցես զն՟ս ի խորանի քում, ի հակառակութենէ լեզուաց։

Օրհնեալ է Տէր՝ զի սքանչելիս արար. զողորմութիւն իւր ի քաղաք ամուր։

Ես ասացի ի զարմանալ իմում. թէ ընկեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց։

Վ՟ն այսորիկ լուար ձայնի աղօթից իմոց. յաղաղակել իմում առ քեզ:

Սիրեցէք զՏէր ա՟մ սր՟բք նր՟. զի զստուգութ՟իս խնդրէ Տէր. և հատուցանէ այնոցիկ՝ որք առաւել առնեն զամբարտաւանութիւն:

Քաջալերեցարո՛ւք և զօրասցին սիրտք ձեր. ամենեքեան որք յուսացեալ էք ի Տէր:

Սաղմոս ԼԱ:

Երանի՛ ում թողութիւն եղեւ մեղաց. և ծածկեցան ամենայն յանցանք նորա:

Երանի՛ առն՝ որում ոչ համարի Տէր զմեղս նորա. և ոչ գոյ նենգութիւն ի բերան նորա:

Լռեցի ես, և մաշեցան ա՟մ ոսկերք իմ. առ աղաղակել ինձ առ Տէր զօրհանապազ՝ ի տուէ և ի գիշերի:

Ծանրեաց ձեռն քո ի վերայ իմ. և դարձայ ի թշուառութիւն, զի հարան յիս փուշք:

Զմեղս իմ ցուցի քեզ. և զանօրէնութիւնս իմ ոչ ծածկեցի ի քէն:

Ասացի, թէ պատմեցից ինձէն զմեղս իմ. և դու թողցես զա՟մ ամբարշտութ՟իս մեղաց իմոց:

Վասն այսորիկ յաղօթս կացցեն առ քեզ ամենայն սուրբք ի ժամ ընդունելի:

Բայց միայն ի ջուրցն հեղեղաց բազմաց, որ առ նոսա ինչ ոչ մերձեսցին:

Դու ես ապաւէն իմ ի նեղութենէ յայսմանէ որ շուրջ եղեւ զինեւ:

Ցնծութիւն իմ, փրկեա՛ զիս յայնցանէ որ պաշարեցին զիս:

Իմաստուն արարից զքեզ և խելամուտ ի ճանապարհի յոր և գնասցես. և հաստատեցից ի վ՟ր քո զաչս իմ:

Մի՛ լինիք որպէս զձիս և զջորիս, զի ոչ գոյ ի նոսա իմաստութ՟ի. ի սանձս և ի դանդանաւանդս ճմլեսցես զկզակս նոցա, որ առ քեզ ինչ ոչ մերձենան:

Բազում տանջանք են մեղաւորաց. բայց որք յուսան ի Տէր՝ ողորմութիւն Տն՟ շուրջ եղիցի զնոքօք:

Ուրախ եղերուք և ցնծացէք արդարք. ի Տէր պարծեցարուք ամենեքեան որք ուղիղ էք սրտիւ:

Փառք Հօր և: Այժմ և միշտ:

Նյւ եւս խաղաղութն՟: Օրհնութն՟ և փառք:

Չորրորդ եւ-ճղայ: Սաղմոս ԼԶ:

Մի՛ նախանձիր ընդ չարս. և մի՛ ընդ այնոսիկ որք գործեն զանօրէնութիւն:

Զի որպէս խոտ վաղվաղակի ցամաքեսցին. որպէս զդալարի խոտոյ վաղվաղակի անցցեն:

Յուսա՛ ի Տէր և արա՛ զքաղցրութն՟. բնակեա՛ յերկրի, և հովուեսցիս ի մեծութեան նորա:

Ճոխեա՛ ի Տեառնէ, և նա տացէ քեզ զխնդրուածս սրտի քո. յայտնեա՛ առաջի Տեառն զճանապարհս քո և յուսա՛ ի նա:

Նա արասցէ և հանցէ որպէս լոյս զարդարութիւն քո. զիրաւունս քո որպէս զօրհասարակ:

Հնազա՛նդ լեր Տեառն և ծառայեա՛ նմա. և մի՛ նախանձիր ընդ այնոսիկ՝ որոց անաւակեալ իցեն ճանապարհք իւրեանց ընդ մարդոյ որ գործէ զանօրէնութն՟:

Լռեա՛ ի բարկութենէ և հանգի՛ր ի սրտմտութենէ. և մի՛ նախանձիր ընդ չարս:

Զարք վաղվաղակի սատակեսցին. բայց որք համբերեն Տեառն՝ նոքա ժառանգեսցեն զերկիր:

Փոքր մի և այլ ոչ եւս իցէ ամբարիշտն. խնդրեսցես զտեղի նորա և ոչ գտցես:

Այլ որ հեզքն են՝ նոքա ժառանգեսցեն զերկիր. և փափկասցին ի բազում խաղաղութեան իւրեանց:

Սպասէ մեղաւոր արդարոյ, և կրճտէ զատամունս իւր. այլ Տէր ծիծաղեսցի զնովաւ:

Քանզի յառաջագոյն տեսանէ, զի հասեալ է օր նր՟:

Սուր հանին մեղաւորք և լարեցին զաղեղունս իւրեանց,

հարկանել զաղքատն և զտնանկն. սպանանել զայն, որ խոնարհ է սրտիւ:

Զի սուրք նց՟ մտցեն ի սիրտս նց՟, և աղեղունք նոցա փշրեսցին:

Լաւ է սակաւ ինչ արդարոյ՝ քան զբազում մեծութ՟ի մեղաւորաց. և բազուկք ամբարշտաւանից խորտակեսցին:

Հաստատէ Տէր զարդարն. և ճանաչէ զաւուրս ամբծից. ժառանգութ՟ի նց՟ յաւիտեան եղիցի:

Մի՛ ամաչեսցեն նոքա ի ժամանակս չարութ՟ե. այլ յաւուրս սովու յագեսցին:

Ահա մեղաւորք կորիցեն. այլ թշնամիք Տն՟ ի փառաւորել և ի բարձրանալ իւրեանց պակասեսցին՝ ոչ՟ ծուխ զի պակասէ:

Փոխ առնու մեղաւորն և ոչ հատուցանէ. այլ որ արդարն է՝ ողորմի և տայ:

Ոյք օրհնեն զՏէր՝ ժառանգեսցեն զերկիր. և ոյք անիծանեն՝ սատակեսցին ի նմանէ:

Ի Տն՟է ուղղին գնացք առն. և զճանապարհս նր՟ նա կամի յոյժ:

Թէպէտ և գայթագղեսցի՝ նա մի՛ կործանեսցի. զի Տէր ձեռնկալու է նր՟:

Մանուկ էի ես և ծերացայ. և ոչ տեսի զարդար արհամարհեալ՝ և ոչ զզաւակ նր՟ թէ մուրանայ հաց:

Զօրհանապազ ողորմի և տայ փոխ. զաւակ նր՟ օրհնեալ եղիցի յաւիտեան:

Խոտորեա՛ ի չարէ և արա՛ զբարի. բնակեսցես յաւիտեանս յաւիտենից ի նմա:

Տէր սիրէ զիրաւունս, և ոչ ընդ վայր հարկանէ զսուրբս իւր. այլ յաւիտեան պահէ զնն՟:

Անօրէնք հալածեսցին ի միասին. և զաւակք ամբարշտաց սատակեսցին:

Այլ արդարք ժառանգեսցեն զերկիր. բնակեսցեն յաւիտեանս յաւիտենից ի նմա:

Բերան արդարոյ խորհի զիմաստութի. և լեզու նորա խօսեսցի զիրաւունս։

Օրէնք ԱՅ իւրոյ են ի սրտի իւրում. և մի գայթագղեսցին գնացք նորա։

Հայի մեղաւոր ընդ արդար, և խնդրէ սպանանել զնա. այլ Տէր ոչ թողու զնա ի ձեռս Ն՟ր. և ոչ դատապարտէ յորժամ դատի զնա։

Համբեր Տ՟ն և պահեա զճանապարհս Ն՟ր. և բարձր արասցէ զքեզ ի ժառանգել զերկիր. և զսատակումն մեղաւորաց տեսցես։

Տեսի զամբարիշտն վերացեալ բարձրացեալ որպէս զմայրսն Լիբանանու։

Անցի, և ահա ոչ էր. խնդրեցի, և ոչ գտաւ տեղի Ն՟ր։

Պահեա զամբծութի և տես զուղղութի. զի գոն մնացուածք առն խաղաղարարի։

Անօրէնք հալածեսցին ի միասին. և զաւակք ամբարշտաց կորիցեն։

Փրկութի արդարոց ի Տ՟նէ է. վերակացու է Ն՟ց ի ժամանակի նեղութե։

Օգնեսցէ Ն՟ց Տ՟ր, և փրկեսցէ զն՟ս. ապրեցուսցէ ի մեղաւորաց և կեցուսցէ զնոսա, զի յուսացան ի Նա։

Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Իւ եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Հինգերորդ կուրբղայ։ Սաղմոս ԼԷ։

Տէր մի սրտմտութբ քով յանդիմաներ զիս. և մի բարկութբ քո խրատեր զիս։

Զի նետք քո հարան յիս. և յիս հաստատեցաւ ձեռն քո։

Ոչ գոյ բժշկութի մարմնոյ իմոյ՝ յերեսաց բարկութեան քոյ։

Ոչ է խաղաղութիւն ոսկերաց իմոց՝ յերեսաց մեղաց իմոց։

Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ. որպէս բեռն ծանր ծանրացան ի վերայ իմ։

Նեխեցան և փտեցան վէրք իմ՝ յերեսաց անզգամութեան իմոյ։

Տառապեցայ և խոնարհ եղէ յոյժ. զօրհանապազ տրտում գնայի, զի անձն իմ լի եղեւ չարչարանօք. և ոչ գոյ բժշկութիւն մարմնոյ իմոյ։

Չարչարեցայ և խոնարհ եղէ մինչեւ յոյժ. մռնչէի առ հեծութեան սրտի իմոյ։

Տէր առաջի քո են ամենայն ցանկութիւնք իմ. և հեծութիւն իմ ի քէն ոչ ծածկեցաւ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս, և եթող զիս զօրութիւն իմ. լոյս աչաց իմոց՝ և այս ոչ եղեւ ընդ իս։

Բարեկամք իմ և մերձաւորք իմ առաջի իմ մերձեցան և կացին. և մերձաւորք իմ հեռի եղեն յինէն։

Բռնադատէին զիս և խնդրէին զանձն իմ՝ որք խորհէին չար ի վերայ իմ. խօսեցան զանօրէնութիւն, և զնենգութիւն զօրհանապազ խորհեցան։

Այլ ես որպէս խուլ զի ոչ լսէ. որպէս համր որ ոչ բանայ զբերան իւր։

Եղէ ես որպէս մարդ որ ոչ լսէ. և ոչ գոն խօսք ի բերան նորա։

Ես ի քեզ Տէր յուսացայ. և դու լուիցես ինձ Տէր Աստուած իմ։

Ասացի թէ մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ. ի սասանել ոտից իմոց՝ ի վերայ իմ մեծամեծս խօսեցան։

Ես ի տանջանս պատրաստ եմ. և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Զանօրէնութիւնս իմ պատմեցից. և հոգացայց վասն մեղաց իմոց։

Իսկ արդ՝ թշնամիք իմ կենդանի են, և զօրացեալք են քան զիս. և բազում էին որք ատէին զիս ի տարապարտուց։

Ոյք հատուցին ինչ չար փոխանակ ընդ բարւոյ, չարախօսէին զինէն, զի ես երթայի զհետ արդարութե̅:

Մի՛ թողուր զիս Տէր Ա̅ծ իմ, և մի՛ ի բացեայ առնիր յինէն. հայեա՛ց յօգնել ինչ Տէր փրկուե̅ իմոյ:

Սաղմոս ԼԸ:

Ասացի թէ պահեցից զճանապարհս իմ. զի մի՛ մեղայց լեզուաւ իմով:

Եդի պահապան բերանոյ իմոյ՝ ի հակառակել մեղաւորին առաջի իմ:

Լուռ եղէ և խոնարհեցայ. լռեցի ի բարութենէ. և ցաւք իմ նորոգեցան յիս:

Ջեռաւ սիրտ իմ ի փորի իմում. և ի խորհուրդս իմ վառեցաւ հուր:

Խօսեցայ լեզուաւ իմով և ասացի. ցո՛յց ինձ Տէր զկատարած իմ, և զթիւ աւուրց իմոց՝ քանի՛օն է. զի գիտացից թէ ո՛րչափ ինչ պակասեալ է յինէն:

Ահա չափով եդիր զաւուրս իմ, և կար զօրութեան իմոյ որպէս ոչինչ է առաջի իմ. սակայն ամենեւին ընդունայն է ամենայն մարդ մսեղի:

Ապաքէն որպէս ի պատկերի շրջի մարդ, սակայն ի զուր խռովի. գանձէ, և ոչ գիտէ ո՛ւմ ժողովէ:

Իսկ արդ ո՞վ է համբերութիւն իմ, թէ ոչ դու Տէր. կամ կար զօրութեան իմոյ՝ թէ ոչ ի քէն է:

Յամենայն անօրէնութենէ իմմէ փրկեցեր զիս. նախատինս անզգամաց արարեր զիս:

Լուռ եղէ և ոչ բացի զբերան իմ, զի դու արարեր:

Ի բա՛ց արա յինեն զտանջանս իմ. զի ի զօրութենէ ձեռին քո ես պակասեցայ:

Կշտամբութեամբ վասն մեղաց խրատեցեր զմարդ. մաշեցեր որպէս սարդի ոստայն զանձն նորա. սակայն ընդունայն է ամենայն մարդ:

Լո՛ւր Տէր աղօթից իմոց. ունկն դիր խնդրուածաց իմոց. արտասուաց իմոց մի՛ լռեր:

Պանդուխտ եմ ես առաջի քո. նժդեհ և անցաւոր՝ որպէս ամենայն հարքն իմ։

Թո՛յլ արա ինձ զի հանգեայց. մինչչև երթեալ իցեմ՝ ուստի ոչ գտանիցիմ։

Սաղմոս ԼԹ։

Համբերելով համբերի Տեառն. նայեցաւ առ իս, և լուաւ աղօթից իմոց։

Եհան զիս ի գբոյ տառապանաց. ի կաւոյ և ի տղմոյ։

Հաստատեաց ի վերայ վիմի զոտս իմ. և ուղղեաց զգնացս իմ։

Արկ ի բերան իմ օրհնութիւն նոր. զօրհնութիւն Տեառն Աստուծոյ մերոյ։

Տեսցեն բազումք և երկիցեն, և յուսասցին ի Տէր. երանեալ է այր՝ որոյ անուն Տեառն յոյս է նորա։

Ոչ հայեցաւ նա ի նանրութի̃. և ոչ ի մոլութի̃ սուտ։

Բազում արարեր դու Տէր Աստուած իմ զսքանչելիս. խորհրդոց քոց ոչ ոք է որ նմանէ քեզ։

Պատմեցի և խօսեցայ, և բազում եղեն քան զթիւ. ընդ զոհս և ընդ պատարագս ոչ հաճեցար. մարմին հաստատեցեր ինձ. զողջակէզս և զվասն մեղացն ոչ խնդրեցեր։

Յայնժամ ասացի թէ ահաւասիկ գամ ես. ի գլուխս գրոց գրեալ է վասն իմ։

Առնել զկամս քո Աստուած իմ կամեցայ. և զօրէնս քո ի մէջ որովայնի իմոյ։

Աւետարանեցից զարդարութի̃ս քո յեկեղեցիս մեծս. ահա զշրթունս իմ ոչ արգելից ի քէն։

Տէր դու գիտացեր՝ զի զարդարութի̃ քո ոչ ծածկեցի ի սրտի իմում. զճշմարտութի̃ քո և զփրկութի̃ քո։

Ասացի և ոչ թագուցի զողորմութիւնս քո. և զճըշմարտութիւնս քո ի ժողովրդենէ մեծէ։

Դու Տէր՝ մի՛ հեռի առներ զգթութի̃ քո յինէն. զի ողորմութի̃ և ճշմարտութի̃ քո յամ ժամ ընկալցին զիս։

Շուրջ եղեն զինեւ չարք՝ որոց ոչ գոյր թիւ. Հասին ինձ անօրէնութիւնք իմ, և ես ոչ կարացի տեսանել։

Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ. և սիրտ իմ եթող զիս։

Կամեա՛ց Տր փրկել զիս. և Տր յօգնել ինձ նայեաց։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որք խնդրեն զանձն իմ՝ բառնալ զսա. դարձցին յետս և ամաչեսցեն՝ որք խորհէին ինձ չար։

Կրեսցեն զամօթ առժամայն վաղվաղակի՝ որք ասէին ինձ վա՛շ վա՛շ։

Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ՝ ամենեքեան որ խնդրեն զքեզ Տէր։

Ասասցեն յամենայն ժամ մեծ է Աստուած՝ որք սիրեն զփրկութիւն քո։

Ես աղքատ և տնանկ եմ. Աստուած խորհեա՛ զիս. օգնական և պաշտպան իմ ես. և դու Տէր իմ մի՛ յամենար։

Փառք Հօր և։ Այժմ և միշտ։

Նաւ եւս խաղաղութն։ Օրհնութի և փառք։

Վեցերորդ Կուճղայ։ Սաղմոս Խ։

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր։

Տէր փրկէ զնա և կեցուցանէ. երանելի առնէ զնա ի վերայ երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց։

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց. զամ անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութէ նորա։

Ես ասացի Տէր ողորմեա՛ ինձ. և բժշկեա՛ զանձն իմ. ես մեղայ քեզ։

Թշնամիք իմ ասացին ինձ չար. ե՞րբ իցէ զի մեռցի, և կորիցէ անուն նորա։

Մտանէր տեսանել զնանրութիւն. խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր։

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր. զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ։

Խորհեցան չար ի վերայ իմ. բան անօրէնութեան եդին ի վերայ իմ։

Մի՛ թէ որ ննջիցէն ո՞չ եւս յաւելուցու յառնել. քանզի և այրն խաղաղութե̃ իմոյ՝ յոր և եսն յուսացայ։

Որ ուտէր ընդ իս հաց, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն։

Այլ դու Տէր ողորմեա՛ ինձ. կանգնեա՛ զիս, և հատուցից նոցա։

Յայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս. զի մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ։

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար. հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի յաւիտեանս յաւիտենից. եղիցի եղիցի։

Սաղմոս ԽԱ։

Ոպ̃ փափաքէ եղջերու յաղբերս ջուրց. այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ Ած̃։

Ծարաւի է անձն իմ առ քեզ, Ած̃ հզօր և կենդանի. ե՞րբ եկից երևեցայց երեսացդ Այ̃։

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր ի տուէ և ի գիշերի. և այն զի ասէին ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուա՛ծ քո։

Զայս ոպ̃ յիշէի՝ տառապէր յիս անձն իմ. քաջալերէի զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տան Այ̃։

Ի ձայն ցնծութե̃ խոստովանութե̃. և ի ձայն բարեկենդանութե̃։

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Ած̃, խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Ած̃ է։

Անձն իմ յոյժ խռովեցաւ. վս̃ այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, յԱհերմոնէ լեռնէ փոքուէ։

Խորք խորոց կարդացի առ քեզ՝ ի ձայն սաՀմանաց քոց։
Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վր իմ։
Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութիւն իւր. գի-
շերի զօրՀնութիւն նոր. և աղօթք իմ առ Աստուած
վասն կենաց իմոց։
Ասացի. Ած ընդունելի իմ ես. ընդէ՞ր մերժեցեր զիս.
ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։
Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս թշնամիք
իմ. յասել ցիս զօրՀանապազ՝ թէ ո՞ւր է Ած քո։
Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռով-
ես զիս. յուսա՛ առ Ած, խոստովանեա՛ նմա. փրկիչ
երեսաց իմոց Աստուած է։

Սաղմոս ԽԲ։

Դատ՛ արա ինձ Ած. և իրա՛ւ արա ինձ ի դատաս-
տանի իմում։
Յազգէ որ ոչ է նր. ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ
փրկեա՛ զիս։
Դու Ած Հզօրիչ իմ ես. ընդէ՞ր մոռացար զիս, ընդէ՞ր
տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։
Առաքեա՛ Տր զլոյս քո և զճշմարտութի քո, զի առա-
ջնորդեսցեն ինձ, Հանցեն զիս ի լեառնն ք և ի յարկս քո։
Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ. առ Աստուած որ
ուրախ առնէ զմանկութիւն իմ։
Խոստովան եղէց քեզ օրՀնութեամբ, Ած Ած իմ։
Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռով-
ես զիս. յուսա՛ առ Ած, խոստովանեա՛ նմա. փրկիչ
երեսաց իմոց Ած է։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Իսկ եւս խաղաղութե։ ՕրՀնութի և փառք։

Աղօթ. Յովնանու մարգարէին։ Բ. 3։

Ի նեղութե իմում ես առ Տէր կարդացի. և լուաւ
Ած յանդնդոց դժոխոց աղաղակի իմում։

Լուր Տէր ձայնի իմում, զի ընկեցեր զիս ի խորս ծովու. և շրջանք գետոց պաշարեցին զիս։

Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վր իմ. և ասացի, թէ մերժեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց։

Արդ իցէ՞ թէ յաւելից հայել ի տաճար սբ քո. զի հեղան զինեւ ջուրք մինչեւ յանձն իմ. և անդունդք անհնարինք պաշարեցին զիս։

Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց. իջի ես ի խորս երկրի, և տեսի զնիգս նր՝ զի էին ոչ աղխք յաւիտենից. և ելցեն յապականութէ կեանք իմ։

Առ քեզ Տէր Ած իմ ի նուաղել անձին իմոյ կարդացի, և զքեզ Տէր յիշեցի. և մտցեն աղօթք իմ ի տաճար սբ քո։

Զի ոյք պահէին զունայնութի և զստութիւն, յողորմութե իւրեանց մերժեցան։

Այլ ես ի ձայն օրհնութե խոստովան եղէց քեզ. մատուցից պատարագս Տռն, և կատարեցից զուխտ իմ ի փրկութեան։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Եւ է ձայնիւ անկեալ ոչամնէն ողբայցն՝

Շարական Դկ. ՍՏ։ Զարհուրեալ դողացան ամենամեղ անձն իմ. յահեղ քո դատաստանաց յաններելի տանջանացն։ Երկիցս կրկնեա։

Զկնի՝ Նու եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Դարձեալ Աղօթ. Յովնանու մարգարէին։

Ի նեղութե իմում ես առ Տէր կարդ։ 279։

Շարական Դկ. ՍՏ։ Քանզի կամաւ մերձեցայ ի մեղս մեծամեծս. արդ կայ եւ միայն ինձ աններելի պատուհասն։ Երկիցս կրկնեա։

Զկնի՝ Նու եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Դարձեալ Աղօթ. Յովնանու մարգարէին։

Ի նեղութե իմում ես առ Տէր կարդ։ 279։

Շարական Դկ. ՍՏ: Որդ անկեալ աղաչեմմմ. փրկիչ եւ բարերար. խնայեա յիս ի մեղուցեալս. եւ ողորմեա ինձ բազմամեղիս: Երեքս. կրկնել:

Եւ ապա ասեն:

Տէր ամենակալ Աստուած Աբրահամու, Իսահակայ, Յակովբայ, և զաւակի նոցա արդարոց. * ամենակալ Տէր թող զմեղս իմ:

Որ արարեր զերկինս և զերկիր, և զամենայն զարդ նոցա. ամենակալ:

Որ կապեցեր զծով բանիւ հրամանի քոյ. փակեցեր զանդունդս. կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով սրբով. ամենակալ:

Որ ամ ենեւին սարսի և դողայ յերեսաց ահի զօրութեան քո. ամենակալ:

Անբաւ է մեծվայելչութիւն փառաց սրբութեան քոյ. և սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց ի վերայ մեղաւորաց. անչափ և անքնին են ողորմութիւնք աւետեաց քոց. ամենակալ:

Դու Տէր բարձրեալ գթած երկայնամիտ բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան. ամենակալ:

Դու Աստուած ոչ եդիր ապաշխարութիւն վասն արդարոցն Աբրահամու, Իսահակայ և Յակովբայ, որք ոչ մեղան քեզ. ամենակալ:

Այլ եդիր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս. զի մեղայ աւելի քան զաւազ ծովու, և բազմացան անօրէնութիւնք իմ. ամենակալ:

Չեմ արժանի հայել և տեսանել զբարձրութիւնս երկնից ի բազմութենէ անօրէնութեան իմոյ. ամենակալ Տէր:

Կորացեալ եմ ես ի բռնութենէ կապանաց երկաթից, և ոչ գոյ ինձ հանգիստ. ամենակալ:

Բարկացուցի զբարութիւն, և չար առաջի քո արարի. կանգնեցի պատկեր և բազմացուցի զցասումն. ամենա:

Ամենօրհնեալ սրբուհի և միշտ կոյս Ածածին Մարիամ. բարեխօսեա առ Տէր վն իմ մեղաւորիս:

Ամենայն սբք Այ, բարեխօսեցէք առ Հայր ի յերկինս վն մեր մեղաւորացս:

Քս Որդի Այ անոխակալ, ընկալ զաղաչանս մեր. զի ի քեզ են ապաւինեալ անձինք մեր:

Յաղթող զօրութբ նր և կենդանարար և պատուական խաչի քո Տէր պահպանեա զմեզ:

Առաքեա Տէր ղհրեշտակ խաղաղութե քո, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ի տուէ և ի գիշերի:

Եւ մարդասիրութեամբ քով յիշեա զմեզ Տէր. յիշեա զմեզ յորժամ գաս արքայութեամբ քով. և ողորմեա մեզ:

Շարական ԴԿ. ՍՏ: Նու փրկեա զիս. յահագին հըրոյն. զի Ած ես ապաշխարողաց: Երէցն կրկնէ:

Ձայն՝ Քարոզ:

Նկեալքս ի խոստովանութի ապաշխարութե՝ հաւատով զյոյս միածնի Որդւոյն Այ դիցուք ի սիրտս մեր, խնդրելով ի նմանէ զքաւութի և զթողութի յանցանաց մերոց: Վասն զի նա ինքն է Նախախնամողն Ած յաւիտենական, որ եկն կամաւ Հօր ի փրկել զարարածս. և ասաց զինքն լինել քաւիչ մեղաւորաց, յոյս ապաշխարողաց, շնորհելով հանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռնեալքս և զտաժանեալքս մեղօք յապաշխարութի քաւութե: Արդ՝ եկայք ամենեքեան՝ խոնարհեալ անձամբ, բեկեալ սրտիւք, անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ, զի անցուսցէ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութբն իւրով: Ամենակալ Տէր Ած մեր կեցո և ողորմեա:

Աղօթք:

Տէր Ած փրկութե մերոյ, որ ողորմածդ ես և գթած, երկայնամիտ, բազումողորմ, և զղջանաս ի վր չարեաց

մարդկան. որ ոչ կամիս զմահ մեղաւորին, այլ զդառնալ նր՟ ի չար ճանապարհէն և զկեալն։ Դու Տէր առատ մարդասիրութ՟դ քով մխիթարեա զծառայքս քո, և տուր սոցա տեղի ապաշխարութ՟ե. հաշտեա մարդասիրութ՟բ քո, և արա զսոսա անդամս եկեղեցւոյ քում սբյ։ Ոպ՟ զի առողջացեալք հոգւով, խոստովանութ՟բ և ապաշխարութ՟բ մտցեն յեկեղեցի քո սբ. և ընդ ժողովրդեան քում քեզ հանցեն զօրհնութ՟ի և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սբյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Եւ ապա ասեն ողորմեայն Սաղմոս Ծ. է լման։

48. Ցօղեա յիս մշտկաւ և սբ եղէց. լուա և քան զձիւն սպիտակ եղէց։

Փխ. Ողորմեա ինձ Ած՟ ըստ մեծի ողորմութ՟ե քում. ըստ բազում գթութ՟ե քում քաւեա զանօրէնութ՟իս իմ։

Առաւել լուա զիս յանօրէնութենէ իմմէ. և ի մեղաց իմոց սուրբ արա զիս։

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Քեզ միայն մեղայ Տէր. և զչար առաջի քո արարի։

Որպէս արդար եղիցիս ի բանս քո. և յաղթեսցես ի դատել քո։

Անօրէնութ՟բ յղացաւ. և ի մեղս ծնաւ զիս մայր իմ։

Դու Տր՟ զճշմարտութ՟ի սիրեցեր. զանյայտս և զծածկեալս իմաստութ՟բ քով յայտնեցեր ինձ։

Ցօղեա յիս մշտկաւ, և սբ եղէց. լուա, և քան զձիւն սպիտակ եղէց։

Լսելի արա ինձ Տէր զցնծութ՟ի և զուրախութ՟ի. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք։

Դարձո զերեսս քո ի մեղաց իմոց. և զամ՟ անօրէնութ՟իս իմ քաւեա յինէն։

Սիրտ սուրբ հաստեա յիս Ած. և հոգի ուղիղ նորոգեա ի փորի իմում։

Մի՛ ընկեներ զիս Տէր յերեսաց քոց. և զՀոգի քո սբ̃ մի՛ հաներ յինէն։

Տո՛ւր ինձ զցնծութի̃ փրկութե̃. և հոգւով պետուե̃ քո հաստատեա՛ զիս։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո. և ամպարիշտք առ քեզ դարձցին։

Փրկեա՛ զիս յարենէ Ա̃Ծ, Ա̃Ծ փրկութե̃ իմոյ. և ցնծասցէ լեզու իմ յարդարութե̃ քում։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութի̃ս քո։

Թէ կամեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար։

Պատարագ Ա̃Յ հոգի խոնարհ. զսիրտ սբ̃ և զհոգի խոնարհ Ա̃Ծ ոչ արհամարհէ։

Բարի՛ արա Տէր կամօք քովք Սիովնի. և շինեսցին պարիսպքն Երուսաղէմի։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութե̃. ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս։

ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ կ. 21։

Ու կատարեսցին աւուրք սգոյ քոյ։ Եւ ժողովուրդ քո ամենեւին արդար, և յաւիտեան ժառանգեսցեն զերկիր. պահել զնորատունկ գործոց ձեռաց իւրեանց ի փառս։ Սակաւաւորն հազարաւոր եղիցի, և կրտսերն յազգ մեծ. զի ես Տէր ընդ ժամանակս ժամանակս ժողովեցից զնոսա։ 22։

ընթերցուածս յԵզեկիէլէ մարգարէէ։ Լզ. 24։

Այսպէս ասէ Տէր. և առից զձեզ ի հեթանոսաց, և ժողովեցից զձեզ յամենայն ազգաց. և տարայց զձեզ յերկիրն ձեր։ Եւ ցանեցից ի վերայ ձեր ջուր սբ̃. և սրբեսջիք յա̃մ պղծութե̃ց ձերոց, և յա̃մ կռոց ձերոց սրբեցից զձեզ։ Եւ տաց ձեզ սիրտ նոր, և ոգի նոր նորոգեցից ի ձեզ. և հանից զսիրտն քարեղէն ի

մարմնոց ձերոց, և տաց ձեզ սիրտ մարմնեղէն։ Եւ զհոգի իմ տաց ձեզ. և արարից զի յարդարութիւնս իմ գնայցէք, և զիրաւունս իմ պահիցէք և առնիցէք զնս։ Եւ բնակիցէք յերկրին զոր ետու հարցն ձերոց. և եղիջիք ինձ ի ժողովուրդ, և ես եղէց ձեզ յԱծ։ Եւ զերծուցից զձեզ յամենայն պղծութեանց ձերոց. կոչեցից զցորեան, և բազմացուցից զնա. և ոչ ածից ի վերայ ձեր սով։ Եւ բազմացուցից զպտուղ ծառոց և զարդիւնս անդոց. զի մի ևս ընդունիցիք զնախատինս սովու ի մէջ ազգաց։ Եւ յիշեսջիք զճանապարհս ձեր չարս և զգնացս ձեր զանբարիս. և տաղտկասջիք յերեսաց անօրէնութեց ձերոց և ի գարշելեացն ձերոց։ 31։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս։ Ժ. 19։

Ունիմք այսուհետև եղբարք՝ համարձակութիւն ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի. զոր նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի ի ձեռն վարագուրին, այսինքն է՝ մարմնոյ իւրոյ. և քահանայ մեծ ի վերայ տանն Աստուծոյ. մատիցուք ճշմարիտ սրտիւք, լրութեամբ հաւատոց, լուացեալ զսիրտս ի խղճէ չարեաց, և մկրտեալ զմարմին ի ջուրն սրբութեան։ Պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ յուսոյն. զի հաւատարիմ է որ խոստացաւն։ Եւ զգուշասցուք միմեանց յորդորմամբք սիրոյ և գործոց բարեաց. և մի՛ թողցուք զժողովս միմեանց, ո՛պ և սովոր են ոմանք. այլ մխիթարեսցուք, և այնչափ ևս առաւել՝ որչափ տեսանիցէք զօրն մերձեալ։ Զի կամակար մտօք եթէ յանցանիցեմք յետ ընդունելուե գիտուե ճշմարտուեն՝ այնուհետև ոչ ևս պիտոյ է վն մեղաց պատարագ, այլ ահեղ ակնկալութիւն դատաստանին և նախանձ հրոյն՝ որ ուտիցէ զհակառակորդսն։ Արհամարհեալ ուրուք զօրէնսն Մովսէսի՝ առանց ողորմութեց առ եր-

կուք կամ երիւք վկայիւք մեռանէր։ Իսկ ո՞րչափ սաստիկ պատժոց արժանի համարիցիք զայն, որ զՈրդին ԱՅ առ ոտն եհար, և զարիւն Նորոյ ուխտին խառնակ համարեցաւ՝ որով և սրբեցաւն. և զՀոգին շնորհաց թշնամանեաց։ Այլ գիտեմք զայն որ ասացն. իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից, ասէ Տէր. և դարձեալ թէ՝ Դատի Տէր զժողովուրդ իւր։ Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ։ 31։

Ալէլուիա Սաղմոս ԽԱ. ի ըստն առաւ։

Որպէս փափաքէ եղջերու յաղբերս ջուրց. այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ Աստուած։

Ծարաւի է անձն իմ առ քեզ, Աստուած հզօր և կենդանի. ե՞րբ եկից երևեցայց երեսացդ ԱՅ։

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր ի տուէ և ի գիշերի. այն զի ասէին ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուած քո։

Զայս որպէս յիշէի՝ տառապէր յիս անձն իմ. քաջալերէի զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տան ԱՅ։

Ի ձայն ցնծութեան խոստովանութեան. և ի ձայն բարեկենդանութեան։

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ ԱԾ. խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

Անձն իմ յոյժ խռովեցաւ. վն այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, յԱհերմոնէ լեռնէ փոքուէ։

Խորք խորոց կարդացին առ քեզ ի ձայն սահանաց քոց։

Ամենայն զբօսանք քո, և ալիք քո անցին ի վր իմ։

Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութի իւր. գիշերի զօրհնութիւ նոր. և աղօթք իմ առ ԱԾ վն կենաց իմոց։

Ասացի ԱՅ՝ ընդունելի իմ ես. ընդէ՞ր մերժեցեր զիս. ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։

Ի փշրել ոսկերա՛ց իմոց նախատեցին զիս թշնամիք իմ. յասել ցիս զօրհանապազ թէ ո՞ւր է ԱԾ քո։

Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Աստուած. խոստովանեա՛ Նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

ԶՆԷ՝ ՈՐԹԻՒ։

Աւետարան ըստ Ղուկասու։ Է. 36։

ԶՑէրն մեր Յիսուս Քրիստոս

Աղաչէր ո՟մն ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ ճաշ ընդ Նմա. և մտեալ ի տուն փարիսեցւոյն՝ բազմեցաւ։ Եւ կին մի էր ի քաղաքին մեղաւոր. իբրև գիտաց թէ բազմեալ է ի տան փարիսեցւոյն՝ բերեալ շիշ մի իւղոյ ազնուի՝ կայր յետոյ առ ոտս Ն՟ր, լայր, և արտասուօքն սկսաւ թանալ զոտս Ն՟ր, և հերով գլխոյ իւրոյ ջնջէր, և համբուրէր զոտս Ն՟ր և օծանէր իւղովն։ Եւ տեսեալ փարիսեցւոյն որ կոչեացն զՆա՝ ասէր ընդ միտս իւր. սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ո՛վ և որպիսի՛ ոք կին մերձենայ ի սա. զի մեղաւոր է։ Պատասխանի ետ Յ՟ս և ասէ ցՆա. Սիմովն, ունիմ ինչ ասել քեզ. և Նա ասէ. ասա՛ վարդապետ։ Եւ ասէ. երկու պարտապանք էին ուրումն փոխատուի. մինն պարտէր հինգ հարիւր դահեկան, և միւսն յիսուն։ Եւ իբրև ոչ գոյր Ն՟ց հատուցանել՝ երկոցունցն շնորհեաց. արդ ասա՛, ո՞վ առաւել սիրեսցէ զՆա։ Ասէ Սիմովն. ինձ այսպէս թուի՝ եթէ որում զբազումն շնորհեաց. և Նա ասէ ցՆա. ուղիղ դատեցար։ Եւ դարձեա՛լ ի կինն կողմն՝ ասէ ցՍիմովն. տեսանե՞ս զայս կին. մտի ի տուն քո՝ ջուր ոտից իմոց ոչ ետուր, իսկ սա արտասուօք իւրովք եթաց զոտս իմ, և հերով իւրով ջնջեաց։ Համբոյր մի դու ոչ ետուր ինձ, սա աւասիկ յորմէ հետէ մտեալ եմ՝ ոչ դադարեաց ի համբուրելոյ զոտս իմ։ Իւղով զգլուխ իմ ոչ օծեր, սա իւղով անուշիւ օծ։ Վ՟ն որոյ ասեմ քեզ. թողեալ լիցին սմա մեղք իւր բազում, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողուցու՝ շատ սիրէ, և որում սակաւ՝ սակաւ։ Եւ ասէ ցՆա. թողեալ լիցին

քեզ մեղք քո: Եւ սկսան՝ որ բազմեալն էին ընդ Նմա՝ ասել ընդ միտս իւրեանց. ո՞վ է սա՝ որ զմեղս թողու: Եւ Նա ասէ ցկինն. հաւատք քո կեցուցին զքեզ. երթ ի խաղաղութիւն: 50:

Ապա սարկաւագն քարոզէ:

Եւ եւս խաղաղութն զՏէր աղաչեսցուք:

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց: Ամենակալ Տր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Եւ ապա կարդան զաղօթս զոր ասացեալ է Սրբոյն Բարսղի Կեսարու Հայրապետին ի վերայ ապաշխարողաց:

Տէր Ած Հայր ամենակալ արարիչ երկնի և երկրի, որ յակնարկել բարերար կամաց քոց գոյացուցեր զամ արարածս, զերեւելիս և զաներեւոյթս, զերկնայինս և զերկրայինս. և նախախնամութբ քով ստեղծեր զմարդն ի հողոյ. և ըստ պատկերի բարերարութեդ պատուով մեծարեցեր զնա. շնորհելով նմա զանմահութի և զանապականութն զկենդանութիւն. ինքնիշխան կամօք և փառօք զարդարեալ պսակեցեր զնա, պարգեւելով նմա զվայելումն ուրախութն դրախտին փափկութն, գործել զնա և պահել, և հանապազ մշտնջենաւորիլ յանճառ պարգեւսն, և յառաջանալ օր ըստ օրէ ի գործս բարիս. և յաւելեր նմա զպատուիրանադրութի կենսաբեր հրամանի բարերար կամաց քոց. զի յաւելուածով պատուիրանադրութն՝ առաւել յաւելուածով մեծի փառաց՝ և պատուոյ զնա ճոխացուցանէիր. և ի ձեռն բարեյօժար կամաց հնազանդութն եւս առաւել ի գերակատար կեանսդ զնա փոխէիր յիմանալի կայանս բնակութեան վերինն Երուսաղէմի:

Իսկ Նա ի ձեռն օձապատիր չարին խաբէութն զգործի կենացն և զպատճառս բարեացն անձնիշխանութբն ի կողմն բանսարկուին դարձուցեալ, և ինքնայօժար

Լո՛ւր Տէր ձայնի իմում, զի ընկեցեր զիս ի խորս ծովու. և շրջանք գետոց պաշարեցին զիս։

Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վե՛ր իմ. և ասացի, թէ մերժեցայ ուրեմն յերեսաց աչաց քոց։

Արդ յիցէ՞ թէ յաւելից հայել ի տաճար սբ. քո. զի հեղան զինև ջուրք մինչև յանձն իմ. և անդունդք անհնարինք պաշարեցին զիս։

Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց. իջի ես ի խորս երկրի, և տեսի զնիգս նր՝ զի էին ոչ աղխք յաւիտենից. և ելցեն յապականութէ կեանք իմ։

Առ քեզ Տէր Ած իմ ի նուաղել անձին իմոյ կարդացի, և զքեզ Տէր յիշեցի. և մտցեն աղօթք իմ ի տաճար սբ. քո։

Զի որք պահէին զունայնութի և զստութիւն, յողորմութե իւրեանց մերժեցան։

Այլ ես ի ձայն օրհնութե խոստովան եղէց քեզ. մատուցից պատարագս Տն, և կատարեցից զուխտ իմ ի փրկութեան։

Փառք Հօր։ Այժմ և միշտ։

Ե– է ձայնի անկեալ ոկտանէն ողջոյնըն՝

Շարական Դկ. ՍՏ։ Օրհուրեամբ դոզացամ մեւ. ամենամեղ անձն իմ. յահեղ քոց դատաստանաց յաններելի տանջանացն։ Երիցս կրկնեա։

Զնի՝ Իւ եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Դարձեալ Աղօթ. Ցուցանու մարգարէին։

Ի նեղութե իմում ես առ Տէր կարդ։ 279։

Շարական Դկ. ՍՏ։ Գթանզի կամաւ մերձեցաւ մեզ. ի մեղս մեծամեծս. արդ կայ եւ մնայ ինձ աններելի պատուհասն։ Երիցս կրկնեա։

Զնի՝ Իւ եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Դարձեալ Աղօթ. Ցուցանու մարգարէին։

Ի նեղութե իմում ես առ Տէր կարդ։ 279։

Շարական Դկ. ԱՏ։ Որդ անկեա՛լ ա՛ղա՛չեմմ մ մ. փրրկի՛չ եւ բա՛րերա՛ր. խնա՛յեա՛ յի՛ս ի մե՛ղուցեա՛լս. եւ ողորմեա՛ ինձ բա՛զմա՛մեղի՛ս։ Երեքս կրկնեա։

Ե– ազա ածէն։

Տէր ամենակալ Աստուած Աբրահամու, Իսահակայ, Յակովբայ, և զաւակի նոցա արդարոց. * ամենակալ Տէր թող զմեղս իմ։

Որ արարեր զերկինս և զերկիր, և զամենայն զարդ նոցա. ամենակալ։

Որ կապեցեր զծով բանիւ հրամանի քոյ. փակեցեր զխորս. կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով սրբով. ամենակալ։

Որ ամ ինչ սարսի և դողայ յերեսաց ահի զօրութեան քո. ամենակալ։

Անբաւ է մեծվայելչութիւն փառաց սրբութեան քոյ. և սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց ի վերայ մեղաւորաց. անչափ և անքնին են ողորմութիւնք աւետեաց քոց. ամենակալ։

Դու Տր բարձրեալ գթած երկայնամիտ բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան. ամենակալ։

Դու Աստուած ոչ եդիր ապաշխարութիւն վասն արդարոցն Աբրահամու, Իսահակայ և Յակովբայ, որք ոչ մեղան քեզ. ամենակալ։

Այլ եդիր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս. զի մեղայ աւելի քան զաւազ ծովու, և բազմացան անօրէնութիւնք իմ. ամենակալ։

Չեմ արժանի հայել և տեսանել զբարձրութիւնս երկնից ի բազմութենէ անօրէնութեան իմոյ. ամենակալ Տէր։

Կորացեալ եմ ես ի բռնութենէ կապանաց երկաթից, և ոչ գոյ ինձ հանգիստ. ամենակալ։

Բարկացուցի զբարկութիւն, և չար առաջի քո արարի. կանգնեցի պատկեր և բազմացուցի զգարշութիւնս. ամենա։

Եւ արդ Տէր, խոնարհեցուցանեմ զծունր սրտի իմոյ. և հայցեմ ի քաղցրութենէ քումմէ. * ամենակալ Տէր թող զմեղս իմ.

Մեղայ Տէր, մեղայ. և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. ամենակալ:

Աղաչեմ և խնդրեմ ի քէն՝ թո՛ղ ինձ Տէր, թո՛ղ ինձ. և մի՛ կորուսաներ զիս ըստ անօրէնութե իմոյ. ամենա:

Մի՛ յաւիտեան բարկանար ինձ Տէր. և մի՛ յիշեր զչարիսն իմ. և մի՛ պարտաւորեր զիս ընդ իջեալսն ի ներքոյ երկրի չարեօք. ամենակալ:

Զի դու Աստուած, Աստուած ապաշխարողաց ես. և յիս ցո՛յց զքաղցրութիւն քո, որ անարժան եմ. ամենակալ:

Կեցուսցես զիս ըստ բազում ողորմութեան քում. և ես օրհնեցից զքեզ զամենայն աւուրս կենաց իմոց. ամենակալ:

Զքեզ Տէր օրհնեն ամ զուարթունք երկնից. և քո են փառք յաւիտեանս. ամէն:

Շարական Դկ. ԱՏ: Ամենակա՛լ. քա՛ւեա՛ զմե՛ղս ի՛մ. զի՛ Աստուած ե՛ս ա՛պա՛շխա՛րո՛ղա՛ց: Երեք կրկնել:

Այլ դարձեալ տուն.

Տէր ամենակալ Ած Աբրահամու: 281:

Շարական Դկ. ԱՏ: Եւ զՀո՛գի՛դ սո՛ւրբ. մի՛ հա՛նե՛ր յի՛նէ՛ն. զի՛ Աստուած ե՛ս ա՛պա՛շխա՛րո՛ղա՛ց: Երեք կրկնել:

Եւ դարձեալ տուն.

Տէր ամենակալ Ած Աբրահամու: 281:

Փառք Հօր և: Այժմ և միշտ:

Աղաչեմ և խնդրեմ ի քէն Տէր. թո՛ղ ինձ զմեղս իմ:

Բազումողորմ Տէր, ողորմեաց ինձ:

Աստուած, քաւեա՛ զիս զմեղաւորս:

Արարիչ իմ և յոյս Ած, գթա՛ յիս ի մեղուցեալ ծառայս, և ողորմեա՛ ինձ բազմամեղիս:

Ամէնօրհնեալ սրբուհի և միշտ կոյս Ածածին Մարիամ. բարեխօսեա առ Տէր վն իմ մեղաւորիս:

Ամենայն սրբք ԱՅ, բարեխօսեցէք առ Հայր ի յերկինս վն մեր մեղաւորացս:

Քս Որդի ԱՅ անոխակալ, ընկալ զաղաչանս մեր. զի ի քեզ են ապաւինեալ անձինք մեր:

Ցաղթող զօրութբ նը և կենդանարար և պատուական խաչի քո Տէր պահպանեա զմեզ:

Առաքեա Տէր զհրեշտակ խաղաղութե քո, որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս ի տուէ և ի գիշերի:

Եւ մարդասիրութեամբ քով յիշեա զմեզ Տէր. յիշեա զմեզ յորժամ գաս արքայութեամբ քով. և ողորմեա մեզ:

Շարական Դկ. ՍՏ: Նու փրկեա զիս. յահագին հրոյն. զի Ած ես ապաշխարողաց: Երիցս կրկնեա:

Ձայն՝ Քարոզ:

Նկեալքս ի խոստովանութի ապաշխարութե՝ հաւատով զյոյս միածնի Որդւոյն ԱՅ դիցուք ի սիրտս մեր, խնդրելով ի նմանէ զքաւութի և զթողութի յանցանաց մերոց: Վասն զի նա ինքն է նախախնամողն Ած յաւիտենական, որ եկն կամաւ Հօր ի փրկել զարարածս. և ասաց զինքն լինել քաւիչ մեղաւորաց, յոյս ապաշխարողաց, շնորհելով հանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռնեալս և զտաժանեալս մեղօք յապաշխարութի քաւութե: Արդ՝ եկայք ամենեքեան՝ խոնարհեալ անձամբ, բեկեալ սրտիւք, անկցուք և լացցուք առաջի Տեառն արարչին մերոյ, զի անցուսցէ ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութբն իւրով: Ամենակալ Տէր Ած մեր կեցո և ողորմեա:

Աղօթք:

Տէր Ած փրկութե մերոյ, որ ողորմած ես և գթած, երկայնամիտ, բազումողորմ, և զղջանաս ի վր չարեաց

մարդկան. որ ոչ կամիս զմահ մեղաւորին, այլ զդառնալ ն՟ր ի չար ճանապարհէն և զկեալն: Դու Տէր առատ մարդասիրութ՟բդ քով մխիթարեա զծառայս քո, և տուր սոցա տեղի ապաշխարութ՟ե. հաշտեա մարդասիրութ՟բ քո, և արա ղսոսա անդամս եկեղեցւոյ քում ն՟րյ: Ո՟ր զի առողջացեալք հոգւով, խոստովանութ՟բ և ապաշխարութ՟բ մտցեն յեկեղեցի քո ն՟ր. և ընդ ժողովրդեան քում քեզ հանցեն զօրհնութ՟ի և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ ս՟բյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Եւ տաղ ասեն ողբայայն Սաղմոս Ծ. է լման:

Կ8. Ցօղեա՛ յիս մշտկաւ և նբ եղէց. լուա՛ և քան զձիւն սպիտակ եղէց:

Փխ. Ողորմեա ինձ Ա՟ծ՝ ըստ մեծի ողորմութ՟ե քում. ըստ բազում գթութ՟ե քում քաւեա՛ զանօրէնութ՟իս իմ:

Առաւե՛լ լուա զիս յանօրէնութենէ իմմէ. և ի մեղաց իմոց սո՛ւրբ արա զիս:

Զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ. և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ:

Քեզ միայն մեղայ Տէր. և զչար առաջի քո արարի:

Որպէ՛ս արդար եղիցիս ի բանս քո. և յաղթեսցես ի դատելն քո:

Անօրէնութ՟բ յղացաւ. և ի մեղս ծնաւ զիս մայր իմ:

Դու Տ՟ր զճշմարտութ՟ի սիրեցեր. զանյայտս և զծածկեալս իմաստութ՟բ քով յայտնեցեր ինձ:

Ցօղեա՛ յիս մշտկաւ, և նբ եղէց. լուա՛, և քան զձիւն սպիտակ եղէց:

Լսելի՛ արա ինձ Տէր զցնծութ՟ի և զուրախութ՟ի. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք:

Դարձո՛ զերեսս քո ի մեղաց իմոց. և զա՟մ անօրէնութ՟իս իմ քաւեա՛ յինէն:

Սիրտ սուրբ հաստեա՛ յիս Ա՟ծ. և հոգի ուղիղ նորոգեա՛ ի փորի իմում:

Մի՛ ընկենուր զիս Տէր յերեսաց քոց. և զՀոգի քո սուրբ մի՛ հաներ յինէն։

Տո՛ւր ինձ զցնծութիւն փրկութեան. և հոգւով պետութեան քո հաստատեա՛ զիս։

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո. և ամպարիշտք առ քեզ դարձցին։

Փրկեա՛ զիս յարենէ Ած, Ած փրկութեան իմոյ. և ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում։

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո։

Թէ կամեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար։

Պատարագ Այ հոգի խոնարհ. զսիրտ սուրբ և զհոգի խոնարհ Ած ոչ արհամարհէ։

Բարի՛ արա Տէր կամօք քովք Սիովնի. և շինեսցին պարիսպքն Երուսաղէմի։

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան. ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս։

Ընթերցուած յԵսայեայ մարգարէէ։ Կ. 21։

Եւ կատարեսցին աւուրք սգոյ քոյ։ Եւ ժողովուրդ քո ամենեւին արդար, և յաւիտեան ժառանգեսցեն զերկիր. պահել զնորատունկ գործոց ձեռաց իւրեանց ի փառս։ Սակաւաւորն հազարաւոր եղիցի, և կրտսերն յազգ մեծ. զի ես Տէր ընդ ժամանակս ժամանակս ժողովեցից զնոսա։ 22։

Ընթերցուած յԵզեկիէլէ մարգարէէ։ ԼԶ. 24։

Այսպէս ասէ Տէր. և առից զձեզ ի հեթանոսաց, և ժողովեցից զձեզ յամենայն ազգաց. և տարայց զձեզ յերկիրն ձեր։ Եւ ցանեցից ի վերայ ձեր ջուր սուրբ. և սրբեսջիք յամ պղծութեանց ձերոց, և յամ կռոց ձերոց սրբեցից զձեզ։ Եւ տաց ձեզ սիրտ նոր, և ոգի նոր նորոգեցից ի ձեզ. և հանից զսիրտն քարեղէն ի

մարմնոց ձերոց, և տաց ձեզ սիրտ մարմնեղէն: Եւ զոգի իմ տաց ձեզ. և արարից զի յարդարութիւնս իմ գնայցէք, և զիրաւունս իմ պահիցէք և առնիցէք զնս: Եւ բնակիցէք յերկրին զոր ետու հարցն ձերոց. և եղիջիք ինձ ի ժողովուրդ, և ես եղէց ձեզ յԱծ: Եւ զերծուցից զձեզ յամենայն պղծութեանց ձերոց. կոչեցից զցորեան, և բազմացուցից զնա. և ոչ ածից ի վերայ ձեր սով: Եւ բազմացուցից զպտուղ ծառոց և զարդիւնս անդոց. զի մի եւս ընդունիցիք զնախատինս սովու ի մէջ ազգաց: Եւ յիշեսջիք զճանապարհս ձեր չարս և զգնացս ձեր զանբարիս. և տաղտկասջիք յերեսաց անօրէնութեց ձերոց և ի գարշելեացն ձերոց: 31:

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս: Ժ. 19:

Ունիմք այսուհետև եղբարք՝ համարձակութիւն ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի. զոր նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի ի ձեռն վարագուրին, այսինքն է՝ մարմնոյ իւրոյ. և քահանայ մեծ ի վերայ տանն Աստուծոյ. մատիցուք ճշմարիտ սրտիւք, լրութեամբ հաւատոց, լուացեալ զսիրտս ի խղճէ չարեաց, և մկրտեալ զմարմին ի ջուրն սրբութեան: Պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ յուսոյն. զի հաւատարիմ է որ խոստացաւն: Եւ զգուշասցուք միմեանց յորդորմամբք սիրոյ և գործոց բարեաց. և մի՛ թողցուք զժողովս միմեանց, ոպ և սովոր են ոմանք. այլ մխիթարեսցուք, և այնչափ եւս առաւել՝ որչափ տեսանիցէք զօրն մերձեալ: Զի կամակար մտօք եթէ յանցանիցեմք յետ ընդունելու գիտու ճշմարտուն՝ այնուհետև ոչ եւս պիտոյ է վս մեղաց պատարագ, այլ ահեղ ակնկալութիւն դատաստանին և նախանձ հրոյն՝ որ ուտիցէ զհակառակորդսն: Արհամարհեալ ուրուք զօրէնսն Մովսէսի՝ առանց ողորմութեց առ եր-

կուք կամ երիւք վկայիւք մեռանէր։ Իսկ ո՞րչափ սաստիկ պատժոց արժանի համարիցիք զայն, որ զՈրդին Այ առ ոտն եհար, և զարիւն Նորոյ ուխտին խառնակ համարեցաւ՝ որով և սրբեցաւն. և զՀոգին շնորհաց թշնամանեաց։ Այլ գիտեմք զայն որ ասացն. իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից, ասէ Տէր. և դարձեալ թէ՝ Դատի Տէր զժողովուրդ իւր։ Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ։ 31։

Ալէլուիա Սաղմոս ԽԱ. է ըմուն ասա։

Որպէս փափաքէ եղջերու յաղբերս ջուրց. այնպէս փափաքէ անձն իմ առ քեզ Աստուած։

Ծարաւի է անձն իմ առ քեզ, Աստուած հզօր և կենդանի. ե՞րբ եկից երեւեցայց երեսացդ Այ։

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր ի տուէ և ի գիշերի. այն զի ասէին ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուած քո։

Զայս որպէս յիշէի՝ տառապէր յիս անձն իմ. քաջալերէի զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տան Այ։

Ի ձայն ցնծութե խոստովանութե. և ի ձայն բարեկենդանութեան։

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առԱծ. խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

Անձն իմ յոյժ խռովեցաւ. վն այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, յԱհերմոնէ լեռնէ փոքուէ։

Խորք խորոց կարդացին առ քեզ ի ձայն սահանաց քոց։

Ամենայն զբօսանք քո, և ալիք քո անցին ի վր իմ։

Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութի իւր. գիշերի զօրհնութիւ նոր. և աղօթք իմ առԱծ վն կենաց իմոց։

Ասացի Այ՝ ընդունելի իմ ես. ընդէ՞ր մերժեցեր զիս. ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։

Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս թշնամիք իմ. յասել ցիս զօրհանապազ թէ ո՞ւր է Աճ քո։

Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Աստուած. խոստովանեա՛ Նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։

## Զկնի՝ Որթի՛ւ։

### Աւետարան ըստ Ղուկասու։ Է. 36։

### ԶՏէրն մեր Յիսուս Քրիստոս

Աղաչէր ոմն ի փարիսեցւոցն՝ զի կերիցէ ճաշ ընդ Նմա. և մտեալ ի տուն փարիսեցւոյն՝ բազմեցաւ։ Եւ կին մի էր ի քաղաքին մեղաւոր. իբրև գիտաց թէ բազմեալ է ի տան փարիսեցւոյն՝ բերեալ շիշ մի իւղոյ ազնուի՝ կայր յետոյ առ ոտս Նր, լայր, և արտասուօքն սկսաւ թանալ զոտս Նր, և հերով գլխոյ իւրոյ ջնջէր, և համբուրէր զոտս Նր և օծանէր իւղովն։ Եւ տեսեալ փարիսեցւոյն որ կոչեացն զՆա՝ ասէր ընդ միտս իւր. սա թէ մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ո՛վ և որպիսի՛ ոք կին մերձենայ ի սա. զի մեղաւոր է։ Պատասխանի ետ Յս և ասէ ցնա. Սիմովն, ունիմ ինչ ասել քեզ. և Նա ասէ. ասա՛ վարդապետ։ Եւ ասէ. երկու պարտապանք էին ուրումն փոխատուի. մինն պարտէր հինգ հարիւր դահեկան, և միւսն յիսուն։ Եւ իբրև ոչ գոյր Նց հատուցանել՝ երկոցունցն շնորհեաց. արդ ասա՛, ո՞վ առաւել սիրեսցէ զՆա։ Ասէ Սիմովն. ինձ այսպէս թուի՝ եթէ որում զբազումն շնորհեաց. և Նա ասէ ցնա. ուղիղ դատեցար։ Եւ դարձեա՛լ ի կինն կողմն՝ ասէ ցՍիմովն. տեսանե՞ս զայս կին. մտի ի տուն քո՝ ջուր ոտից իմոց ոչ ետուր, իսկ սա արտասուօք իւրովք եթաց զոտս իմ, և հերով իւրով ջնջեաց։ Համբոյր մի դու ոչ ետուր ինձ, սա աւասիկ յորմէ հետէ մտեալ եմ՝ ոչ դադարեաց ի համբուրելոյ զոտս իմ։ Իւղով զգլուխ իմ ոչ օծեր, սա իւղով անուշիւ օծ։ Վս որոյ ասեմ քեզ. թողեալ լիցին սմա մեղք իւր բազում, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողուցու՝ շատ սիրէ, և որում սակաւ՝ սակաւ։ Եւ ասէ ցնա. թողեալ լիցին

քեզ մեղք քո։ Եւ սկսան՝ որ բազմեալն էին ընդ Նմա՝ ասել ընդ միտս իւրեանց. ո՞վ է սա՝ որ զմեղս թողու։ Եւ Նա ասէ ցկինն. հաւատք քո կեցուցին զքեզ. երթ ի խաղաղութիւն։ 50։

Ապա սարկաւագն քարոզէ։

Եւ եւս խաղաղութե զՏէր աղաչեսցուք։

Լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց։ Ամենակալ Տր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

Եւ ապա կարդան զաղօթս զոր ասացեալ է Սրբոյն Բարսղի Կեսարու Հայրապետին է վերայ ապաշխարողաց։

Տէր Ած Հայր ամենակալ արարիչ երկնի և երկրի, որ յակնարկել բարերար կամաց քոց գոյացուցեր զամ արարածս, զերեւելիս և զաներեւոյթս, զերկնայինս և զերկրայինս. և Նախախնամութբ քով ստեղծեր զմարդն ի հողոյ. և ըստ պատկերի բարերարութեդ պատուով մեծարեցեր զնա. շնորհելով Նմա զանմահութի և զանապականութե զկենդանութիւն. ինքնիշխան կամօք և փառօք զարդարեալ պսակեցեր զնա, պարգեւելով Նմա զվայելուչն ուրախութե դրախտին փափկութե, գործել զնա և պահել, և հանապազ մշտնջենաւորիլ յանճառ պարգեւսն, և յառաջանալ օր ըստ օրէ ի գործս բարիս. և յաւելեր Նմա զպատուիրանադրութի կենսաբեր հրամանի բարերար կամաց քոց. զի յաւելուածով պատուիրանադրութե՝ առաւել յաւելուածով մեծի փառաց՝ և պատուոյ զնա ճոխացուցանէիր. և ի ձեռն բարեյօժար կամաց հնազանդութե եւս առաւել ի գերակատար կեանսդ զնա փոխէիր յիմանալի կայանս բնակութեան վերինն Երուսաղէմի։

Իսկ Նա ի ձեռն օձապատիր չարին խաբէութե զգործի կենացն և զպատճառս բարեացն անձնիշխանութբն ի կողմն բանսարկուին դարձուցեալ, և ինքնայօժար

կամօք գործակցեալ խաբէութ՟ն չարին, ի բաց մերժեցաւ ի քումմէ արարչագիր և կենսաբեր պատուիրանագրու՟էդ. և ի ներքոյ անկեալ չարին հնազանդութ՟ն, նախամեծար առնելով զվրիպական բանս պատրող թշնամւոյն քան զքո անձագիր օրէնսդրութ՟իդ, կնոջն լսելով խրատու, կորոյս զտիրական վեհ իմաստութ՟ին՝ ոտից հնազանդեալ գլխոյն առաջնորդական տէրութեան, անհանճարաբար և անխորհրդապէս ի բաց մերկացաւ զբոցաճաճանչ լուսեղէն զարդարանսն: Եւ հակառակաբար հայթայթանօք ջանայր ծածկել զամօթալիր մերկութիւնն պատառատուն տերեւովն՝ անյուսացեալ ի զօրութ՟ի ամենակալիդ. կարծէր թաքչել յամենատես գիտութ՟է անձութ՟ն քոյ՝ պատճառելով զպատճառս մեղաց, եթէ կինս զոր ետուր ինձ՝ սա եղեւ ինձ պատճառ: Վ՟ն որոյ զցաւոցն և զանիծիցն ժառանգեաց զկեանս, ի ներքոյ անկեալ մահու և ապականութեան, ըստ անսուտ անձային հրամանիդ, ասելով՝ եթէ Յաւուր յորում ուտիցէք՝ մահու մեռանիցիք. որով թագաւորեալ տիրեաց ի վերայ մեր իշխանն մահու, և զբնութիւնս մեր գրաւեալ ինքեան հնազանդութեամբ պահակն կորստեան, և զամենեսեան ծառայս իւր արարեալ, վարէր ի գործս խիստս ծառայութեան դժոխոց:

Իսկ դու Հայր բազմագութ և բարերար, յառատ և անբաւ մարդասիրութենէ քումմէ յաղթեալ՝ ոչ հանդուրժեցեր տեսանելով զանարատ ձեռին քո ստեղծուածն յայնպիսի վտանգաւոր աղէտս տարակուսանաց: Այլ բարեգործեալ հայրական խնամով սիրոյ քոյ գթացար յորդիս մարդկան, և այցելու լեալ կորուսելոյն՝ առաքեցեր ի խնդիր զմիածին և զէակից Հօր զծոցածին և զանբաժանելի Բանն Ա՟ծ, որ եկն և էառ զկերպարանս գձձութեան աղքատացեալ բնութ՟ս մերոյ, ներմարդացեալ ի ն՟բ և յանարատ կուսէն Մա-

ըհամայ Աստուածածնէն, և յանձն էառ զյանցանս սխալման մեղացն Ադամայ. և ա՟ծախնամ տեսչութ՟բն իւրով տնօրինեալ զամենայն կիրս մարդկայինս յանձին իւրում՝ բաց ի մեղաց, եղև պտուղ մարդկութ՟ես։ Հովիւն երկնաւոր եկն խնդրել զոչխարն մոլորեալ ի վ՟ր լերինն բարձու. և առեալ՝ եդ զնա ի վ՟ր կենսաբեր ուսոց իւրոց, դարձուցանելով ի հայրենի բնակութ՟ին, ուստի արտաքսեցաւն տարագրութեամբ. և զանիծից և զցաւոց ելոյծ զդատապարտութ՟ի իւրով պատժական և անպարտական մահուամբն։ Եւ զանկեալն ի ձեռս աւազակացն վերստին ողջացոյց պատելով զվէրս Ն՟ր. արկանել ի վ՟ր նորա ձէթ և գինի, և աւանդելով ի պանդոկիս ամենընկալ կաթուղիկէ եկեղեցւոյ. ուր ժողովէ զա՟մ ցրուեալսն և զկեղեքեալսն, և միաւորէ յորդէգրութ՟ի ժառանգութ՟ե Հօրդ երկնաւորի. և հաշտարար և մեղսաքաւիչ իւրով պատարագաւն որ ի վ՟ր խաչին՝ բոլորապտուղ զինքն քեզ ընծայեցոյց ՚ընդ մեր. և վ՟ն մերոյ պարտեաց զանձն իւր փոխանակելով։ Եւ դարձեալ վերստին ստացաւ զմեզ ն՟մ արեամբն իւրով, և ազատեաց ի ծառայութ՟է բանսարկուին, պատառելով զմուրհակ դատապարտութեան յանցանաց մերոց, որ կայր մեզ հակառակ. եբարձ զայն ի միջոյ և բեւեռեաց ընդ խաչափայտին. մերկեաց զիշխանութ՟իս և զպետութ՟իս մեքենաւոր զօրութ՟ե Ն՟ր. յայտ յանդիման խայտառակեալ նշաւակեաց զնա յանձին իւրում զօրութեամբ ա՟ծութ՟բ իւրով։ Եւ իշխանական պետութ՟բ իջեալ ի ստորին սանդարամետս դժոխոց, ազարտելով զզօրութ՟ի բռնութ՟ե կարծեալ իշխանին աշխարհի, որ բարձրացեալ և լեռնացեալ ամբարտաւանութ՟բ ունէր գրաւեալ ընդ իւրեւ զբնութիւնս մարդկութ՟ես. որով ժամանեալ եհաս թագաւորն բարձանց, հզօրն ի պատերազմի, և եղ ի բարձրութ՟իս հպարտացելոյն. և կապեաց զհսկայն՝ աւերելով զա-

մուրս նր, և յափշտակեաց զգանձն նր. և դարձեալ եմոյծ զարքունական պատկերն ի դրախտն ուստի եհան, զեօթնեկին շնորհսն տալով՝ զոր կորոյսն եօթնեակ յանցանօք: Քանզի չինեաց իմաստութիւնն Հօր տուն զխորանն Դաւթի, զանկեալն և զկործանեալն վերստին նորոգեաց, վն լինելոյ նորա ծաղիկ յարմատոյն Ցեսսեայ. և հանգեաւ ի նա Հոգի նբ, որ ի մեզ խորհըրդածի, հոգի իմաստութե և հանճարոյ. հոգի գիտութե և ածպաշտութե. և լցեալ եղեւ հոգւով երկիւղի իմաստութե: Վն զի ուր երկիւղ Տեառն է՝ անդ պատուիրանաց պահպանութի. և ուր պատուիրանաց պահպանութի՝ անդ և ոչ ինչ յանցանք: Քանզի զյանցանս մեր 'էառ, և զցաւս մեր եբարձ. և զքեզ միայն ծանոյց մեզ հաւատեաւ Աձ կենդանեաց և մեռելոց, առնելով խաղաղութի արեամբ խաչին իւրոյ որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի ի նոյն: Եւ միջնորդական նբ արեամբն իւրով հաշտեցոյց զկամս քաղցրութե սիրոյ քո առ արարածս: Քանզի բարձաւ միջնորմն և լուծաւ կրճիմն, որ կայր խափան և արգել մերոյ փրկութե. և տեղի տուեալ սրովբէից շուրջանակաւ բոցեղէն սրոյն, որ պահէր զճանապարհս ծառոյն կենաց. վն զի ընդ մեզ եղաւ ճանապարհ և ճշմարտութի և կեանք Ցն. որ առաջնորդեաց մեզ ընդ երկնաչու պողոտայն փրկաւէտ կենացն. և անցոյց ի վեր ընդ դրունս երկնից. և նստոյց գեր ի վերոյ իշխանութեց և պետութեց: Եւ խրախոյս տուեալ հաւատացելոց՝ ասէ. Քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի. և Ետու ձեզ իշխանութի կոխել զօձս և զկարիճս և զամ զօրութի թշնամւոյն: Առ որս և ասել մեզ համարձակապէս՝ թէ Ո՞ւր է մահ յաղթութի քո. ո՞ւր է դժոխք խայթոցք քո. քանզի եղաք փրկեալք և ազատեալք արեամբ միածնի Որդւոյ քո Ցնի Քնի Տեառն մերոյ, ընդ որում քեզ Հօր և Հոգւոյդ սբյ վայելէ փառք, իշխ:

խաղաղութի ամենեցուն։

Աստուծոյ երկրպագեսցուք։

Նու արդ՝ Տէր Ած մեր բարերար և բազմագութ, որ այսպիսի անճառ և անպատում բարեաց հաղորդս զազգս մարդկան արարեր. որով մեծարեցեր զմեզ ի ձեռն միածնի քոյ տնօրէնութեան. որ եկեալ կատարեաց զնմ գրեալս օրինաց և մարգարէից և քաղցրուսոյց վարդապետութբ իւրով ժողովեաց զցրուեալ ազգս մարդկան. և միացուցեալ միաւորեաց զամենեսեան միաբան սիրով ի մի հաւատս և ի մի յոյս կոչման քում արարչական խնամոց գթութեցդ. և հորդեաց ճանապարհ փրկութե նմ տիեզերաց, պարգեւելով զառհաւատչեայ կենդանութի Հոգւոյդ նքյ նորածնելոց նոր ժողովրդոց որդւոց առագաստի. կազմելով դեղ և սպեղանիս ապաշխարութե՝ իւրով առատ ողորմութբն և մարդասիրութբն, ասելով՝ եթէ Ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութի. և դարձեալ՝ թէ Եկայք առ իս նմ աշխատեալք և որք ունիք բեռինս ծանունս մեղաց, և ես հանգուցից զձեզ։ Եւ յորդորական նծախօս ձայնիւն յորդորեալ քաջալերեաց զամենեսեան ի հնազանդութի նծային լծոյ ծառայութե, ասելով՝ եթէ Առէք զլուծ իմ ի ձեզ, և ուսարուք յինէն՝ զի հեզ եմ և խոնարհ սրտիւ, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է և բեռն իմ փոքրոգի։

Եւ արդ մեք ծառայքս քո և ժողովուրդ, խաշն արօտի քո, գինք արեան միածնի Որդւոյ քո՝ ժողովեալք ի գաւիթ սբյ եկեղեցւոյ քո, և խոնարհեալ աղաչեմք զբազմագութ և զառատ մարդասիրութի քո, և հայցեմք ի քաղցրութէ քումմէ զքաւութի և զթողութի մեղաց մերոց։ Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր աղաչանաց մերոց. և գթութբ ողորմութե քո թող մեզ զյանցանս մեր զկամայ և զակամայ. և արա զմեզ որ-

դիս լուսոյ և որդիս տուընջեան, զորս գրեցեր ի դիր որդէգրութ՟ե ժառանգութ՟ե սր՟ցն ի լոյս, որ չարին պատրանօք որսացեալ եղաք կամօք մերովք ի մեղսասէր և ի կամակոր ն՟ր կամս, որոշելով ի հայրախնամ արարչական սիրոյ քո, տարագիր առնելով զանձինս մեր յորդէգրութենէ ժառանգութ՟ե Հօրդ երկնաւորի. և ոչ պահեցաք զգուշութ՟բ զստացուածս և զգանձս հոգեւոր մեծութ՟ե՝ զոր ն՟բ աւազանաւն ստացաք, զանմահութ՟ի և զմաքրութ՟ի և զանմեղութ՟ի և զարդարութիւն և զհոգեւոր մեծաշահ փարթամութ՟ի: Այլ անառակ վարուք մերովք ծախեցաք զհայրենատուր մեծութ՟ին, մինչեւ ժամանեաց ի վ՟ր մեր յետին աղքատութ՟ի, և սովամահ չքաւորութ՟բ նուաղեցան անձինք մեր: Եւ յոյս ակնկալութ՟ե մերոյ չիք այլ ոք բաց ի քէն. զի դու ես Տ՟ր Ա՟ծ մեր, և զանուն քո անուանեմք զօրհանապազ: Հա՛յր երկնաւոր, հայեա՛ց ի դարձում՟ն ծառայից քոց, և ընկա՛լ զզղջում՟ն խոստովանութ՟ե մերում, ո՟պ զանառակ որդւոյ ընկալար զդարձում՟ն, և վերստին զարդարեցեր զնա արփիափայլ և լուսեղէն զգեստիւն, և առաջին պատմուճանին ծածկութիւ, զոր ինքեան կամակոր և անառակ վարուքն մերկացաւ: Վ՟յ և մեք նորին յօժարութ՟բ զղջացեալ սրտիւ և բեկեալ անձամբք դառնամք առ քո գթութ՟իդ, ասելով՝ Հա՛յր, մեղաք յերկինս և առաջի քո, ոչ եւս եմք արժանի կոչիլ որդի ս՟բ անուանդ քոյ. արա՛ զմեզ իբրեւ զմի ի վարձկանաց քոց: Հայեա՛ց Տէր ողորմութ՟բ և քաղցրութ՟բ կամօք քովք. և հայրական գթով բարերարութ՟բդ քով ե՛լ ընդ առաջ մեր. և զգեցո՛ մեզ զառաջին պատմուճանին զլուսափայլ վերարկուն, զոր զգեստաւորեալ զարդարեցաք աւազանին լուսափայլ պայծառութ՟բն: Մերկեա՛ ի մէնջ Տէր զհնացեալ պատմուճան չարին ծածկութից, զոր ծուլութ՟բ և անառակ վարուք մերովք զգեցաք, և օտարացաք ի հայր-

ական խնամոց քոց: Տո՛ւր մեզ Տէր Աստուած մեր զքո ուրախարար և զմարդասիրական համբոյրդ, տալով զկնիք սրբութեան ի հոգիս մեր. և զմատանին արդարութեան տպաւորեա՛ յաջոյ ձեռին մերում, միշտ ունելով մեզ զնշան և զդրոշմն ուխտին սրբութեան, զոր ուխտեցաք միջնորդութեամբ մարմնոյ և արեան Որդւոյ քոյ սիրելւոյ: Արբո՛ մեզ զբաժակն ուրախարար, զոր խառնեցեր ի խառնարան սրբութեան ամբիծ ընկալ սեղանոյն քաւութեւ խաչին, յորում զենաւ զգենումն ճշմարիտ պատարագին եզինն պարարակի, և հրաւիրեցեր ի պատրաստեալ ճաշ հարսանեաց միածնի Որդւոյ քոյ սիրելւոյ՝ զպակասամիտսն ի հանճարոյ, յաստուածային երկեղէն և ի պատուիրանին զգուշութենէ, և զանզգամսն պատուիրեցեր թողուլ զանզգամութեան ճանապարհն:

Եւ արդ՝ տո՛ւր մեզ զհացն սրբութեան մարմնոյ միածնի քո, որով կեցցուք. և արբո՛ զմեզ գինւով անուշութեամբ ուրախութեամբ սրբոյ բաժակին. զի արբեալ միշտ ուրախասցուք յանսպառ ուրախութիւնդ. և վայելեսցուք յանկապուտ ճոխութիւնդ՝ յերջանիկ յօթեւանս Հօրդ երկնաւորի. զոր պատրաստեցեր ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց. և ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ, այժմ և:

Զկնի աղօթիցն ասեն ի Բեմ՝

Սաղմոս ՃԺԷ:

ԿԹ. Բացէք ինձ զդրունս արդարութեան. զի մտից ընդ այն և խոստովան եղէց Տեառն:

Փխ. Խոստովան եղերուք Տեառն, զի բարի է. զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Ասասցէ տունն Իսրայէլի. զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Ասասցէ տունն Ահարոնի. զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

*Ասասցեն երկիւղածք Տ՟ն. զի յաւիտեան է ողոր-մութի նորա:*

*Ի նեղութե իմում ես առ Տէր կարդացի. և լուաւ ինձ յանդորր:*

*Տէր է իմ օգնական, և ես ոչ երկեայց. զի՞ արասցէ ինձ մարդ:*

*Տէր է իմ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ:*

*Բարի է յուսալ ի Տէր՝ քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տէր՝ քան յուսալ յիշխանս:*

*Ամենայն ազինք շրջեցան զինեւ. և անուամբ Տեառն յաղթեցի նց:*

*Շրջելով շրջեցան զինեւ, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տ՟ն վանեցի զնոսա:*

*Շուրջ եղեն զինեւ որպ մեղուք. վառեցան, բորբոքեցան որպ փուշք ի հուր. և անուամբ Տ՟ն մերժեցի զն՟ս:*

*Ի մերժելն դրդուեցայ, և եղէ մերձ ի գլորել. և Տէր ընկալաւ զիս:*

*Զօրութի իմ և օգնութի իմ Տ՟ր. և եղեւ ինձ ի փրկութի:*

*Ձայն ցնծութե փրկութե ի յարկս արդարոց:*

*Աջ Տ՟ն արար զօրութի. աջ Տ՟ն բարձր արար զիս. և աջ Տեառն արար զօրութիւն:*

*Ոչ մեռայց, այլ կեցից. և պատմեցից զգործս Տ՟ն:*

*Խրատելով խրատեաց զիս Տ՟ր. և ի մահ ոչ մատնեաց.*

*Բացէք ինձ զդրունս արդարութե, զի մտից ընդ այն՝ և խոստովան եղէց Տեառն:*

Ապա առեալ քահանային զաղաշխարողն, եւ մտանեն յեկեղեցին. եւ ասեն Սաղմոս ՂԹ:

*Աղաղակեցէք առ Տէր ամ երկիր. ծառայեցէք Տ՟ն ուրախութեամբ:*

*Մտէք առաջի նորա ցնծութբ. ծաներո՛ւք զի նա է Տէր Աստուած մեր:*

*Նա արար զմեզ և ոչ մեք էաք. մեք ժողովուրդք ձեռին նորա, և խաշն արօտի նորա:*

Մտէք ընդ դրունս նորա խոստովանութբ. և օրհնու-
թեամբ ի յարկս նորա:

Խոստովան եղերուք Տռն, և օրհնեցէք զանուն նր:

Քաղցր է Տէր. յաւիտեան է ողորմութի նր. յազգէ
մինչեւ յազգ է ճշմարտութիւն նորա:

Զկնի սարկաւագն քարոզէ. Սուրբ եկեղեցեաւս: Աղ. Ի
մէջ տաճարիս:

Եւ ելեալ այս կարգաւ՝ օրհնէ առաջնորդն զաշխարհականն եւ
զժողովուրդն, ասելով:

Օրհնեալ է անբաւ ողորմութի և մարդասիրութի Քրիստոսի Այ մերոյ, որ արժանաւորեաց զմեզ խաղաղութբ հասանել ի փառաւորութիւն մեծապատիւ և խորհրդական աւուրս այսորիկ, յորում եղեն խնդութն աւետիք և փրկութի ամ տիեզերաց: Վն զի այսօր կենարարն մեր խոնարհեալ վն փրկութն մերոյ՝ առ ի լուանալ զոտս աշակերտացն, և արարիչն երկնի և երկրի՝ ծառայական կերպիւ խոնարհութբ և սարսափելի տնօրէնութբ իջեալ ի ծունկս հողեղինացն, և զգեստիւն զոր սփածաւ՝ ջնջեալ մաքրազարդեաց զգարշապարս առաքելոցն, տալով նց զօրութի և իշխանութի՝ կոխել զօձս և զկարիճս և զամ զօրութի թշնամւոյն: Այսօր մարգարէական լցաւ բանն՝ որ ասէ. Պահել զնորատունկս գործոց ձեռաց իմոց, զի ես Տէր ընդ ժամանակս ժամանակս ժողովեցից զնոսա: Այսօր Տէրն մեր բաշխեալ զանապական մարմին և զարիւն իւր նբ՝ ի քաւութի և ի թողութի ամ հաւատացելոց: Այսօր կատարումն արարեալ գրաւական կտակիս՝ հնոյ աւանդութեն մովսիսական օրինացն տուչութն. և սկզբնաւորեալ զնորոյ խորհրդական շնորհացս աւետարանական աւանդութեն նորոյ ուխտիս առատութն, և հոգեւորական բարեացն առատաբաշխ ողորմութն: Օրհնեալ է անբաւ ողորմութիւն և մարդասիրութին Քնի Այ մերոյ, որ արժանաւորեաց զձեզ այսպիսի մեծի

ւուրս, և շնորհեաց ձեզ բարեպաշտութ՟ կատարել զընթացս հոգեւոր ճգնութեան, և յօժարութ՟ ճաշակել զբաժակ ապաշխարութեան։ Արժանաւորեսցէ զձեզ լսել զամենահեշտ բարբառն՝ եթէ Եկա՛յք առ իս ա՟մ աշխատեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ։ Եւ փոխանակ սրբապահութե՟ ձերոյ՝ զերկնաւորն և զյաւիտենականն պատրաստեսցէ ձեզ կերակուր։ Եւ փոխանակ ժուժկալութե՟ ձերոյ զոր ծարաւեցայք՝ յանմահական աղբերէն ըմպել ջուր։ Եւ փոխանակ գիշերային տքնութե՟ ձերոյ՝ ընդ հրեշտակս օրհնել զամէնօրհնեալն քս՟։ Եւ փոխանակ անլուայութե՟ ձերոյ՝ անթառամ պսակօքն զարդարեսցէ զձեզ։ Եւ փոխանակ գետնախշտութե՟ ձերոյ՝ լսել ձայնի Որդւոյն Այ՟, եթէ Բազմեցուցից զձեզ ընդ աջմէ Հօր իմոյ, և անցեալ պաշտեցից զձեզ։ Եւ փոխանակ գթութե՟ և ողորմութեան ձերոյ որ առ աղքատսն՝ յաջակողմանն դասեցուսցէ զձեզ, և արժանի արասցէ զձեզ լսել զամենահեշտ բարբառն, եթէ Եկա՛յք օրհնեալք Հօր իմոյ՝ ժառանգեցէ՛ք զպատրաստեալ ձեզ արքայութի՟ն. զի զոր արարէք միում ի փոքրկանցս յայսցանէ՝ ինձ արարէք։ Արդ՝ բարեգութն Ած՟ Քրիստոս Որդին Այ՟, որ այսօր խոնարհեցաւ յոտս աշակերտացն՝ լուանալ զգայթագղութի՟սն որ ի նս՟, և Նորա համարձակութ՟ և բազում յօժարութ՟ քարոզեցին զբանն կենաց. նոյն ինքն մարդասէրն Ած՟ արժանի արասցէ զձեզ հոգեւոր լուացման, աստուածային բազկօքն մաքրել զաղտ յանցանաց բանսարկուին, և յաղթել զօրութե՟ թշնամւոյն. կոխել զիժն և զքարբն, թեւարկելով ի վ՟ր ն՟ր առաքելական գնացիւք. և ժամանել ի խորանս երկնաւոր լուսոյն ի քս՟ Յս՟ ի Տէր մեր. որում փառք և երկրպագութի՟ և գոհացողական օրհնութի՟ ընդ Հօր և ընդ Հոգւոյն սբ՟յ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

կամ կարդայ եպիսկոպոսն կամ աւագերէցն ըստ այս օրհ-նութիւն ժամատան եւ ապաշխարողաց եւ ամենայն ժողովրդ-դեան:

Օրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն ի բարձունս Հայր եւ Որդի եւ Սբ Հոգին: Մեծ գոհութի երից անձանց եւ մի ածութն՝ անսահմանելւոյ, անփոփոխելւոյ, ամենակարողի, անմահի, ամենակեցուցանողի, ամենապարգեւի, անճառի. պատիւ, երկրպագութիւն եւ մշտնջենաւոր փառաբանութիւն յերկնաւորաց եւ յերկրաւորաց, ի հրեշտակաց եւ ի մարդկանէ, ի սերովբէից եւ ի քերովբէից, ի տէրութեանց եւ յիշխանութեանց. Երրորդութեան երրեակ եւ մի աստուածութեան, որ էնն յէութն իսկութեան համագոյական ածութն հարթ եւ հաւասար ի խորութի եւ ի բարձրութիւն՝ ի լայնութի եւ յերկայնութի: Որ իւրով կանխագէտ զօրութեամբն արար զերկինս եւ զերկիր. ձգեաց զերկինս առանց հիման խորանաձեւ հաստատութբն, եւ արկ ի վր նր զբազմութի ջուրց. գնան հրեղէնքն ընդ ջուրսն եւ ոչ շիջանին, զի նմա ամ ինչ կարելի է. սահմանեաց զծով աւազով. բուսոյց յերկրէ զծառս եւ զծաղիկս՝ հանդերձ սերմամբք. պաճուճեաց չորիւք եղանակօք զբոլոր շրջանս տարւոյն. եդ զնս հակառակ անհաշտելի եւ ի սէր անքակտելի. արար ազգի ազգի զեռունս ի ծովու, եւ զթռչունս թեւաւորս, եւ բազում գազանս վայրենիս: Ապա յետ ամենեցուն զմարդն արար ձեռօք իւրովք ըստ պատկերի իւրում, եւ փչեաց ի նա շունչ կենդանի, եւ եղեւ մարդն ի հոգի կենդանի. եւ զամ ինչ հնազանդ արար ի ներքոյ ոտից նր, եւ կացոյց միջասահման՝ կենաց եւ մահու. եւ ետ նոցա պատուէր չճաշակել ի պտղոյ ծառոյն գիտութն, եւ ի պահել պատուիրանին՝ խոստացաւ նց զվերնայարկ վերինն Երուսաղէմ: Իսկ բանսարկուն սատանայ աման չարին գտեալ զօձն, եւ նովաւ խօսեցաւ ընդ կնոջն ի պատճառս ածա-

նալոյն, ետ նմա ուտել ի ծառոյն գիտութ՟ե. և մերկացաւ ի լուսեղէն փառացն: Իսկ բարերարին քաղցրաձայնեալ ասէ. Ո՞ւր ես Ադամ. և ի գալ ն՟ր ի դրախտն նկարեցաւ գալուստն իւր յաշխարհս. և ձայն ոտից ն՟ր՝ դրոշմեաց զՅովհաննէս մկրտիչ. իսկ Ադամայ անզղջութ՟բ դիմեալ ի մահ՝ զանպարտականն Ա՟ծ պատճառս իւրոյ կորստեանն համարեալ՝ ասէր, թէ Կինս զոր ետուր ցիս՝ սա յանցոյց զիս: Իսկ դատաւորն ստուգութ՟բ անէծ զն՟ա և զխաբսակարս ն՟ց. և եհան զն՟ա արտաքոյ դրախտին: Սակայն ոչ ժուժկալեալ ողորմութ՟բ՝ ընկալաւ զպատարագն Աբելի. անմահացոյց զզաւակ նորա զենովք. պահեաց զՆոյ ի տապանին բազմահոյլ կենդանեօք. և զամբարշտեալն կայէն իւրովք ծննդովքն սահանաբաց անձրեւօք ընջեաց: Օրհնելով զտասներորդն զԱբրահամ՝ խոստանալով նմա երդմամբ, եթէ Բազմացուցից զզաւակն քո՝ ո՟պ զաստեղս երկնից. բազում նշանօք և արուեստիւք խօսեցաւ առ հարսն մեր՝ որք արարին ազգի ազգի նշանս. առաքեաց զհրեշտակս վերակացուս: Իսկ իբրեւ եկն լրումն ժամանակին՝ խօսեցաւ ընդ մեզ Որդւովն, որ եկն և մարմնացաւ ի ս՟բ կուսէն, և Եմուտ ընդ օրինօք, զի զորս ընդ օրինօքն իցեն՝ ազատեսցէ. կատարեաց զօրէնս. ելից զտառս մարգարէիցն: Արար նշանս և արուեստս. լուսաւորեաց զկոյրս. առողջացոյց զանդամալոյծս. հալածեաց զդեւս: Ապա ի կատարումն նշանացն՝ շնորհեաց զյարութիւն Ղազարու չորեքօրեայ կոչմամբ ի թաղմանէ: Նստաւ ի վ՟ր յաւանակի իշոյ, որ է խորհուրդ կոչման Հրէից և հեթանոսաց. վ՟ն որոյ և մանկտին ովսաննա երգէին, օրհնութ՟ի որդւոյ Դաւթի: Իսկ ի սերկեան աւուրս՝ գայ կամաւորութ՟բ ի չարչարանս. յանձն առնու մատնիլ յանօրէն աշակերտէն: Ցերեկոյ հասեալ ժամու աւուրն՝ զոտս երկոտասանիցն՝ զխոնարհութ՟ի ուսուցանելով ն՟ց, նա և ս զՅուդային յառաջ լուանայր. որ և

աշխատեցաւ մինչեւ ցգաւիթ քահանայապետին. վ՟ն որոյ և Յուդա ի միտս իւր ասէր. Թէ բիւր անգամ մեծարես զիս՝ ոչ եմ մոռանալոց զերեսուն արծաթիսն։ Արդ ի յայսմ ահաւոր և սքանչելագործ տօնիս՝ եղև ուրախութ՟ի հրեշտակաց և մարդկան։ Այսօր բարձաւ ցանկ անիծիցն Ադամայ։ Այսօր ազատեցաք ի ծառայութ՟է սատանայի։ Այսօր արարիչն արարածոց ի յերկրի երեւեցաւ։ Այսօր Ա՟ծն սերովբէից ծառայի զգենու զկերպարանս։ Այսօր անհասն քերովբէից՝ խոնարհի և լուանայ զոտս աշակերտացն։ Այսօր արկողն զլոյս ո՟պ զօթոց՝ զգենու ղենջակ։ Այսօր աթոռակիցն Հօր՝ ընդ հողեղէնս բազմի։ Այսօր փառակիցն Ս՟բ Հոգւոյն՝ յանձն առնու մատնիլ ի դատաստան մահու։ Այսօր կենագործողն ամենեցուն՝ ընդ մահուամբ սահմանի։ Այսօր վէմ՟ն առանց ձեռին հատեալ, և ինքն լեռնացեալ ելից զտիեզերս։ Այսօր բաշխէ զմարմին և զարիւնն, և յայտնէ զանօրէն աշակերտին զխորհուրդն։ Այսօր կապեալ լինի արձակիչն կապելոց, զոր երկինք ոչ բաւէին տանել։ Այսօր օրհնէ զառաքեալսն ի դպրութ՟ի քահանայութ՟ե։ Այսօր գտանի դրամ՟ն կորուսեալ, որ է թագաւորական պատկերն։ Այսօր եղեւ ուրախութ՟ի հրեշտակաց վ՟ն գիւտի մոլորեալ ոչխարին։ Այսօր ճշմարտապէս հաղորդեցաք մարմ՟նոյ և արեան Տեառն։ Այսօր օրհնեցան քահանայապետք ամենայն հանդերձ քահանայիւք։ Այսօր լուսազարդեցան թագաւորք հանդերձ ա՟մ զօրութ՟բն իւրեանց և իշխանութ՟բ՝ ընդ Դաւթի և ընդ դասագլուխս Ն՟ր։ Այսօր օրհնեցան ծերք և տղայք, երիտասարդք և կուսանք՝ ի ձեռն կապողին և արձակողին։ Այսօր դրախտն բանի մարդկութ՟ես, և ա՟մ արարածք ցնծան յանմահական կեանս։ Այսօր ի հին տրտմութ՟ց փոխեցաք, և ամենեքեան նորոգեցաք ի Ք՟ս։ Այսօր ետ իշխանութ՟ի կոխել զօձս և զկարիճս և զա՟մ զօրութ՟իս թշնամւոյն։ Այսօր ի ձեռն

աւազանին լուսազարդեալք մաքրեցան հաւատացեալք յաղտոյ մեղաց։ Արդ եկեսցէ մխիթարութիւն Եղ՟էմի ի վ՟ր ձեր, որ ասէ. Մխիթարեցէ՛ք, մխիթարեցէ՛ք զժողովուրդ իմ, ասէ Ա՟ծ. քահանայքդ խօսեցարո՛ւք ի սիրտ Եղ՟էմի. մխիթարեցէ՛ք զդա, զի լի եղեւ տառապանօք. թողեալ լիցին դմա մեղք իւր։ Դարձեալ՝ եթէ Զճանապարհս սրտի ն՟ր տեսի և բժշկեցի, և ետու նմա մխիթարութի՟, և փոխանակ մոխրոյն՝ օծութի՟ ուրախութե՟։

Արդ՝ բարեգութն Ա՟ծ ուրախացուսցէ զձեզ զամենեսեան, և երկնաւոր պարգեւացն արժանի արասցէ։ Օրհնեսցէ Տէր Ա՟ծ զհայրապետս. ընդ սրբ՟յն Գրիգորի և ընդ այլ սր՟ց հայրապետացն մասնակիցս արասցէ։ Օրհնեսցէ Տէր Ա՟ծ զքահանայս ընդ քահանայութե՟ Մելքիսեդեկի, և զարդարեսցէ ընդ տեսլեանն Մովսէսի ի զարդ անկողոպտելի, ըստ պատմուճանին Ահարոնի. և հոգիազարդեսցէ ըստ առաքելոցն խորանակցութե՟. և արասցէ մշակս առանց ամօթոյ, զի յերեւել հօտապետին՝ ընդունիցին զանթառամ փառաց պսակն։ Օրհնեսցէ Տէր Ա՟ծ զմիաբան ժողովուրդս, և թեթեւացուսցէ զբեռինս մեղաց ձերոց։ Օրհնեսցէ Տ՟ր Ա՟ծ զտունս զայս և զբնակութի՟ս, և զհիմունս եկեղեցւոյս՝ ըստ այնմ որ ասէ. Այսօր եղեւ փրկութի՟ տանս այսորիկ՝ ըստ աւետեացն Աբրահամու հանդերձ ազգաւ և ժառանգակցօք իւրովք։ Օրհնեսցէ Տ՟ր Ա՟ծ զպասաւորս տանս այսորիկ, զլուսարարս, զդռնապանս, և անթառամ պսակացն արժանիս արասցէ։ Օրհնեսցէ Տ՟ր Ա՟ծ զխոստովանողսդ և զապաշխարողսդ, և թողցէ զյանցանս ձեր՝ ո՟պ զպոռնկին և զմաքսաւորին։ Օրհնեսցէ Տէր Ա՟ծ զծերսդ՝ ո՟պ զծերսն իսրայէլեան բանակին, և ո՟պ զծերունին Սիմէոնի՝ որ զԱ՟ծորդին ի գիրկս իւր ընկալաւ, և հայցէր արձակիլ ի խաղաղութիւն։ Օրհնեսցէ Տէր Ա՟ծ զտղայս ձեր՝ ո՟պ զտղայս Եբրայեցւոց՝ որք առին ոստս արմաւենեաց, և ելին ընդ առաջ ն՟ր.

ազաղակէին և ասէին. Ովսաննա օրհնեալ որ գաս յանուն Տեառն։ Օրհնեսցէ՛ Տէր Ած զերիտասարդս՝ ոչ զերանելին Յովսէփ, որ հաճոյ եղեւ Այ և օրհնեցաւ ի նմանէ։ Օրհնեսցէ՛ Տէր Աստուած զկանայս՝ որպէս զկանայս իւղաբերս՝ որ եկին ի գերեզման փրկչին և լցան աւետեօք սուրբ յարութեան Տեառն։ Օրհնեսցէ՛ Տէր Աստուած զժամակոչ քաղաքիս մերոյ. զի որպէս ձայն հրեշտակապետի յաղթող է առ ի զարթուցանել զննջեցեալս ի մահահանգիստ քնոյ, նոյնպէս և ձայն սորա յաղթող է առ ի հալածել զլեգէոնսն ամենայն զօրօք իւրովք։ Օրհնեսցէ՛ Տէր Աստուած զվերակացու տանս, զմշակս և զեզինս, զխաշինս և զհօտս սորա։ Օրհնեսցէ՛ Տէր Ած զանդաստանս մեր, և բուսուսցէ զամ բոյս շահեկանութն. ի բաց արասցէ զամ վնաս և զբիծ, զհրայրեաց և զդալուկ, զժանտ, զկարկուտ, զմարախ, զջորեակ, զսառն եղեմնածին, և զամ ցաւս և զխաշնամահ ի մարդոյ և յանասնոյ. և հալածեսցէ զլեգէոնսն ամ զօրօքն իւրովք և առաքեսցէ յանդունդս. և զհրեշտակ խաղաղութն առաքեսցէ և օրհնեսցէ զամենեսեան։ Օրհնեսցէ՛ Տէր Ած զամենեսեան զմիաբան զարսդ և զկանայսդ, զծերսդ և զտղայսդ, և փրկեսցէ զձեզ զամենեսեանդ յամ չարեաց. և ամրացուսցէ ընդ հովանեաւ աջոյն իւրոյ, և երկնից արքայութն արժանիս արասցէ։ Օրհնեսցէ՛ Տէր Ած զընակութի քաղաքիս մերոյ, և հալածեսցէ զամ չար և զզօրութի բռնացեալ թշնամւոյն։ Օրհնեսցէ՛ Տէր Ած զկրօնաւորսդ ընդ սբյն Եղիայի, և ընդ Անտոնի ժառանգակիցս և մասնակիցս արասցէ։ Օրհնեսցէ՛ Տր Ած զժողովուրդս նբ եկեղեցւոյս մերոյ առ հասարակ՝ զարսդ և զկանայսդ, զերիտասարդսդ. և երեւեցուսցէ զերեսս իւր ի ձեզ։ Օրհնեսցէ՛ Տէր Ած զխոստովանողսդ և արժանի արասցէ զձեզ լուացման նբ առաքելոցն ի վերնատանն։ Եւ փոխանակ սրբապահութեան ձերոյ զեր-

կնայինն պարգեւեսցէ ձեզ կերակուր։ Եւ փոխանակ ժուժկալութ՟ն ձերոյ. զոր ծարաւեցայք՝ յանմահական աղբերէն տացէ ձեզ ըմպել ջուր։ Եւ փոխանակ գիշերային տքնութեան ձերոյ՝ ընդ հրեշտակս դասեսցէ զձեզ։ Եւ փոխանակ լռակացութ՟ն ձերոյ՝ անթառամ պսակօք զարդարեսցէ զձեզ։ Եւ փոխանակ ողորմութ՟ն ձերոյ որ առ աղքատս՝ յաջակողման բազմեցուսցէ։

Արդ՝ ո՜վ ա՟ծասէր ժողովուրդք և հաւատացեալք Ք՟սի, պահեցէք զպատուիրանս Տ՟ն և զիրաւունս Ն՟ր. և մի՛ դադարիք և ձանձրանայք առնել ողորմութիւն. մինչ դեռ ժամանակս ի ձեռս է՝ գործեցէք զբարիս, զի զփոխարէնն ի փրկչէն մերմէ Յ՟սէ Ք՟սէ յաւիտենական կեանս առնուցուք։ Արդ՝ հատուցանողն բարեաց ամենեցուն տացէ եկեղեցեացս շինութ՟ի, քահանայիցս՝ ուղղափառութ՟ի, թագաւորաց և իշխանաց՝ վայելչութ՟ի, ծերոց՝ մխիթարութ՟ի, կրօնաւորաց՝ ժուժկալութ՟ի, երիտասարդաց՝ ողջախոհութ՟ի. մեղաց՝ լուծումն, հիւանդաց՝ բժշկութ՟ի, դիւաց՝ խորտակումն, ախտաժետաց՝ առողջութիւն, և փրկութ՟ի հոգւոց և մարմնոց։ Եւ արդ՝ լսելով զայս ի բաց ընկեցէք յանձանց ձերոց զչարութ՟ի և զա՟մ խարդախութ՟ի, թողէք իւրաքանչիւր եղբօր իւրում զյանցանս, և զա՟մ խէթ զոր ունիք ընդ միմեանս և զա՟մ չարութ՟ի. գործք բարիք բոլորովիմբ ի կատարումն. սիրեցէք զՏ՟ր յա՟մ սրտէ, և զկամս Նորա կատարեցէք, ընդ ա՟մ մարդոյ զխաղաղութ՟ի ունիցիք. հե՛զ լինիջիք և խոնարհ. լսել ձայնին որ ասէ, Յո՞ բնակեցայց՝ եթէ ոչ ի հեզս և ի խոնարհս և որք դողան ի բանից իմոց. խնդրեցէք զխաղաղութ՟ի և երթիցէք զհետ արդարութ՟ն. յուսոյ ակն կալջիք յաւիտեանս յաւիտենից։ Եւ Տէր Ա՟ծ արարիչն ա՟մի՝ հաստատեսցէ զձեզ. և տացէ առատաբոյս բարիս՝ աստ և ի հանդերձելումն. և արժանի արասցէ զձեզ դասիլ յաջակողմանն. և ննջեցելոց ծանօթից և անծանօթից զեր-

նից արքայութիւն պարգևեսցէ. և քեզ Ած մերոյ փառք յաւիտեանս. ամէն:

Զկնի որոյ. Խնդրեսցուք: Եւ ասեն երեսուն Տէր ողորմեա է ընդ: Աղօթ. Քում ամենազօր և հրաշալի տէրութեանդ:

Եւ դնէ սուրբ խաչն ի սեղանն առաջի բեմին. և համբուրեն նախ սուրբ խաչն և սեղանն, և ապա զաջ քահանայիցն: Եւ օրհնէ քահանայն զաշխարհականսն. և արձակին. ողջունելով զմիմեանս, և երթան խաղաղութեամբ:

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Ի յետոյն ժամու ժողովքն է դասուն եկեղեցւոյն: Եւ ասեն զՃաշու ժամու Խոստացեալ Ողորմութեան: Եւ նշխար բերէ: Եւ ապա մտանեն յեկեղեցին, և ասեն

Յս առ Ած կարդացի: Փառք Հօր: Եւ եւս խաղաղ: Օրհնութիւն և փառք: Խոնարհեցո և Այրեցո:

Մեսեդի:

Լուացայց սրբութեամբ զձեռս իմ. և շուրջ եղէց զսեղանով քով Տէր:

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քոյ. և զտեղի յարկի փառաց քոց:

Ընթերցուածս ի Ծննդոց: ԻԲ. 1:

Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ փորձեաց Ած զԱբրահամ և ասէ ցնա. Աբրահա՛մ Աբրահամ. և նա ասէ. աւասիկ եմ: Եւ ասէ ցնա. ա՛ռ դու զորդիդ քո զսիրելի զոր սիրեցեր՝ զԻսահակ. և գնա՛ դու յերկիր բարձր, և հանցես զդա անդ յողջակէզ ի վե՛ր* միոյ լերանց՝ յորոց ասացից քեզ: Եւ յարեաւ Աբրահամ ընդ առաւօտն, համետեաց զէշ իւր. և ա՛ռ ընդ իւր երկուս ծառայս և զԻսահակ զորդի իւր. և պատառեաց փայտ յողջակէզ, յարեաւ և գնաց. և եկն ի տեղին զոր ասաց նմա Ած: Եւ յաւուրն երրորդի համ-

*բարձ Աբրահամ զաչս իւր և ետես զտեղին ի հեռաստանէ։ Եւ ասէ Աբրահամ ցպատանիս իւր. Նստարո՛ւք դուք այդր համդերձ իշովդ. և ես և պատանեակս երթիցուք մինչև ցանդր, և երկիր պագցուք, և դարձցուք առ ձեզ. Եւ ա՛ռ Աբրահամ զփայտ ողջակիզին, և եդ ի վ՜ր Իսահակայ որդւոյ իւրոյ. և ա՛ռ ի ձեռն զհուրն և զսուր. և գնացին երկոքեան ի միասին։ Եւ ասէ Իսահակ ցԱբրահամ ցհայր իւր. հա՛յր։ Եւ նա ասէ. զի՞ է որդեակ։ Եւ նա ասէ. ահա հուր և ահա փայտ. ո՞ւր է ոչխար յողջակէզ։ Եւ նա ասէ. Ա՜ծ տեսցէ իւր ոչխար յողջակէզ որդեակ։ Գնացին երկոքեան ի միասին։ Եւ եկին ի տեղին զոր ասաց նմա Ա՜ծ. անդ շինեաց սեղան Աբրահամ, և եդ ի վերայ զփայտն. և կապեաց զԻսահակ զորդի իւր. և եդ զնա ի սեղանն ի վ՜ր փայտին։ Եւ ձգեաց Աբրահամ զձեռն առնուլ զսուրն և զենուլ զորդի իւր։ Եւ կոչեաց զնա հրեշտակ Տեառն յերկնից, և ասէ. Աբրահամ Աբրահամ։ Եւ նա ասէ ցնա. աւասիկ եմ։ Եւ ասէ. մի՛ մխեր զձեռն քո ի պատանեակդ, և մի՛ ինչ առներ դմա. զի այժմ գիտացի թէ երկիւղած ես դու յԱ՜յ. և ոչ խնայեցեր յորդիդ քո սիրելի վ՜ն իմ։ Համբարձ Աբրահամ զաչս իւր և ետես. և ահա խոյ մի կախեալ կայր զծառոյն Սաբեկայ զեղջերաց։ Եւ գնաց Աբրահամ և ա՛ռ զխոյն. և եհան զնա յողջակէզ փոխանակ Իսահակայ որդւոյ իւրոյ։ Եւ կոչեաց Աբրահամ զանուն տեղւոյն այնորիկ՝ Տէր ետես. զի ասիցեն ցայսօր. ի լերինն յայնմիկ Տէր երեւեցաւ։ Եւ կոչեաց հրեշտակ Տ՜ն զԱբրահամ երկիցս անգամ յերկնից. և ասէ. յանձն իմ երդուայ, ասէ Տէր. փոխանակ զի արարեր դու զբանդ զայդ, և ոչ խնայեցեր յորդիդ քո սիրելի վ՜ն իմ. այո՛՝ օրհնելով օրհնեցից զքեզ. և բազմացուցանելով բազմացուցից զզաւակ քո իբրև զաստեղս երկնից բազմութ՜բ և իբրև զաւազ առ ափն*

ծովու. և ժառանգեսցէ զաւակ քո զքաղաքս հակա-
ռակորդաց իւրոց: Եւ օրհնեսցին ի զաւակի քում ա̃մ
ազգք երկրի. փոխանակ զի լուար ձայնի իմում: 18:

ընթերցուած յԵսայեայ մարգարէէ: ԿԱ. 1:

Հոգի Տ̃ն ի վ̃ր իմ, վ̃յ և օծ իսկ զիս. աւետարա-
նել աղքատաց առաքեաց զիս. բժշկել զբեկեալս
սրտիւք, քարոզել գերեաց զթողութի̃ և կուրաց տե-
սանել: Կոչել ամ Տ̃ն ընդունելի, և օր հատուցման
Ա̃Յ մերոյ. մխիթարել զա̃մ սգաւորս: Տալ սգաւորաց
Սիովնի փառս. փոխանակ մոխրոյն օծումն ուրախութե̃.
և սգաւորաց հանդերձ փառաց՝ փոխանակ ոգւոյն վհա-
տութե̃, և կոչեսցին նոքա ազգք արդարութե̃՝ տունկ
Տ̃ն ի փառս: Եւ շինեսցեն զաւերակսն յաւիտենից.
և զյառաջագոյն աւերեալսն կանգնեսցեն. և նորոգես-
ցեն զքաղաքս աւերեալս յազգաց մինչեւ յազգս: Եւ
եկեսցեն օտարածինք հովիւք խաշանց քոց, և այլազ-
գիք մաճակալք և այգեգործք քո: Բայց դուք քահա-
նայք Տ̃ն կոչիցիք, և պաշտօնեայք Ա̃Յ մերոյ անուա-
նիցիք. զզօրութիս ազգաց կերիցիք, և մեծութբ̃ ն̃ց
սքանչելի լինիցիք: Փոխանակ ամօթոյն ձերոյ կրկին ու-
րախութի̃, և փոխանակ անարգանաց ձերոց ցնծութի̃.
և ապա զերկիրն յերկրորդում ժառանգեսցեն. և ու-
րախութի̃ յաւիտենից ի վ̃ր գլխոց ն̃ց: 7:

ընթերցուած ի Գործոց առաքելոց: Ա. 15:

Եւ յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Պետրոս ի մէջ
եղբարցն՝ ասէ. և էր անդ բազմութի̃ անուանց իբրեւ
հարիւր և քսանից: Ա՛րք եղբարք՝ պարտ էր կատարել
գրոյն, զոր յառաջագոյն ասաց Հոգին ս̃բ ի բերանոյ
Դաւթի՝ վ̃ս Յուդայի, որ եղեւ առաջնորդ ունելեացն
Յ̃սի. զի ի թիւս մեր էր ընդ մեզ. և հասեալ էր նմա
վիճակ պաշտամանս այսորիկ: Սա ստացաւ գեօղ ի
վարձուց անիրաւութե̃. և ուռուցեալ հերձաւ ընդ

մէջ, և հեղաւ ամ̃ փոր նր̃։ Եւ յայտնի եղեւ ամենեցուն որ բնակեալ են յԵրուսաղէմ. մինչեւ կոչել գեղջն այնմիկ բարբառովն իւրեանց Ակեղդամայ. այսինքն է՝ գեօղ արեան։ Զի գրեալ է ի գիրս սաղմոսաց. Եղիցի բնակութի̃ նր̃ աւերակ, և մի՛ ոք իցէ՝ որ բնակիցէ ի նմա. և զկարգ նր̃ առցէ այլ։ Արդ՝ պարտ է յարանցս յայսցանէ՝ եկելոցս ընդ մեզ յամ̃ ժամանակի յորում մուտ և ել առ մեզ Տէր Յս̃, սկսեալ ի մկրտութե̃ն Յովհաննու մինչեւ յօրն յորում վերացաւ ի մէնջ՝ վկայ յարութե̃ նր̃ ընդ մեզ լինել միում ի սոցանէ։ Եւ կացուցին երկուս. զՅովսէփ, որում Բարսաբայն կոչէին, որ անուանեցաւն Յուստոս, և զՄատաթիա։ Եւ կացեալ յաղօթս՝ ասեն. դու Տէր սրտագէտ ամ̃ի, յայտնեա՛ զմի ոք՝ զոր ընտրեցեր ի սոցանէ յերկոցունց՝ առնուլ զվիճակ պաշտամանս այսորիկ և զառաքելութե̃, յորմէ անկաւ Յուդաս՝ գնալ ի տեղի իւր։ Եւ ետուն վիճակս նց̃. և ելանէր վիճակն Մատաթեայ. և համարեցաւ ընդ մետասան առաքեալսն։ 26

Ապա Սաղմոս ԾԴ. ստողոգէ ձայնիւ։

Կց. Կակուղ էին բանք նոցա քան զձէթ. և ինքեանք որպէս սլաք։

Փխ. Ո՛ւնկն դիր Ած̃ աղօթից իմոց. և մի՛ անտես առներ զխնդրուածս իմ։

Նայեա՛ առ իս և լո՛ւր ինձ. զի տրտմեցայ ես ի ձանձրանալ իմում և խռովեցայ։

Ի ձայնէ թշնամւոյն և ի նեղել մեղաւորին խոտորեցան յիս անիրաւութք̃. բարկութք̃ ոխս պահէին ինձ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս. և երկիւղ մահու անկաւ ի վերայ իմ։

Ահ և դողումն եկն ի վր̃ իմ. և ծածկեաց զիս խաւար։

Ասէի, տայր ոք ինձ թեւս որպէս աղաւնւոյ, զի թռչէի վերանայի, հեռացեալ դադարէի յանապատի։

Ակն ունէի յԱծ, որ փրկէ զիս ի կարճմտութենէ, ի զայրանալոյ և ի մրրկեալ նեղութենէ։

Ընկղմ Տէր և բաժանեա զլեզուս նց. զի տեսի զանօրէնութիւն և զհակառակութիւն ի քաղաքի։

Ի տուէ և ի գիշերի շուրջ եղեն զպարսպօք նր անօրէնութիք. չարիք և մեղք են ի մէջ նոցա. և ոչ պակասեաց ի հրապարակաց նոցա վաշխ և նենգութի։

Զի թէ թշնամւոյն նախատեալ էր՝ համբերէի արդեօք, կամ ատելւոյն մեծաբանեալ էր ի վերայ իմ՝ թագչէի արդեօք ի նմանէ։

Իսկ արդ դու մարդ հաւասար իմ, առաջնորդ իմ և ծանօթ իմ։

Ապաքէն ի նոյն քաղցրացուցեր ինձ և քեզ կերակուր. զի գնայաք միաբանութբ ի տան Այ։

Եկեսցէ մահ ի վր նց, և կենդանւոյն իջցեն ի դժոխս. զի չարութի է ի բնակութի նց և ի մէջ նց։

Ես առ Ած կարդացի. և լուաւ ինձ յերեկոյս և ի վաղորդայն և ի հասարակ աւուր։

Պատմեցի և ասացի, և լուիցէ ձայնի իմում. փրկեսցէ խաղաղութբ զանձն իմ ի մերձաւորաց իմոց. զի կարեօք հասին ի վր իմ։

Լուիցէ Ած և խոնարհ արասցէ զնս. այն որ յառաջ է քան զյաւիտեանս։

Զի ոչ գոյր նոցա փոխանակ. և ոչ երկեան յԱյ։

Ձգեաց ձեռն իւր ի հատուցանել նց. և նոքա պղծեցին զօրէնս նորա։

Բաժանեցան ի սրտմտութէ երեսաց նր. և եհաս ի սիրտս նոցա։

Կակուղ էին բանք նց քան զձէթ. և նոքեանք որպէս սլաք։

Ընկեա ի Տէր զհոգս քո, և նա կերակրէ զքեզ. և ոչ տայ յաւիտեան սասանութի արդարոյ։

Դու Ած իջուսցես զնս ի գուբ ապականութե. արք

եր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս անապակ ...եցոյց զիս։

...ողորմութիւն քո Տր զհետ իմ եկեսցէ զամ աւուրս կե-...իմոց. բնակել ինձ ի տան Տն ընդ երկայն աւուրս։

Եւ ձայնէ սարկաւագն ի բեմէն. Որթիւ։

Եւ կարդան ի բեմն՝

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԴ. 1։

ԶՏէրն մեր Յն Քրիստոս

...ւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց աւուրց. ...դրէին քահանայապետքն և դպիրք՝ եթէ զիարդ ...ա նենգաւ կալեալ սպանանիցեն։ Բայց ասէին՝ թէ ... ի տօնի աստ, զի մի խռովութիւն լինիցի ի ժողովըր-եանն։ Եւ մինչ էր ի Բեթանիա՝ ի տան Սիմոնի բո-...ոտի բազմեալ՝ եկն կին մի, որ ունէր շիշ իւղոյ նար-...եան ազնուի մեծագնոյ, և բեկեալ զշիշն՝ եհեղ ի ...ր գլխոյ նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ...նդէ՞ր եղեւ կորուստ իւղոյդ այդորիկ։ Մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան երեքհարիւր դահեկանի և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յն ասէ ցնա. Թո՛յլ տուք դմա, զի՞ աշխատ առնէք. զի գործ մի բարի գործեաց դա յիս։ Յամ ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, և յորժամ կամիք՝ կարող էք առնել նց բարիս. այլ զիս ոչ յամ ժամ ընդ ձեզ ունիք։ Դա զոր ունէրդ՝ արար. յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան պատանաց։ Ամէն ասեմ ձեզ. ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամ աշխարհ՝ և զոր արար դա՝ խօսեսցի վն յիշատակի դորին։ Եւ Յուդա Սկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի՝ գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա նց։ Նոքա իբրեւ լուան՝ խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ։ Եւ խնդրէր թէ զիարդ պարապով մատնեսցէ զնա։ Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն՝ յորում զզատիկն զենուին, ասեն ցնա աշակերտքն. ո՞ւր կամիս՝ եր-

արիւնահեղք և նենգաւորք մի հասարակեսցեն զաւուրս իւրեանց. այլ ես ի քեզ Տէր յուսացայ։

Ասա զՈղորմեան տուն է Ռէա։

Ուղիղ եղիցին աղօթք իմ.
Որպէս խունկ առաջի քո Տէր։
Զերեկոյի զաղօթս մեր ընկալ Տէր.
Եւ զտարածումն ձեռաց մերոց։

Քարոզ. Աղաչեսցուք. Հաւր ձայն։

Համբարձի Ակ։ Այսօր կարգեցաւ օրինակ խոնարհութե ի յուղղութի վարուց մերոց։ Այսօր Տէրըն մեր լըւանայր զոտս աշակերտացն և պատուիրէր զայս ասելով։ Մի ոմն ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս ի մահ. և որոշի յաշակերտացդ։ Փառք Հօր։ Զայն լըւեալ Պետրոսի ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ։ Այժմ և։ Բանըն զոր ասաց Յիսուս տրտմեցոյց զիւր զաշակերտսն. եւ խռովեցան ամենեքեան։

Քարոզ. Վն խաղաղութե։ Աղօթ.։ Հայր գթած։
Եւ ապա մատնէն է պատարագ։

---

Զինի պատարագին Սաղմոս ԻԲ։

ԿՑ. Պատրաստ արարեր առաջի իմ սեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց։

Փխ. Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցի։

Ի վայրի դալարւոջ անդ բնակեցոյց զիս. և առ ջուրս հանգստեան սնոյց զիս։

Դարձոյց զանձն իմ առ իս. և առաջնորդեաց ինձ ի ճանապարհս արդարութե վն անուան իւրոյ։

Թէպէտ և գնացից ես ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ի չարէ. զի դու Տէր ընդ իս ես։

Ցուպ քո և գաւազան՝ նոքա մխիթարեսցեն զիս։

Պատրաստ արարեր առաջի իմ սեղան, ակնյանդիման նեղչաց իմոց։

Օծեր իւղով զգլուխ իմ. բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս։

Ողորմութի̃ւ քո Տ̃ր զհետ իմ եկեսցէ զա̃մ աւուրս կենաց իմոց. բնակել ինձ ի տան Տ̃ն ընդ երկայն աւուրս։

Եւ ձայնէ սորհսատեն է բեւձն. Որ̃թիւ։

Եւ կորդոսն է բեւծ՝

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԴ. 1։

ԶՏէրն մեր Յ̃ս Քրիստոս

Նւ էր զատիկն և բաղարջակերք յետ երկուց աւուրց. խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ եթէ զիա̃րդ զնա նենգաւ կալեալ սպանանիցեն։ Բայց ասէին՝ թէ մի̃ ի տօնի աստ,* զի մի̃ խռովութիւն լինիցի ի ժողովրդեանն։ Եւ մինչ էր ի Բեթանիա՝ ի տան Սիմովնի բորոտի բազմեալ՝ եկն կին մի, որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ, և բեկեալ զշիշն՝ եհեղ ի վ̃ր գլխոյ Նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ̃ր եղեւ կորուստ իւղոյդ այդորիկ։ Մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան երեքհարիւր դահեկանի և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յ̃ս ասէ ցն̃ս. թո̃յլ տուք դմա, զի̃ աշխատ առնէք. զի գործ մի բարի գործեաց դա յիս։ Յա̃մ ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք, և յորժամ կամիք՝ կարող էք առնել Ն̃ց բարիս. այլ զիս ոչ յա̃մ ժամ ընդ ձեզ ունիք։ Դա զոր ունէրդ՝ արար. յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան պատանաց։ Ամէն ասեմ ձեզ. ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ա̃մ աշխարհ՝ և զոր արար դա՝ խօսեսցի վ̃ն յիշատակի դորին։ Եւ Յուդա Սկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի՝ գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա Ն̃ց։ Նոքա իբրեւ լուան՝ խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ։ Եւ խնդրէր թէ զիարդ պարապով մատնեսցէ զնա։ Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն՝ յորում զզատիկն զենուին, ասեն ցնա աշակերտքն. ո̃ւր կամիս՝ եր-

թիցուք պատրաստեսցուք՝ զի կերիցես զզատիկն: Եւ առաքէ երկուս յաշակերտաց անտի, և ասէ ցնս. Երթայք ի քաղաքն, և իբրև մտանիցէք ի քաղաքն՝ պատահեսցէ ձեզ այր մի՝ որ սափոր ջրոյ յուս ունիցի. երթայք զհետ նր: Եւ յոր տուն մտանիցէ՝ ասասջիք ցտանուտէրն. վարդապետ ասէ՝ ո՞ւր են իջավանքն, ուր աշակերտօքս ուտիցեմ զզատիկն: Եւ նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ. անդ պատրաստեսջիք մեզ: Եւ գնացին պատրաստել աշակերտքն նր. եկին ի քաղաքն. և գտին որպ ասացն նց. և պատրաստեցին զզատիկն: Եւ իբրև երեկոյ եղև՝ գայ երկոտասանիւքն հանդերձ: Եւ իբրև բազմեցան և դեռ ուտէին՝ ասէ Յս. ամէն ասեմ ձեզ՝ զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս, որ ուտէ իսկ ընդ իս: Եւ նոքա սկսան տրտմել, և ասել մի ըստ միոջէ. մի՞ թէ ես իցեմ, և միւսն՝ մի՞ թէ ես իցեմ: Նա պատասխանի ետ և ասէ ցնս. մի յերկոտասանից այտի, որ մխեաց ընդ իս ի սկաւառակդ: Այլ որդի մարդոյ երթայ՝ որպ և գրեալ է վասն նր. բայց վա՜յ իցէ մարդոյն այնմիկ՝ յորյ ձեռս որդի մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա՝ թէ չէր իսկ ծնեալ մարդն այն: Եւ մինչդեռ ուտէին, առեալ Յսի հաց՝ օրհնեաց և եբեկ, ետ նց, և ասէ. առէք՝ այդ է մարմին իմ: Եւ առեալ բաժակ՝ գոհացաւ և ետ նց, և արբին ի նմանէ ամենեքեան: Եւ ասէ ցնս. այս է արիւն իմ նորոյ ուխտի, որ փոխանակ բազմաց հեղու: Ամէն ասեմ ձեզ, թէ ոչ ևւս յաւելից ըմպել ի բերոյ որթոյ մինչև ցօրն ցայն՝ յորժամ արբից զնա նոր յարքայութե Այ: Եւ գոհացեալ՝ ելին ի լեառն ձիթենեաց: 26:

Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո՛ Տէր: Աղօթ. Թագաւոր խաղաղութեան:

Եւ արժանին խաղաղութեամբ:

# ԿԱՐԳ ՈՏՆԼՈՒԱՑԻՆ

## ՄԵԾԻ ՀԻՆԳՇԱԲԱԹԻ ԵՐԵԿՈՅԻՆ

### ԸՍՏ ՈՐՈՒՄ ԱՍԱՑՆ ՅԻՍՈՒՍ, ԹԷ ՕՐԻՆԱԿ ՄԻ ԵՏՈՒ ՁԵԶ.

*Զոր արարեալ է Սրբոյն Ներսեսի Խորհին Աստուծոյ. զոր և թարգմանեաց սուրբ դիտապետն Հայոց մեծն Գրիգոր Վկայասէր:*

Յերեկոյի ոտնլուացին լինի կատարման սուրբ պատարագին, ի տաճարորդք ժամուն ժողովին ի դուռն եկեղեցւոյն, յառաջա-գոյն պատրաստ ունելով ջուրս խորհրդական լուացմանն: Իջնեն զսուրբ Աւետարանն ի վերայ սեղանոյ առաջի եկեղե-ցւոյն, և գրենակիր սուրբ նշանն դան ի յետոյ քահանայի միոջ. և մոմեղէն երկու ի յետոյ սպասաւորաց: Եւ կացցեն յաջմէ և յահեկէ աւագանին՝ հանդերձ մոմեղինօք լուցելովք և անուշահոտ խնկովք:

Եւ սարկաւագն քարոզէ: *Եւ եւս խաղաղութեան:* Եւ ապա եպիսկոպոսն և կամ քհն այլ որ ի գլխաւոր երիցանցն իցէ, կամ վանաց երէց, կատարէ զործոյն, որում հաւատացա-ծառաւոր օրն, ասէ. *Օրհնութիւն և փառք:*

Եւ սկսանի հանդերձ քաղցրանուագ ողբոյն՝

Սաղմոս Ծ.

Կ8. *Ցօղեա՛ յիս մշտկաւ և մաքր եղէց. լուա՛ և քան զձիւն սպիտակ եղէց:*

Փխ. *Ողորմեա՛ ինձ Աստուած՝ ըստ մեծի ողորմու-թեան քում. ըստ բազում գթութեան քում քաւեա՛ զանօրէնութիւնս իմ:*

*Առաւե՛լ լուա զիս յանօրէնութենէ իմմէ. և ի մե-ղաց իմոց սուրբ արա զիս:*

Զանօրէնութիւնս իմ ես գիտեմ. և մեղք իմ առաջի իմ են յամենայն ժամ:

Քեզ միայն մեղայ Տէր. և զչար առաջի քո արարի:

Որպէս արդար եղիցիս ի բանս քո. և յաղթեսցես ի դատել քո:

Անօրէնութ̃բ յղացայ. և ի մեղս ծնաւ զիս մայր իմ:

Դու Տ̃ր զճշմարտութ̃ի սիրեցեր. զանյայտս և զծած-կեալս իմաստութ̃բ քոյ յայտնեցեր ինձ:

Ցօղեա՛ յիս մշտակաւ, և սբ̃ եղէց. լուա՛, և քան զձիւն սպիտակ եղէց:

Լսելի արա ինձ Տէր զցնծութ̃ի և զուրախութի. և ցնծասցեն ոսկերք իմ տառապեալք:

Դարձո՛ զերեսս քո ի մեղաց իմոց. և զա̃մ անօրէնու-թիս իմ քաւեա՛ յինէն:

Սիրտ սուրբ հաստեա՛ յիս Ա̃ծ. և հոգի ուղիղ նորո-գեա՛ ի փորի իմում:

Մի՛ ընկենուր զիս Տէր յերեսաց քոց. և զհոգի քո սբ̃ մի՛ հաներ յինէն:

Տո՛ւր ինձ զցնծութ̃ի փրկութ̃ե. և հոգւով պետու̃ քո հաստատեա՛ զիս:

Ուսուցից անօրինաց զճանապարհս քո. և ամպարիշտք առ քեզ դարձցին:

Փրկեա՛ զիս յարենէ Աստուած, Աստուած փրկու-թեան իմոյ. և ցնծասցէ լեզու իմ յարդարութեան քում:

Տէր եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգես-ցէ զօրհնութ̃իս քո:

Թէ կամեցեալ էիր պատարագս՝ մատուցանէաք. բայց դու ընդ ողջակէզս իսկ ոչ հաճեցար:

Պատարագ Ա̃յ հոգի խոնարհ. զսիրտ սբ̃ և զհոգի խոնարհ Ա̃ծ ոչ արհամարհէ:

Բարի՛ արա Տէր կամօք քովք Սիո̃նի. և շինեսցին պարիսպքն Երուսաղէմի:

Յայնժամ հաճեսցիս ընդ պատարագս արդարութեան. ուխտից պատարագս հանցեն ի սեղան քո զուարակս:

Ապա Շարական Ակ:

Այսօր կարգեցաւ օրինակ խոնարհութեան, ի յուղղութիւն վարուց մերոց: Այսօր Տէրըն մեր լուանայր զոտս աշակերտացն. և պատուիրէր զայս ասելով: Մի ոմն ի ձէնջ եղբարք մատնելոց է զիս ի մահ. և որոշէր յաշակերտացդ: Զայն լուեալ Պետրոսի ակնարկէր առ Յովհաննէս հարցանել թէ ով իցէ: Քանզի զոր ասաց Յիսուս տրտմեցոյց զիւր զաշակերտսն. եւ խռովեցան ամենեքեան:

Ապա սարկաւագն ժողովէ:

Եւ եւս գոհութիւն և երկրպագութիւն մատուսցուք Տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ է ճառագայթ փառաց, և ծագումն էութեան անսկզբնական բնութեան Հօր: Որ նոյն ինքն այսօր անբաժանելի գոլով յէական լուսոյն, խոնարհեցոյց զինքն յաղքատ բնութիս մեր, առեալ զկերպարանս ծառայի. կատարեաց զամենօրինական փրկագործութիւն, լուաց զոտս աշակերտացն յօրինակ մեզ: Աղաչեսցուք և խնդրեսցուք ի նմանէ, զի և այժմ խոնարհեսցի մարդասիրութեամբն իւրով ի ժողովարանս մեր, և լուացմամբ երեւելի ջրովս այսմիկ՝ շնորհօք սրբեսցէ զաներեւոյթ հոգիս մեր ի մեղաց մերոց: Ամենակալ Տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի:

Եւ ժողովուրդն ասեն ի Ռե- երգ. Տէր ողորմեա:

Եւ ապա եպիսկոպոսն կամ աւագերէցն ասէ զԱղօթս զայս:

Փառաւորեմք զքեզ Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս միածին Որդի և բան Հօր, Տէր և արարիչ հրեշտակաց և մարդկան, Աստուած հուր կիզելոյ. որ և հրեղէն զօրութիւնքն զարհուրեալ սարսափին նայել ի պատիւ փառաց աստուածութեդ քո. ուստի և սերովբէքն թեւասքօղեալ ծածկէին զդէմս իւրեանց՝ անդադար փառաբանութի

մատուցանելով առաջի աթոռոյ տէրութ՟եդ քո։ Դու Տէր և այժմ ի լրման ժամանակի փրկութ՟ես մերում հաճեցար լինել մարդ ի ս՟բ և յանարատ կուսէն Մարիամայ. և ընդ ա՟մ կիրս մարդկութեան անցանելով՝ բաց ի մեղաց, բարձեր զպարտիսն Ադամայ յա՟ծագործ մարմինդ քո, զոր ի մերմէ բնութ՟էս ընկալար, և զա՟մ կատարեցեր ըստ օրինացն, փրկելով զմեզ յանիծից օրինացն։ Եկիր ի վերնատունն՝ կատարելով և զայն եւս զմովսիսադիր ստուերակերպ օրէնսդրութ՟ին։ Եւ որ սպասաւորեալ պաշտիս յաննիւթական հրեղինացն, ըստ որում կրկնի քեզ ա՟մ ծունր երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց, այսօր անօրինական մարդասիրութ՟բ խոնարհեցար ի ծունկս քոյոց ս՟բց առաքելոցն. լուացեր զոտս հողեղէնս, և զբարուղք և զգեղեցիկ կարգ աւանդելով մեզ։

Եւ արդ Տէր բարերար և բազումողորմ, ո՟չ և յայնժամ ազդ արարեալ դաստիարակեցեր զմեզ՝ կերպարանակից լինել փրկագործ խոնարհութ՟ն քոյ, շնորհեա՛ և այժմ մեղաւոր ծառայիցս քոց, որք յերեսս անկեալ աղաչեմք զգութ մարդասէր շնորհաց քոց՝ զքաւութ՟ի մեղաց. ո՟չ զի օրինակաւ ջրոյս այսորիկ՝ յորս լուանամք զոտս միմեանց՝ և տկար անձամբք մերովք զկեննարար աւանդութ՟իս քո կատարեմք, հեղցես ի մեզ զամենառատ և զամենազօր շնորհս քո, և մաքրեսցես զմեզ յա՟մ աղտեղութ՟եց և ի շաղախմանց մեղաց մերոց։ Հեռացո՛ ի մէնջ զա՟մ հպարտութ՟ի և զամբարտաւանութ՟ի, զոր էած բանսարկուն ի վ՟ր տկար բնութ՟ես մերում պատրանօք իւրովք։ Արժանաւորեա՛ զմեզ՝ մտաց աչօք լուսաւոր ճառագայթիւք նայել ի կենսաբեր տնօրէնութ՟ի քո։ Զգեցո՛ մեզ Տէր զճշմարիտ խոնարհութ՟ի և զհեզութ՟ի և զքաղցրութ՟ի, և զսէր քո՝ որ է լրումն օրինաց քոց, զոր կատարեցեր և ուսուցեր մաքրափայլ աշակերտաց քոց. ո՟չ զի և մեք կատարե-

լով զյիշատակ փրկաւէտ չարչարանաց քոց, ընդ դասս սբց առաքելոցն արժանի լիցուք տօնել զլուսափայլ յարութիւն քո, և ընդ նոսին խոստովանելով զքեզ Քրիստոս Աստուած մեր, փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և:

Խաղաղութիւն ամենեցուն:

Աստուծոյ երկրպագեսցուք:

Դարձեալ երկիր պագանեմք, և փառաւորեմք զքեզ Քս Ած մեր, որ ընդ էակից Հօր և համագոյակից սբ Հոգւոյն, որ միշտ փառաւորեալ օրհնիս անդադար սրբասաց ձայնիւ ի հոգեղէն և ի հրեղէն զուարթնոցն անպատմելի և հրաշազարդ գեղապարութք: Հաճեցար և ի հողեղինացս ընդունել զօրհնաբանութի, որք ի քոյոց սբց առաքելոցն ընկալեալք զաւանդութիւն, և ըստ կարի մերում զվերնոցն բերելով զնմանութի, պար առեալ կամք առաջի քոյոյ տէրութեանդ՝ հանդերձ զգալի անուշահոտութք: Ընկալ Տէր և զխունկս զայս ի մէնջ մեղաւորացս, զոր մատուցանեմք քեզ ի ժամուս յայսմիկ, որ է յիշատակ խոնարհութե քո՝ զոր վն մեր կատարեցեր. և լցո զմեզ յանուշահոտութեց մարմնատիպ ածութե քոյ՝ զոր վն մեր զգեցար. և ի ձեռն լուացմանս այսորիկ նիւթականի լուա և մաքրեա զաներեւոյթ ոգիս մեր ի թունից մահաբեր վիշապին. և արժանաւորեա զմեզ՝ մաքուր տաճար և օթեվան լինել սբյ Երրորդութեանդ. այժմ և միշտ:

Եւ յետ այսորիկ կատարելն գործոյն՝ առեալ ջուր արկանէ ի կոնքն խաչանման: Եւ ապա կանոն կատարի:

Ասեն յայնժ՝ Սաղմոս ԻԸ:

ԿՑ․ Ձայն Տեառն ի վերայ ջուրց, և Ած փառաց որոտաց. և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց:

Փխ. Մատուցէք Տեառն՝ որդիք Այ. մատուցէք Տռն զորդիս խոյոց:

Մատուցէք Տռն զփառս և զպատիւ. մատուցէք Տռն

զփառս անուան Ն՟ր. և երկիր պագէք Տ՟ն ի սրահ սրբութ՟ն նորա։

Ձայն Տ՟ն ի վ՟ր ջուրց, և Ա՟ծ փառաց որոտաց. և Տէր ինքն ի վերայ ջուրց բազմաց։

Ձայն Տ՟ն զօրութ՟ց, և ձայն Տ՟ն մեծվայելչութ՟ց։

Ձայն Տ՟ն փշրէ զմայրս. և մանրեսցէ Տէր զմայրսն Լիբանանու։

Մանրեսցէ զն՟ն ո՟պ զմատաղատունկսն Լիբանանու. որ սիրելին է ո՟պ զորդիս միեղջերուի։

Ձայն Տ՟ն հատանէ զբոց ի հրոյ. ձայն Տ՟ն շարժէ զանապատն. և խռովեցուցանէ Տէր զանապատն Կադէս։

Ձայն Տ՟ն հաստատէ զեղջերուս. և յայտնի առնէ զանտառս։

Ի տաճարի Ն՟ր ամենեքեան ասասցեն փառս նմա։

Տէր զջրհեղեղս ՚զնստուցանէ և ցածուցանէ. թագաւորեսցէ Տէր յաւիտեան։

Տէր զօրութ՟ի ժողովրդեան իւրում տացէ. և օրհնեսցէ զժողովուրդ իւր ի խաղաղութ՟ի։

## Ընթերցուած յԵլից։ Լ. 17։

Խօսեցաւ Տէր ընդ Մովսեսի և ասէ։ Արա աւազան պղնձի և զխարիսխ նորա պղնձի, առ ի լուանալոյ ի նմա. և դիցես զնա ընդ խորանն վկայութեան և ընդ սեղանն. և արկցես ի նա ջուր։ Եւ լուասցեն Ահարոն և որդիք Ն՟ր ի նմանէ զձեռս և զոտս իւրեանց։ Յորժամ մտանիցեն ի խորանն վկայութ՟ե՝ լուասցին ջրով և մի մեռանիցին. կամ յորժամ մերձենայցեն ի սեղանն պաշտել և հանել զողջակէզսն Տ՟ն՝ լուասցեն զձեռս և զոտս իւրեանց, զի մի մեռանիցին։ Եւ եղիցի ն՟ց օրէն յաւիտենական, նմա և ազգաց Ն՟ր յետ նորա։ 21։

## Ընթերցուած յերրորդ Թագաւորութ՟ց։ Է. 38։

Եւ արար Քիրամ տասն պուտնարդս պղնձիս. և ունէր պուտնարդ մի քառասուն սափոր. ի չորից կանգնոց

*պուտնարդ մի չափով. և պուտնարդ մի ի վր̃ միոյ մե-քենովթայ՝ տասնեցունց մեքենովթացն։ Եւ եդ զմե-քենովթսն՝ հինգ յուսոյ տանն յաջմէ, և զհինգն յուսոյ տանն ի ձախմէ. և ծովն յուսոյ տանն ընդ աջմէ ընդ արեւելս ի հարաւոյ կողմանէ։ Եւ արար Քիրամ զսանսն և զջեռուցիչսն և զտաշտսն. և կատարեաց Քիրամ առնել զամենայն գործն զոր արար արքայի Սողովմոնի ի տանն Տեառն։ 40։*

*Ընթերցուածս յերկրորդ Մնացորդաց։ Դ. 2։*

*Եւ արար Սողովմոն զծովն հալածոյ ի տասն կանգնոյ զչափն բոլորակ շուրջանակի. և ի հինգ կանգնոյ զբարձրութի. և շուրջանակի յերեսուն կանգնոյ։ Եւ նմանութի եզանց ի ներքոյ նր̃, որք շուրջ կային՝ ի տասն կանգնոյ շուրջ պատեալ զնովաւ. և ձուլեցին զզուարակսն ըստ ձուլածոյն իւրեանց։ Ոպ̃ արարին զնմ̃ երկոտասան զուարակս. երեքն հայէին ի հիւսիս, և երեքն հայէին յարեւմուտս, և երեքն հայէին ի հարաւ, և երեքն հայէին յարեւելս. և ծովն ի վր̃ նց̃. և յետոյքն իւրեանց ի ներքոյ։ Եւ թանձրութի ծովուն թզաւ. և շուրթն նր̃ իբրև զշուրթն բաժակի քանդակեալ բոյս շուշանի. և տանէր երիս հազարս չափ։ Եւ կատարեաց զնա. և արար աւազանս տասն. և եդ զհինգն յաջմէ, և զհինգն ի ձախմէ լուանալ ի նմ̃ զգործ ողջակիզացն. և ողողել ի նմ̃. և ծովն առ ի լուանալ ի նմա քահանայիցն զինքեանս։ 6։*

*Ընթերցուածս յԷսայեայ մարգարէէ։ ԽԴ. 2։*

*Մի՛ երկնչիր ծառայ իմ Յակոբ և սիրեցեալդ իմ Ի̃էլ՝ զոր ընտրեցի։ Զի ես տաց ջուր ի ծարաւ՝ որոց գնան յանջրդուղ. եդից զոգի իմ ի վր̃ զաւակի քո, և զօրհնութիս իմ ի վր̃ որդւոց քոց։ Եւ զուարճասցին իբրեւ զխոտ ջրարբի, և իբրեւ զուռ ի մէջ ջուրց գնացից։ Մին ասիցէ՝ Ա̃Ծ եմ ես. և միւսն խրախոյս*

բարձցէ յանուն Այ Յակովբայ. և միւսն ևւս գիր հանցէ ձեռամբ իւրով՝ թէ Այ եմ ես, և յանուն Իսրայէլի խրախոյս բարձցէ։ Այսպէս ասէ Աստուած թագաւորն Իսրայէլի, որ փրկեաց զնա՝ Աստուած զօրութեանց։ 6։

Պետրոսի առաքելոյն ի կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս։ Գ. 17։

Զի լաւ է բարեգործաց, եթէ կամիցին ըստ Այ կամացն չարչարել՝ քան չարագործացն. զի և ք՟ս մի անգամ վ՟ն մեղաց ի վ՟ր ձեր մեռաւ, արդարն ի վ՟ր անարդարոց. զի զձեզ մերձեցուսցէ առ Ա՟ծ. թէպէտ և մեռաւ մարմնով, այլ կենդանի է հոգւով։ Որով և ոգւոցն որ էին ի բանտին՝ երթեալ քարոզեաց՝ երբեմն ապստամբելոցն, յորժամ ներէր ն՟ց Այ երկայնմտութիւնն յաւուրս Նոյի, յորս տապանն կազմէր. յոր նուազունք՝ այս ինքն ոգիք իբրև ութ ապրեցան ի ջրոցն։ Որ և զձեզ ըստ նմին օրինակի կեցուսցէ մկրտութ՟ին. ոչ զմարմնոյ աղտն ի բաց ընկենլով՝ այլ զբարւոք մտացն հանդէս առ Ա՟ծ ի ձեռն յարութ՟ն Յ՟ի ք՟ի. որ է ընդ աջմէ Այ երթեալ յերկինս, ի հնազանդել նմա հրեշտակաց և իշխանութ՟եց և զօրութեանց։ 22։

Պօղոսի առաքելոյն ի կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուածս։ Ժ. 1։

Ոչ կամիմ եթէ տգէտք իցէք եղբարք, զի հարքն մեր ամենեքին ընդ ամպովն էին. և ամենեքին ընդ ծովն անցին. և ամենեքին ի Մովսէս մկրտեցան՝ յամպն և ի ծովն. և ամենեքին զնոյն հոգևոր կերակուրն կերան, և ամենեքին զնոյն հոգևոր ըմպելին արբին, զի ըմպէին ի հոգևոր վիմէն՝ որ երթայր զհետ ն՟ց. և վէմն էր ինքն ք՟ս։ 4։

Յովհաննու առաքելոյն ի կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուածս։ Գ. 7։

Սիրելիք՝ սիրեսցո՛ւք զմիմեանս, զի սէր յԱ՟յ է. և ա՟մ որ սիրէ՝ յԱ՟յ է ծնեալ և ճանաչէ զԱ՟ծ։ Եւ որ ոչն սիրէ՝ ոչ ճանաչէ զԱ՟ծ, զի Ա՟ծ սէր է։ Եւ զի յայսմ երևեցաւ սէրն Ա՟յ ի մեզ, զի զՈրդին իւր միածին առաքեաց յաշխարհ, զի եղիցուք Նովաւ կենդանիք։ Յայսմ է սէրն, ոչ զի մեք սիրեցաք զԱ՟ծ՝ այլ զի Նա սիրեաց զմեզ. և առաքեաց զՈրդին իւր ի քաւութ՟ի մեղաց մերոց։ Սիրելիք՝ եթէ Ա՟ծ այնպէս սիրեաց զմեզ, ապա և մեք պարտիմք զմիմեանս սիրել։ ԶԱ՟ծ ուրուք երբեք չէ տեսեալ. եթէ սիրեսցուք զմիմեանս՝ Ա՟ծ ի մեզ բնակէ, և սէր Ն՟ր ի մեզ կատարեալ է։ Այսուիկ գիտեմք, եթէ մեք ի Նմա բնակեալ եմք, և Նա ի մեզ, զի ի Հոգւոյն իւրմէ ետ մեզ։ Եւ մեք տեսաք և վկայեմք՝ զի Հայր առաքեաց զՈրդին իւր փրկիչ աշխարհի։ Որ ոք խոստովանեսցի՝ եթէ Յ՟ս է որդի Ա՟յ, Ա՟ծ ի Նմա բնակէ, և Նա յԱ՟ծ։ Եւ մեք հաւատացաք, և ծանեաք զսէրն Ա՟յ զոր ունի առ մեզ։ Ա՟ծ սէր է. և որ կայ ի սէրն՝ բնակեալ է յԱ՟ծ և Ա՟ծ ի Նմա բնակէ։ Յայսմիկ կատարեալ է սէրն Ն՟ր ի մեզ, զի համարձակութ՟ի ունիցիմք յաւուրն դատաստանի. զի ո՟պ և Նայն է՝ Նոյնպէս և մեք եմք յաշխարհիս յայսմիկ։ Երկիւղ ոչ գոյ ի սէր, այլ սէրն կատարեալ ի բաց մերժէ զերկիւղն. զի երկիւղ ընդ տանջանօք է, իսկ որ երկնչին՝ չէ կատարեալ ի սէրն։ Մեք սիրեսցո՛ւք զԱստուած, վասն զի Նա նախ սիրեաց զմեզ։ Եթէ ոք ասիցէ՝ եթէ սիրեմ զԱստուած, և եղբայր իւր ատիցէ, սուտ է. որ ոչ սիրէ զեղբայր իւր՝ զոր տեսանէ, զԱստուած զոր ոչն ետես՝ զիա՞րդ կարիցէ սիրել։ Եւ զայս պատուէր ունիմք առ ի Նմանէ, զի որ սիրէ զԱստուած՝ սիրէ Նա և զեղբայր իւր։ 21։

Խրատ ասացեալ վասն սիրոյ։

Ած սէր է, ասէ որդին որոտման՝ սիրելի աշակերտն Քի Յովհաննէս. և որ կայ ի սէրն՝ յԱծ բնակի, և Ած ի նմա։ Եւ արդ եղբարք, լուարո՛ւք և ի միտ առէք զձառ սիրոյ։ Զի ո՛վ որ սիրէ զԱծ՝ սիրէ նա և զեղբայր իւր։ Զի սէրն Այ՝ սիրով եղբօրն երեւի։ Զի թէ զեղբայրն զոր տեսանէ՝ ոչ սիրէ, զԱծ զոր ոչն տեսանէ՝ զիա՞րդ կարիցէ սիրել։ Այսուիկ ճանաչեմք եթէ սիրեմք զԱծ՝ յորժամ սիրեմք զեղբայրն մեր ըստ հոգւոյն սիրոյ և ոչ ըստ մարմնոյ. զի այլ է սէր հոգւոյն, և այլ մարմնոյն. զոր յառաջ գնացեալ ասացաք յիւրում տեղւոջն։ Բայց արդ՝ ո՛վ որ սիրէ՝ ճանաչի յԱյ, և ինքն ճանաչէ զԱծ. և ո՛վ որ ոչ սիրէ զեղբայր իւր ցաւակցաբար՝ օտար է յԱյ, և զշնորհս ածային ոչ կարէ ընդունել։ Ամենայն որ սիրէ զեղբայր իւր ի նք սրտէ՝ բնակարան լինի Այ, և Ած ի նա բնակէ։ Զի ինքն Տէրն սիրեաց զմեզ, և առաքեաց զՀոգին ճշմարտութե՝ բնակել ի մեզ։ Զի իմանալի հոգիս մեր՝ ընդ անիմանալի Հոգւոյն Այ սիրով կապակցի։ Եւ ո՛պ նա սիրեաց զմեզ, նոյնպէս և ի մէնջ կամի զսէր առ միմեանս։ Տե՛ս թէ ո՛րչափ համարձակութի ունի սէրն առ Ած. ո՛պ թէ նման Այ առնէ զմարդն. զի Ած սիրովն իւրով նման մարդկան եղեւ. և եցոյց թէ մարդիկ իւրեանց սիրովն նման Այ լինելոց են։ Զի Ած այնչափ սիրեաց զաշխարհս՝ մինչեւ զՈրդին իւր միածին առաքեաց ի փրկութի աշխարհի։ Եւ թէ մեք սիրեսցուք զմիմեանս, ո՛պ և Ած սիրեաց զմեզ, ոչ ինչ է չար՝ որ խափանէ զսէրն մեր. ո՛վ որ սիրէ՝ յայտնի է առաջի մարդկան, և համարձակ առաջի Այ։ Զի զերկիւղ ի մեղաց մահու ոչ ունի. այլ սիրովն Այ զինեալ կայ, և անմահ յո՛վ երկիւղական վտանգից։ Ուր սէր է՝ անդ երկիւղ ոչ է, ո՛պ Յովհաննէս ասէ. Երկիւղ ոչ գոյ ի սէրն. այլ սէր կատարեալ ի բաց մերժէ

զերկիւղ. զի երկիւղն ընդ տանջանօք է, և սէր ի համարձակութի՟. և զի երկիւղն հալածի ի սիրոյն. և ուր սէր ոչ է՝ անդ է երկիւղ դատաստանին և ահ կորստեան աւուր մեծի ահեղ ատենին։ Իսկ սէրն աներկիւղ առնէ զմարդն յա՟մ տանջանաց. սէր զայն ասեմ, որ ամենեւին հեռի է յերկբայութե՟է. զի երկբայութի՟ և սէր ի միասին ոչ բնակին։ Եւ գիտելի է, զի սէրն ոչ միայն ի կեանսն յաւիտենականս պտղաբերէ զպտուղ խաղաղութե՟ իւրոյ, այլ եւ յաշխարհիս յայսմիկ զա՟մ թշնամութի՟ ի բաց հալածէ. զնախանձ և զատելութի՟, զոխակալութի՟ և զչարութի՟, զչարախօսութի՟ և զհայհոյութի՟, զտրտունջ և զբամբասանս, զհպարտութի՟ և զամբարհաւաճութի՟։ Եւ մանաւանդ՝ զմայրն ա՟մ չարեաց՝ զարծաթսիրութի՟ և զագահութի՟։ Արդ՝ որ սէր ունի՝ յայս ա՟մ չարեացս ի բաց հեռանայ, և յերկնային անքոյթ խաղաղական հանգիստն ժամանէ յամենեւին բարին։ Զի՞նչ խաղաղական քան զսէրն. ազատ լինել յա՟մ խռովութե՟է, և զա՟ծային հաճոյսն կատարել։ Սէրն բանալի է արքայութե՟ երկնից, և ճանապարհ կենացն յաւիտենից։ Սէրն զմարդիկ որդիս Ա՟յ առնէ, և երկնից արքայութե՟ն ժառանգորդ։ Սէրն զապականացու բնութիս անապական գործէ, և զմահկանացուս յանմահութի՟ գերափոխէ։ Սէրն զերկրայինսն երկնայինս առնէ, և զհողեղէնսն հրեղէն կազմէ։ Եւ արդ՝ ո՞վ կարէ պատմել զանչափ մեծութի՟ սիրոյն. զի անճառ և անպատում է. ըստ որում և անեղ բնութի՟ ա՟ծութեան անքննելի է, այսպէս և բնութի՟ սիրոյն։ Եւ ո՞չ Ա՟ծ անբաւ է, բայց յամենեսեան մերձ է և բնակեալ է ի հեզս և ի խոնարհս և յայնոսիկ որք դողան ի բանից ն՟ր, այսպէս և սէրն յամենեսին մերձ է՝ որ կամին զնա, և ինքն եկեալ բնակեսցէ ի խնդրողս իւր. քանզի սէրն սիրէ զսիրելիս իւր, և ատէ ոչ՝ զատելիս իւր։ Որք խնդրեն զնա՝ մերձ է ի ն՟ն

ծածապէս. զի Ած սէր է, և կամեցող սիրոյ՝ ի մք սրտէ, և յանկեղծաւոր հաւատոցն։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Տէր հովուեսցէ զիս. և ինձ ինչ ոչ պակասեսցի։

կամ Պատրաստ արարեր առաջի իմ սեղան. ակն յանդիման նեղչաց իմոց։ Օծեր իւղով զգլուխ իմ, բաժակ քո ոպ անապակ արբեցոյց զիս։

ԶՆԻ՝ ՈՐԹԻՒ։

Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԳ. 1։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Յառաջագոյն քան զտօնն զատկի գիտաց Յս՝ թէ հասեալ է ժամ նր՝ զի փոխեսցի յաշխարհէ աստի առ Հայր, սիրեաց զիւրսն որ յաշխարհի աստ են, իսպառ սիրեաց զնս։ Եւ ի լինել ընթրեացն՝ սատանայի իսկ արկեալ էր ի սիրտ՝ զի մատնեսցէ զնա Յուդա Սիմովնի Իսկարիովտացւոյ. գիտաց Յս՝ զի զամ ինչ ետ Հայր ի ձեռս նր, և թէ յԱյ ել և առ Ած երթայ, յառնէ յընթրեաց անտի, և դնէ զհանդերձսն, և առեալ ղենջակ մի՝ սփածաւ։ Եւ ապա առեալ ջուր՝ արկ ի կոնք, և սկսաւ լուանալ զոտս աշակերտացն, և սրբէր ղենջակաւն զոր սփածեալն էր։ Գայ առ Սիմովն Պետրոս. և նա ասէ ցնա. Տէր՝ դու զիմ զոտս լուանաս։ Պատասխանի ետ նմա Յս և ասէ. զոր ինչ ես գործեմ՝ դու այժմ ոչ գիտես, բայց ապա գիտասջիր։ Ասէ ցնա Պետրոս. ոչ լուասցես զոտս իմ յաւիտեան։ Պատասխանի ետ նմա Յս. եթէ ոչ լուացից զքեզ՝ ոչ ունիս ընդ իս մասն։ Ասէ ցնա Սիմովն Պետրոս. Տր՝ մի միայն զոտս իմ, այլ և զձեռս և զգլուխ։ Ասէ ցնա Յս. լուացելոյն չէ ինչ պիտոյ՝ բայց զի զոտսն լուանայցէ, քանզի ամենեւին մք է. և դուք մք էք, այլ ոչ ամենեքին։ Զի գիտէր զայն որ մատնելոցն էր զնա. վասն այնորիկ ասաց՝ թէ ոչ ամենեքին մք էք։ 11։

Ձ[illegible]

Ըստ մեծ և սքանչելագործ զօրութի․ անեղանելի բընութի․ որ ողորմութք հաճեցար առնել զարարածս ծմ․ աղաչեմք։ Լուր Տէր և ողորմեա։

Զօրացեր ըզվերնայարկս երկնից որպէս խորան․ և վերայ ջուրցըն մածուցեալ հաստատուն․ և բնակութի անպարագրելի աստուածութեանըդ քո․ և զամենայն հրաշակերտս ի գովեստ անուանըդ քում սրբոյ․ աղաչեմք։ Լուր Տէր և ող։

Արարեր քեզ սրբասացս ըզսերովբէսն և ըզքերովբէսն․ ըզհոգեղէնս և ըզհրեղէն աննիւթական բընութիւնս․ ընդ նոսին և ի հողեղինացս հաճեցար ընդունել փառաբանիչս և երկրըպագուս ամենազօր տէրութեանըդ քո․ աղաչեմք։ Լուր Տէր և ող։

Եղեր մարդ ճշմարիտ անճառելի ծագումն․ և ճառագայթ անհասանելի՝ անիմանալի էութեանըն հօր․ և եկիր ի փըրկութիւն մեզ մարդասէր․ աղաչեմք։ Լուր Տէր և ող։

Եղեր լրումն օրինաց և մարգարէից․ և եկիր կամաւ ի վերնատունըն խորհըրդոյ․ լըւացեր զոտս աշակերտաց քոց անճառելի խոնարհութեամբըդ քո․ աղաչեմք։ Լուր Տէր և ող։

Ընկալ Տէր և այժմ ըզլուացմունս զոր աւանդեցեր մեզ ի՝ յօրինակ խոնարհութեան․ բարեխօսութեամբ սըրբուհւոյ մօր քո և միշտ կուսին Մարիամու Ածածնին․ աղաչեմք։ Լուր Տէր և ող։

Աղաչանօք երջանիկ և նախընթաց կարապետին քո և մկրտչին Յովհաննու ճգնաւորական հանդիսին․ հեղմամբ արեան սրբոյն Ստեփանոսի՝ նախասարկաւագին քո և առաջին վըկային․ մաղթանօք ընտրելոց քոց

առաքելոց ընդ անձանց մարտիրոսացն պսակելոց ի քէն. աղաչեմք։ Լուր Տէր և ող։

Եւ ես առաւել զյորդորումն սիրոյ եւ ըղձգործըս բարեաց պարգեւել մեզ խնդրեմք։

Տուր մեզ Տէր Աստուած մեր։

Զանձինըս մեր եւ զմիմեանըս Տեառն Այ ամենա։

Քեզ Տեառնըդ յանձն եղիցուք։

Ողորմեա մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի։

Տր ողորմեա. Տր ողորմեա. Լուր Տէր եւ ողորմեա։

Եւ ասեն զկանոն ոտնլուային. Զահեղ զանքնին. Եւ զքարոզ ոտնլուային զասացեալն յԱռաքել վարդապետէ. Ամն ամենի։

Եւ եպիսկոպոսն կամ քահանայն ասէ զԱղօթս ի վերայ Ջրոյն։

Տէր մեր Յս Քս Ած սքանչելագործ, հզօր և փառաւորեալ. անհասանելի, անիմանալի, վերացեալ բարձրացեալ քան զամ փառս. որ նստիս ի քրովբէական կառս և մի ի սբյ Երրորդութեէդ դաւանիս ի վերնական սրբասաց սերովբէից. վն որոյ և զերեքսրբեան փառաբանութի ընդ Հօր և սբ Հոգւոյն՝ հրեղէն բերանօքն իւրեանց սոսկալի ձայնիւ սարսափելով առաջի փառաց աթոռոյ ածութեդ քոյ մատուցանէին քեզ, լի ասելով զամ երկիր փառօք քո։ Դու Տր յաղթեալ ի մարդասիրութեէդ քումմէ՝ ոչ կարացեր անտես առնել զարարածս քո զ'ի հողոյ ստեղծեալքս. այլ հաճեցար և ի մերմէ բնութեէս փառաւորիլ, խառնելով զհողեղէն ստորեւ կացեալքս ընդ վերնական հոգեղէն և հրեղէն աննիւթական բնութիւնս։ Եկիր յաշխարհս կամաւ Հօր և Սբ Հոգւոյն. առեր զկերպարանս ծառայի ի սբ և յանշաղախ կուսէն Մարիամայ. և ճշմարիտ Բանդ Հօր մարմին եղեալ՝ անեղծ և անապական նոր և անճառելի խառնմամբ, և կատարելով զամ ստուերական օրէնսն, եղեր լրումն օրինաց և մարգարէից. ճշմարիտ օրէնսդիր Ած իմ Յս Քս։ Եւ ի լրման

ա՟մի՝ եկիր ի վերնատունն խորհրդոյ, կատարեցեր և զայն եւս մովսիսադիր ստուեր գառնազենն նորոյ փըր-կագործութե՟ս խորհուրդ, որ նախ յԵգիպտոս նկարե-ցաւ: Եւ դու ինքնին քահանայապետ ն՟մ՝ կատարիչ խորհրդոյ, և գառն Ա՟յ՝ որ միշտնջենաւոր բառնաս զմեղս աշխարհի, միանգամ պատարագաւն հատեր զմարմինդ սիրով. բաշխելով քոյոց ընտրեալ աշա-կերտացն. և հրամայեցեր ն՟ց զկամաւոր չարչարանս քո որ վ՟ն մեր, և զմահդ պատմել մինչեւ ի միւսան-գամ քո յերկրորդ և ի փառաւոր գալուստն: Բայց նախ քան զայսոսիկ անճառելի խոնարհութ՟բ ի բաց եդեալ զհանդերձս՝ զգեցար զենջակ, որ զգեցեալ էիր զլոյս ո՟պ զօթոց. և տնօրինաբար ներմարդութ՟բ խոնարհեցար ի ծունկս աշակերտացն՝ առ ի լուանալ զոտս հողեղէնս, որում կրկնի ծունր երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց. և զկատարեալ խոնարհութ՟իդ յայտնապէս ուսուցեր և աւանդեցեր ասելով, թէ Օրինակ մի ետու ձեզ. զի ո՟պ ես ձեզ արարի, և դուք միմեանց առնիջիք:

Եւ արդ Տէր բարերար, մեք ծառայքս քո և խաշն արօտի քոյ՝ ժողովեալք ի գաւիթ ս՟բյ եկեղեցւոյ քոյ ըստ ա՟ծային օրէնսդրութե՟դ, զոր աւանդեցեր մեզ ի ձեռն ն՟բ առաքելոցն, աղաչեմք զքեզ, առաքեա զէա-կիցդ քո և զփառակից ծնողիդ քոյ՝ զՀոգիդ ն՟բ յար-քունական աթոռոյդ, որ եկեալ հանգչիցի ի ժողովա-րանս մեր. և սրբեսցէ զմեզ ի մեղաց մերոց, և զըն-թացս ա՟մ բարեաց ճանապարհաց. զի սովաւ զօրա-ցուցեալ զգարշապարս մեր՝ անխափան ընթասցուք խաչազգեստեալք ի յաւիտենական ճանապարհս պա-տուիրանաց քոց. և արժանի լիցուք հասանել ի մասն ժառանգութե՟ս ս՟բց ի լոյս. և գոհանալով փառաւո-րեսցուք զՀայր և զՈրդի և զս՟բ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն։

Աստուծոյ երկրպագեսցուք։

Դարձեալ երկիր պագանեմք, և աղաչեմք զամենագութ ողորմութիւնդ քո, քաւեա՛ զաղտ և զանօրէնութիւն ոգւոց մերոց օրինակաւ ջրոյս այսորիկ. որպէս և յաւուրսն Նոյի զանօրէնութիւն ամենայն երկրի՝ ջրովն հեղեղաւ. և որպէս զբորոտութիւն Նէեման Ասորւոյ՝ ի ձեռն Յորդանանու, և որպէս զզանազան ախտսն՝ ի ձեռն յուզման ջուրցն Սելովամայ, և որպէս զմեղս ամենայն աշխարհի ի ձեռն աւազանին վերստին ծննդեան։ Եւ որպէս յայնժամ հաստատելով զճշմարիտ մարդեղութիւնդ քո՝ տնօրինաբար խոնարհեցար, և լուացեր զոտս երանելի առաքելոց քոց, զօրացուցանելով զգարշապարս նոցա յընթացս աւետարանի քո ընդ ամենայն տիեզերս. այլ և կոխել զզօրութիւն թշնամւոյն աներկիւղ համարձակութեամբ. այսպէս ի մեզ հրաշագործեա՛ մարդասէր Տէր՝ ի ձեռն աներեւոյթ գալստեան քո ի ժողովարանս մեր. որպէս զի և մեք զօրացեալք ի շնորհաց քոց՝ անխափան ընթասցուք ի շաւիղս պատուիրանաց քոց. որով և փրկութեան արժանաւորեսցուք հասանել ընդ ամենայն սուրբս քո. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին. այժմ և միշտ և։

Եւ յաւարտ աղօթիցս տէառնագրեն խաչիւ եւ աւետարանաւ զջուրն՝ երիցս անգամ. ասելով՝

Օրհնեսցի՛ եւ սրբեսցի՛ ջուրս այս նշանաւս սուրբ խաչիս և սուրբ աւետարանիս և աւուրբս շնորհիւ. յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Եւ ժողովուրդքն միաբան ասեն։

Ամէն. ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Ասա Քարոզ. Սուրբ խաչիւս։ Աղօթք. Պահպանեա։

Եւ ապա այնուհետեւ զգեցուցանեն զեպիսկոպոսն կամ զաւագերէցն, եւ երկուս ի գլխաւոր երիցանցն եւ ի պատուաւոր

ծերոցն։ Եւ առեալ ղենջակս, եւ նստեալ լուասցեն կարգաւ զոտս ամենեցուն ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս, եւ սրբեսցեն ղենջակաւն զոր սփածեալն են։

Եւ այլքն պար առեալ յայսկոյս եւ յայնկոյս անուշահոտ խնկովք եւ մոմեղինօք լուսելովք, երգեն քաղցր ձայնիւ Շարական Գ2. Վերանձգողն երկնից. (տես եր. 254.) զամէն շարականսն ի լման ասեն։ Եւ զԱյսօր անճառն այլեւ զՆորոգողն, եւ այլ ուստի եւ կամին զխորհրդաւոր շարականսն, մինչեւ վճարի ոտից լուացումն։

Եւ լուացեալքն հարք ըստ կարգի երկրպագեն սուրբ խաչին. եւ համբուրեն զաւետարանն եւ զաջ եպիսկոպոսին կամ քահանային լուացողի։

Եւ յորժամ ամենայն կատարումն առցէ՝ երգն եւ լուացումն, նստի եպիսկոպոսն վերամբարձ յաթոռ, եւ ասէ. Ո՛րթի՛ւ. եւ զմնացորդ աւետարանն կարդան։

Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԳ. 12։

Տէրն մեր Յ̃ս Ք̃ս

*Եւ յորժամ լուաց զոտս ն̃ց՝ ա՛ռ զհանդերձսն իւր և դարձեալ բազմեցաւ, և ասէ ցն̃ս. գիտէ՞ք զինչ արարի ձեզ։ Դուք կոչէք զիս վարդապետ և տէր. և բարւոք ասէք, քանզի եմ իսկ։ Իսկ արդ՝ եթէ ես լուացի զոտս ձեր՝ տէրս և վարդապետս, և դուք պարտիք զմիմեանց ոտս լուանալ։ Զի օրինակ մի ետու ձեզ, զի ո̃պ ես ձեզ արարի, և դուք առնիջիք։* 15։

Ապա սարկաւագն քարոզէ։

*Եւ եւս միաբան ամենեքեան գոհացարուք զանհասանելի և զանճառելի մարդասիրութ̃ն Տ̃ն մերոյ Յ̃սի Ք̃սի, որ այսօր նորոգեաց ի մեզ զսահման պատուիրանի իւրոյ, տալով մեզ առհաւատչեայ պարգևս թողութեան մեղաց՝ ս̃բյ աւազանին մաքրութ̃ն։ Աղաչեսցուք և խնդրեսցուք ի նմանէ, զի արժանաւորեսցէ զմեզ արթնութ̃բ և զգաստութ̃բ հաղորդ լինել չարչարա-*

նաց նր՝ առ ի հանդիպումն լուսոյ փառաւոր յարութեն իւրոյ: Ամենակալ Տէր Ած մեր կեցուսցէ և ողորմեսցի:

Եւ ժողովուրդն ասէ:

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա:

Եւ եպիսկոպոսն կամ քահանայն ասէ զԱղօթս:

Տէր Ած մեր, որ ըստ բազում սքանչելագործ մարդասիրութեան քո ոչ անարժան համարեցար լուանալ զոտս աշակերտաց քոց. զի խոնարհութբ ուսուցեր բարձրանալ այնոցիկ՝ որք գան զհետ հրամանաց քոց Տէր. դու նոյն ինքն փրկիչ աշխարհի և այժմ նորոգեա ի մեզ զսահման պատուիրանի քո, և երեւելի ջրովս այսորիկ լուացմամբ շնորհեա մեզ զսրբութի Հոգւոյդ սբյ. պարսպեա զմեզ ի հոգի և ի մարմին՝ յամ սատանայական ներգործութեց, զի դու ես Թագաւոր մեր, և անուն քո կոչեցեալ է ի վր մեր: Վն որոյ քեզ հանցուք զօրհնութիւն և զփառս Հօր և ամենասուրբ Հոգւոյդ. այժմ և միշտ:

Խաղաղութիւն ամենեցուն:

Աստուծոյ երկրպագեսցուք:

Հովիւ քաջ, հովիւ բարի և մարդասէր Տէր մեր Յս Քս, որ կամաւորաբար յանձն առեր դնել զանձն քո ի վր բանաւոր հօտի քոյ. որ կամաւ Հօր և սբ Հոգւոյն եկիր ի խնդիր մոլորեալ ոչխարի քո. որ զմոլորեալքս գտեր, և զվիրաւորեալքս բժշկեցեր հոգւով և ջրով սբ աւազանին լուացմամբ. անապական մարմնոյ և արեան քո ճաշակմամբ: Վն որոյ և այսօր տնօրինական ներմարդութբ զերկուս փրկագործութիւնս մեր անճառելի խոնարհութբ սկիզբն արարեալ կատարեցեր ի սբ վերնատանն՝ լուանալով զոտս աշակերտաց քոց, բաշխելով ի նս զկենդանարար մարմին քո և զարիւն. և զնոյն յիշատակ կամաւոր չարչարանաց քոց նոքօք աւանդեցեր ամ հաւատացելոց քոց՝ կատարել մինչեւ յերկրորդ գալուստն քո: Եւ արդ Տէր

բարերար՝ մեք մեղուցեալ ծառայքս քո ըստ կարի տկարութն մերում՝ զօրէնս քո յանգ հանեալ՝ աղաչեմք զշնորհս ողորմութն քոյ: Հովուեա զբանաւոր հօտս քո յարօտս կենդանարար աւետարանական վարդապետութն քո: Հանգո զմեզ ի ջուրս աւազանի քո, առ ի յորդեգրութի երկնաւոր Հօր քո: Արբո զմեզ ի յուղխս փափկութն անապական արեան քո՝ զոր վն մեր հեղեր: Տուր մեզ զկենդանարար մարմինդ քո, որ է հաց կենաց իջեալ յերկնից և աշխարհի կեանս պարգեւէ: Առաջնորդեա մեզ ի շաւիղս պատուիրանաց քոց՝ առաջնորդական Հոգւովդ քով սրբով: Տուր պահապան երկիւղածաց քոց զբանակս հրեշտակաց քոց, ամրացուցանելով շուրջանակի զհոգի և զմարմին մեր ի մեքենայից բանսարկուին: Տուր մեզ իմաստութի ճառագայթեալ հոգւով ելանել ընդ քեզ յաղօթս ի նմ լեառն ձիթենեաց, առ ի կցորդութի կամաւոր չարչարանաց քոց: Շնորհեա մեզ Տէր զզջումն արտասուաց ընդ երանելւոյն Պետրոսի, առ ի լուացումն մեղաց մերոց: Արժանաւորեա զմեզ մաքուր հոգւով հանդիպել քեզ ի փառաւոր և ի միւսանգամ գալըստեանդ քո, և ընդ նմ սբս քո յարազուարճ բերկրանօք ուրախութբ օրհնել գովել և փառաւորել զամենասուրբ զԵրրորդութիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Զկնի աղօթիցն ասի փող. Հոսեալ հրեղինաց: Փոխ. Ընդ երեւելոյս հասեալ ժամ:

Յառաջաւորին Քարոզ. Խնդրեսցուք: Կեցո յայնե–: Աղօթ. Թագաւոր խաղաղութեան:

Օրհնեալ Տէր մեր: Հայր մեր որ:

Եւ արձակէն:



# ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ, ԴՋ.

---

## Ի ԳԻՇԵՐԻՆ

Հոկոուծ է։ Եւ է կոփորուծ ուղմոսքն՝ ոսկ կանոնա-կլուխ ԴՋ. Օրհնեա անձն իմ զՏէր։

Հետեւեալ շարական։ ԴՋ։

Այսօր ի կատարումն ածային ընթրեաց Նոր ուխտի ճշմարտութեան քո. ի վերնատունն խորհրդոյ տարամերժեալ Յուդաս ի հօտէն փրկչու. ուստի եւ դու գառն Աստուծոյ. դիմեալ կամաւ ի մահ խաչին առ ի բառնալ զմեղս աշխարհի. * Վասն որոյ խնայեա ի մեզ Քն կամաւոր քո չարչարանօք։ Այսօր որ ի հրեղէն զօրաց երկնից միշտ փառաբանեալ երկրպագիս Բանդ. աղօթէիր առ Հայր մարմնով ընկալեալ ընդ Հօր ըղձքո վն իմ զպաղատանս. ուստի կամաւ կրելով զերկիւղ. ի հրեշտակաց զօրանայիր զօրացուցիչդ երկնաւորաց եւ երկրաւորաց. Վասն որոյ խնայեա։ Այսօր յառաջ նշանակեալ հրամանքն քո կատարիւր յաշակերտաց դասն. քանզի զհովիւդ քաջ հարեալ ցրուեցաւ հօտն ըստ մարգարէին. որ եւ կապեցար անկապելիդ. ի յԱննայէ և ի կայիափայ դատապարտեալ. ի ծառայէ ապտակեցար և նախատանաց թուք կերպարանդ Հօր ընկալար. Վն որոյ խնայ։ Այսօր ըզվէմըն հաւատոյ շարժեալ փորձողին խաբէութե մարտ. առ ի քէն թողացուցեալ ըզմարդկային տըկարութիւնս յանդիմանելով. եւ առ յոյս դարձի մեղաւորաց. որ դառնապէս արտասուելովն ընկալաւ ի քէն երիւք հարցմամբ սիրոյն զերից ուրացութեցն

ըզբըժըշկութիւն. ընդ նմին բըժըշկեա ըզմեզ Քս և շնորհեա մեզ արտասուս ապաշխարութեան:

† Այսօր զոր երկնայինն լուսեղինացն ահիւ պատուեալ Բանդ Ած. նըսեմացեալ դասք Եբրայեցւոցն. զիմանալին զլոյսդ ի գիշերի ջահիւք և սուսերօք եկեալ ըմբըռնել զանըմբըռնելիդ. * վասն որոյ երկրպագեմք անճառելի քո խոնարհութեդ: Այսօր զոր սերովբէքըն ծածկէին ըզդէմս յահէ փառաց աստուածութեդ. իսկ կորըստեան որդին Յուդաս. ի համբոյր մերձեալ նենգութեամբ. նըշանակ եւ առիթ մահու անմահին դ. վն որոյ երկր: Այսօր ընդ գերագոյն տնօրէնութիւնդ քո Որդի Աստուծոյ. հոյլք անմարմնոցն հրաբուն սեռիցն. պակուցեալ զարմանային. տեսանելով զանտեսանելիդ մատնեալ կամաւ ի ձեռըս մեղաւորաց. վն որոյ երկրպա: Այսօր բարեկամք և մերձաւորըք քո հեռի եղեն ի քէն Քս. օտարացան եւ եղբարըք քո. եւ ցուլըք գէրք պաշարեցին որք ի դըպրաց և ի փարիսեցւոց. և շուրջ եղեն շունըք բազումք զինուորք Պիղատոսի և Հերովդէի. վասն որոյ երկրպագ:

Նու եւս խաղաղ: Օրհնութի և:

Եւ ապա լուցանեն ջահս եւ երկոտասան մոմեղէնս ի վերայ սեղանոյն յաջակոյս եւ յահեկոյս, եւ մոմեղէն մի մեծ ի մէջն:

Եւ դնեն գէրակալն, եւ առաջի Աւետարանն ի վերայ. եւ զսաղմոսարանն. եւ ասեն երկու քահանայք սաղմոս Գ. Գ. փոխ: Եւ ընթեռնուն Զ. փոխ Աւետարան:

Առաջին փոխ: Սաղմոս Բ:

Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք. եւ ժողովուրդք խորհեցան ի սնոտիս:

Յանդիման եղեն թագաւորք երկրի. եւ իշխանք ժողովեցան ի միասին, վն Տն եւ վն օծելոյ նր:

Խզեսցուք զկապանս նց. և ընկեսցուք ի մէնջ զլուծ նց:

Բնակեալն յերկինս ծիծաղեսցի զնոքօք, եւ Տէր ար-համարհեսցէ զնս:

Յայնժամ խօսեսցի ընդ նոսա բարկութբ իւրով. եւ սրտմտութբ իւրով խռովեսցուսցէ զնս:

Ես կացի թագաւոր ի նմանէ, ի վր Սիովնի լերին սրբյ նր, ի պատմել ինձ զհրամանս Տն:

Տր ասաց ցիս որդի իմ ես դու. և ես այսօր ծնայ զքեզ:

Խնդրեա՛ յինէն. և տաց քեզ զհեթանոս ի ժառան-գութի, և իշխանութի քեզ զամ ծագս երկրի:

Հովուեսցես զնոսա գաւազանաւ երկաթեաւ. որպէս զանօթ բրտի փշրեսցես զնոսա:

Արդ՝ թագաւորք զայս ի միտ առէք. խրատեցարո՛ւք ամենեքեան, ոյք դատիք զերկիր:

Ծառայեցէ՛ք Տն երկիւղիւ. և ցնծացե՛ք առաջի նորա դողութեամբ:

Ընկալարո՛ւք զխրատ նորա, զի մի՛ բարկասցի Տէր. և կորնչիցիք ի ճանապարհացն արդարութեան:

Ի ժամանակի, ոչ բորբոքեսցի բարկութի նորա:

Երանի՛ ամենեցուն՝ որ յուսացեալ են ի Տէր:

Սաղմոս Գ:

Տէր, զի՞ բազում եղեն նեղիչք իմ. բազումք յա-րեան ի վերայ իմ:

Բազումք ասէին զանձնէ իմմէ. թէ չիք փրկութիւն սորա առ Աստուած իւր:

Այլ դու Տէր օգնական իմ ես. փառք իմ և բար-ձրացուցիչ գլխոյ իմոյ:

Ձայնիւ իմով ես առ Տէր կարդացի. և լուաւ ինձ ի լեռնէ սրբոյ իւրմէ:

Ես ննջեցի և ի քուն եղէ. զարթեայ, և Տէր ընդու-նելի իմ է:

Ոչ երկեայց ես ի բիւրուց զօրաց նոցա. որ շուրջա-նակի պատեալ պաշարէին զիս:

Արի՛ Տէր, և փրկեա՛ զիս Ած իմ. զի դու հարեր զամենեսեան, որք էին ընդ իս թշնամութբ ի տարապարտուց. զատամունս մեղաւորաց փշրեսցես:

Տռնդ է փրկութի. ի վր ժողովրդեան քոյ օրհնութի քո:

Սաղմոս Դ:

Ի կարդալ իմում լուաւ ինձ Աստուած ըստ արդարութեան. ի նեղութեան ինձ անդորր արարեր. ողորմեա՛ ինձ, և լո՛ւր աղօթից իմոց:

Որդիք մարդկան մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութի, և խնդրէք զստութիւն:

Ծանեարո՛ւք զի սքանչելիս արար Տէր սբյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա:

Բարկանայք և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր՝ յանկողինս ձեր զղջացարուք:

Մատուցէք պատարագս արդարութեան. և յուսացարո՛ւք ի Տէր:

Բազումք ասէին՝ թէ ո՞ ցուցցէ մեզ զբարութի Տռն. նշանեցաւ ի մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց:

Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ, և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա:

Խաղաղութբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձին յուսով քով բնակեցուցեր զմեզ:

Եւ այլն եղանակին յայնիւ կցուրդ:

Ի՛շխանք ժողովեցա՛ն ի՛ միասի՛ն. վա՛սն Տռն և վա՛սն Օծե՛լոյ նորա՛: Երեք անգամ ասեն, եւ չյերգեն Բարձր:

Աղօ Երգ Տեառն Ներքոեւէ. ԴԿ:

Այսօր անճառ լուսոյն ծագումն ի փրկութեան մեր կատարումըն. խոնարհի ի վերնատունն ի ստուերական տօնից լըրումն. նախ քան զընթրիսըն խորհըրդոյ սփածալ զենջակ արկողն լուսոյ. և ջուր առեալ ծառայաբար զոտըս լուանայ զաշակերտացն:

Բանին Հօր փառաց լուսոյ Պետրոս մերձիլ յոտս ոչ ներէր. այնրմ ձեռաց որոյ են գործք երկնից երկինք և երկրաւորք. որով կուրաց աչք բացան խուլք և համերք արձակեցան. որ վերածեաց զինքն ի ծովին սաստեաց ալեացն և լռեցին։

Գըլխոյն ընտրեալ հօտին փոքու սաստէր զխորհուրդն ոչ գիտելոյ. որով դառնայր և հնազանդէր զոտս և ըզգլուխս մաքրել մաղթէր. գլխոյս ասէ չէ ինչ պիտոյ լուացումըն ջրոյ զի լուացեալ է. ոտիցըդ պէտք են մաքրութեն՝ յօդիլ ի գլուխըս սըրբութեամբ։

Դասուց իւրոց աշակերտաց զոր նախ բանիւ վարդապետեաց. այսօր գործով ըզծայրագոյնն եցոյց յինքեան զխոնարհութի. սպասաւորեալ հողեղինաց այն որ անհասն է հրեղինաց. տարեալ պաշտօն իւր ծառայիցն այն որ պաշտին ի սրովբէից։

Եթէ Տէրս՝ ասէ՝ էից և վարդապետըս բոլորից. զաշակերտացդ և զծառայից զոտըս լուացի ի հնոյ աղտից. միմեանց և դուք համաբնութեն ցուցէք ըզնոյն խոնարհութի. բարձրացելոյն ի կործանումն և անկելոյ բնութեանդ կանգնումն։

Զոր մաքրեցեր յաւազանին մաքուր ձեռօք զոտըս նոցին. և ուսուցեր խոնարհութեն յաղթող լինել չար հըպարտին. և զիմ լըւա զտիղմըն մեղաց աղաչանօք սրբոյ գընդին. և ըզգընացս ուղղեա զոտին խոնարհութեն ելիւք յերկինս։

Այլ յաւագերեկոյն տաղն՝ Որթին։

Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԳ. 16։

Տէրն մեր Յս Քրիստոս ասէ.

Ամէն ամէն ասեմ ձեզ. ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր. և ոչ առաքեալ՝ մեծ քան զայն որ առաքեացն զնա։ Եթէ զայս գիտէք՝ երանելի եւս էք եթէ առնիցէք զայս։ Ոչ վն ամենեցուն ձեր ասեմ. զի ես գիտեմ զորս ընտրեցիդ. այլ զի լցցի գիրն՝ թէ Որ ուտէր ընդ

իս հաց՝ արար ինձ խաբէութիւն։ Ցայսմ հետէ իսկ ասեմ ձեզ մինչ չեւ եղեալ, զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք թէ ես եմ։ Ամէն ամէն ասեմ ձեզ․ որ ընդունի զոր ոք ես առաքեցից՝ զիս ընդունի․ և որ զիս ընդունի՝ ընդունի զայն որ առաքեաց զիս։ Զայս իբրեւ ասաց Յիսուս՝ խռովեցաւ յոգի իւր, վկայեաց և ասէ․ ամէն ամէն ասեմ ձեզ, զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս։ Հայէին ընդ միմեանս աշակերտքն տարակուսեալք՝ թէ զումմէ ասիցէ։ Եւ էր մի ոմն յաշակերտացն բազմեալ առ Յիսուսիւ, զոր սիրէրն Յիսուս։ Ակնարկէ նմա Սիմովն Պետրոս՝ հարցանել ո՛վ իցէ վասն որոյ ասէն։ Եւ նա անկեալ զլանջօքն Յիսուսի՝ ասէ ցնա․ Տէր, ո՞վ է։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ․ այն է՝ որում ես թացից զպատառն և տաց․ և թացեալ զպատառն՝ տայ Յուդայի Սկարիովտացւոյ։ Եւ յետ պատառոյն ապա եմուտ ի նա սատանայ․ և ասէ ցնա Յ͞ս․ արդ՝ զոր ինչ առնելոց ես՝ արա՛ վաղվաղակի։ Եւ զայս ոչ ոք իմացաւ ի բազմականաց անտի, թէ առ ի՛նչ ասաց ցնա։ Զի ոմանք համարէին, թէ զի ղարկղն ունէր Յուդա, ասաց նմա Յ͞ս, գնեա՛ ինչ որ պիտոյ իցէ մեզ ի տօնիս, և կամ զի աղքատաց ինչ տացէ։ Իսկ նորա առեալ զպատառն՝ ել արտաքս վաղվաղակի․ և էր գիշեր։ Եւ իբրեւ ել, ասէ Յիսուս․ այժմ փառաւորեցաւ որդի մարդոյ, և Ա͞Ծ փառաւորեցաւ ի նմա։ Զի եթէ Ա͞Ծ փառաւորեցաւ ի նմա, և Ա͞Ծ փառաւորեսցէ զնա յանձն իւր, և վաղվաղակի փառաւորեսցէ զնա։ Որդեա՛կք իմ, փոքր ինչ ժամանակ ընդ ձեզ եմ․ խնդրիցէք զիս, և որպէս ասացի ցՀրեայսն, եթէ ուր ես երթամ՝ դուք ոչ կարէք գալ, և արդ ձեզ ասեմ։ Պատուիրան նոր տամ ձեզ, զի սիրիցէք զմիմեանս․ որպէս սիրեցի ես զձեզ, զի և դուք սիրեսջիք զմիմեանս։ Յայսմ գիտասցեն ամենեքեան՝ եթէ իմ աշակերտք էք, եթէ սիրիցէք զմիմեանս։ Ասէ ցնա Սիմովն Պետրոս․ Տէր,

*յո՞վ երթաս։ Պատասխանի ետ Յս, ուր ես՛ն երթամ՝ դու ոչ կարես այժմ գալ զկնի իմ, բայց ապա եկեսցես զկնի իմ։ Ասէ ցնա Պետրոս. Տէ՛ր, ընդէ՞ր ոչ կարիցեմ գալ այժմ զկնի քո. արդէն զանձն իմ իսկ եդից ի վր̄ քո։ Պատասխանի ետ Յս. զա՛նձն քո դիցես ի վր̄ իմ. ամէն ամէն ասեմ քեզ. չեւ իցէ հաւու խօսեալ՝ մինչ դու երիցս ուրասցիս զիս։ Մի՛ խռովեսցին սիրտք ձեր. այլ հաւատացէք յԱծ̄, և յիս հաւատացէք։ Ի տան Հօր իմոյ օթեւանք բազում են. ապա թէ ոչ ասացեալ էր իմ ձեզ, թէ երթամ և պատրաստեմ ձեզ տեղի։ Եւ եթէ երթամ և պատրաստեմ ձեզ տեղի, դարձեալ գամ և առնում զձեզ առ իս. զի ուր ես՛ն իցեմ՝ և դուք անդ իցէք։ Եւ՛ ուր երթամն գիտիցէք, և զճանապարհն գիտիցէք։ Ասէ ցնա Թովմաս. Տէ՛ր, ոչ գիտեմք յո՛ երթաս, և զիա՞րդ զճանապարհն կարասցուք գիտել։ Ասէ ցնա Յս. ես եմ ճանապարհ և ճշմարտութի̄ և կեանք. ոչ ոք գայ առ Հայր՝ եթէ ոչ ինեւ։ Եթէ զիս գիտէիք՝ ապա և զՀայրն իմ գիտէիք, և այսուհետեւ գիտասջիք զնա։ Ասէ ցնա Փիլիպպոս. Տէ՛ր, ցո՛յց մեզ զՀայր՝ և շատ է մեզ։ Ասէ ցնա Յս. այսչափ ժամանակս ընդ ձեզ եմ, եւ ո՞չ ծանեար զիս Փի՛լիպպէ. որ ետես զիս՝ ետես զՀայրն. և դու զիա՞րդ ասես՝ եթէ ցո՛յց մեզ զՀայր։ Ո՞չ հաւատաս՝ եթէ ես ի Հայր, և Հայր յիս է. զբանս զոր ես խօսիմ ընդ ձեզ, ոչ եթէ յանձնէ ինչ խօսիմ, այլ Հայրն որ յիս բնակեալ է՝ նա գործէ զգործսն։ Հաւատա՞յք ինձ, եթէ ես ի Հայր՝ և Հայր յիս։ Ապա թէ ոչ՝ գո՛նէ վս̄ գործոցն հաւատացէք ինձ։ Ամէն ամէն ասեմ ձեզ, թէ որ հաւատայն յիս՝ զգործսն զոր ես գործեմ՝ և նա գործեսցէ, և մեծամեծս ևս քան զնոյնս գործեսցէ. զի ես առ Հայր երթամ։ Եւ զոր ինչ խնդրիցէք յանուն իմ՝ արարից զայն. զի փառաւորեսցի Հայր յՈրդի։ Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս*

իմ պահեսջիք։ Եւ ես աղաչեցից զՀայր, և այլ մխիթա-
րիչ տացէ ձեզ, զի ընդ ձեզ բնակեսցէ ի յաւիտեան.
զՀոգին ճշմարտութեան, զոր աշխարհս ոչ կարէ ընդու-
նել. զի ոչ տեսանէ զնա և ոչ ճանաչէ զնա. բայց
դուք ճանաչէք զնա, զի առ ձեզ բնակեսցէ և ընդ ձեզ
եղիցի։ Ոչ թողից զձեզ որբս. գամ առ ձեզ։ Փոքր
միւս եւս՝ և աշխարհս ոչ եւս տեսանէ զիս, բայց դուք
տեսանիցէք զիս. զի ես կենդանի եմ, և դուք կենդանի
լինելոց էք։ Յայնմ աւուր գիտասջիք դուք, զի ես ի
Հօր իմում՝ և դուք յիս՝ և ես ի ձեզ։ Որ ունի զպա-
տուիրանս իմ և պահէ զնս̃՝ նա է որ սիրէ զիս. և որ
սիրէն զիս՝ սիրեսցի ի Հօրէ իմմէ. և ես սիրեցից զնա,
և երեւեցուցից նմա զիս։ Ասէ ցնա Յուդա՝ ոչ Սկա-
րիովտացին. Տէ՛ր՝ զի՞ եղեւ՝ զի մեզ յայտնելոց ես
զքեզ՝ և ոչ աշխարհի։ Պատասխանի ետ Յս̃ և ասէ
ցնա. եթէ ոք սիրէ զիս՝ զբանն իմ պահեսցէ, և Հայր
իմ սիրեսցէ զնա. և առ նա եկեսցուք, և օթեւանս առ
նմա արասցուք. և որ ոչն սիրէ զիս՝ զբանս իմ ոչ պա-
հէ. և բանն իմ զոր լսէք՝ ոչ է իմ, այլ Հօրն որ ա-
ռաքեաց զիս։ Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ մինչ առ
ձեզս եմ։ Իսկ մխիթարիչն Հոգին Սբ̃՝ զոր առաքեսցէ
Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զամ̃, և յիշե-
ցուսցէ զամ̃ որ ինչ ասացի ձեզ։ Խաղաղութի̃ թողում
ձեզ, զխաղաղութի̃ զիմ տամ ձեզ. ոչ ոպ̃ աշխարհս
տայ՝ տամ ես ձեզ. մի՛ խռովեսցին սիրտք ձեր, և մի՛
զանգիտեսցեն։ Լուարուք զի ասացի ես ձեզ՝ թէ եր-
թամ և գամ առ ձեզ. եթէ սիրէիք զիս՝ ապա ու-
րախ լեալ էր ձեր՝ թէ ես առ Հայր երթամ, զի Հայր
իմ մեծ է քան զիս։ Եւ այժմ ասացի ձեզ մինչ չեւ
եղեալ, զի յորժամ լինիցի՝ հաւատասջիք։ Ոչ եւս այլ
շատ խօսեցայց ընդ ձեզ. գայ իշխան աշխարհիս այսո-
րիկ, և յիս ինչ ոչ գտանէ։ Այլ զի ծանիցէ աշխարհ,
եթէ սիրեմ զՀայր, և որպէս պատուիրեաց ինձ Հայր՝

այնպէս առնեմ. ծն, արի՛ք գնասցուք աստի։ Ես եմ որթն ճշմարիտ, և Հայր իմ մշակ է։ Ամենայն ուռ որ յիս է և ոչ բերէ պտուղ՝ կտրէ զնա. և զամ որ բերէ պտուղ՝ սրբէ զնա, զի առաւել եւս պտղաբեր լիցի։ Դուք արդէն իսկ սբ էք վն բանին զոր խօսեցայ ընդ ձեզ։ Կացէ՛ք յիս՝ և ես ի ձեզ. որպէս ուռն ոչ կարէ պտուղ բերել յանձնէ իւրմէ, եթէ ոչ իցէ հաստատեալ յորթն, նոյնպէս և դուք՝ եթէ ոչ յիս հաստատեալ իցէք։ Ես եմ որթ, և դուք ուռ. որ հաստատեալ է յիս՝ և ես ի նա, նա բերէ պտուղ յոյժ. զի առանց իմ ոչինչ կարէք առնել։ Եթէ ոք ոչ է հաստատեալ յիս, ել նա արտաքս իբրև զուռն՝ և ցամաքեցաւ, և ժողովեն զնա և ի հուր արկանեն, և այրի։ Եթէ կայցէք յիս՝ և բանք իմ ի ձեզ կայցեն, որ ինչ կամիցիք՝ խնդրեսջիք, և լինիցի ձեզ։ Յայսմիկ փառաւորեցաւ Հայր իմ, զի պտուղ յոյժ բերիցէք, և եղիջիք իմ աշակերտք։ Որպ սիրեաց զիս Հայր՝ և ես սիրեցի զձեզ. հաստատուն կացէք ի սէր իմ։ Եթէ պահիցէք զպատուիրանս իմ՝ կացջիք ի սէր իմ. որպ ես զպատուիրանս Հօր իմոյ պահեցի, և կամ ի սէր նր։ Զայս խօսեցայ ընդ ձեզ, զի ուրախութի իմ ի ձեզ իցէ, և ձեր ուրախութիւնն լցեալ եղիցի։ Այս է պատուէր իմ՝ զի սիրեսջիք զմիմեանս, որպ և ես զձեզ սիրեցի։ Մեծ ևս քան զայս սէր ոչ ոք ունի՝ եթէ զանձն իւր դիցէ ի վր բարեկամաց իւրոց։ Դուք բարեկամք էք իմ, եթէ առնիցէք զոր ես պատուիրեմ ձեզ։ Ոչ ևս կոչեմ զձեզ ծառայս, զի ծառայն ոչ գիտէ զինչ գործէ տէրն նր. այլ զձեզ կոչեցի բարեկամս, զի զամ զոր լուայ ի Հօրէ իմմէ՝ ծանուցի ձեզ։ Ոչ եթէ դուք ընտրեցէք զիս, այլ ես ընտրեցի զձեզ, և եդի զձեզ՝ զի դուք երթայցէք և պտղաբերք լինիցիք. և պտուղն ձեր կացցէ. և զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ յանուն իմ՝ տացէ ձեզ։ Զայս պատուիրեմ՝ զի սիրեսջիք զմի-

մեանս։ Եթէ աշխարհ զձեզ ատեայ՝ գիտասջիք զի Նախ զիս ատեաց։ Եթէ յաշխարհէ աստի էիք՝ աշխարհ զիւրսն սիրէր արդեօք. բայց զի չէք յաշխարհէ, այլ ես ընտրեցի զձեզ յաշխարհէ, վն՟ այնորիկ ատեայ զձեզ աշխարհ։ Յիշեցէք զբանն զոր ասացի ձեզ, թէ ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր. եթէ զիս հալածեցին, ապա և զձեզ հալածեսցեն. եթէ զբանն իմ պահեցին, ապա և զձերն պահեսցեն։ Այլ զնոյնս արասցեն ընդ ձեզ վն՟ անուան իմոյ, զի ոչ գիտեն զայն որ առաքեացն զիս։ Իմ եթէ չէր եկեալ և խօսեցեալ ընդ Նն՟ մեղ ինչ ոչ գոյր Նց՟. բայց արդ չիք պատճառք վն՟ մեղաց իւրեանց։ Որ զիս ատեայ՝ և զՀայրն իմ ատեայ։ Եթէ զգործսն չէր գործեալ ի Նն՟ զոր ոչ այլ ոք գործեաց, մեղ ինչ ոչ գոյր Նց՟. բայց արդ տեսին և ատեցին՝ և՛ զիս և՛ զՀայր իմ։ Այլ զի լցցի բանն որ յօրէնս Նց՟ գրեալ է, թէ Ատեցին զիս տարապարտուց։ Բայց յորժամ եկեսցէ մխիթարիչն՝ զոր ես առաքեցից ձեզ ի Հօրէ, զՀոգին ճշմարտութե՟, որ ի Հօրէ ելանէ, Նա վկայեսցէ վն՟ իմ. և դուք վկայէք՝ զի ի սկզբանէ ընդ իս էք։ Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի՛ գայթագղեսջիք։ Ի ժողովրդոց իւրեանց հանիցեն զձեզ. այլ եկեսցէ ժամանակ՝ զի ամ՟ որ սպանանիցէ զձեզ՝ համարիցի պաշտօն մատուցանել Այ՟։ Եւ զայն արասցեն ընդ ձեզ՝ քանզի ոչ ծանեան զՀայր և ոչ զիս։ Այլ և զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի յորժամ եկեսցէ ժամանակ՝ յիշիցէք թէ ես ասացի ձեզ։ Զայս ի սկզբանէ ոչ ասացի ձեզ, քանզի ընդ ձեզ էի։ Բայց արդ երթամ ես առ առաքիչն իմ. և ոչ ոք ի ձէնջ հարցանէ ցիս՝ թէ յո՞ երթաս։ Այլ զի զայս խօսեցայ ընդ ձեզ՝ տրտմութի՟ ելից զսիրտս ձեր։ Այլ ես զճշմարիտն ասեմ ձեզ. լաւ է ձեզ եթէ ես երթամ. զի եթէ ես ոչ երթայց՝ մխիթարիչն ոչ եկեսցէ առ ձեզ. ապա եթէ երթամ՝ առաքեցից զնա առ ձեզ։ Եւ Նա

եկեալ յանդիմանեսցէ զաշխարհ վն մեղաց, և վն արդարութե, և վն դատաստանի։ Վասն մեղաց՝ զի ոչ հաւատան յիս. վն արդարութե՝ զի առ Հայր իմ երթամ, և ոչ ևւս տեսանէք զիս. վն դատաստանի՝ զի իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է։ Եւս բազում ինչ ունիմ ասել ձեզ, այլ ոչ կարէք հանդարտել այժմիկ։ Յորժամ եկեսցէ նա, Հոգին ճշմարտութե, առաջնորդեսցէ ձեզ ամ ճշմարտութք. զի ոչ եթէ յանձնէ ինչ խօսիցի, այլ զոր լսիցէ՝ խօսիցի, և զգալոցն պատմեսցէ ձեզ։ Նա զիս փառաւորեսցէ, զի յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ։ Զամ ինչ զոր ունի Հայր՝ իմ է. վն այնորիկ ասացի ձեզ, թէ յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ։ Փոքր մի և ոչ ևւս տեսանէք զիս, և ապա սակաւիկ մի և տեսանիցէք զիս. և ես երթամ առ Հայր։ Ասէին ոմանք յաշակերտաց անտի ցմիմեանս. զի՞նչ է այս զոր ասէ ցմեզ, թէ փոքր մի՝ և ոչ տեսանէք զիս, և դարձեալ սակաւիկ մի և տեսանիցէք զիս. և թէ ես առ Հայր երթամ։ Եւ ասէին. զի՞նչ իցէ այն փոքր միւս ևւսն, չգիտեմք զինչ խօսի։ Գիտաց Յս եթէ կամէին ցնա հարցանել, և ասէ ցնս. վն այդորիկ խնդրէք ընդ միմեանս, զի ասացի թէ փոքր մի՝ և ոչ տեսանէք զիս, և դարձեալ սակաւիկ միւս ևւս՝ և տեսանիցէք զիս։ Ամէն ամէն ասեմ ձեզ, զի լացջիք և ողբասջիք դուք, և աշխարհ խնդասցէ. դուք տրտմեսջիք, այլ տրտմութիւն ձեր յուրախութիւն եղիցի։ Կին յորժամ ծնանիցի՝ տրտմութիւն է նմա, զի հասեալ է ժամ նորա. այլ յորժամ ծնցի զմանուկն՝ ոչ ևւս յիշէ զնեղութիւնն՝ վասն խնդութեանն զի ծնաւ մարդ յաշխարհ։ Եւ դուք այժմ տրտմութիւն ունիք. այլ դարձեալ տեսից զձեզ, և ուրախ լիցին սիրտք ձեր. և զուրախութիւնն ձեր ոչ ոք հանիցէ ի ձէնջ։ Եւ յայնմ աւուր զիս ինչ ոչ հարցանիցէք։ Ամէն ամէն ասեմ ձեզ,

զի զոր ինչ խնդրիցէք ի Հօրէ իմմէ յանուն իմ՝ տա-
ցէ ձեզ: Մինչեւ ցայժմ ոչ ինչ խնդրեցէք յանուն
իմ. խնդրեցէք, եւ առնուցուք. զի ուրախութիւնն
ձեր լցեալ իցէ: Զայս առակօք խօսեցայ ընդ ձեզ.
եկեսցէ ժամանակ՝ յորժամ ոչ եւս առակօք խօսե-
ցայց ընդ ձեզ. այլ յայտնապէս զՀօրէ պատմեցից
ձեզ: Յայնմ աւուր խնդրեսջիք յանուն իմ. եւ ոչ
ասեմ ձեզ՝ եթէ ես աղաչեցից զՀայր վս ձեր. զի
ինքն իսկ Հայր սիրէ զձեզ, զի դուք զիս սիրեցէք, եւ
հաւատացէք՝ եթէ ես յԱՅ ելի: Ելի ի Հօրէ եւ եկի
յաշխարհ. դարձեալ թողում զաշխարհ, եւ երթամ
առ Հայր: Ասեն ցնա աշակերտքն. ահա արդ յայտ-
նութբ խօսիս, եւ առակ եւ ոչ մի ինչ ասես: Այժմիկ
գիտեմք՝ եթէ գիտես զամ. եւ ոչ ինչ պիտոյ է՝ եթէ
ոք հարցանիցէ զքեզ. յայսմիկ հաւատամք՝ եթէ յԱՅ
ելեր: Պատասխանի ետ նց Յս, եւ ասէ. այժմ հաւա-
տայք: Ահա եկեսցէ ժամ, եւ եկեալ իսկ է, զի ցրուե-
սջիք յիւրաքանչիւր տեղիս, եւ զիս միայն թողուցուք.
եւ չեմ միայն, զի Հայր ընդ իս է: Զայս խօսեցայ ընդ
ձեզ, զի ընդ իս խաղաղութի ունիցիք. յաշխարհի աստ
նեղութի ունիցիք, այլ քաջալերեցարուք, զի ես յաղ-
թեցի աշխարհի: Զայս իբրեւ խօսեցաւ Յս, ամբարձ
զաչս իւր յերկինս, եւ ասէ. Հայր՝ հասեալ է ժամ,
փառաւորեա զՈրդի քո, զի եւ Որդի քո փառաւորեսցէ
զքեզ: Որպ ետուր նմա իշխանութի ամ մարմնոյ, զի ամի
զոր ետուր նմա՝ տացէ զկեանսն յաւիտենականս: Այս
են յաւիտենական կեանք՝ զի ծանիցեն զքեզ միայն
ճշմարիտ ԱԾ, եւ զոր առաքեցեր զՅս Քս: Ես զքեզ
փառաւորեցի յերկրի. զգործն կատարեցի, զոր ե-
տուր ցիս զի արարից. եւ այժմ փառաւորեա զիս Հայր՝
առ ի քէն փառօքն զոր ունէի յառաջ քան զլինել
աշխարհի առ ի քէն: Յայտնեցի զանուն քո մարդկան՝
զորս ետուր ինձ յաշխարհէ. քո էին, եւ ինձ ետուր

զնս, և զբանն քո պահեցին։ Արդ գիտացին՝ եթէ զամ ինչ զոր ետուր ինձ՝ ետու նց. և նոքա ընկալան, և ծանեան ճշմարտութք՝ թէ առ ի քէն ելի. և հաւատացին եթէ դու առաքեցեր զիս։ Արդ՝ ես վն նց աղաչեմ, և ոչ վն աշխարհի աղաչեմ. այլ վն նց՝ զորս ետուրն ինձ, զի քո են։ Եւ որ ինչ իմ է՝ ամ քո է. և որ ինչ քո է՝ այն իմ է. և փառաւորեալ եմ ի նս։ Եւ ես ոչ եւս եմ յաշխարհի, և նոքա յաշխարհի են, և ես առ քեզ գամ. Հայր սբ, պահեա զնս յանուն քո, որով ետուրն ինձ. զի եղիցին մի, որպ և մեք մի եմք։ Մինչ էի յաշխարհի ընդ նս, ես պահէի զնս յանուն քո՝ որով ետուրն ինձ, և պահեցի. և ոչ ոք ի նոցանէ կորեաւ, բայց որդին կորստեան, զի գիրն լցցի։ Բայց արդ առ քեզ գամ. և զայս խօսիմ յաշխարհի, զի ունիցին զուրախութին իմ լիով յանձինս իւրեանց։ Ես ետու նց զբանն քո. և աշխարհ ատեաց զնս, զի չեն յաշխարհէ, որպ և ես չեմ յաշխարհէ։ Ոչ զայս աղաչեմ՝ զի բարձցես զնս յաշխարհէ, այլ զի պահեսցես զնս ի չարէ։ Յաշխարհէ աստի չեն, որպ և ես չեմ յաշխարհէ։ Սուրբ արա զնս ճշմարտութք քով. զի քո բանդ ճշմարտութի է։ Որպ զիս առաքեցեր յաշխարհ, և ես առաքեցի զնս յաշխարհ։ Եւ ի վր նց ես սբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտութք։ Այլ ոչ վն նոցա միայն աղաչեմ, այլ և վն ամ հաւատացելոց բանիւն նոցա յիս. զի ամենեքին մի իցեն, որպ դու Հայր յիս և ես ի քեզ, զի և նոքա ի մեզ իցեն. զի և աշխարհ հաւատասցէ՝ եթէ դու առաքեցեր զիս։ Եւ ես զփառսն զոր ետուր ինձ՝ ետու նոցա, զի իցեն մի որպ և մեք մի եմք։ Ես ի նս, և դու յիս, զի եղիցին կատարեալք ի մի։ Եւ գիտասցէ աշխարհ՝ եթէ դու առաքեցեր զիս. և սիրեցի զնս որպ դու զիս սիրեցեր։ Հայր, զորս ետուրն ինձ՝ կամիմ զի ուր եսն եմ՝ և նոքա իցեն ընդ իս. զի տեսանիցեն

զփառս իմ զոր ետուրն ցիս. զի սիրեցեր զիս յառաջ քան զլինելն աշխարհի: Հայր արդար, և աշխարհ զքեզ ոչ ծանեաւ. այլ ես զքեզ ծանեայ, և նոքա ծանեան՝ եթէ դու առաքեցեր զիս: Եւ ծանուցի նոցա զանուն քո, և ծանուցից. զի սէրն զոր սիրեցեր զիս՝ ի նոսա իցէ, և ես ի նոսա: Զայս իբրեւ ասաց Յիսուս՝ ել աշակերտօքն հանդերձ յայնկոյս ձորոյն կեդրովնի, ուր էր պարտէզ, յոր եմուտ ինքն և աշակերտքն իւր: ԺԸ. 1:

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա: Երկու անգամ կրկնել:

Եւ եւս խաղաղութեան: Օրհնութիւն և փառք:

Ի վճարել ամէն մի փոխի՝ շեշտագանեն երկուս մոլեգնս՝ մի յաջմէ եւ մի յահեկէ՝ յերկոտասան մոլեգնացն, է յետնոցն սկսեալ մինչեւ ցառաջինն:

Երկրորդ փոխ: Սաղմոս Խ:

Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր:

Տէր փրկէ զնա և կեցուցանէ. երանելի առնէ զնա ի վերայ երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց:

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց. և զամենայն անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութենէ նորա:

Ես ասացի Տէր ողորմեա ինձ. և բժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ:

Թշնամիք իմ ասացին ինձ չար. երբ իցէ զի մեռցի և կորիցէ անուն նորա:

Մտանէր տեսանել զնանրութիւն. խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր:

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր. զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ:

խորհեցան չար ի վերայ իմ. բան անօրէնութեան ե-դին ի վերայ իմ:

Մի՛ թէ որ ննջիցէն ոչ եւս յաւելուցու յառնել. քանզի և այրն խաղաղութեան իմոյ՝ յոր և ես յու-սացայ:

Որ ուտէր ընդ իս հաց, յաճախեաց առնել ինձ խա-բէութիւն:

Այլ դու Տէր ողորմեա՛ ինձ. կանգնեա՛ զիս, և հա-տուցից նոցա:

Յայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս. զի մի՛ ու-րախ եղիցին յիս թշնամիք իմ:

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար. հաստա-տեցեր զիս առաջի քո յաւիտեան:

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայելի յաւիտեանս յաւ-իտենից. եղիցի եղիցի:

Սաղմոս ԽԱ:

Ո՟պ փափաքէ եղջերու յաղբերս ջուրց. այնպէս փա-փաքէ անձն իմ առ քեզ Ա՟Ծ:

Ծարաւի է անձն իմ առ քեզ, Ա՟Ծ հզօր և կենդանի. ե՞րբ եկից երեւեցայց երեսացդ Ա՟Յ:

Եղեն ինձ արտասուք իմ կերակուր ի տուէ և ի գի-շերի. և այն ղի ասէին ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է Աստուած քո:

Զայս ո՟պ յիշէի՝ տառապէր յիս անձն իմ. քաջալերէի զի մտից ընդ յարկաւ սքանչելեաց տան Ա՟Յ:

Ի ձայն ցնծութ՟ե խոստովանութ՟ե. և ի ձայն բարե-կենդանութ՟ե:

Արդ ընդէ՞ր տրտում ես անձն իմ, կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ Աստուած, խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է:

Անձն իմ յոյժ խռովեցաւ. վասն այսորիկ յիշեցի զքեզ յերկրէն Յորդանանու, յԱհերմոնէ լեռնէ փո-քուէ:

*Խորք խորոց կարդացին առ քեզ՝ ի ձայն սահանաց քոց։ Ամենայն զբօսանք քո և ալիք քո անցին ի վե̃ իմ։*

*Ի տուէ պատուիրեաց Տէր զողորմութիւն իւր. գի-շերի զօրհնութիւն նոր. և աղօթք իմ առ Աստուած վասն կենաց իմոց։*

*Ասացի ԱԾ. ընդունելի իմ ես, ընդէ՞ր մերժեցեր զիս. ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։*

*Ի փշրել ոսկերաց իմոց նախատեցին զիս թշնամիք իմ. յասել ցիս զօրհանապազ՝ թէ ո՞ւր է ԱԾ քո։*

*Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ ԱԾ, խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց Աստուած է։*

Սաղմոս ԽԲ։

*Դա՛տ արա ինձ ԱԾ. և իրա՛ւ արա ինձ ի դատաստանի իմում։*

*Յազգէ որ ոչ է ո̃ւր. ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա՛ զիս։*

*Դու ԱԾ հզօրիչ իմ ես. ընդէ՞ր մոռացար զիս. ընդէ՞ր տրտում գնամ ես ի նեղել թշնամւոյ իմոյ։*

*Առաքեա՛ Տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո. զի առաջնորդեսցեն ինձ. հանցեն զիս ի լեառն սուրբ և ի յարկս քո։*

*Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ. առ Աստուած որ ուրախ առնէ զմանկութիւն իմ։*

*Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ, Աստուած Աստուած իմ։*

*Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ. կամ ընդէ՞ր խռովես զիս. յուսա՛ առ ԱԾ, խոստովանեա՛ նմա. փրկիչ երեսաց իմոց ԱԾ է։*

*Փառք Հօր։ Այժմ և միշտ։*

Կցուրդ։

*Բան անօրէնութե̃ եդին ի վերայ իմ. Տէր Տէր մի թողուր զիս։* Երեք անգամ կրկնեա, եւ ղջերինն քարոզ ասա։

Շարական Դկ։

Լլից զօրէ՜նսըն Մո՛վսէ՛սի զոր խօսեցա՛ւ ի Սինայի՝· եկեր ըզգառն օրի՛նակին և ըզբա՛ղա՛րջն ընդ եղեգի՝· ըզհի՛նն ի նորըս փոխե՛լով զըստուերն ի լո՛յս ճըշմար-տելո՛վ· փո՛խան գառին ի՛նքը՛ն գոլով գառն Ա՛ստու-ծոյ նուիրելո՛վ։

Ընդ բաղարջին հաց անխըմոր ետ ըզմարմինն իւր զերկնաւոր· ըզկուսածինն անսերմնաւոր զանապական և զկենարար· ընդ ոչխարին արեան ուխտին ետ մեզ զարիւնն իւր ուխտ կրկին· և եղեգան դառնագունին փոխան ըզվարս աստուածային։

Թագաւո՛րն արարածոց զհացըն կենաց ետ քաղցելոց· և ըզբաժակն ուրախարար ողբ յԱդամայ տրտմեցելոց· այս նոր ուխտ է իմոյ արեան փոխան հընոյ ուխտին ա-րեանց· զոր յիշատակ իմ առնիցէք մինչեւ եկից ես միւսանգամ։

Ժողովեա՛լքս ի քէն հայցեմք ընդ ժողովեալ մետա-սանին· յոր զկենարարըդ քո մարմին բաշխեալ ետուր ընդ բաժակին· շնորհեա՛ և մեզ Տէր ընդ նոսին հա-ղորդ լինել քում սեղանին· կենաց հացիդ յոր փա-փագիմք և ըմպելւոյդ ում ծարաւիմք։

Ի յընտրելոց աշակերտացն Յուդաս մեկնեալ ի նը գաւանցն· զբարձող մեղաց զգառն Ա՜յ մատնէր ի մահ ընդ արծաթոյ· ի յընթրի՛սըն հոգեւոր մերձի ժըպիրհն և նենգաւո՛րն· ուտելով ընդ վարդապետըն յաճախէ զխաբէութիւն։

Այսըն խօսէր աղերսալի խաւարելոյն վասըն դարձի· մի ումն ի ձէնջ ասէ եղբարք զիս մատնելոց է առ ի մահ· Պետրոս լըւեալ զայն զարհուրէր և ակնարկէր առ Յովհաննէ՛ս· հարցանել թէ ով իցէ դաւաճանող վարդապետին։

## Զ՟Ն՟Ւ Ո՛րթիւ:

### Աւետարան ըստ Ղուկասու: ԻԲ. 1:

### Վասն չարչարանաց Տ՟ն մերոյ Յ՟սի Ք՟սի:

Մերձեցաւ տօն բաղարջակերացն՝ որ կոչէր Պասքա. և խնդրէին քահանայապետքն և դպիրք՝ թէ որպէս սպանանիցեն զնա. բայց երկնչէին ի ժողովրդենէ անտի: Ապա եմուտ սատանայ ի Յուդա կոչեցեալն Իսկարիովտացի, որ էր ի թուոյ երկոտասանիցն: Չոգաւ եդ բանս ընդ քահանայապետսն և ընդ դպիրս և ընդ իշխանս ժողովրդեանն, զի մատնեսցէ զնա նոցա: Եւ խնդացին, և խոստացան տալ նմա արծաթ: Եւ յանձն առ, և խնդրէր պարապ՝ մատնել զնա նոցա մեկուսի յամբոխէն: Եկն օր բաղարջակերացն՝ յորում օրէն էր զենուլ զպասեքն: Եւ առաքեաց զՊետրոս և զՅովհաննէս, և ասէ. երթայք պատրաստեցէք մեզ զպասեքն՝ զի կերիցուք: Եւ նոքա ասեն. ո՞ւր կամիս զի պատրաստեսցուք: Եւ ասէ ցնոսա. ահա իբրեւ մտանիցէք ի քաղաքն, պատահեսցէ ձեզ այր մի բարձեալ սափոր ջրոյ. երթիջիք զհետ նորա ի տունն յոր մտանիցէ. և ասասջիք ցտանուտէր տանն. վարդապետ ասէ քեզ. ո՞ւր են վանքն իմ, յորում զպասեքն ուտիցեմ աշակերտօքս հանդերձ: Եւ նա ցուսցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ, և անդ պատրաստեսջիք: Եւ գնացեալ գտին որպէս եւ ասացն նոցա, և պատրաստեցին զպասեքն: Եւ իբրեւ ժամ եղեւ՝ բազմեցաւ, և երկոտասան առաքեալքն ընդ նմա: Եւ ասէ ցնոսա. ցանկանալով ցանկացայ զայս պասեք ուտել ընդ ձեզ՝ մինչ չեւ չարչարեալ իցեմ: Բայց ասեմ ձեզ, թէ ոչ եւս կերայց ի սմանէ՝ մինչեւ լցցի յարքայութեան Ա՟յ: Եւ ընկալեալ բաժակ՝ գոհացաւ և ասէ. առէք զայդ՝ և բաժանեցէք ի ձեզ: Ասեմ ձեզ՝ թէ յայսմ հետէ ոչ արբից ի բերոյ որթոյ՝ մինչեւ եկեսցէ արքայութիւն Ա՟յ: Եւ առեալ հաց գոհացաւ, եբեկ և ետ նոցա, և

ասէ. այս է մարմին իմ, որ վ՟ն բազմաց տուեալ. զայս արասջի՛ք առ իմոյ յիշատակի։ Նոյնպէս և զբաժակն յետ ընթրեացն ա՛ռ, և ասէ. այս բաժակ է Նոր ուխտ իմով արեամբ վ՟ն ձեր հեղլոյ։ Բայց ահաւասիկ ձեռն մատնչի իմոյ ընդ իս ի սեղանս։ Եւ որդի մարդոյ ըստ սահմանելոյն երթայ, բայց վա՛յ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն մատնիցի։ Եւ նոքա սկսան խնդրել ընդ միմեանս, թէ ո՛վ է ի նոցանէ՝ որ զայն գործելոց իցէ։ Եւ եղեւ հակառակութ՟ի ի մէջ ն՟ց, թէ ո՞ ի նոցանէ համարիցի մեծ։ Եւ նա ասէ ց՟նս. Թագաւորք ազգաց տիրեն ն՟ց, և որ իշխենն ն՟ց՝ բարերարք կոչին. այլ դուք ոչ այնպէս. այլ որ մեծն է ի ձեզ՝ եղիցի իբրեւ զկրտսերն, և առաջնորդն իբրեւ զսպասաւորն։ Ո՞վ է մեծ, բազմակա՞ն եթէ սպասաւորն. ո՞չ ապաքէն բազմականն. բայց ես եմ ի միջի ձերում իբրեւ սպասաւոր։ Եւ դո՛ւք էք՝ որ ցանգ կայիք ընդ իս ի փորձութիւնս իմ. և ես ուխտեմ ձեզ, ո՟պ և Հայր իմ ուխտեաց ինձ զարքայութիւն, զի ուտիցէք և ըմպիցէք ի սեղան իմ յարքայութեան իմում, և նստիցիք յերկոտասան աթոռ՝ դատել զերկոտասան ազգս Իսրայելի։ Եւ ասէ Տէր. Սիմո՛ն Սիմոն, ահա սատանայ խնդրեաց զձեզ՝ խարբալել իբրեւ զցորեան. այլ ես աղաչեցի վ՟ն քո՝ զի մի՛ պակասեսցեն հաւատք քո. և դու երբեմն դարձցիս և հաստատեսցես զեղբարս քո։ Եւ նա ասէ ցնա. Տէր, ընդ քեզ պատրաստ եմ և ի բանտ և ի մահ երթալ։ Եւ նա ասէ ցնա. ասեմ քեզ Պե՛տրէ, չիցէ այսօր հաւու խօսեալ՝ մինչեւ երիցս ուրասցիս զիս չգիտել։ Եւ ասէ ց՟նս. յորժամ առաքեցի զձեզ առանց քսակի և մախաղի և կօշկաց, մի՛ թէ կարօտացա՞յք իմիք։ Եւ նոքա ասեն. եւ ոչ իմիք։ Ապա ասէ. այլ այժմ որ ունիցի քսակ՝ բարձցէ, նոյնպէս և մախաղ. եւ որ ոչն ունիցի՝ վաճառեսցէ զձորձս իւր և գնեսցէ իւր սուսեր։ Բայց ասեմ ձեզ. զի այս եւս որ գրեալ է՝ պարտ է

զի կատարեսցի յիս, թէ ընդ անօրէնս համարեցաւ. զի որ վն իմ ինչ է՝ վճարեալ է։ Եւ նոքա ասեն. Տէր, ահաւասիկ են աստ երկու սուրք։ Եւ ասէ ցնոսա. բաւական են։ Եւ ելեալ գնաց ըստ սովորութեան ի լեառն ձիթենեաց. գնացին զհետ նր և աշակերտքն։ Իբրեւ եհաս ի տեղին՝ ասէ ցնոսա. յաղօթս կացէք չմտանել ի փորձութի։ Եւ ինքն մեկնեցաւ ի նոցանէ իբրեւ քարընկէց մի. եդ ծունր, կայր յաղօթս, և ասէր. Հայր՝ եթէ կամիս՝ անցո զբաժակս զայս յինէն. բայց ոչ իմ կամք՝ այլ քոյդ լիցին։ Եւ երեւեցաւ նմա հրեշտակ յերկնից՝ և զօրացուցանէր զնա. և էր ի տագնապի, և մտադիւրութբ եւս կայր յաղօթս։ Եւ հոսէին ի նմանէ քրտունք իբրեւ զկայլակս արեան՝ ոլոռն ոլոռն հեղեալ յերկիր։ Եւ յարուցեալ յաղօթիցն՝ եկն առ աշակերտսն, և եգիտ զնս ի քուն ի տրտմութէն. և ասէ ցնս. զի՞ ննջէք, արի՛ք կացէք յաղօթս՝ զի մի մտանիցէք ի փորձութի։ Եւ մինչ դեռ խօսէր, ահաւասիկ ամբոխ. և որ կոչէրն Յուդա՝ մի յերկոտասանիցն, առաջնորդէր նց։ Իբրեւ մերձեցաւ առ Յս համբուրեաց զնա. քանզի զայն նշան տուեալ էր նց, թէ ընդ որում ես համբուրեցից՝ նա է, զնա ունիցիք։ Ասէ ցնա Յս. Յուդա, համբուրելո՞վ մատնես զորդի մարդոյ։ Իբրեւ տեսին որ զնովաւն էին՝ որ ինչ եղեւն, ասեն ցնա. Տէր, հարցուք զնս սրով։ Եւ եհար մի ոմն ի նոցանէ զքահանայապետին ծառայ, և ի բաց եհան զաջոյ ունկն նր։ Պատասխանի ետ Յս և ասէ. թոյլ տուք մինչեւ ցայդ վայր, և մատուցեալ յունկնն՝ բժշկեաց զնա։ Եւ ասէ ցեկեալսն ի վր նր՝ ցքահանայապետսն և ցիշխանս տաճարին և ցծերսն. իբրեւ ի վր աւազակի՞ ելէք սուսերօք և բրօք. հանապազ ընդ ձեզ էի ի տաճարին, և ոչ ձգեցէք ձեռս յիս. այլ այս է ձեր ժամ, և իշխանութի խաւարի։ Եւ կալեալ զնա՝ ածին և մուծին ի տուն քահանայապետին, և Պետրոս եր-

Թայր զկնի նր՟ հեռագոյն։ Իբրեւ լուցին կրակ ի մէջ գաւթին և նստան շուրջ՝ նստաւ և Պետրոս ի մէջ նց՟։ Ետես զնա աղախին ոմն՝ զի նստէր առ լոյսն. հայեցաւ ընդ նա և ասէ. և սա ընդ նմ՟ էր՝ որ ընդ նմայն էին։ Իսկ Պետրոս ուրացաւ և ասէ. ոչ գիտեմ զնա, կին դու։ Եւ յետ սակաւ միոյ այլ ոմն ետես զնա, և ասէ. և դու ի նոցանէ ես։ Եւ Պետրոս ասէ. այր դու, չեմ ի նոցանէ։ Եւ իբրեւ ժամ մի անց ի վր՟՝ այլ ոմն վիճէր և ասէր. ստոյգ և սա ընդ նմա էր, քանզի Գալիլեացի է։ Ասէ Պետրոս. այր դու, չգիտեմ զինչ խօսիսդ։ Եւ առժամայն՝ մինչ դեռ նա զայն ասէր, խօսեցաւ հաւ։ Դարձաւ Տէր և հայեցաւ ի Պետրոս. և յիշեաց Պետրոս զբանն Տն՟ զոր ասաց ցնա. մինչ չեւ հաւու խօսեալ իցէ, երիցս ուրասցիս՝ չգիտել զիս։ Եւ ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս։ Եւ արքն որ պահէին զնա՝ այպն առնէին ընովաւ, և հարկանէին։ Ծածկէին զերեսս նր՟ և տանջէին. և հարցանէին ցնա և ասէին. մարգարեա՛ց՝ ո՞վ է որ եհարն զքեզ։ Եւ այլ բազում ինչ հայհոյութք՟ խօսէին ի նա։ 65։

**Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։ Երէցս կրկնեա։**

**Նաւ եւս խաղաղ։ Օրհնութիւն և փառք։**

**Երրորդ ձայն։ Սաղմոս ԾԸ։**

Փրկեա՛ զիս ի թշնամեաց իմոց Ած՟. յայնցանէ որ յարուցեալ են ի վր՟ իմ՝ ապրեցո՛ զիս։

Փրկեա՛ զիս յայնցանէ որ գործեն զանօրէնութիւն. յարանց արիւնահեղաց ապրեցո՛ զիս։

Որսալ զանձն իմ կամեցան. և հասին ի վերայ իմ հզօրք։

Ոչ մեղք իմ և ոչ յանցանք. առանց մեղաց ընթացայ և ուղիղ եղէ։

Զարթի՛ր ընդ առաջ իմ և տե՛ս. դու Տէր զօրութեանց Աստուած Իսրայելի։

Նայեա՛ց և ա՛յց արա ա՛մ հեթանոսաց. մի՛ ողորմիր ամենեցուն որ գործեն զանօրէնութիւն։

Դարձցին ընդ երեկոյս. սովեսցին որպէս շունք, և շրջեսցին զքաղաքաւ։

Նոքա ղօղանջեսցեն բերանովք իւրեանց. և սուր է ի շրթունս նոցա։

Իսկ արդ՝ ո՞վ լուաւ զայս, զի դու Տէր ծիծաղեսցիս զնոքօք. և արհամարհեսցես զամենայն հեթանոս։

Զզօրութի իմ առ քեզ պահեցից. զի Ած օգնական իմ է։

Աստուած իմ, ողորմութիւն նորա կանխեսցէ առ իս. և Աստուած իմ ցուցցէ ինձ ի թշնամիս իմ։

Մի՛ սպանաներ զնս. զի մի մոռասցին զժողովուրդս քո։

Ցրուեա՛ զնոսա զօրութեամբ քով և ընկեա՛ զնոսա. զի դու ես պաշտպան իմ Տէր։

Մեղք բերանոյ նոցա և բանք շրթանց նոցա. ընկլցին նոքա յամբարտաւանութեան իւրեանց։

Ցանէծս և ի ստութիւն մատնեսցին. ի կատարածի բարկութեամբ սպառեսցին և մի՛ գտցին։

Գիտասցեն զի Աստուած տիրէ Յակովբայ և ամենայն ծագաց երկրի։

Դարձցին ընդ երեկոյս. սովեսցին որպէս շունք, և շրջեսցին զքաղաքաւ։

Նոքա սփռեսցին յուտել. ապա թէ ոչ յագեսցին՝ տրտնջեսցեն։

Ես օրհնեցից զօրհնութիւնս Տեառն. ցնծացայց առաւօտուց յողորմութեան քում։

Զի եղեր իմ պաշտպան և տուն ապաւինի. յաւուր նեղութեան իմոյ օգնական իմ։

Քեզ սաղմոս ասացից Աստուած, ապաւէն իմ. Աստուած ողորմութեան իմոյ։

Սաղմոս ԾԹ։

Աստուած մերժեցեր և աւերեցեր զմեզ. բարկացար և գթացիս ի մեզ։

Շարժեցեր զերկիր և խռովեցուցեր զսա. բժշկեա՛ զհարուածս սորա՝ զի սասանեցաւ։

Ցուցեր ժողովրդեան քում խստութիւն. և ետուր ըմպել մեզ գինի յիմարութեան։

Ետուր երկիւղածաց քոց նշան. զի ապրեսցին յերեսաց աղեղան։

Ոպ̃ փրկեսցին սիրելիք քո. կեցո՛ աջով քո և լո՛ւր մեզ։

Աստուած խօսեցաւ ի սրբութենէ իւրմէ. ցնծացայց, բարձր եղէց, բաժանեցայց զՍիւքէմ. և զհովիտս յարկաց չափեցից։

Իմ է Գաղաադ և իմ է Մանասէ. Եփրեմ հզօրիչ գլխոյ իմոյ։

Յուդա թագաւոր իմ. Մովաբ աւազան յուսոյ իմոյ։

Յեդովմէ ուղղեցից զգնացս իմ. և ինձ այլազգիք հնազանդ եղեն։

Ո՞ տարցի զիս ի քաղաք ամուր. կամ ո՞ առաջնորդեսցէ ինձ մինչեւ յԵդումէ։

Եթէ ոչ դու Աստուած որ մերժեցեր զմեզ. և ոչ ելեր Աստուած ընդ զօրս մեր։

Տո՛ւր մեզ օգնութիւն ի նեղութեան. զի ընդունայն է փրկութիւն մարդոյ։

Աստուծով արասցուք զօրութիւն. և նա արհամարհեսցէ զայնոսիկ որ նեղեն զմեզ։

Սաղմոս Կ։

Լո՛ւր Աստուած աղօթից իմոց, և նայեա՛ Տէր յաղօթս իմ։

Ի ծագաց յերկրէ կարդացի առ քեզ. մինչ ի վաստակել սրտի իմոյ։

Ի վիմէ բարձր արարեր զիս, առաջնորդեցեր ինձ. և իմ եղեր յոյս, և աշտարակ հզօր եղեր ինձ յերեսաց թշնամւոյն։

Բնակեցայց ես ի յարկս քո յաւիտեան. և ծածկեցայց ընդ հովանեաւ թևոց քոց։

Դու Ած լուար աղօթից իմոց. ետուր ժառանգութի որք երկնչին յանուանէ քումմէ:

Աւուրս յաւուրս յաւելեր թագաւորի. ամաց նորա աւուրս՝ յազգաց մինչեւ յազգս նորա:

Կայ և մնայ յաւիտեան առաջի Այ. ողորմութի և ճշմարտութի՝ որք խնդրեսցեն ի նմանէ:

Այսպէս սաղմոս ասացից անուան քում յաւիտեան. և տաց քեզ զաղօթս իմ օր ըստ օրէ:

Կցուրդ:

Փըրկեա զիս ի թշնամեաց իմոց Աստուած. եւ ի հալածչաց իմոց ապրեցո զիս: Երեք անգամ կրկնեա, երրորդին բարձր ասա:

Շարական Դկ:

Խնամով սիրոյն յիւր սիրելեացն ըզտըրտմութիւն փարատեաց. թացեալ պատառ տայ Յուդայի նըշաւակեալ զգողըն մատնիչ. զոր առեալ և մերկացաւ յածայնին Հոգւոյն շնորհաց. մատնեցաւ նախաչարին ընդ մատնութեան վարդապետին:

Ծայրագոյն լուսոյն զըրկեալ խաւարասէրն արտաքս ելեալ. Տէրըն յայտնէր լոյս եղելոցն ըզգայթագղելն ի գիշերի. Պետրոս խօսէր խրախուսելի և կըշտամբիւր հաւախօսի. զիւրն յաշխարհէ զփոխիլն ասէր և ըզգալուստ Հոգւոյն պատմէր:

Կեդրոնեան յայնկոյս ձորոյն ի վերնատունն ել խորհըրդոյ. եմուտ պարտէզ ընդ պարտիզի, եմոյծ զԱդամ յԱդին դրախտին. մուծցես և զմեզ Տէր ընդ նըմին ուստի հաներ նախ զառաջինն. զի ժառանգել ըզհայրենին արժանասցուք մեք վերըստին:

Հոգայր ըզկրիցըն տըրտմաբար երիւքն եղեալ առանձնաբար. փըրկել զաշխարհ հոգիս յօժար, բայց է բնութի մարմնոյս տըկար. ոչ ոմն ուժեղ և զօրաւոր և ոմն անզօր վըտանգաւոր. այլ մի և նոյն գոլ միաւոր կըրէր ըզկիրսըն կամաւոր:

Ձայնիւ մաղթէր աղօթական վ՟ն իմ առ Հայր իւր էական. ծունրը դնէր խոնարհական որում կրկնի ծունր ամենայն. եթէ փրկիլ մարդկան հնար է առանց մահու իմ որ գրեալ է. բաժակ մահուս յինէն անցցէ ոչ իմ կամաւ այլ քոյդ եսցէ։

Ղօղեալ յերկիւղ քրտանց հոսման ոլոռնաձեւ կայլակ վիժման. ի զօրանալ հրեշտակ մերձեալ զօրինական գիրըն լցեալ. զի կատարեալ էառ զբնութիւն Ա՟ծըն Բան ըզմարդկութեան. պարտ էր զերկիւղ և զտրտմութի՟ յիւրումըն կրել տնօրէնութիւն։

ՋՆԷ՝ Ո՛րթիւ։

Աւետարան ըստ Մարկոսի։ Ժ՟Դ. 27։

Վ՟ն չարչարանաց Տեառն մերոյ Յ՟ի Ք՟ի։

Եւ ասէ ցնս Յ՟ս. ամենեքին գայթագղելոց էք յինէն յայսմ գիշերի. զի գրեալ է, թէ Հարից զհովիւն, և ոչխարքն ցրուեսցին։ Այլ յետ յարութե՟ իմոյ՝ յառաջագոյն երթայց քան զձեզ ի Գալիլեա։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա. թէպէտ և ամենեքեան գայթագղեսցին, այլ ես ոչ։ Եւ ասէ ցնա Յ՟ս. ամէն ասեմ քեզ, դո՛ւ իսկ յայսմ գիշերի՝ մինչ չեւ հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս։ Իսկ Պետրոս առաւել եւս պնդէր և ասէր. եթէ մեռանել եւս հասանիցէ ընդ քեզ, զքեզ ոչ ուրացայց։ Նոյնպէս և ամենեքեան ասէին։ Գան ի գեօղն՝ որում անուն էր Գեթսեմանի. և ասէ ցաշակերտսն. Նստարո՛ւք աստ՝ մինչեւ ես յաղօթս կացից։ Եւ առնու ընդ իւր զՊետրոս և զՅակովբոս և զՅովհաննէս. և սկսաւ տխրել և հոգալ։ Յայնժամ ասէ ցնս. տրտում է անձն իմ մինչեւ ի մահ, մնացէ՛ք աստ և արթո՛ւն կացէք։ Եւ մատուցեալ սակաւիկ մի յառաջ՝ անկաւ ի վ՟ր երեսաց իւրոց յերկիր. և կայր յաղօթս, զի եթէ հնար ինչ է՝ անցցէ ի նմանէ ժամն։ Եւ ասէ. Ա՛բբա Հա՛յր՝ ա՟մ ինչ քեզ հնարաւոր է, անցո՛ զբաժակս զայս

յինէն. բայց ոչ ոպ՟ ես կամիմ՝ այլ ոպ՟ դու կամիս։ Եւ գայ գտանէ զնս՟ զի ննջէին, և ասէ ցՊետրոս. Սի՛մոն, ննջե՞ս, ո՞չ կարացեր ժամ մի արթուն կալ։ Արթո՛ւն կացէք և յաղօ՛թս կացէք, զի մի՛ մտջիք ի փորձութի՟. ոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար։ Եւ դարձեալ չոգաւ եկաց յաղօթս, և զնոյն բանս ասաց։ Դարձաւ միւսանգամ անդրէն, և եգիտ զնս՟ ի քուն. քանզի էին աչք նոցա ծանրացեալ, և ոչ գիտէին՝ թէ զի՞նչ պատասխանի տայցեն նմա։ Գայ երրորդ անգամ, և ասէ ցնս՟. ննջեցէ՛ք այսուհետեւ և հանգերո՛ւք, զի հասեալ է վախճան, եկն ժամ, և ահա մատնի որդի մարդոյ ի ձեռս մեղաւորաց։ Օ՛ն, արի՛ք գնասցուք. զի ահաւասիկ մերձեցաւ որ մատնելոցն է զիս։ Եւ մինչ դեռ նա զայն խօսէր՝ գայ Յուդա Իսկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի, և ընդ նմա ամբոխ սուսերօք և բրօք՝ ի քահանայապետիցն և ի դպրաց և ի ծերոց։ Տուեալ էր նշան մատնչին, և ասէր. ընդ որում ես համբուրեցից՝ նա է. կալջի՛ք զնա և տարջի՛ք զգուշութբ՟։ Եւ մատուցեալ վաղվաղակի՝ ասէ ցնա. ռա՛բբի ռա՛բբի. և համբուրեաց զնա։ Եւ նոքա արկին ի նա ձեռս և կալան զնա։ Եւ մի ոմն յայնցանէ որ զնովաւն կային՝ ձգեաց սուր, և եհար զծառայ քահանայապետին, և ի բաց եհան զունկն նր՟։ Պատասխանի ետ Յս՟ և ասէ ցնս՟. իբրեւ ի վր՟ աւազակի ելէք սուսերօք և բրօք ունել զիս։ Հանապազ առ ձեզ էի, և ուսուցանէի ի տաճարին, և ոչ կալայք զիս. այլ զի լցցին գիրք մարգարէիցն։ Յայնժամ թողին զնա աշակերտքն ամենեքին և փախեան։ Եւ ոմն երիտասարդ զհետ երթայր նր՟՝ արկեալ զիւրեւ կտաւ մի ի մերկուց. ունէին զնա երիտասարդքն։ Եւ նր՟ թողեալ զկտաւն՝ փախեաւ մերկ ի նոցանէ։ Եւ տարան զՅիսուս առ քահանայապետն Կայիափա. և գային ընդ նմա ամ՟ քահանայապետքն և դպիրք և ծերք։ Եւ Պետրոս երթայր ի հեռաստանէ

զհետ նր̃ մինչեւ ի ներքս իսկ՝ ի գաւիթ քահանայապետին, և նստէր ընդ սպասաւորսն և ջեռնոյր առ լուսոյն։ Իսկ քահանայապետքն և ա̃մ ատեանն խնդրէին հակառակ Յ̃ի վկայութի̃ ինչ, զի սպանանիցեն զնա. և ոչ գտանէին։ Զի բազումք սուտ վկայութիւն վկայէին զնմանէ, և նման միմեանց ոչ էին վկայուի̃քն։ Այլք յարուցեալ վկայէին սուտ զնմանէ, և ասէին, թէ մեք լուաք ի դմանէ՝ զի ասէր. ես քակեցից զտաճարդ զայդ ձեռագործ, և զերիս աւուրս շինեցից այ̃լ՝ առանց ձեռագործի։ Սակայն և այնպէս՝ չէր նման վկայութի̃ն նց̃։ Ապա յարուցեալ քահանայապետն ի մէջ՝ հարցանէր զՅ̃ս, և ասէր. ոչի̃նչ տաս պատասխանի, զի̃նչ դոքա զքէն վկայեն։ Եւ նա լուռ եւեթ կայր, և չտայր ինչ պատասխանի։ Դարձեալ քահանայապետն հարցանէր զնա կրկին անգամ և ասէր. դո̂ւ ես Քս̃ Որդի Ա̃Յ օրհնելոյն։ Պատասխանի ետ Յ̃ս և ասէ ցնա. դու ասացեր՝ թէ ես եմ. բայց տեսանիցէք զորդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութե̃ն, և եկեալ ընդ ամպս երկնից։ Եւ քահանայապետն պատառեաց վաղվաղակի զպատմուճան իւր և ասէ. զի̃նչ եւս պիտոյ են մեզ վկայք։ Ահա լուայք ամենեքին զհայհոյութի̃ ի բերանոյ դորա. զի̂րդ թուի ձեզ։ Եւ ամենեքեան դատապարտեցին զնա՝ թէ մահապարտ է։ Եւ ոմանք սկսան թքանել ընդ երեսս նր̃, ձորձ զգլխով արկանել, կոփել և ասել, մարգարեա՛ց մեզ Քս̃դ՝ ո̂վ է այն որ եհարն զքեզ։ Եւ սպասաւորքն ապտակս հանէին նմա։ Եւ Պետրոս մինչդեռ էր ի խոնարհ ի գաւթին՝ գայ աղախին մի քահանայապետին, և տեսանէ զնա զի ջեռնոյր. հայեցաւ ընդ նա և ասէ. եւ դու ընդ Յ̃ի նազովրեցւոյ էիր։ Նա ուրացաւ և ասէ. ոչ ճանաչեմ և ոչ գիտեմ զի̃նչ դուդ ասես. և իբրեւ ել յարտաքին գաւիթն՝ և հաւ խօսեցաւ։ Դարձեալ ետես զնա աղախինն, և սկսաւ ասել ցայնոսիկ որ շուրջն

կային, թէ և սա ի նոցանէ է։ Եւ նա դարձեալ ուրացաւ. և յետ սակաւ միոյ՝ դարձեալ որ շուրջն կային՝ ասեն ցՊետրոս. արդարեւ և դու ի նոցանէ ես, քանզի Գալիլեացի ես, և խօսքդ իսկ քո՝ նման են։ Եւ նա սկսաւ նզովել, երդնուլ և ասել, թէ ոչ գիտեմ զայրն զորմէ դուքդ ասէք։ Եւ նոյնժամայն կրկին հաւ խօսեցաւ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն զոր ասաց ցնա Յն, թէ չեւ իցէ հաւու երկիցս խօսեալ՝ զի դու երիցս ուրասցիս զիս. և սկսաւ լալ։ 72։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։

Տէր ողորմեա։ Երեք կրկնեա։

Իսկ եւս խաղաղութեն։ Օրհնութի և փառք։

Չորրորդ ձայն։ Սաղմոս ՀԸ։

Այ, մինն հեթանոսք ի ժառանգութի քո. պղծեցին զտաճար սուրբ քո։

Արարին զԵրուսաղէմ որպ հիւղս մրգապահաց. արկին զդիակունս ծառայից քոց գէշ թռչնոց երկնից, և զմարմինս սրբոց քոց գազանաց երկրի։

Հեղին զարիւն նց որպ ջուր շուրջ զԵրուսաղէմաւ. և ոչ ոք էր որ թաղէր զնոսա։

Եղաք մեք նախատինք դրացեաց մերոց. ծաղր և այպն կատականաց այնոցիկ որք շուրջ էին զմեօք։

Մինչեւ յերբ Տէր բարկանաս դու ի սպառ. բորբոքեսցի որպէս հուր նախանձ քո։

Հեղ զբարկութի քո ի վր ազգաց որ զքեզ ոչ ճանաչիցեն. ի վր թագաւորաց որ զանուն քո ոչ կարդացին. զի կերան զՅակովբ և զտեղի նորա աւերեցին։

Մի յիշեր զմեղս մեր զառաջինս. փութափութեսցէ առ մեզ ողորմութի քո, զի աղքատացաք յոյժ։

Օգնեա մեզ Այ փրկիչ մեր՝ վասն մեծի փառաց անուան քո։

Տէր փրկեա զմեզ. և քաւեա զմեղս մեր վն անուան քոյ։

Մի երբեք ասասցեն ի հեթանոսս, թէ ուր է Այ նց։

Այլ յայտնի ինչ լիցի ի մէջ հեթանոսաց, առաջի աչաց մերոց. առ ի խնդրել զվրէժ արեան ծառայից քոց որ և հեղաւ:

Մտցէ առաջի քո հեծութիւն կապելոց. ըստ մեծութեան բազկի քո շահեա՛ դու զորդիս սպանելոց:

Հատո՛ դրացեաց մերոց եօթնպատիկ ի ծոց նց̃. նախատինս զոր նախատեցին զքեզ Տէր:

Մեք ժողովուրդք և խաշն արօտի քո. խոստովան եղիցուք առ քեզ յաւիտեան, ազգէ յազգ պատմեսցուք զօրհնութիս քո:

Սաղմոս ՀԹ:

Ո հովուեսդ Իսրայէլի՝ նայեա՛ց. ո առաջնորդես ոչ̃ խաշին՝ Յովսեփու:

Որ նստիս ի քրովբէս՝ յայտնեա՛ց առաջի Եփրեմի, Բենիամենի և Մանասէի:

Զարթո՛ զզօրութի քո, և եկ կեցուցանել զմեզ:

Ա̃ծ զօրութե̃ց դարձո՛ զմեզ. երեւեցո՛ զերեսս քո ի մեզ և կեցցուք:

Տէր Ա̃ծ զօրութե̃ց. մինչեւ յե՞րբ բարկանաս յաղօթս ծառայից քոց:

Ջամբեցեր մեզ հաց արտասուաց. և արբուցեր մեզ արտասուս չափով:

Արարեր զմեզ նախատինս դրացեաց մերոց, այպն կատականաց թշնամեաց մերոց:

Ա̃ծ զօրութե̃ց, դարձո՛ զմեզ. երեւեցո՛ զերեսս քո ի մեզ և կեցցուք:

Այգի յԵգիպտոսէ փոխեցեր. հաներ զհեթանոսս և զնն տնկեցեր, և առաջնորդեցեր նոցա:

Հաստատեցեր զարմատս նր̃, և ելից զերկիր. ծածկեաց զլերինս հովանի նորա, և բարունակ նորա զմայրս Աստուծոյ:

Ձգեաց զորթ իւր մինչեւ ի ծով. մինչեւ ի գետս են շառաւիղք նորա:

Ընդէ՞ր քակեցեր զցանկ նորա. կթեն զնա անցաւորք ճանապարհի:

Ապականեաց զնա խոզ անտառի. երէ վայրի արածեցաւ ի նմա:

Աստուած զօրութեանց, դա՛րձ հայեա՛ց յերկնից և տես. ա՛յց արա այգւոյս այսմիկ. դարման տար սմա զոր տնկեաց աջ քո:

Ի վ՟ր որդւոյ մարդոյ՝ զոր զօրացուցեր զնա ի քեզ. այրեցեալ ի հուր և աւերեալ ի սաստէ քումմէ կորիցէ:

Եղիցի ձեռն քո ի վերայ առն. աջ քո ի վերայ որդւոյ մարդոյ զոր զօրացուցեր զնա ի քեզ:

Ոչ եւս ի բացեայ եղիցուք մեք ի քէն. կեցուսցես դու զմեզ, և զանուն քո Տէր կարդասցուք:

Աստուած զօրութեանց դարձո՛ զմեզ. երեւեցո՛ զերեսս քո ի մեզ և կեցցուք:

Սաղմոս Ձ:

Ցնծացէք առ Աստուած օգնական է մեր. աղաղակեցէք առ Աստուած Յակովբայ:

Առէք սաղմոս և տո՛ւք օրհնութիւն. սաղմո՛ս ասացէք նմա ի ձայն քաղցրութեան:

Փո՛ղ հարէք ի գլուխս ամսոց. յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց:

Հրաման է այս Իսրայելի. և իրաւունք Այ՟ Յակովբայ:

Վկայութ՟ի Յովսեփու զոր եդ ընդ նմա. ո՟մ ելանէր նա յերկրէն Եգիպտացւոց, լեզու զոր ոչ գիտէր լուաւ:

Ի բա՛ց արա ի բեռանց զթիկունս նր՟, և զձեռն նր՟ յորթ և ի թի ծառայելոյ:

Ի նեղութեան կարդացեր առ իս, և փրկեցի զքեզ. լուայ քեզ ի գաղտնութ՟է մրրկին, և փորձեցի զքեզ ի վ՟ր ջուրցն հակառակութեան:

Լո՛ւր ժողովուրդ իմ և վկա՛յեմ քեզ. և Իսրայէլ, թէ լուիցես ինձ:

Մի՛ եւս եղիցին քեզ անձք առժամայնք. և մի՛ երկիր պագանիցես դու այլ օտարի։

Ես եմ Տէր Ա̃ծ քո՝ որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց. բաց զբերան քո և լցից զդա։

Ժողովուրդ իմ ոչ լուաւ ձայնի իմում. և Իսրայէլ յիս ինչ ոչ նայեցաւ։

Բարձի թողի զնո̃՝ երթալ զհետ կամաց սրտից իւրեանց. զի գնացին նոքա ըստ կամս անձանց իւրեանց։

Զի թէ ժողովրդեան իմոյ լուեալ էր ինձ, կամ Իսրայէլի զճանապարհս իմ գնացեալ էր։

Ո̃չ զոչինչ խոնարհ արարեալ էր իմ զթշնամիս նո̃. և ի վր̃ նեղչաց նո̃ արկեալ էր զձեռն իմ։

Թշնամիք Տեառն ստեցին նմա. եղիցին ժամանակք նո̃ յաշխարհի։

Կերակրեաց զնո̃ ի պարարտութե̃ ցորենոյ. և ի վիմէ մեղր յագեցոյց նոցա։

Կցուրդ։

"Նո՛քա՛ ի ձեռանէ՛ քումմէ մե՛րժեցա՛ն. մե՛ք ժողո՛վուրդք ե՛ւ խաշն արօ՛տի՛ քո՛։ Գ անգամ ասէն, եւ զվերջինն բարձր։

Շարական Դկ։

Ճա՛ռագա՛յթ փառա՛ց Էի՛ն որ ըստ բնութե̃ս մարդկայի՛ն. տա՛գնապեցար ի՝ գի՛շերին աղօ՛թեցեր առ Հայր յերկի՛ն. ծա՛գեա՛ ի մէ՞ջ զլոյսդ ե՛րկնայի՛ն և փարա՛տեա զերկիւղ չարի՛ն. մա՛սունք հոգւոց մեր ե՛ւ մարմի՛ն յե՛րկի՛ւղ քո ն̃ը բեւե՛ռեսցի՛ն։

Մերձեալ Յուդաս որ մատնելոց՝ հանդերձ դասուն փարիսեցւոց. անկան նըման ստորանկելոց՝ որք յաւիտեան չեն կանգնելոց. Յուդաս նենգաւ համբուրելով՝ առիթ մահու նըշան տալով. փոխան սիրոյ զնա մատնելով, չար ընդ բարւոյ վըճարելով։

Յայնժամ առ գութ սիրոյն Պետրոս՝ ըզծառային անուն Մաղքոս. եհատ սուսերբ զականջն աջոյ, որ ոչ լըւաւ Տեառըն իւրոյ. իսկ Տէրըն մեր արագապէս

յունկըն մերձեալ բըժըշկապէս· առողջացոյց աստուածապէս· զոր ոչ տեսին կուրացն հանդէս։

Նոր հօտի՛ն փոքու ցրըուեալ քանզի զհովիւըն քաջ հարեալ· Պետրոս միայն ըզհետ երթեալ, ի յաջկանէ վիմին շարժեալ· Նըշանակեալ հաւըն խօսէր առ ի Պետրոս Տէրըն ակնարկէր· զըանըն յիշէր դառն արտասուէր, ի գլորմանէն դարձեալ կանգնէր։

Շնորհեալ վիմին եկեղեցւոյ զոր պահեցեր ի հոսելոյ· և կանգնեցեր ի գլորելոյ վասըն սրտիւն արտասուելոյ· կանգնեա և զիս Տէր ընդ նըմին ի գլորմանէ սայթաքողին· տալով աչացս յորդ արտասուս և ջուր նըման ծովու գլխոյս։

Ո՛վ կամա՛ւ զանկապելին կապեալ ըզձեռսն արձակողին· ի յապարանսըն տանէին Կայիափայ և Աննային· ծառայն զերեսն այն ապտակէր յորմէ սրովբէն թեւասքօղէր· Թուք արձակեալ պիղծ բերանովն յայն որ կուրին լոյս ծագեաց թքովն։

Զկնի՝ Ո՛րթի՛ւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ Իզ։ 31։

Տէրն մեր Յս Քս

Յայնժամ ասէ ցնս· ամենեքին դուք գայթագղելոց էք յինէն յայսմ գիշերի, զի գրեալ է՝ թէ Հարից զհովիւն, և ցրուեսցին ոչխարք հօտին։ Եւ յետ յառնելոյն իմոյ յառաջեսցից քան զձեզ ի Գալիլեա։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա· Թէպէտ և ամենեքեան գայթագղեսցին ի քէն՝ սակայն ես ոչ գայթագղեցայց։ Ասէ ցնա Յս· ամէն ասեմ քեզ՝ զի յայսմ գիշերի մինչ չեւ հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս։ Ասէ ցնա Պետրոս, թէ եւ մեռանել հասանիցէ ընդ քեզ՝ զքեզ ոչ ուրացայց։ Նոյնպէս և ամ աշակերտքն ասէին։ Յայնժամ գայ Յս ընդ նս ի գեօղ մի՝ որում անուն էր Գեթսեմանի, և ասէ ցնս· Նստարո՛ւք այդր, մինչեւ երթայց կացից յաղօթս։ Եւ

առեալ ընդ իւր զՊետրոս և զերկուս որդիսն Զեբեդեայ՝ սկսաւ տրտմել և հոգալ։ Յայնժամ ասէ ցն՟ս. տրտում է ոգի իմ մինչև ի մահ, կացէք աստ և սկեցէք ընդ իս։ Եւ մատուցեալ յառաջ սակաւիկ մի՝ անկաւ ի վ՟ր երեսաց իւրոց, եկաց յաղօթս և ասէ. Հա՛յր իմ, եթէ հնար է՝ անցցէ բաժակս այս յինէն. բայց ոչ ո՟պ ես կամիմ, այլ ո՟պ դու։ Գայ առ աշակերտսն, և գտանէ զն՟ս ի քուն, և ասէ ցՊետրոս. այդպէս ո՞չ կարացէք մի ժամ արթուն կալ ընդ իս։ Արթո՛ւն կացէք և աղօ՛թս արարէք՝ զի մի՟ անկանիցիք ի փորձութիւն. հոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար։ Դարձեալ երկրորդ անգամ չոգաւ՝ եկաց յաղօթս Յ՟ս, և ասէ. Հա՛յր իմ, եթէ հնար իցէ անցանել յինէն բաժակիս այսմիկ, ապա թէ ոչ՝ արբից զսա. եղիցին կամք քո։ Եւ եկեալ միւսանգամ՝ եգիտ զն՟ս ի քուն, զի էին աչք իւրեանց ծանրացեալք։ Եթող զն՟ս և գնաց եկաց յաղօթս երրորդ անգամ, և դարձեալ զնոյն բան ասաց։ Յայնժամ գայ առ աշակերտսն, և ասէ ցն՟ս. Ննջեցէք այսուհետև և հանգերո՛ւք. զի ահա հասեալ է ժամ, և որդի մարդոյ մատնի ի ձեռս մեղաւորաց։ Արի՛ք երթիցուք աստի, զի ահաւասիկ եհաս որ մատնելոց է զիս։ Եւ մինչդեռ նա զայս խօսէր՝ ահա Յուդա՝ մի յերկոտասանիցն եկն, և ընդ նմա ամբոխ բազում սրովք և բրօք՝ ի քահանայապետիցն և ի ծերոց ժողովրդեանն։ Եւ որ մատնելոցն էր զնա՝ ետ ն՟ց նշան և ասէ. ընդ որում ես համբուրեցից՝ նա է, զնա՛ ունիցիք։ Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յ՟ս՝ ասէ. ո՛ղջ եր վա՛րդապետ. և համբուրեաց ընդ նմա։ Եւ Յ՟ս ասէ ցնա. ընկեր, վ՟ն որո՞յ եկիր։ Յայնժամ մատուցեալ արկին ձեռս ի Յ՟ս, և կալան զնա։ Եւ ահա մի ո՟մն յայնցանէ որ ընդ Յ՟սի էին՝ ձգեաց զձեռն և եհան զսուր իւր, և եհար զծառայ քահանայապետին, և ի բաց եհան զունկն ն՟ր։ Յայնժամ ասէ ցնա Յ՟ս. դարձո՛

զսուր քո ի տեղի իւր. զի ամենեքեան որ սուր առնուցուն՝ սրով անկանիցին։ Թէ համարիցիս թէ ոչ կարեմ աղաչել զՀայր իմ, և հասուցանիցէ ինձ այժմ այսր առելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց։ Այլ զիա՞րդ լնուցուն գիրք՝ թէ այսպէս պարտ է լինել։ Յայնժամ ասաց Յս̃ ցամբոխն. իբրեւ ի վր̃ աւազակի ելէք սուսերօք և բրօք՝ ունել զիս. հանապազ առ ձեզ ի տաճարին նստէի և ուսուցանէի, և ոչ կալայք զիս։ Այլ այս ա̃մ եղեւ՝ զի լցցին գիրք մարգարէիցն։ Յայնժամ աշակերտքն ամենեքին թողին զնա և փախեան։ 56։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երիցս կրկնեա։

Եւ եւս խաղաղութն։ Օրհնութի և փառք։

Հինգերորդ ժամ։ Սաղմոս ՃԸ։

Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր. զի բերան մեղաւորի բերան նենգաւորի բացաւ ի վր̃ իմ։

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ. և բանիւ ատելութեան պաշարեցին զիս։

Մարտեան ընդ իս ի տարապարտուց. փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի։

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ, ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ։

Կացո ի վերայ նորա մեղաւոր. սատանայ կացցէ ընդ աջմէ նորա։

Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ. և աղօթք նորա ի մեղս դարձցին։

Եղիցին աւուրք նորա նուազ. և զայցելութիւն նորա զայն այլ տարցի։

Եղիցին որդիք նորա որբ, և կին նր̃ այրի. սահեսցին փոփոխեսցին, որդիք նորա մուրողք եղիցին. և ելցեն ի բնակութենէ իւրեանց։

քննեսցէ փոխատու զամենայն ինչս նորա. յափշտակեսցեն օտարք զվաստակս նորա։

Մի՛ գտցի օգնական նմա. և մի՛ ոք ողորմեսցի ի վր̃ որբոց նորա։

Եղիցին որդիք նր̃ ի սատակումն. և յազգէ ջնջեսցի անուն նորա։

Յիշեսցին մեղք հօր նր̃ առաջի Տն̃, և մեղք մօր նր̃ մի՛ ջնջեսցին. և եղիցին առաջի Տն̃ յամ ժամ։

Սատակեսցի յերկրէ յիշատակ նր̃. փոխանակ զի ոչ յիշեաց առնել զողորմութիւն։

Հալածեաց զայր աղքատ և զտնանկ. սպանանել զայն որ խոնարհ է սրտիւ։

Սիրեաց զանէծս, և եկեսցէ նմա. ոչ կամեցաւ զօրհնութիւն, հեռի եղիցի ի նմանէ։

Զգեցաւ զանէծս ոպ̃ հանդերձ. մտցէ ոպ̃ ջուր ի փոր նր̃, ոպ̃ ձէթ ընդ ոսկերս նորա։

Եղիցի նմա ոպ̃ հանդերձ զի ագանի. ոպ̃ գօտի զի ածի հանապազ ընդ մէջ։

Այս գործ է այնոցիկ որ չարախօս կային զինէն առ Տէր. և այք խօսէին չար զանձնէ իմմէ։

Այլ դու Տէր Տէր, արա ընդ իս ըստ անուան քում, զի քաղցր է ողորմութի̃ւ քո. և փրկեա զիս, զի աղքատ և տնանկ եմ ես։

Սիրտ իմ խռովեցաւ ի փորի իմում. և ես ոպ̃ ստուեր ի խուսափել իմում պակասեցայ. և թօթափեցայ որպէս մարախ։

Ծունկք իմ տկարացան ի պահոց. և մարմին իմ այլագունեաց յիւղոյ։

Եղէ ես նախատ նց̃. տեսին զիս և շարժեցին զգլուխս իւրեանց։

Օգնեա ինձ Տէր Ած̃ իմ. և փրկեա զիս ըստ ողորմութեան քում։

Ծանիցեն զի ձեռն քո այս է. և դու Տր̃ արարեր զայս։

Նոքա անիծանեն, և դու օրհնեսցես. ոյք յարուցեալ են ի վ̃ր իմ՝ զամօթ կրեսցեն. այլ ծառայ քո ուրախ եղիցի ի քեզ:

Զգեցցին զամօթ ոյք չարախօս կային զանձնէ իմմէ. և արկցեն ո̃պ կրկնոց զամօթ իւրեանց զիւրեամբք:

Այլ ես խոստովան եղէց առ Տէր յոյժ բերանով իմով. ի մէջ բազմաց օրհնեցից զքեզ:

Զի եկաց Նա ընդ աջմէ տնանկիս. փրկել զիս յայնցանէ որ հալածեն զանձն իմ:

Սաղմոս ՃԹ:

Ասաց Տէր ցՏէր իմ. Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց:

Գաւազան զօրութ̃ե առաքեսցէ քեզ Տէր ի Սիո̃նէ. և տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց:

Ընդ քեզ է ինձ սկիզբն աւուրն զօրութ̃ե. ի վայելչութ̃ի սր̃ց քոց, յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ:

Երդուաւ Տէր և ոչ եւս զղջասցի. թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի. և Տէր ընդ աջմէ քումմէ:

Խորտակեսցէ յաւուր բարկութ̃ե զթագաւորս. դատեսցի զհեթանոսս, և բազում արասցէ զհարուածս. և խորտակեսցէ զգլուխս բազմաց յերկրի:

Զուղխս ի ճանապարհի արբուսցէ. վ̃ն այնորիկ և բարձր արասցէ զգլուխս:

Սաղմոս ՃԺ:

Խոստովան եղէց քեզ Տէր բոլորով սրտիւ իմով, ի խորհուրդս ուղղոց ի ժողովս. մեծ են գործք Տ̃ն, և քննեալ են յա̃մի կամք Նորա:

Խոստովանութ̃ի և վայելչութ̃ի են գործք Ն̃ր. արդարութ̃ի Ն̃ր մնայ յաւիտեանս յաւիտենից:

Յիշատակ արար սքանչելեաց իւրոց ուղղոց. ողորմած գթած է Տէր, կերակուր տայ երկիւղածաց իւրոց:

Յիշեաց յաւիտենից զուխտ իւր. զզօրութիւն գործոց իւրոց պատուիրեաց ժողովրդեան իւրում։

Տալ նմա զժառանգութիւն հեթանոսաց. և գործք ձեռաց նորա արդարութիւն և իրաւունք են։

Հաւատարիմ են յամի պատուիրանք նորա. հաստատեալ են յաւիտեանս յաւիտենից. արարեալ են ճշմարտութեամբ և ուղղութեամբ։

Փրկութիւն առաքեաց Տէր ժողովրդեան իւրում. պատուիրեաց յաւիտենից զուխտ իւր. սուրբ և ահեղ է անուն նորա։

Սկիզբն զգօնութեան երկիւղ Տեառն. իմաստութիւն բարի ամենեցուն որ առնեն զնա. և օրհնութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Կցուրդ։

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ. եւ բանիւ ատելութեան զիս պաշարեցին։ Երիցս անգամ կրկնեա, և շարականն բարձր ասա։

Շարական ԴԿ։

Զա՞ր կապանաց մարդկան լուծիչ որ կապեցար ընդ կապելոյն. զիս արձակեա յինքնակապէս մեղաց կապից դժոխայնոյն. որ ընդ մեղօք պարտաւորին կացեր անմեղդ ի յատենի. յորժամ փառօք գաս հայրենի՝ մի դատեսցես զիս ընդ նոսին։

Պատկառանօք հինն Ադամայ, որ ձաղեցար վասն նորա. ջնջեա զամօթ մեղաց լրբին, որով զերեսս իմ ծածկեցին. որ ներեցեր չար ծառային՝ ածել ձեռօք քեզ պատակին. հար ուժգնակի զդէմըս չարին, որպէս և զիս եհար ուժգին։

Զահըն լուսոյ յառաւօտին ի յուրբաթու հընոյ զատկին, կայր առաջի դատաւորին, ծառայն նըստէր ի յատենին. ի հարցանել Պիղատոսի Տէրն ոչ առնէր պատասխանի. զի կանխասաց գիրըն լըցցի՝ Եղէ ես մարդ որ ոչ խօսի։

Ռամկակա՛ն դասք զինուորացն արկին հանդերձ նա-
խատանաց· այնմ որոյ. զգեստն է լոյս փառաց իբրեւ
զօթոց զինքեամբ արկած· ի ծունր իջեալ կատակէին
զգլուխն եղեգամբ հարկանէին· պըսակ ի փշոց բոլո-
րէին ըզփուշ մեղացըն բարձողին։

Սոսկալի՜ն սերովբէից բառնայր ինքեամբ ըզփայտ
խաչին· մինչ ի տեղի Գողգոթային, յորում եդեալ
մարդն առաջին· ետուն ըմպել գինի զմըռսեալ և կե-
րակուր լեղեաւ խառնեալ· որով զպըտղոյն դառըն
ճաշակ փոխեաց մեզ քաղցր և ախորժակ։

Վերնակա՛նքըն զարհուրեալ տեսին ըզՏէրըն մերկա-
ցեալ· և ըզհանդերձսըն բաժանեալ, պատմուճանին վի-
ճակ արկեալ· ըզձեռսն և զոտսըն ծակեցին ըստ յայտ-
նապէս դաւթեան ձայնին· ընդ փայտ խաչին բեւեռե-
ցին զմատուննսն որ գրեաց ի տախտակին։

ՋՆԻ՝ ՈՐԹԻՒ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԶ. 57։

Վն չարչարանաց Տեառն մերոյ Յսի Քսի։

Իսկ նց կալեալ զՅս՝ ածին առ Կայիափա քահա-
նայապետ, ուր դպիրքն և ծերքն ժողովեալ էին։ Եւ
Պետրոս զհետ նր երթայր բացագոյն մինչեւ ի սրահ
քահանայապետին· և մտեալ ի ներքս՝ նստէր ընդ
սպասաւորսն՝ տեսանել զկատարածն։ Իսկ քահանայ-
ապետքն և ամ ատեանն խնդրէին սուտ վկայութի
զՅսէ, զի սպանցեն զնա· և ոչ գտանէին ի բազմաց
սուտ վկայիցն մատուցելոց։ Յետոյ մատուցեալ երկու
սուտ վկայք՝ ասէին թէ սա ասէր՝ կարող եմ քակել
զտաճարն Աստուծոյ և զերիս աւուրս շինել։ Եւ յա-
րուցեալ քահանայապետն ասէ ցնա· չտա՞ս պատաս-
խանի, զի՞նչ դոքա ամբաստանեն զքէն։ Եւ Յիսուս
լուռ կայր։ Պատասխանի ետ քահանայապետն և ասէ
ցնա· երդմնեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի, զի
ասասցես մեզ՝ թէ դո՞ւ ես Քրիստոսն Որդի Աստու-

ծոյ։ Ասէ ցնա Յիսուս. դու ասացեր. բայց ասեմ ձեզ. յայսմհետէ տեսանիցէք զորդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեանն, և եկեալ ընդ ամպս երկնից։ Յայնժամ քահանայապետն պատառեաց զհանդերձս իւր և ասէ. հայհոյեաց, զի՞ եւս պիտոյ են մեզ վկայք. ահա արդ լուայք զհայհոյութիւն նորա. զի՞նչ հաճոյ է ձեզ։ Նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է։ Յայնժամ թքին ընդ երեսս նորա, և կափեցին զնա. և զմանք ապտակեցին, և ասեն. մարգարեաց մեզ Քսդ, ո՞վ է որ եհարն զքեզ։ Իսկ Պետրոս նստէր արտաքոյ ի գաւթին։ Մատեաւ առ նա աղախին մի, և ասէ. և դու ընդ Յսի Գալիլեացւոյ էիր։ Նա ուրացաւ առաջի ամենեցուն և ասէ, թէ ոչ գիտեմ զինչ խօսիսդ։ Եւ իբրեւ ել նա արտաքս քան զդուռնն՝ ետես զնա այլ կին մի, և ասէ ցայնոսիկ որ անդն կային, և սա ընդ Յսի Նազովրացւոյ էր։ Եւ դարձեալ ուրացաւ երդմամբ, թէ ոչ գիտեմ զայրն։ Եւ յետ սակաւ միոյ մատուցեալ որք կայինն անդ՝ ասեն ցՊետրոս. արդարեւ և դու ի նոցանէ ես, քանզի և խօսք քո յայտ առնեն զքեզ։ Յայնժամ սկսաւ նզովել և երդնուլ, թէ ոչ գիտեմ զայրն. և իսկոյն հաւ խօսեցաւ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն Յսի զոր ասաց, թէ մինչ չեւ հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս. և ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս։ 75։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
**Տէր ողորմեա։ Երիցս կրկնել։**

Եւ եւս խաղաղութն։ Օրհնութիւն և փառք։

**Վեցերորդ ժամ։ Սաղմոս ՃԺԷ։**

Խոստովան եղերուք Տն, զի բարի է. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցէ տունն Իսրայելի. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցէ տունն Ահարոնի. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցեն երկիւղածք Տռ̃ն. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ի նեղութե̃ իմում ես առ Տէր կարդացի. և լուաւ ինձ յանդորր։

Տէր է իմ օգնական, և ես ոչ երկեայց. զի՞ արասցէ ինձ մարդ։

Տէր է իմ օգնական. և ես տեսից ի թշնամիս իմ։

Բարի է յուսալ ի Տէր՝ քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տէր՝ քան յուսալ յիշխանս։

Ամենայն ազգք շրջեցան զինեւ. և անուամբ Տեառն յաղթեցի նոցա։

Շրջելով շրջեցան զինեւ, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տռ̃ն վանեցի զնոսա։

Շուրջ եղեն զինեւ որպէս մեղուք, վառեցան բորբոքեցան որպէս փուշք ի հուր. և անուամբ Տեառն մերժեցի զնոսա։

Ի մերժելն դրդուեցայ, և եղէ մերձ ի գլորել. և Տէր ընկալաւ զիս։

Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տէր. և եղեւ ինձ ի փրկութիւն։

Ձայն ցնծութե̃ փրկութե̃ ի յարկս արդարոց։

Աջ Տռ̃ն արար զօրութի̃. աջ Տռ̃ն բարձր արար զիս. և աջ Տեառն արար զօրութի̃։

Ոչ մեռայց այլ կեցից. և պատմեցից զգործս Տռ̃ն։

Խրատելով խրատեաց զիս Տր̃. և ի մահ ոչ մատնեաց։

Բացէք ինձ զդրունս արդարութե̃, զի մտից ընդ այն և խոստովան եղէց Տեառն։

Կցուրդ։

Խոստովան եղերուք Տռ̃ն զի՝ բարի է. զի յաւիտեան է ողորմութիւն նորա։ Երեք անգամ կրկնեա, եւ-ղբերին բարձր ասա։

Եւ մտանեն յեկեղեցին, եւ ասեն Շարական Դկ։

Տարածեա՜լ ձեռք ընդ ձեռաց՝ ոտք ընդ ոտից ըն– թանալեաց. փայտ ընդ փայտի դաւըն պըտղոյ կեանք ընդ մահու փոխարկելով. ի մէջ երկուց անօրինաց կայր մերկացեալ տուողն օրինաց. զոր ոչ տեսին ազ– գըն կուրաց բայց ի միոյն յաւազակաց։

Բոպէից արեգականն ըզտիւն արար գիշերանման. զըստուերըն քող արկ մերկութե՝ զի մի տեսցէ ակն անարժան. ի միջօրեայն նըսեմացաւ՝ յորժամ Ադամ. մեղօք մեռաւ. ի յիններորդն ի լոյս դարձաւ՝ յորժամ մահուամբ մահըն լուծաւ։

Ցօղէր արտօսըր ցաւագին մայր Տե՜ն որ կայր մերձ առ խաչին. յորժամ լըսէր ըզծարաւին բարբառելոյ իւր միածնին. ետուն քացախ խառնեալ լեղի այնմ որ բըղխեաց գետ յԱդենի. և ի վիմէն վըտակ բարի ար– բոյց տոհմին դառնացողի։

Իւծեալ յերրորդ ժամու օձին զմիտըս նախնոյ մօրն Եւայի. ի վեցն անկեալ մարդն առաջին հաւանական բանիւ նորին. ի սոյն ժամու Տէրն ի խաչին զի քաւեսցէ զմեղըս նոցին. և յորժամ եղ Ադամըն հին՝ եդ զաւա– զակն ի մէջ դըրախտին։

Փարելի՛ բարբառ ընդ իմ Էլի՛ Էլի առ Հայր գոչէր. զհոգին կամաւ Հօր աւանդէր, զհոգիս մարդկան նոյն ընծայէր. երկիր հիմամբք սասանեցաւ և վարագոյրն ընդ մէջ հերձաւ. վէմք ի յինքեանց պատառեցան և գերեզմանք մահու բացան։

Քարոզէ՛ ի սքանչելեաց Աստուած մարմնով վասն իմ խաչեալ. մերով բնութեամբըս մեռանի, Աստուած ան– մահ խոստովանի. կրկնավըտակ կողին աղբերըք եկե– ղեցի իւր հաստատի. ջըովըն մաքրի զարիւնն ըմպէ, զՈրդի ընդ Հօր փառաւորէ։

Զնէ՛ Որթիւ։

Եւ կարդան ի վերայ բեմին զԱւետարանս։

### Աւետարան ըստ Յովհաննու։ ԺԸ. 2։

### Վ՟ն չարչարանաց Տեառն մերոյ Յ՟ի Ք՟ի։

Գիտէր և Յուդա որ զնա մատնելոց էր՝ զտեղին. զի բազում անգամ ժողովեալ էր անդր Յ՟ի աշակերտօքն հանդերձ։ Եւ Յուդայի առեալ ընդ իւր զգունդն, և ի քահանայապետից և ի փարիսեցւոց սպասաւորս, գայ անդր ջահիւք և լապտերօք և զինուք։ Իսկ Յ՟ս իբրև ետես զայն ամենայն եկեալ ի վ՟ր ն՟ր՝ ել և ասէ ց՟նս. զո՞ խնդրէք։ Պատասխանի ետուն նմա. զՅ՟ս Նազովրեցի։ Ասէ ց՟նս Յ՟ս. Ես եմ։ Կայր ընդ ն՟ս և Յուդա՝ որ մատնէրն զնա։ Իբրև ասաց թէ Ես եմ՝ յետս յետս չոգան և զարկան զգետնի։ Դարձեալ եհարց զն՟ս. զո՞ խնդրէք։ Եւ նոքա ասեն. զՅ՟ս Նազովրեցի։ Պատասխանի ետ ն՟ց Յ՟ս. ասացի ձեզ թէ Ես եմ. արդ՝ եթէ զիս խնդրէք՝ թո՛յլ տուք դոցա երթալ։ Զի լցցի բանն՝ զոր ասաց. թէ Զոր ետուրն ցիս՝ ոչ կորուսից ի նոցանէ և ոչ զոք։ Իսկ Սիմովն Պետրոս՝ քանզի ունէր սուր՝ ձգեաց զնա, և եհար զքահանայապետին ծառայ, և ի բաց առ զունկն ն՟ր զաջոյ. և էր անուն ծառային Մաղքոս։ Ասէ Յ՟ս ցՊետրոս. ա՛րկ զսուրդ անդրէն ի պատեանս իւր. զբաժակն զոր ետ ինձ Հայր՝ ո՞չ ըմպիցեմ զնա։ Իսկ գունդն և հազարապետն և սպասաւորք Հրէից կալան զՅ՟ս և կապեցին. և ածին զնա նախ առ Աննա, որ էր աներ Կայիափայի, որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ։ Այս այն Կայիափա էր՝ որ խրատն ետ Հրէից, եթէ Լաւ է առն միում մեռանել ի վերայ ժողովրդեան։ Եւ երթային զհետ Յ՟ի Սիմովն Պետրոս և միւս աշակերտն։ Եւ աշակերտն այն՝ քանզի ծանօթ էր քահանայապետին՝ եմուտ ընդ Յ՟ի ի գաւիթ քահանայապետին։ Եւ Պետրոս կայր առ դրանն արտաքոյ։ Ել միւս աշակերտն որ էր ծանօթ քահանայապետին, և ասաց ցդռնապանն, և եմոյծ ի ներքս զՊետրոս։ Ասէ աղջիկն որ դռնապանն էր՝ ցՊե-

տրոս. մի՞ թէ և դո՛ւ յաշակերտաց առնն այնորիկ իցես։ Եւ նա ասէ. ոչ եմ։ Կային անդ ծառայքն և սպասաւորքն՝ խարոյկ արկեալ՝ քանզի ցուրտ էր, և ջեռնուին. կայր ընդ նս և Պետրոս և ջեռնոյր։ Եւ քահանայապետն եհարց զՅն վն աշակերտացն և վն վարդապետութեան նր։ Պատասխանի ետ նմա Յիսուս. ես յայտնապէս խօսեցայ յաշխարհի. ես յամենայն ժամ ուսուցի ի ժողովրդեանն, և ի տաճարի անդ՝ ուր ամենայն Հրեայք ժողովեալ էին, և ի ծածուկ ինչ ոչ խօսեցայ։ Զի՞ հարցանես զիս. հա՛րց զայնոսիկ՝ որ լուանն, թէ զինչ խօսեցայ ընդ նս. ահաւասիկ նոքա գիտեն զինչ ասացի ես։ Իբրեւ նա զայս ասաց՝ մի ոմն ի սպասաւորացն որ անդ կայր՝ ած ապտակ Յսի և ասէ. ա՞յդպէս պատասխանի տաս քահանայապետիդ։ Եւ Յիսուս ասէ ցնա. եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա՛ վն չարին, իսկ եթէ բարի՝ ընդէ՞ր հարկանես զիս։ Եւ առաքեաց զնա Աննա կապեալ առ Կայիափա քահանայապետ։ Եւ Սիմոն Պետրոս կայր անդ և ջեռնոյր. ասեն ցնա. մի՛ թէ և դո՛ւ յաշակերտաց անտի նր իցես։ Նա ուրացաւ և ասէ՝ թէ չեմ։ Եւ ասէ մի ոմն ի ծառայից քահանայապետին՝ ազգական այնորիկ զորոյ զունկն եհատ Պետրոս. ո՞չ ես իսկ տեսի զքեզ ի պարտիզի անդ ընդ նմա։ Դարձեալ ուրացաւ Պետրոս։ Եւ վաղվաղակի հաւ խօսեցաւ։ 27։

Շարական Դ2։

Զարհուրեցան զօրք երկնայինք. յորժամ տեսին զՏէրդ ի խաչին. արեգական լոյս քողարկեալ. եւ լոյս լուսնին նուաղեցաւ. յահեղ փառաց Ած որդւոյդ խաւար եղեւ ընդ տիեզերս. ողորմած Տր ողորմեա հոգւոցն մեր ննջեցելոց։

Մղբ. Հոգւոցն հանգ։ Քրզ. Վն հոգւ։ Աղ. Քն որդի Այ։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր։

Եւ ապա ասեն կանոնագլուխ ԴՁ:

Իշխանք հալածեցին զիս ի նանիր. ալէլուիա. այլ ի բանից քոց երկեաւ սիրտ իմ. * ալէլուիա:

Ցնծացայց ես ի բանս քո. որպէս այն որ գտանէ աւար բազում. ալէլ:

Զմեղս ատեցի եւ անարգեցի. եւ զօրէնս քո սիրեցի. ալէլ:

Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ. վասն իրաւանց եւ արդարութեան քոյ. ալէ:

Խաղաղութիւն բազում է այնոցիկ ոյք սիրեն զօրէնս քո. եւ ոչ գոյ ի նոսա գայթագղութիւն. ալէ:

Սպասեցի փրկութեան քում Տէր. եւ զպատուիրանս քո սիրեցի. ալէ:

Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո. եւ սիրեաց զնոսա յոյժ. ալէ:

Պահեցից զպատուիրանս եւ զվկայութիւնս քո. զի ամենայն ճանապարհք իմ առաջի քո են. ալէ:

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո Տէր. ըստ բանի քում իմաստուն արա զիս. ալէ:

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. եւ բանիւ քով փրկեա զիս. ալէ:

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո. յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո. ալէ:

Խօսեսցի լեզու իմ զբանս քո. զի ամենայն պատուիրանք քո արդարութիւն են. ալէ:

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս. զի զպատուիրանս քո ընտրեցի. ալէ:

Ցանկացայ փրկութեան քում Տէր. եւ օրէնք քո խոկումն իմ են. ալէ:

կեցցէ անձն իմ օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ. * Ալէլուիա:

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա զծառայս քո. զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ. Ալէ:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն. Ալէ:

Ձայն՝ Նոյն եւս խաղաղութեան: Օրհնութիւն և փառք:

Օրհնութիւն ԲԶ:

Արծաթասիրութեամբըն մոլեալ Յուդա. զՏէր զմեծ զվարդապետն ընդ երեսուն արծաթոյ Հրէիցըն մատնէր: Ընդ որում ես համբուրեցից ասէ զնա կալարուք. ով համբոյր նենգութեան նշան եւ աուխթ մահու: Մերկացաւ յինքենէ զաստուածային սուրբ Հոգին. և զգեցաւ զսատանայ որպէս զհանդերձ արկաւ զիւրեաւ:

† Ի գիշերին յորում մատնէր փրկիչըն մեր ի մահ խաչին ել ի լեառըն ձիթենեաց. աղօթելով զայս ասէր. Հայր անցո յինէն զբաժակս: Իսկ անօրէն աշակերտին թողեալ զգութ սիրոյ նորա. և փութայր առ քահանայսն. ասէր ինձ զինչ կամիք տալ զի մատնեցից զվարդապետն:

Ղւր. Որ նըստիս ի քրովբէս Աստուած Բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձիթենեաց. օրհնեմք զքեզ անդադար երգով: Որ համագոյդ ես խորհրդոցըդ հայրենի. աշակերտաց քոց ծանուցեր զխորհուրդ քո գալըստեանն. օրհնեմք զքեզ անդադար երգով: Որ ամենայնից ես արարիչ և ըստեղծիչ կենդանութեան. այսօր զծածկեալ խորհուրդ Երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սրբոյ քո. օրհնեմք զքեզ անդադար երգով:

Ըզքեզ օրհնեմք որ բաշխողդ ես բարութեանց. և հայցեմք ով՝ ի մարդասիրէ. ընդ մօր քո ընտրելոցն զիմանալի աշխարհն: Զի դու ես Տէր յորմէ՝ հայցէր մայրըն հաւատով հանդերձ որդւովք սրբեցելովք. ընդ աջմէ քո զփառս եւ յահեկէ. ընդ որս և մեք աղաչեմք զի դասեսցես ընդ սրբըս քո: Այլ դու բարձրեալդ փրկիչ. որ վասըն մեր խոնարհեցար. արժանի արա ըզմեզ ըմպել զբաժակ պատուիրանի՝ կենաց քոց Տէր. որով կացցուք յաջմէ քումմէ ի հանդերձեալ քում գալըստեանն:

ՀՈԳ. Սարսափելի հողմոյ նըման ահեղագոչ սաստիկ հընչմամբ. երեւեցար ի վերնատանն Հոգիդ դասուն երկոտասանին. որք առ ի քէն մըկըրտեցան որպէս զոսկի հրով մաքրեցան. *մաքրեա ի մէնջ ըզմէգ մեղաց եւ ըզգեցո ըզլոյս փառաց: Էկիր յերկիր աստուածաբար դատել զաշխարհս իշխանաբար. ’նդ արդարութեան և ընդ մեղաց և ընդ չարին դատաստանաց. բացեր ըզգանձդ անհիւթական պարգեւս ետուր որդւոց մարդկան. մաքրեա: Սէրն ի սիրոյ զսէրդ առաքեաց յինքըն զանդամս իւր քեւ յօդեաց. զեկեղեցի իւր զոր շինեաց եօթըն սեամբ քո հաստատեաց. տընտես ի նմա եդ զառաքեալսն եօթնեակ շնորհօք քո. զարդարեաց. մաքրեա ի մէնջ ըզմէգ:

ՆՆՋ: Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից. մարդասիրութեամբդ քո խոնարհեալ յանձինս մեր. ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ ննջեցելոց: Ի խաչին բեւեռեցար. զմահու լուծեր զիշխանութիւն. յաւիտենից ըզննջեցեալսըն վերածեր յանմահ ի կեանս. ստեղծիչ կենդանեաց և հանգուցիչ ննջեցելոց: Արժանաւորաց քոց աղօթիւք յիշեա ըզմեր ըզննջեցեալսն. յորժամ գայցես անձառ փառօք հատուցանել մարդկան

ըստ գործս. եւ մեր ննջեցելոցն շնորհեա դասիլ ընդ սուրբըս քո:

Այծ: Ըզքեզ կոյս և մայր և բնակարան ծածային ներմարդութեանն. գոհաբանեմք և վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան. *վասն որոյ ըզքեզ Աստածին և կոյս բարեբանեմք ըզմայր և զաղախին փրկչին մերոյ: Ծընունդըն Հօր և հինաւուրց. անժամանակն յաւիտենից. ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ. վն որոյ: Ծընեալն ի քէն ի խաչ ելեալ. եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր. անարգեն ի մարդկանէ փառաւորութե էութե երկրպագեալ. վն. որոյ: Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան այլ և վերին զօրութիւնք. դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց. գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր և զաղախին փրկչին մերոյ:

Խչ: Ապաւինեցաք ի խաչ քո արարիչ յաւիտենից. որ ետուր մեզ պահապան. յաղթօղ ընդդէմ թըշնամւոյն. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինըս մեր: Բարձրեալ թագաւոր. որ վասըն մեր ելեր ի խաչ. և բարձեր սովաւ զյանցանս. նախաստեղծին Ադամայ. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինըս մեր: Գլուխ նշ՛ հաւատոյ. և փայտ կենաց մարդկան յայտնեալ. զոր տեսեալ այսոյն պըղծոյ. կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինըս մեր: Դողացաւ թըշնամին. ընդ յայտնել սրբոյ խաչին. և ի յահէ փառաց նորա. կործանեցաւ յանդունդս երկրի. աղաչեմք սովաւ փրըկիչ պահպանեա զանձինըս մեր: Փառք Հօր և: Երկինք ցընծային և երկիր ուրախանայր. քանզի

փրկիչ ցուցաւ մեզ խաչն. և լուսատու տիեզերաց. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր։

Այժմ և միշտ։ Ժողովեալ Հրէիցն կրկնեցին արծաթ բազում. առեալ տարան առ Պիղատոս. ասեն ի խաչ. հան ի խաչ. զի հայհոյիչ է օրինացն։

Մաղթանք. փառք հրաշափառ չարչարանաց քոց։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Զարթեաւ աղեղըն քո ի նետըս կապարճից քոց. արբեցուցեր զգետս ցրուեցեր զերկիր. և դողացուցեր ի սաստկութենէ անձրեւի որ անցանէ ընդ սա։ Անդունդք աղաղակեցին մեծապէս. լոյս փայլման արեգականն արգելաւ. և ծագումն լուսնին դադարեցաւ։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Փ. Մատնեան ընդ իս ի տարապարտուց. փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս. այլ ես յաղօթս կայի։ Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ. ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ։

Փառք և։ Այժմ և միշտ. ալէլուիա։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒ

Հարց ԳՁ։

Իջեր յերկնից անըսկիզբըն Որդի. ի հողեղէն ի բնութենէ մարդկան. զչարչարանըս յանձն առեր. * օրհնեմք ըզքեզ որ էիր յառաջ քան զամենայն յաւիտեանս։ Որ անսացեր բանիւ լինել ամենայն երկրի. ի յերկրի յատենի կացեալ տեսանէին արարածք. օրհնեմք ըզքեզ։ Յորմէ դողան զուարթունք երկնից. այսօր եկիր կամաւ ի խաչ գեղարդեամբըն խոցեցար. օրհնեմք ըզքեզ։

Գ. ԶՏէր օրհնեցէք. բարձր արարէք յաւիտեան։

Փառք Հօր։ Եւ զինուորըն գեղարդեամբըն յարձա-

կեալ. խոցեաց զկող կենարարին. բարձր արարէք յաւիտեան: Այժմ և միշտ: Ուստի աղբեր կենդանարար բղխեալ. լուաց զտիեզերս ի մեղաց. բարձր արարէք յաւիտեան:

Մեծացո. Գ2: Լոյս լուսոյ մայր և կենարար Բանին բնակարան. քեզ երանիցեն ազգք եւ ազինք ամենայն: Փառք Հօր: Ստեղծողին մայր և հընութեան կերպի նորոգողին. քեզ երանիցեն ազգ եւ ազինք ամենայն: Այժմ և միշտ: Լոյս ծագեցաւ ի քէն նըստելոցս ի խաւարի. քեզ երանիցեն ազգք եւ ազինք ամենայն:

Ողորմ. Գ2: Եկեալ ի փրկութիւն ազգի մարդկան. ի ծառայէ յանձն առնու մատնիլ ի դատաստան. համբերելով վասն ըզմեզ կեցուցանել: Փառք Հօր: Մատնեալ Պիղատոսի ոտ՝ մահապարտ. ի յԱննայէ և ի կայիափայ դատապարտեալ. համբերելով վասն ըզմեզ կեցուցանել: Այժմ և: կացեալ ի յատենի երկրորդ Ադամ. վասն առաջինն Ադամայ պարտեացըն Թողութեան. համբերելով վասն ըզմեզ կեցուցանել:

Տէրայերկն. Գ2: Ով ըսքանչելի և տեսիլ ահաւոր. զարարիչն երկնի եւ երկրի այսօր տեսաք ի խաչի: Փառք Հօր: Տեսեալ ըզՏէրն ի խաչին խաւարեցաւ արեգակն. և վարագոյր տաճարին ցելոյր վերուստ մինչ ի վայր: Այժմ և միշտ: Անարգաբար խաչեցաւ Տէրն ի մէջ ի յանօրինաց. զի լցցի գիրն. որ ասէ Թէ ընդ անօրէնըս համարեցաւ:

Յորժամ ասեն զՏէրայերկնեայն՝ Ժողովուրդն զծնրադրեալ մի մեծ մոմեղէնն, մինչեւ վերջին փառք ի բարձունս: Եւ ապա բերեալ վառեն զառաջ խորանին կանթեղն:

Ա.... Երգ: Մատնեցայ եւ ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ:

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ:

Քարոզ. Փառաւորեսցուք. հաւ գանձ:

Մանկ. ԲՁ: Որ թագաւորդ ես թագաւորաց քո. ի ծառայէ դատապարտեալ համբերեցեր վասն մեր. երկայնամիտ Տէր քեզ փառք: Փառք Հօր: Որ պատուական խաչիւդ քո Քրիստոս. և նա արեամբդ քո հեղմամբ կենդանացուցաներ զմեզ կամեցար. երկայնամիտ Տէր քեզ փառք: Այժմ և միշտ: Որ մարդասիրապէս վասն ամենեցուն ամենայնի համբերեցեր. եւ ի մահու զմահ կոխեցեր. երկայնամիտ Տէր քեզ փառք:

Քարոզ. Վն խաղաղութեան: Աղօթ. Մծ ես Տէր:

Ե. տաղ աւէ սորողէի Սաղմոս ՃԸ:

Կց. Փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիմ: այլ ես յաղօթս կայի:

Փխ. Աստուած օրհնութեան իմոյ մի լռեր. զի բերան մեղաւորի բերան նենգաւորի բացաւ ի վերայ իմ:

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ. և բանիւ ատելութեան պաշարեցին զիս:

Մարտեան ընդ իս ի տարապարտուց. փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի:

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ. ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ:

Կացո ի վերայ նորա մեղաւոր. սատանայ կացցէ ընդ աջմէ նորա:

Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ. և աղօթք նորա ի մեղս դարձցին:

Եղիցին աւուրք նորա նուազ․ և զայցելութիւն նորա զայն այլ տարցի։

Եղիցին որդիք նորա որբ և կին նր՟ այրի․ սահեսցին փոփոխեսցին, որդիք նորա մուրողք եղիցին․ և ելցեն ի բնակութենէ իւրեանց։

Քննեսցէ փոխատու զամենայն ինչս նորա․ յափշտակեսցեն օտարք զվաստակս նորա։

Մի՛ գտցի օգնական նմա․ և մի՛ ոք ողորմեսցի ի վր՟ որբոց նորա։

Եղիցին որդիք նր՟ ի սատակումն․ և յազգէ ջնջեսցի անուն նորա։

Յիշեսցին մեղք հօր նր՟ առաջի Տ՟ն, և մեղք մօր նր՟ մի՛ ջնջեսցին․ և եղիցին առաջի Տ՟ն յամ՟ ժամ։

Սատակեսցի յերկրէ յիշատակ նր՟․ փոխանակ զի ոչ յիշեաց առնել զողորմութիւն։

Հալածեաց զայր աղքատ և զտնանկ․ սպանանել զայն որ խոնարհ է սրտիւ։

Սիրեաց զանէծս, և ելցէ նմա․ ոչ կամեցաւ զօրհնութիւն, հեռի եղիցի ի նմանէ։

Զգեցաւ զանէծս ո՟պ հանդերձ․ մտցէ ո՟պ ջուր ի փոր նր՟, ո՟պ ձէթ ընդ ոսկերս նորա։

Եղիցի նմա ո՟պ հանդերձ զի ագանի․ ո՟պ գօտի զի ածի հանապազ ընդ մէջ։

Այս գործ է այնոցիկ որ չարախօս կային զինէն առ Տէր․ և ոյք խօսէին չար զանձնէ իմմէ։

Այլ դու Տէր Տէր, արա ընդ իս ըստ անուան քում, զի քաղցր է ողորմութի՟ քո․ և փրկեա զիս, զի աղքատ և տնանկ եմ ես։

Սիրտ իմ խռովեցաւ ի փորի իմում․ և ես ո՟պ ստուեր ի խոնարհել իմում պակասեցայ․ և թօթափեցայ որպէս մարախ։

Ծունկք իմ տկարացան ի պահոց․ և մարմին իմ այլագունեաց յիւղոյ։

Եղէ ես նախատ նց̃. տեսին զիս և շարժեցին զգլուխս իւրեանց:

Օգնեա́ ինձ Տէր Ա̃ծ իմ. և փրկեա́ զիս ըստ ողորմութեան քում:

Ծանիցեն զի ձեռն քո այս է. և դու Տ̃ր արարեր զայս:

Նոքա անիծանեն, և դու օրհնեսցես. որք յարուցեալ են ի վ̃ր իմ՝ զամօթ կրեսցեն. այլ ծառայ քո ուրախ եղիցի ի քեզ:

Զգեցցին զամօթ որք չարախօս կային զանձնէ իմմէ. և արկցեն ո̃պ կրկնոց զամօթ իւրեանց զիւրեամբք:

Այլ ես խոստովան եղէց առ Տէր յոյժ բերանով իմով. ի մէջ բազմաց օրհնեցից զքեզ:

Զի եկաց նա ընդ աջմէ տնանկիս. փրկել զիս յայնցանէ որ հալածեն զանձն իմ:

Զ̃նի՝ Ո̃րթիւ:

Աւետարան ըստ Յովհաննու: ԺԸ. 28:

Վասն չարչարանաց Տեառն մերոյ Յ̃ի Ք̃ի:

Ածեն զՅիսուս ի Կայիափայ յապարանս դատաւորին. և էր այգուց: Եւ նոքա ոչ մտին յապարանսն, զի մի՛ պղծեսցին, այլ զի ուտիցեն զզատիկն: Ել առ ն̃ս Պիղատոս արտաքս և ասէ. զի՞նչ չարախօսութի̃ մատուցանէք զառնէն զայնմանէ: Պատասխանի ետուն և ասեն ցնա. եթէ չէր չարագործ այրն այն՝ ապա ոչ մատնէաք զնա քեզ: Ասէ ցն̃ս Պիղատոս. առէ՛ք զնա դուք, և ըստ ձերոց օրինացն դատեցարուք: Ասեն ցնա Հրեայքն. մեզ ոչ է արժան սպանանել զոք: Զի լցցի բանն Յ̃ի՝ զոր ասաց, նշանակեալ՝ թէ որո՛վ մահու մեռանելոց իցէ: Եմուտ միւսանգամ յապարանն Պիղատոս, կոչեաց զՅ̃ս և ասէ ցնա. դո՞ւ ես թագաւորն Հրէից: Պատասխանի ետ Յ̃ս. ի քէ՞ն ասես զայդ՝ եթէ այլք ասացին քեզ զինէն: Պատասխանի ետ Պեղատոս. մի՛ թէ և ե՞ս Հրեայ իցեմ. ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ. զի՞նչ

գործ գործեալ է քո։ Պատասխանի ետ Յս՟. իմ արքայութի՟ չէ յայսմ աշխարհէ. եթէ յաշխարհէ աստի էր արքայութի՟ն իմ, սպասաւորքն իմ մարտնչէին արդեօք՝ զի մի՛ մատնեցայց Հրէից. բայց արդ՝ թագաւորութի՟ն իմ չէ աստի։ Ասէ ցնա Պիղատոս. ապա թէ այդպէս իցէ՝ թագաւոր ո՞ք ես դու։ Պատասխանի ետ Յս՟. դու ասես՝ թէ թագաւոր իցեմ. բայց ես յայդ իսկ ծնեալ եմ, և ի դոյն իսկ եկեալ եմ յաշխարհ՝ զի վկայեցից ճշմարտութե՟ն. ամ՟ որ ի ճշմարտութե՟ է՝ լսէ բարբառոյ իմոյ։ Ասէ ցնա Պիղատոս. զի՞նչ է ճըշմարտութիւն։ Զայս իբրև ասաց, դարձեալ ել առ Հրեայսն և ասէ ցնոսա. ես և ոչ մի ինչ պատճառս գտանեմ ի նմա։ Բայց է ձեր սովորութի՟, զի զմի ոք արձակեցից ձեզ ի զատկիս. արդ՝ կամի՞ք զի արձակեցից ձեզ զթագաւորն Հրէից։ Աղաղակեցին ամենեքեան և ասէին. մի՛ զդա՝ այլ զԲարաբբա։ Եւ էր Բարաբբայն այն աւազակ։ Յայնժամ ա՛ռ Պիղատոս զՅս՟ և գան եհար։ Եւ զինուորացն արարեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ Նր՟, և զգեցուցին Նմա հանդերձ ծիրանի. և գային առ Նա և ասէին. ո՛ղջ եր արքայդ Հրէից. և հանէին Նմա ապտակս։ Ել դարձեալ Պիղատոս արտաքս, և ասէ ցնոսա. ահա ածեմ զնա արտաքս առ ձեզ, զի գիտասջիք թէ ես վնաս ինչ ի Նմա ոչ գտանեմ։ Ել Յս՟ արտաքս և ունէր պսակ ի փշոց և հանդերձ ծիրանի. և ասէ ցնս՟. ահա այրդ ցձեզ։ Իբրև տեսին զնա քահանայապետքն և սպասաւորք՝ զաղաղակ բարձին և ասեն. ի խա՛չ հան, ի խա՛չ հան զդա։ Ասէ ցնոսա Պիղատոս. առէք զդա ի ձեզ, և ձեզէն հանէք ի խաչ. զի ես ի դմա վնաս ինչ ոչ գտանեմ։ Պատասխանի ետուն Նմա Հրեայքն. մեք օրէնս ունիմք, և ըստ օրինաց մերոց պարտի մեռանել. զի զանձն իւր Որդի Այ՟ արար։ Իբրև լուաւ զբանս զայս Պիղատոս՝ առաւել ևս երկեաւ։ Եմուտ դարձեալ անդրէն յա-

## ՑԵՐԵԿՆ

*Ի վերջ ժամու ժողովին յեկեղեցին. եւ ասեն սաղմոս ութն փոխ. եւ կարդան ութն ընթերցուածս մարգարէականս եւ ութն առաքելականս, ըստ միոյ սաղմոսի երկուս ընթերցուածս. եւ աւետարանս չորս:*

### Առաջին Սաղմոս ԼԴ:

Կց. Յարեան ի վր իմ վկայք չարեաց. զոր ինչ ոչ գիտէի հարցանէին ցիս:

Փխ. Դատեա՛ Տէր զայնոսիկ որ դատին զիս. մարտի՛ր ընդ այնոսիկ որ մարտնչին ընդ իս:

Ա՛ռ զզէն և զասպար քո, և արի՛ օգնել ինձ. հա՛ն զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց. արգե՛լ զնս, և ասա՛ դու ցանձն իմ, թէ փրկութի քո ես իմ:

Ամաչեսցեն և յամօթ լեցին՝ ոյք խնդրէին զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն՝ ոյք խորհէին ինձ չար:

Եղիցին որպ փոշի առաջի հողմոյ. և հրեշտակ Տեառն նեղեսցէ զնս:

Եղիցին ճանապարհք նց ի խաւար և ի գայթագղութիւն. և հրեշտակ Այ հալածեսցէ զնս:

Ի նանիր թագուցին ինձ որոգայթ յապականութեան իւրեանց. և ի նանիր նախատեցին զանձն իմ:

Հասցէ ի վր նց որոգայթ զոր ոչ գիտացին. և որս զոր թագուցին՝ առցէ զոտս նց. և ի յորոգայթ ի նոյն անկցին:

Այլ անձն իմ ցնծասցէ ի Տէր. ուրախ եղեցի ի փրկութե նր. և ամենայն ոսկերք իմ ասասցեն. Տէր, ո՞ նմանէ քեզ:

Զի փրկեաց զաղքատն ի ձեռաց հզօրին. զաղքատն և զտնանկն յայնցանէ որ յափշտակեն զնա:

Յարեան ի վերայ իմ վկայք չարեաց. զոր ինչ ոչ գիտէի հարցանէին ցիս:

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ. ժառանգել զանձն իմ խորհեցան յորդւոց մարդկանէ:

Ես ի նեղել նոցա քուրձ զգենուի․ խոնարհ առնէի պահովք զանձն իմ, և աղօթք իմ ի ծոց իմ դարձցին։

Ո՟պ զեղբայր և զընկեր՝ այնպէս հաճոյ լինէի․ որպէս սգաւոր և տրտում՝ այնպէս խոնարհ առնէի։

Ի վ՟ն իմ ուրախ եղեն և ժողովեցան․ ժողովեցան յիս տանջանք, և ես ոչ ծանեայ․ ցրուեցան և ոչ զղջացան։

Փորձեցին զիս և արհամարհեցին արհամարհանօք․ կրճտեցին ի վերայ իմ զատամունս իւրեանց․ Տէր ե՞րբ տեսցես։

Ի բաց արա զանձն իմ ի խորամանկութենէ նոցա․ և յառիւծուց զմիամօրութիւն իմ։

Խոստովան եղէց քեզ Տէր՝ յեկեղեցիս մեծս․ և ի ժողովս բազմաց օրհնեցից զքեզ։

Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ․ որք ատէին զիս ի տարապարտուց․ ակնարկէին առնէին զիս աչօք իւրեանց։

Ընդ իս զխաղաղութիւն խօսէին․ և ինքեանք բարկութեամբ զնենգութիւն խորհէին։

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց․ և ասացին՝ այո՛ այո՛ տեսին աչք մեր։

Տեսեր Տէր և մի՛ լռեր․ Տէր մի՛ ի բացեայ առնիր յինէն։

Զարթի՛ր և հայեա՛ Տէր յիրաւունս իմ, Աստուած իմ և Տէր իմ՝ ի դատաստանս իմ․ և իրաւ արա ինձ ըստ արդարութեան քում Տէր Աստուած իմ։

Մի՛ ուրախ լիցին յիս թշնամիք իմ․ և մի՛ ասասցեն ի սիրտս իւրեանց՝ թէ վա՛շ վա՛շ անձանց մերոց, զի ընկլուզաք զնա։

Ամաչեսցեն և յամօթ լիցին՝ որք խնդային ընդ չար իմ․ զգեցցին զամօթ և զանարգանս՝ որք մեծաբանէին ի վերայ իմ։

պարանոյն, և ասէ ցՅն. ուստի՞ ես դու. և Յն ոչ ետ նմա պատասխանի: Ասէ ցնա Պիղատոս. ընդ իս ո՞չ խօսիս. ո՞չ գիտես եթէ իշխանութի ունիմ հանել զքեզ ի խաչ, և իշխանութի ունիմ արձակել զքեզ: Պատասխանի ետ Յն. ոչ ունէիր դու իշխանութիւն ի վր իմ և ոչ մի, եթէ ոչ էր տուեալ քեզ ի վերուստ. վասն այնորիկ որ մատնեացն զիս քեզ, նորա մեծ մեղք են: Եւ յայնմանէ Պիղատոս խնդրէր արձակել զնա. և Հրեայքն աղաղակէին և ասէին. եթէ զդա արձակես՝ չես բարեկամ կայսեր. ամ ոք որ թագաւոր կոչէ զանձն իւր՝ հակառակ է կայսեր: Իսկ Պիղատոս իբրև լուաւ զբանս զայսոսիկ՝ ած զՅն արտաքս. և նստաւ ի վր բեմին ի տեղւոջն որ կոչէր Քարայատակ, և եբրայեցերէն՝ Կապպաթա: Էր ուրբաթն զատկի, և էր ժամ իբրև վեցերորդ. և ասէ ցՀրեայսն. ահա թագաւորդ ձեր ցձեզ: Եւ նոքա աղաղակէին. բարձ ի մէնջ, բարձ ի մէնջ, և հան զդա ի խաչ: Ասէ ցնոսա Պիղատոս. ես զթագաւորդ ձեր ի խա՞չ հանիցեմ: Պատասխանի ետուն քահանայապետքն. չիք մեր թագաւոր բաց ի կայսերէ: Յայնժամ ետ զնա ի ձեռս նց՝ զի ի խաչ ելանիցէ: Ժթ. 16:

Երգ. Զհանդուրժեալ բնութի:

Քրզ. Խնդրեսցուք: Կեցո յայնի.: Աղ. Քում ամենազօր և հրաշալի չարչարանացդ:

Եւ տեսեն զսուրբ խաչն եւ զաւետարանն ի վերայ բեմին կամ գրակալին. եւ խունկ ածեն: Եւ երկիր պագանեն ամենեքեան, եւ համբուրեն զխաչն եւ զաւետարանն մինչեւ ցերիս ժամս:

Եւ քահանայքն պար առեալ ասեն Շարական

ԲԿ. Խա՞չի քո Քրիստոս երկիր պագանեմք. և ըզ-թաղումն քո մեծացուցանեմք. եւ սբ զյարութի ըզ-քո փառաւորեմք: Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ. վասն զի եկն ի ձեռն խաչին իւրոյ շնորհեաց պարգեւս աշխարհի:

Սուրբ Աստուած. սուրբ եւ հզօր. սուրբ և անմահ. ողորմեաց մեզ։

Ակ. * Փառք իբ խաչին ալէլուիա. իբ Սիովնի ալէլուիա. իբ յարութեան ալէլուիա։

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց։ Ի պտղոյ ցորենոյ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր ըզնոսա։

Փառք իբ խաչին ալէլ. Եւ այլն, որպէս ի վերոյ։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն։

Փառք իբ խաչին ալէլ. Եւ այլն, որպէս ի վերոյ։

Բկ. Խաչըն կենարար որ եղեւ մեզ փրկութիւն. *սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք։ Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ի յերկիր. եւ գաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ։ Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցաւ. ի յօգնութիւն ընդդէմ թըշնամւոյն. սովաւ։

Քարոզ. Սբ խաչիւս։ Աղօթ. Պահպանեա զմեզ։

**Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր։**

Եւ ասեն դառն ուրբաթու. Ծարաւեցաւ Տէրն, չամ այլ դառն խաչելութեան։ Եւ ապա չորրորդն չկայ մեծի ուրբաթուն, որ յաղագս խաչելութեանն Քրիստոսի։

---

Յերեք ժամուն ժողովքն է դասուն եկեղեցւոյն. Եւ ասեն զճաշու ժամն. Օրհնեալ Հոգին ճր. Եւ զՈղորմեա ճոխերն. Եւ զՏէր Ներողեա երեքն՝ Խաւարեցաւ եւ Զարհուրեցաւ. Եւ զմեծ քարոզն՝ զՄիաբանն եւ զԱրթուն միտքն եւ զՍբ սրտիւն, եւ զերեքեանց աղօթսն։ Ձայն՝ Մաղթանք. Հոգւոցն հանգուցելոց։ Քարոզ. Վն հոգւոցն։ Աղօթ. Քն որդի Այ. Եւ Հայր մեր։

---

Ես ի քեզ Տէր յուսացայ. և դու լուիցես ինձ Տէր Աստուած իմ։

Ասացի թէ մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ. ի սասանել ոտից իմոց՝ ի վերայ իմ մեծամեծս խօսեցան։

Ես ի տանջանս պատրաստ եմ. և ցաւք իմ առաջի իմ են յամենայն-ժամ։

Զանօրէնութիւնս իմ պատմեցից. և հոգացայց վասն մեղաց իմոց։

Իսկ արդ՝ թշնամիք իմ կենդանի են, և զօրացեալ են քան զիս. և բազում էին ոյք ատէին զիս ի տարապարտուց։

Ոյք հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ՝ չարախօսէին զինէն, զի ես երթայի զհետ արդարութե։

Մի՛ թողուր զիս Տէր Աստուած իմ, և մի ի բացեայ առնիր յինէն. հայեաց յօգնել ինձ Տէր փրկութեան իմոյ։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ Գ. 10։

Վա՜յ անձանց նց. զի խորհեցան խորհուրդ չար առանձինն։ Եւ ասեն. կապեսցուք զարդարն՝ զի դժպհի եղեւ մեզ. այսուհետեւ զարդիւնս գործոց իւրեանց կերիցեն։ Վա՜յ անօրինին. չարիք ըստ գործոց ձեռաց իւրոց անցցեն ընդ նա։ Ժողովուրդ իմ, հարկահանք ձեր ճռաքաղ առնեն զձեզ, և պահանջողք տիրեն ձեզ. ժողովուրդ իմ, որ երանեն ձեզ՝ խաբեն զձեզ. և զշաւիղս ոտից ձերոց խռովեցուցանեն։ Այլ արդ՝ հասցէ Տէր ի դատաստան, և կացուսցէ յատենի զժողովուրդ իւր։ Ինքնին Տէր ի դատ եկեսցէ ընդ ծերս ժողովրդեան իւրոյ և ընդ իշխանս նց. դուք զի՞ հրկէզ արարէք զայգի իմ. և յափշտակութի տնանկին է ի տունս ձեր։ Դուք զի՞ զրկէք զժողովուրդ իմ, և զերեսս տնանկաց լի առնէք ամօթով, ասէ Տէր Տէր զօրութեանց։ 15։

Պօղոսի առաքելոյն ի Փիլիպեցւոց թղթոյն է ընթերցուածս։ Բ. 5։

Զայն խորհեսջիք իւրաքանչիւր ոք ի ձեզ՝ որ ի Քս Յս, որ ի կերպարանս ԱՅ է, ոչ ինչ յափշտակութի համարեցաւ զլինելն հաւասար ԱՅ. այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ, ի նմանութիւն մարդկան եղեալ, և կերպարանօք գտեալ իբրև զմարդ։ Խոնարհեցոյց զանձն՝ լեալ հնազանդ մահու չափ և մահու խաչի։ Վսյ և ԱԾ զնա առաւել բարձրացոյց. և շնորհեաց նմա անուն՝ որ ի վեր է քան զամ անուն։ Զի յանուն Յսի Քսի ամ ծունր կրկնեսցի՝ երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց. և ամ լեզու խոստովան լիցի, թէ Տէր է Յս Քս ի փառս Աստուծոյ Հօր։ 11։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Նա եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Երրորդ Սաղմոս Խ։

ԿՑ. Մտանէր տեսանել զնանրութի. խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիս յանձն իւր։

Փխ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն. յաւուր չարի փրկէ զնա Տէր։

Տէր փրկէ զնա և կեցուցանէ. երանելի առնէ զնա ի վր երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց։

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց. և զամ անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութե նր։

Ես ասացի Տէր ողորմեա ինձ. և բժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ։

Թշնամիք իմ ասացին ինձ չար. Երբ իցէ զի մեռցի և կորիցէ անուն նորա։

Մտանէր տեսանել զնանրութիւն. խօսէր ի սրտի իւրում. ժողովէր զանօրէնութիւնս յանձն իւր։

Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ ամենեքեան. ոյք կամին ընդ արդարութիւն իմ։

Ասասցեն յամենայն ժամ մեծ է Աստուած. և որ կամին զխաղաղութիւն ծառայի քո։

Լեզու իմ խօսեսցի զարդարութիւնս քո. զօրհանապազ զգովութիւնս քո։

Առաջին ընթերցուածն աշակերտի դասուն է։

Ընթերցուածս ի Զաքարեայ մարգարէէ։ ԺԱ. 11։

Եւ ծանիցեն Քանանացիքն զխաշինս պահեստի իմոյ. զի բան Տե̃ն է։ Եւ ասացի ցն̃ս, թէ բարւոք թուի յաչս ձեր՝ տո́ւք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զրո́յց արարէք։ Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի։ Եւ ասէ ցիս Տէր՝ ա́րկ զդու զայդ ի բովս, և քննեա́ թէ փո̊րձ իցէ, ո̃ր ես գտայ փորձ վ̃ն նց̃։ Եւ առի զերեսուն արծաթին, և արկի ի տուն Տե̃ն ի բովս։ Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ զվիճակն՝ ցրել զուխտ իմ ի մէջ Յուդայ և ի մէջ Իսրայէլի։ 14։

Պօղոսի առաքելոյն ի Գաղատացւոց թղթոյն է ընթերցուածս։ Զ. 14։

Այլ ինձ քա́ւ լիցի պարծել՝ բայց միայն ի խաչն Տե̃ն մերոյ Յի̃ի Քի̃ի. որով ինձ աշխարհ ի խաչ ելեալ է, և ես աշխարհի։ Զի ի Քի̃ Յի̃ ոչ թլփատութի̃ ինչ է և ոչ անթլփատութի̃, այլ նոր արարած։ Եւ որ միանգամ այսմ կանոնի միաբան լինին՝ խաղաղութիւն ի վ̃ր նց̃ և ողորմութի̃, և ի վ̃ր Իսրայէլին Աստուծոյ։ Այսուհետեւ աշխատ ոք զիս մի́ արասցէ, զի ես զչարչարանսն Քրիստոսի ի մարմնի իմում կրեմ։ Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ ոգւոյդ ձերում եղբարք. ամէն։ 18։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա́։ Երեք անգամ կրկնեա։

Եւ ևս խաղաղութե̃։ Օրհնութի̃ և փառք։

Երկրորդ Սաղմոս ԼԷ։

ԿՑ. Ես ի տանջանս պատրաստ եմ. և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ։

Փխ. Տէր մի՛ սրտմտութ̄ քով յանդիմաներ զիս. և մի՛ բարկութ̄ քո խրատեր զիս։

Զի նետք քո հարան յիս. և յիս հաստատեցաւ ձեռն քո։

Ոչ գոյ բժշկութ̄ի մարմնոյ իմոյ՝ յերեսաց բարկութեան քոյ։

Ոչ է խաղաղութիւն ոսկերաց իմոց՝ յերեսաց մեղաց իմոց։

Անօրէնութիւնք իմ բարձրացան քան զգլուխ իմ. որպէս բեռն ծանր ծանրացան ի վերայ իմ։

Նեխեցան և փտեցան վէրք իմ՝ յերեսաց անզգամութեան իմոյ։

Տառապեցայ և խոնարհ եղէ յոյժ. զօրհանապազ տրտում գնայի, զի անձն իմ լի եղեւ չարչարանօք. և ոչ գոյ բժշկութիւն մարմնոյ իմոյ։

Չարչարեցայ և խոնարհ եղէ մինչեւ յոյժ. մռնչէի առ հեծութեան սրտի իմոյ։

Տէր առաջի քո են ամենայն ցանկութիւնք իմ. և հեծութիւն իմ ի քէն ոչ ծածկեցաւ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս, և եթող զիս զօրութիւն իմ. լոյս աչաց իմոց, և այս ոչ եղեւ ընդ իս։

Բարեկամք իմ և մերձաւորք իմ առաջի իմ մերձեցան և կացին. և մերձաւորք իմ հեռի եղեն յինէն։

Բռնադատէին զիս և խնդրէին զանձն իմ՝ ոյք խորհէին չար ի վերայ իմ. խօսեցան զանօրէնութիւն, և զնենգութիւն զօրհանապազ խորհեցան։

Այլ ես որպէս խուլ զի ոչ լսէ. որպէս համր որ ոչ բանայ զբերան իւր։

Եղէ ես որպէս մարդ որ ոչ լսէ. և ոչ գոն խօսք ի բերան նորա։

Ամենեքեան որ տեսանէին զիս՝ արհամարհէին զինև. խօսէին շրթամբք և շարժէին զգլուխս իւրեանց։

Յուսացաւ ի Տէր, և փրկեսցէ զնա. կեցուսցէ զնա, զի կամի զնա։

Դու ես որ հաներ զիս յարգանդի. յոյս իմ ի ստեանց մօր իմոյ։

Ի քեզ անկայ ես յարգանդէ. յորովայնէ մօր իմոյ դու ես Աստուած իմ։

Մի՛ ի բացեայ առնիր յինէն. զի նեղութիւնք մերձեալ են, և ոչ ոք է որ օգնէ ինձ։

Շուրջ եղեն զինև զուարակք բազումք. և ցուլք գէրք պաշարեցին զիս։

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց՝ որպէս առիւծ զի մռնչէ և յափշտակէ։

Ես որպէս զջուր հեղայ և ցրուեցան ամենայն ոսկերք իմ. և եղև սիրտ իմ որպէս մոմ հալեալ ի մէջ որովայնի իմոյ։

Չորացաւ որպէս խեցի զօրութիւն իմ. լեզու իմ ի քիմս իմ կցեցաւ. և ի հող մահու իջուցին զիս։

Շուրջ եղեն զինև շունք բազումք. և ժողովք չարաց պաշարեցին զիս։

Ծակեցին զձեռս իմ և զոտս իմ, և թուեցին զա̃մ ոսկերս իմ. և նոքա հայեցան և տեսին զիս։

Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ իւրեանց. և ի վ̃ր պատմուճանի իմոյ վիճակս արկանէին։

Դու Տէր, մի հեռի առներ զօգնութիւնս քո յինէն. և Տէր յօգնել ինձ նայեաց։

Փրկեա՛ ի սրոյ զանձն իմ. և ի ձեռաց շանց զմիամօրութիւն իմ։

Փրկեա՛ զիս ի բերանոյ առիւծու. յեղջերէ միեղջերուի զխոնարհութիւն իմ։

Պատմեցից զանուն քո եղբարց իմոց. ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ։

Երկիւղածք Տեառն օրհնեցէք զՏր. ամենայն զաւակն յակովբեան փառաւոր արասցեն զնա։

Երկիցէ ի Տեառնէ ամենայն զաւակն Իսրայէլի, զի ոչ արհամարհեաց և ոչ անարգեաց զաղօթս աղքատի. և ոչ դարձոյց զերեսս իւր յինէն. այլ ի կարդալ իմում առ նա՝ լուաւ ինձ։

Ի քէն է գովութիւն իմ. յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ։

Զուխտս իմ կատարեցից առաջի ամ երկիւղածաց նր։

Կերիցեն տնանկք և յագեսցին. օրհնեսցեն զՏէր որք խնդրեն զնա։

Կեցցեն սիրտք նոցա յաւիտեանս յաւիտենից. յիշեսցեն, և դարձցին առ Տէր ամենայն ծագք երկրի։

Երկիր պագցեն նմա ամ տոհմք ազանց. զի Տեառն է արքայութի, և նա տիրէ ի վր ամ հեթանոսաց։

Կերան և երկիր պագին նմա ամ պարարտք երկրի. առաջի նր անկցին ամենեքեան որ իջանեն ի հող։

Անձն իմ նովաւ կեայ. և զաւակ իմ ծառայեսցէ նմա։

Պատմեսցի Տռն ազգ որ գալոց է. պատմեսցեն զարդարութիւն նորա ժողովրդեան որ ծնանելոց իցէ՝ զոր արար Տէր։

Ընթերցուած յԱմովսայ մարգարէէ։ Ը. 9։

Եւ եղիցի յաւուր յայնմիկ ասէ Տէր Տէր՝ մտցէ արեգակն ի միջօրէի. և խաւարեսցի յերկրէ լոյս ի տուէ։ Եւ դարձուցից ի սուգ զտօնս ձեր, և զամ երգս ձեր յողբս. և ածից ի վր ամ հասակաց քուրձ, և ի վր ամ գլխոց կնտութի. և արարից նմա իբրև սուգ սիրելւոյ, և որոց ընդ նմայն իցեն՝ իբրև օր ցաւոց։ Ահա աւուրք գան, ասէ Տէր Տէր, և առաքեցից սով յերկիր, ոչ սով հացի և ոչ ծարաւ ջրոյ, այլ սով լսելոյ զբանն Տռն։ Եւ խռովեսցին ջուրք ի ծովէ մինչև ի ծով, և ի հիւսիսոյ մինչև յարևելս. ընթասցին խնդրել զբանն Տեառն, և մի գտցեն։ 12։

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր. զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ:

Խորհեցան չար ի վերայ իմ. բան անօրէնութեան եդին ի վերայ իմ:

Մի՛ թէ որ ննջիցէն ոչ ևս յաւելուցու յառնել. քանզի և այրն խաղաղութե՛ իմոյ՝ յոր և եսն յուսացայ:

Որ ուտէր ընդ իս հաց, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն:

Այլ դու Տէր ողորմեա՛ ինձ. կանգնեա՛ զիս, և հատուցից նոցա:

Յայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս. զի մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ:

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար. հաստատեցեր զիս առաջի քո յաւիտեան:

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի յաւիտենից յաւիտենից. եղիցի եղիցի:

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ: Ծ. 4:

Տէր Տէր տայ ինձ լեզու խրատու, զի գիտացից խօսել ի ժամու զբանն: Պատրաստեաց զիս ընդ առաւօտս. յաւել ինձ ունկն ի լսել: Եւ խրատ Տե՛ն բանայ զականջս իմ, և ես ոչ խստանամ և ոչ ընդդէմ դառնամ: Զթիկունս իմ ետու ի հարուածս, զծնօտս իմ յապտակս. և զերեսս իմ ոչ դարձուցի յամօթոյ ընդ երեսս թքանելոյ: Եւ Տէր Տէր եղեւ իմ օգնական. վա՛ այնորիկ ոչ ամաչեցի. այլ արարի զդէմս իմ իբրեւ զվէմ հաստատուն. և գիտացի՝ թէ ոչ ամաչեցից: Զի մերձ է՝ որ արդարացուցանիցէն զիս: Ո՞վ է ոսոխն իմ, եկեսցէ կացցէ ի մէջ. և ո՞վ է որ դատէն զիս, մերձեսցի առ իս: Զի ահաւասիկ Տէր Տէր օգնական է ինձ. ո՞վ է որ չարչարիցէն զիս: Ահաւադիկ դուք ամենեքին իբրեւ զձորձս հնասջիք. և ցեց մեցամէս կերիցէ զձեզ: 9:

Պօղոսի առաքելոյն ի Հռովմայեցւոց թղթոյն է ընթերցուածս։ Ե. 6։

Զի մինչ դեռ տկարքն էաք՝ ք՟ն վ՟ն մեր ի ժամանակի ի վ՟ր ամպարշտաց մեռաւ։ Զի վ՟ն արդարոյ հազիւ ոք թէ մեռանիցի. այլ վ՟ն բարւոյ թերեւս համարձակիցի ոք մեռանել։ Ցայտնեաց Ա՟ծ զսէրն իւր ի մեզ, զի մինչ դեռ մեղաւորքն էաք՝ ք՟ն վ՟ն մեր մեռաւ. ո՞րչափ եւս առաւել յարդարանալս մերում այժմիկ արեամբն ն՟ր՝ ապրեսցուք նովաւ ի բարկութենէ անտի։ Զի եթէ մինչ թշնամիքն էաք՝ հաշտեցաք ընդ Ա՟յ մահուամբ Որդւոյ ն՟ր. ո՞րչափ եւս առաւել ի հաշտելս մերում՝ ապրեսցուք կենօքն ն՟ր։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և պարծիմք եւս յԱ՟ծ ի ձեռն Տ՟ն մերոյ Յ՟սի ք՟սի. որով և զհաշտութիւնն իսկ ընկալաք։ 11։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Ն՟ւ եւս խաղաղութ՟ե։ Օրհնութիւն և փառք։

Չորրորդ Սաղմոս ԻԱ։

Կց. Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ իւրեանց. և ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին։

Փխ. Աստուած Աստուած իմ, նայեաց առ իս. ընդէ՞ր թողեր զիս. հեռի եղէ ի փրկութենէ իմմէ վասն բանից յանցանաց իմոց։

Աստուած իմ ի տուէ կարդացի առ քեզ, և ինձ ոչ լուար. ի գիշերի, և ինձ ոչ անսացեր։

Դու ի ս՟բս բնակեալ ես. և գովեալ յԻսրայէլի։

Ի քեզ յուսացան հարքն մեր. յուսացան ի քեզ և փրկեցեր զնոսա։

Առ քեզ աղաղակեցին և կեցին. ի քեզ յուսացան և ոչ ամաչեցին։

Այլ ես որդն եմ, և ոչ եմ մարդ. նախատինք մարդկան և արհամարհանք ժողովրդոց։

զինեւ. ի ժողովել նց̃ ի միասին, առնուլ զանձն իմ խորհեցան. այլ ես ի քեզ Տէր յուսացայ։

Ասացի դու ես Ած̃ իմ. և ի ձեռս քո է ժառանգուի̃ իմ։

Փրկեա́ զիս ի ձեռաց թշնամեաց իմոց. և ի հալածչաց իմոց։

Երեւեցո́ զերեսս քո ի ծառայս քո. ապրեցո́ զիս Տէր ըստ ողորմութե̃ քում. Տր̃ մի́ յամօթ եղէց՝ զի կարդացի առ քեզ։

Ամաչեսցեն ամբարիշտք և իջցեն ի դժոխս. համր եղիցին շրթունք նենգաւորք, որք խօսէին զարդարոյ զանիրաւուի̃ յամբարտաւանել և յանգոսնել իւրեանց։

Որպէս զի բազում է ողորմութի̃ քաղցրութե̃ քոյ Տր̃, զոր պահեցեր երկիւղածաց քոց։

Արարեր դու այնոցիկ որք յուսացեալ են ի քեզ, առաջի որդւոց մարդկան։

Ամրացուսցես զնոսա ի ծածկոյթ երեսաց քոց, ի խռովութենէ մարդկան։

Ծածկեսցես զնս̃ ի խորանի քում, ի հակառակութենէ լեզուաց։

Օրհնեալ է Տէր՝ զի սքանչելիս արար. զողորմութիւն իւր ի քաղաք ամուր։

Ես ասացի ի զարմանալ իմում. թէ ընկեցայ ուրեմ̃ն յերեսաց աչաց քոց։

Վն̃ այսորիկ լուար ձայնի աղօթից իմոց. յաղաղակել իմում առ քեզ։

Սիրեցէք զՏէր ա̃մ սր̃բք նր̃. զի զստուգութի̃ս խնդրէ Տէր. և հատուցանէ այնոցիկ՝ որք առաւել առնեն զամբարտաւանութիւն։

Քաջալերեցարո́ւք և զօրասցին սիրտք ձեր. ամենեքեան որք յուսացեալ էք ի Տէր։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ Ծբ. 13։

Ահաւադիկ ի միտ առցէ մանուկ իմ. վերասցի և բարձրասցի և փառաւորեսցի յոյժ։ Զոր օրինակ զար-

մասցին բազումք ի վր̃ քո. այնպէս անշքեցի տեսիլ քո ի մարդկանէ, և փառք քո յորդւոց ի մարդկանէ։ Այնպէս զարմասցին ազգք բազումք ի վր̃ քո, և կարկեսցեն թագաւորք զբերանս իւրեանց։ Զի որոց ոչ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն, և որոց ոչ իցէ լուեալ՝ ի միտ առցեն։ Տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում. և բազուկ Տեառն ո՞ւմ յայտնեցաւ։ Պատմեցաք առաջի նորա իբրև զմանուկ, իբրև զարմատ ի ծարաւուտ երկրէ. ոչ գոյր նր̃ տեսիլ և ոչ փառք. տեսաք մեք զնա, և ոչ գոյր նր̃ տեսիլ և ոչ գեղեցկութի̃։ Այլ տեսիլ նր̃ անարգ՝ նուաղեալ քան զա̃մ որդւոց մարդկան. այր մի ի հարուածս և գիտէ համբերել ցաւոց. զի դարձուցեալ զերեսս իւր անարգեցաւ և ոչ ինչ համարեցաւ։ Նա զմեղս մեր բառնայ և վս̃ մեր չարչարի. և մեք համարեցաք զնա ի ցաւս և ի հարուածս և ի չարչարանս իբրև յԱ̃Ծ̃։ Բայց նա վիրաւորեցաւ վս̃ մեղաց մերոց, և պատժեցաւ վս̃ մերոց անօրէնութե̃ց. խրատ խաղաղութե̃ մերոյ ի նմա, և նր̃ վիրօքն բժշկեցաք։ Ամենեքին իբրև ոչխարք մոլորեալք՝ այր ի ճանապարհի իւրում մոլորեցաւ, և Տէր մատնեաց զնա առ մեղս մեր։ Եւ նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր. իբրև ոչխար ի սպանդ վարեցաւ, և իբրև որոջ առաջի կտրչի անմռունչ կայ, այնպէս ոչ բանայ զբերան իւր։ Առ խոնարհութե̃ նր̃ դատաստան նր̃ բարձաւ. և զազգատոհմ նր̃ ո՞ պատմեսցէ. զի բառնան յերկրէ կեանք նր̃. յանօրէնութե̃ց ժողովրդեան իմոյ ի մահ վարեցաւ։ Եւ տաց զչարս փոխանակ գերեզմանի նր̃, և զմեծամեծս փոխանակ մահու նր̃. զի անօրէնութիւն ոչ գործեաց, և ոչ գտաւ նենգութի̃ ի բերան նր̃։ Եւ Տէր կամի սրբել զնա ի վիրաց անտի. եթէ տայցէք զվս̃ մեղացն, անձինք ձեր տեսցեն զաւակ երկայնակեաց. և կամի Տէր ի ձեռն նր̃ բառնալ ի ցաւոց անձին նր̃։ Ցուցանել նմա լոյս և ստեղծուլ իմաստութե̃. արդա-

Պօղոսի առաքելոյն ի կորնթացւոց առաջին թղթոյն է ընթերցուածս։ Ա. 18։

Զի բան խաչին կորուսելոցն յիմարութի է. այլ փրկելոցս մեզ՝ զօրութի Այ։ Զի գրեալ է. կորուսից զիմաստութի իմաստնոց, և զխորհուրդս խորհրդակա-նաց արհամարհեցից։ Ո՞ւր իմաստուն, ո՞ւր դպիր, ո՞ւր քննիչ աշխարհիս այսորիկ. ո՞չ ապաքէն յիմարեցոյց Ած զիմաստութի աշխարհիս այսորիկ։ Քանզի իմաս-տութքն Այ ոչ ծանեաւ աշխարհ իմաստութքն զԱծ, հաճեցաւ Ած յիմարութք քարոզութեն ապրեցուցա-նել զհաւատացեալս։ Իսկ որովհետեւ Հրեայք նշան հայցեն, և հեթանոսք զիմաստութիւն խնդրեն, մեք քարոզեսցուք զխաչելեալն Քրիստոս, Հրէից գայթա-գղութիւն և հեթանոսաց յիմարութիւն. բայց նոցին իսկ կոչեցելոցն Հրէից և հեթանոսաց, զՔրիստոս՝ Աս-տուծոյ զօրութիւն և Աստուծոյ իմաստութի։ Զի յի-մարն Աստուծոյ իմաստնագոյն է քան զմարդիկ, և տկարն Աստուծոյ զօրագոյն է քան զմարդիկ։ Թէպէտ և զձեր իսկ կոչումն տեսէք, եղբարք, զի ոչ բազում իմաստունք ըստ մարմնոյ, և ոչ բազում հզօրք և ոչ բազում ազնուականք. այլ զյիմարս աշխարհիս ըն-տրեաց Ած՝ զի յամօթ արասցէ զիմաստունս. և զտկարս աշխարհիս ընտրեաց Ած, զի յամօթ արասցէ զհզօրս. և զանարգս աշխարհի և զարհամարհեալս ընտրեաց Ած և զոչինչսն՝ զի զէսն իմն խափանեսցէ. ոպ զի մի պարծեսցի ամ մարմին առաջի Այ։ Զի ի նմանէ դուք էք ի Քն Ցն, որ եղեւ մեզ իմաստութի յԱյ, արդա-րութի և սրբութիւն և փրկութի. զի ոպ և գրեալ է. Որ պարծին՝ ի Տէր պարծեսցի։ 31։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմեա՛։ Երիցս անգամ երգել։

Ղու եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Հինգերորդ Սաղմոս Լ։

ԿՑ. Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։

Փխ. Ի քեզ Տր̄ յուսացայ, մի ամաչեցից յաւիտեան. յարդարութ̄ե քում փրկեա զիս և ապրեցո զիս։

Խոնարհեցո առ իս զունկն քո. վաղվաղեա կեցուցանել զիս։

Լեր իմ Ա̄ծ պաշտպան և տուն ապաւինի՝ ապրեցուցանել զիս. զի հզօրիչ իմ և ապաւէն իմ ես. դու։

Վ̄ն անուան քոյ Տր̄ առաջնորդեսցես ինձ և սնուցես զիս. և հանցես զիս յորոգայթէ յայսմանէ՝ որ թագուցաւ ինձ։

Դու ես պաշտպան իմ Տէր. և ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։

Փրկեցեր զիս Տէր Ա̄ծ ճշմարտութ̄բ քով. ատեցեր զայնոսիկ որք պահեն զերկիւղ ի սնոտիս։

Ես ի Տէր յուսացայ. ցնծացայց և ուրախ եղէց ի փրկութ̄ե քում։

Զի հայեցար ի խոնարհութ̄ի իմ, և փրկեցեր ի վշտաց զանձն իմ. ոչ մատնեցեր զիս ի ձեռս նեղչաց իմոց, և կացուցեր յանդորրու զոտս իմ։

Ողորմեա ինձ Տէր, զի նեղեալ եմ ես. խռովեցաւ ի սրտմտութ̄է ակն իմ, անձն իմ և փոր իմ։

Պակասեցան ի ցաւոց կեանք իմ. և ամք իմ յոգւոց ելանելոյ։

Աղքատացաւ ի տկարութ̄է զօրութ̄ի իմ. և ոսկերք իմ խռովեցան։

Քան զա̄մ թշնամիս իմ եղէ ես նախատ դրացեաց իմոց յոյժ. ահ և երկիւղ ծանօթից իմոց։

Ամենեքեան որք տեսանէին զիս՝ արտաքս փախչէին յինէն։

Մոռացեալ եղէ ես ո̄պ մեռեալ ի սրտէ. և եղէ ես ո̄պ զանօթ կորուսեալ։

Զի լուայ ես զբամբասանս բազմաց, որք շուրջ էին

*ըացուցանել զարդարն՝ որ մտադիւրն ծառայեաց բազմաց. և զմեղս նց նա վերացուցէ: Վն այսորիկ նա ժառանգեսցէ զբազումս, և զաւար հզօրաց բաշխեսցէ. փոխանակ զի ի մահ մատնեցաւ անձն նր, և ընդ անօրէնս համարեցաւ. և նա զմեղս բազմաց վերացոյց, և վն անօրէնութեց նոցա մատնեցաւ: Ծգ. 12:*

*Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց Թղթոյն է ընթերցուածս: Բ. 11:*

*Զի որ սրբէն և որ սրբին՝ ի միոջէ էին ամենեքին, վսյ ոչ ամօթ համարի եղբարս անուանել զնս, և ասել. Պատմեցից զանուն քո եղբարց իմոց. ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ: Եւ դարձեալ՝ թէ Ես եղէց յուսացեալ ի նա: Եւ դարձեալ. Ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետ ինձ Ած: Արդ՝ որովհետեւ մանկունք հաղորդեցին արեան և մարմնոյ, և ինքն իսկ մերձաւորութբ կցորդ եղեւ նոցունց. զի մահուն իւրով խափանեսցէ զայն որ զիշխանութի մահուն ունէր, այս ինքն է՝ զսատանայ, և ապրեցուսցէ զայնոսիկ որ մահուն երկիւղիւ հանապազ կէին վտարանդեալք ի ծառայութիւն: Քանզի ոչ երբեք զհրեշտակաց բուռն հարկանէ, այլ զզաւակէն Աբրահամու բուռն հարկանէ: Ուստի պարտ իսկ էր նմա ամենայնիւ եղբարց նմանել. զի ողորմած լինիցի, և հաւատարիմ քահանայապետ յաստուծոյ կողմանէ անտի՝ առ ի քաւելոյ զմեղս ժողովրդեանն: Զի որով ինքն չարչարեցաւ զփորձ առեալ՝ կարող է և փորձանաւորացն օգնական լինել: 18:*

Եւ ապա օրհնէին զԵրգ ասացեալ Տեառն Ներսեսի Շնորհալւոյ Մեծի Ուրբաթուն ցերեկի աւետարանացն:

Շարական Դկ:

*‘Նորոգո̃ղ տիե̃զե́րաց որ զգեցո́ւցեր մեզ լոյս փառա̀ց. ա́րկար ըզքե́ւ ի զե́նուորաց քղամիդ կա́րմիր նախատանա̀ց. մե́րկեա́ յինէ՞ն ըզքո̀ւրձ մե́ղաց ըզ-*

տըրտմագինն արեամբ ներկած. և ըզգեցո զուրախա-լին ըզպատմուճանն իմ զառաջին:

Երկնաւո՛ր թագաւորիդ ի ծունր իջեալ խաղ առնէին. ծածկեալ ըզգլուխըդ կըռփէին և եղեգամբ հարկանէին. և զիմ անկեալ մինչ ի գետին ի հնազանդել կամաց չարին. մի թողուցուս խաղալ սովին այլ կանգնեսցես զիս վերըստին:

Բամեալ բոլորըդ քո մարմին յետ վըճըռոյ դատաւորին. սաստիկ էառ զհարուած գանին վասըն գանից նախաստեղծին. զիս որ յոտից մինչեւ ցըգլուխ ցաւօք նեղիմ անհընարին. առողջացո դարձեալ կըրկին որպէս շնորհօք յաւազանին:

Սըրբափա՛յլ պըճնեալ զարդուն զոր զգեցուցեր Ահարոնի, փոխան պըսակ ի փշոց եդին մըշակք այգւոյն Իսրայէլին. ըզփուշ մեղաց հանցես յինէն զոր յիս եհար իմ թըշնամին. և ողջացո՛ զխայթուած վէրին զի սպիք մեղացըն ջընջեսցին:

Զկնի Ո՛րթի՛ւ:

Աւետարան ըստ Մատթէոսի: Իէ. 1:

Այս Աւետարան [illegible] է:

Վասն խաչելութե̄ Տեառն մերոյ Յս̄ի Քս̄ի:

Իբրեւ այգ եղեւ, խորհուրդ արարին ա̄մ քահանայապետքն և ծերք ժողովրդեանն վս̄ Յս̄ի սպանանել զնա: Կապեցին զնա, և առին գնացին. և ետուն ի ձեռս Պո՛նտացւոյ Պիղատոսի դատաւորի: Յայնժամ տեսեալ Յուդայի՝ որ մատնեացն զնա, թէ պարտաւորեցաւ, զղջացաւ և դարձոյց զարծաթն առ քահանայապետսն և ծերս ժողովրդեանն, և ասէ. մեղայ, զի մատնեցի զարիւն արդար. և նոքա ասեն. մեզ չէ փոյթ, դու գիտես: Եւ ընկէց զարծաթն ի տաճարին և գնաց, և չոգաւ խեղդեցաւ: Իսկ քահանայապետիցն առեալ զարծաթն՝ ասեն. ոչ է արժան ընդունել զայդ ի կորբանն, քանզի գինք արեան են: Խորհուրդ առեալ,

գնեցին այնու զագարակն բրտի ի գերեզման օտարաց։ Վա այնորիկ կոչեցաւ ագարակն այն՝ Ագարակ արեան՝ մինչեւ ցայսօր։ Յայնժամ լցաւ՝ որ ասացաւն ի ձեռն Երեմեայ մարգարէի․ Եւ առին զերեսուն արծաթին զգինս վաճառելոյն, զոր արկին յորդւոցն Իսրայէլի․ և ետուն զնա յարգարակն բրտի, որպէս հրամայեաց ինձ Տէր։ Եւ Յս եկաց առաջի դատաւորին․ եհարց ցնա դատաւորն և ասէ․ դո՞ւ ես Թագաւորն Հրէից։ Եւ Յս ասէ․ դու ասես։ Եւ ի չարախօսելն նր ի քահանայապետիցն և ի ծերոց՝ ոչ ինչ ետ պատասխանի։ Յայնժամ ասէ ցնա Պիղատոս․ ո՞չ լսես՝ որչափ դոքա հակառակ քո վկայեն։ Եւ ոչ ետ նմա պատասխանի և ոչ բան մի, մինչեւ զարմանալ դատաւորին յոյժ։ Բայց ըստ տօնի սովոր էր դատաւորն արձակել ժողովրդեանն կապեալ մի՝ զոր կամէին։ Ունէին յայնժամ կապեալ մի նշանաւոր, որում անուն էր Յեսու Բարաբբա։ Իբրեւ ժողովեցան, ասէ ցնս Պիղատոս․ զո՞ կամիք յերկուց աստի՝ զի արձակեցից ձեզ, զՅեսո՞ւ Բարաբբա՝ եթէ զՅս զանուանեալն Քս։ Քանզի գիտէր՝ թէ առ նախանձու մատնեցին զնա։ Եւ մինչ նստէր յատենին՝ առաքեաց առ նա կինն իւր և ասէ․ չկայ ինչ քո և արդարոյն այնորիկ․ զի բազում անցք անցին ընդ իս այսօր յանուրջս վն նր։ Իսկ քահանայապետքն և ծերք հաւանեցուցին զժողովուրդն՝ զի խնդրեսցեն զԲարաբբայն, և զՅս կորուսցեն։ Պատասխանի ետ դատաւորն և ասէ ցնս․ զո՞ կամիք զի արձակեցից ձեզ յերկուց այտի։ Եւ նոքա ասեն․ զԲարաբբա։ Ասէ ցնս Պիղատոս․ իսկ զի՞ արարից զՅս զանուանեալն Քս։ Ասեն ամենեքեան՝ խաչեսցի․ և նա ասէ, զի՞նչ չար արար․ և նոքա առաւել եւս աղաղակէին և ասէին, խաչեսցի։ Եւ տեսեալ Պիղատոսի թէ ոչ ինչ օգնէ՝ այլ առաւել խռովութիւն լինի, առեալ ջուր՝ լուաց զձեռս առաջի ժողովրդեանն և ասէ․ քաւեալ եմ ես

յարենէ արդարոյդ այդորիկ. դուք գիտասջիք։ Պա-
տասխանի ետ ամենայն ժողովուրդն և ասէ. արիւն
դորա ի վր մեր և ի վր որդւոց մերոց։ Յայնժամ ար-
ձակեաց նց զԲարաբբայն, և զՅս գան հարեալ ետ ի
ձեռս՝ զի խաչեսցի։ Յայնժամ զինուորքն դատաւորին
առին զՅս յապարանս. և ժողովեցին ի վր նր զամ
զգունդն. մերկացին զնա, և արկին զնովաւ քղամիդ
կարմիր։ Եւ բոլորեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ նր,
և եղէգն յաջոյ ձեռին նր. ի ծունր իջեալ առաջի նր՝
կատակէին և ասէին. ողջ եր Թագաւոր Հրէից։ Եւ
Թքեալ ի նա՝ առնուին զեղէգնն և ծեծէին զգլուխ նր։
Եւ յորժամ ձաղեցին զնա՝ մերկացուցին ի նմանէ
զքղամիդն կարմիր և ագուցին նմա զիւր հանդերձն, և
տարան զնա ի խաչ հանել։ Եւ ելեալ արտաքս՝ գտին
այր մի կիւրենացի՝ անուն Սիմոն, զնա կալան պահակ՝
զի բարձցէ զխաչն նր։ Եւ եկեալ ի տեղին անուանեալ
Գողգոթա, որ է տեղի կառափելոյ, ետուն նմա ըմպել
գինի ընդ լեղի խառնեալ. և իբրեւ ճաշակեաց՝ ոչ
կամէր ըմպել։ Եւ հանեալ զնա ի խաչ՝ բաժանեցին
զհանդերձսն նր վիճակաւ. զի լցցի բանն՝ որ ասացաւ ի
մարգարէէն. Բաժանեցին զհանդերձս իմ յիւրեանս,
և ի վր պատմուճանի իմոյ վիճակս արկանէին։ Եւ
նստեալ պահէին զնա։ Եւ եդին ի վր գլխոյ նր գրեալ
զվնաս նր՝ Թէ այս է Յս Թագաւորն հրէից։ Յայնժամ
հանին ընդ նմա ի խաչ երկուս աւազակս, մի յաջմէ
նր և մի յահեկէ։ Եւ որ անցանէինն՝ հայհոյէին զնա.
շարժէին զգլուխս իւրեանց և ասէին. վա՛հ որ քակէիր
զտաճարն, և զերիս աւուրս շինէիր զնա. ապրեցո՛
զքեզ, եթէ Որդի ես Այ՝ էջ ի խաչէդ։ Նոյնպէս և
քահանայապետքն ձաղէին հանդերձ դպրօքն և ծե-
րովք և ասէին։ Զայլս ապրեցոյց՝ զինքն ոչ կարէ ա-
պրեցուցանել. եթէ Թագաւոր է Իսրայէլի՝ իջցէ այժմ
ի խաչէդ, և հաւատասցուք դմա. եթէ յուսացաւ

յԱծ՝ փրկեսցէ այժմ զդա՝ եթէ կամի զդա. քանզի ասաց՝ եթէ Այ Որդի եմ: Զնոյն և աւազակքն որ խաչեալ էին ընդ Նմա, Նախատէին զնա: Եւ ի վեց ժամէ աւուրն՝ խաւար եղեւ ի վր ամ երկրի մինչեւ ցինն ժամ: Եւ զինն ժամաւն գոչեաց Յս ի ձայն մեծ և ասէ. Էլի, Էլի, լամա սաբաքթանի. այս ինքն է՝ Ած իմ, Ած իմ, ընդէ՞ր թողեր զիս: Ոմանք յայնցանէ որ անդն կային, իբրեւ լուան՝ ասէին. զԵղիա կարդայ դա: Եւ վաղվաղակի ընթացաւ մի ոմն ի Նոցանէ, ա՛ռ սպունգ լի քացախով, հարեալ յեղեգան՝ ետ ըմպել Նմա: Եւ կէսքն ասէին. թո՛ղ տեսցուք եթէ գա՞յ Եղիա փրկել զդա: Եւ Յս դարձեալ աղաղակեաց ի ձայն մեծ և արձակեաց զոգին: Եւ ահա վարագոյր տաճարին ցելաւ յերկուս՝ ի վերուստ մինչեւ ի վայր, և երկիր շարժեցաւ, և վէմք պատառեցան: Եւ գերեզմանք բացան և՛ բազում մարմինք Ննջեցելոց սրբց յարեան: Եւ ելեալ ի գերեզմանաց յետ յարութն Նր մտին ի քաղաքն սբ և երեւեցան բազմաց: Իսկ հարիւրապետն և որ ընդ Նմա պահէին զՅս, իբրեւ տեսին զշարժումն և զեղեալսն՝ երկեան յոյժ և ասեն. արդարեւ Այ որդի էր սա: Էին անդ կանայք բազումք, կային ի հեռաստանէ և հայէին, որք եկին զկնի Յսի ի Գալիլեէ պաշտել զնա. յորս էր Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Յովսեայ մայր, և մայր որդւոցն Զեբեդեայ: 56:

Աղօթք հանդերձ սաղմոսելով ղՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա: Երե. անգամ կրկնեա:

Լուս եւս խաղաղութն: Օրհնութի և փառք:

Վեցերորդ Սաղմոս ԿԸ:

ԿԸ. Ետուն ի կերակուր ինձ լեղի. և ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ:

Փխ. Կեցո՛ զիս Ած, զի հասին ջուրք յանձն իմ. ընկղմայ ես ի խորս անդնդոց, ուր ոչ գոյ ինձ հանգիստ:

Եկի ես ի խորս ծովու. և շրջանք ընկղմեցին զիս։
Վաստակեցի ես առ աղաղակել. և կերկերեցաւ կո-կորդ իմ։
Նուաղեցան աչք իմ առ յուսալ ինձ առ Տէր Աստուած իմ։
Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ ոյք ատէին զիս ի տարապարտուց։
Զօրացան յիս թշնամիք իմ և ատելիք իմ ի նանիր. ինչ զոր ոչ յափշտակեալ էր՝ տուժէի նոցա։
Ած դու ծանեար զանզգամութի իմ, և յանցանք իմ ի քէն ոչ ծածկեցան։
Մի՛ ամաչեսցեն վն իմ ոյք համբերեն քեզ Տէր Տէր զօրութեանց. մի՛ պատկառեսցեն վն իմ, ոյք խնդրեն զքեզ Աստուած Իսրայէլի։
Վն քո համբերի նախատանաց, և ծածկեաց ամօթ զերեսս իմ։
Օտար եղէ ես եղբարց իմոց. և հիւր որդւոց մօր իմոյ։
Նախանձ տան քո եկեր զիս. նախատինք նախատչաց քոց անկան ի վերայ իմ։
Խոնարհեցուցի պահօք զանձն իմ, և եղեն ինձ այս նախատինք. արարի զհանդերձս իմ քուրձ և եղէ յա-ռակ նոցա։
Զինէն խորհէին, որ նստէին առ դրունս, զիս այպն առնէին՝ ոյք ըմպէին գինի։
Ես յաղօթս կայի առ քեզ Տէր ի ժամանակ ընդունելի։
Ած ի բազում ողորմութե քում լո՛ւր ինձ, ի ճշմար-տութիւն փրկութեան քո։
Ապրեցո՛ զիս ի կաւոյ զի մի՛ ընկլայց. ապրեցայց ես յատելեաց իմոց, և ի խորոց ջուրց բազմաց։
Մի՛ ընկլցեն զիս պտոյտք ջուրց, և մի՛ ընկղմեսցեն զիս անդունդք խորոց. և ջրհոր մի՛ կափուսցէ զբերան իւր ի վերայ իմ։
Լո՛ւր ինձ Տէր, զի քաղցր է ողորմութի քո. ըստ բա-

զուր գթութե՟ն քո հայեա՛ յիս, և մի՛ դարձուցաներ զերեսս քո ի ծառայէ քումմէ, զի նեղեալ եմ ես վաղվաղակի լո՛ւր ինձ։

Հայեա՛ յանձն իմ, և փրկեա՛ զիս. և վ՟ն թշնամեաց իմոց ապրեցո՛ զիս։

Զի դու գիտես զնախատինս իմ, զամօթ իմ, և զպատկառանս իմ։

Առաջի քո են ա՟մ նեղիչք անձին իմոյ. նախատանաց համբեր սիրտ իմ և թշուառութեան։

Ակն ունէի՝ թէ ոք տրտմեսցի ընդ իս, և ոչ ոք էր. և մխիթարիչ ինձ ոք ոչ գտաւ։

Ետուն ի կերակուր ինձ լեղի. և ի ծարաւ իմ արբուցին ինձ քացախ։

Եղիցին սեղանք ն՟ց առաջի ն՟ց յորոգայթ, ի հատուցու՟մն և ի գայթագղութիւն։

Խաւարեսցին աչք ն՟ց, զի մի տեսցեն. և զթիկունս նոցա հանապազ կորացո՛։

Արկցես ի վ՟ր ն՟ց զբարկութ՟ի քո. սրտմտութ՟ի բարկութե՟ն քո հասցէ ի վ՟ր նոցա։

Եղիցին բնակութի՟ք ն՟ց աւերակ, և ի յարկս ն՟ց մի ոք իցէ որ բնակիցէ։

Զի զոր դուն հարեր՝ հալածեցին. և ի վէրս ցաւոց իմոց յաւելին։

Դի՛ր մեղս ի վ՟ր մեղաց ն՟ց, զի մի մտցեն յարդարութիւն քո։

Ջնջեսցին նոքա ի դպրութե՟ն քումմէ կենաց. և ընդ արդարս քո մի՛ գրեսցին։

Աղքատ և ցաւած եմ ես. փրկութ՟ի քո Աստուած ընկալցի զիս։

Օրհնեցից զանուն Ա՟յ իմոյ օրհնութ՟բ, և բարձր արարից զնա գովութեամբ։

Հաճոյ եղիցի Ա՟յ քան զորթ մատաղ, որ բերէ եղջիւրս և կճղակս։

եմուտ միանգամ ի սրբութ՟իւն յաւիտենականս գտեալ
զփրկութ՟ի: Զի եթէ արիւն ցլուցն և նոխազաց և մո-
խիր երնջոցն ցանեալ՝ զպղծեալսն սրբէր առ ի մար-
մնոյ սրբութ՟է. ո՞րչափ եւս առաւել արիւն ք՟սի, որ ի
ձեռն Հոգւոյն յաւիտենականի մատոյց զանձն անարատ
պատարագ Ա՟յ, սրբեսցէ զխիղճ մտաց ձերոց ի մեռե-
լոտի գործոց անտի՝ պաշտել զԱ՟ծ կենդանի: Եւ վ՟ն
այնորիկ նորոյ ուխտիս է միջնորդ. զի յորժամ մահ
լինիցի՝ ի փրկութ՟ի վ՟ն առաջին ուխտին յանցանաց,
զաւետիս առցեն հրաւիրեալքն ի ժառանգութ՟ի յաւ-
իտենից: Քանզի ուր կտակ է, հարկ է զմահ ի մէջ բե-
րել զկտակագրին: Զի կտակ յետ մահու հաստատուն
է. ապա թէ ոչ՝ զիա՞րդ իցէ հաստատուն, մինչ կտա-
կագիրն կենդանի է: Ուստի և ոչ առաջինն առանց ա-
րեան նորոգէր: Քանզի իբրեւ պատմեցան ա՟մ պատուի-
րանք օրինացն ի Մովսիսէ ժողովրդեանն, առեալ
զարիւն ցլուցն և նոխազացն, ջրով և բրդով, կարմրով
և զոպայիւ, զկտակարանօքն իսկ և զա՟մ ժողովրդեամբն
սրսկեաց, և ասէ. Այս է արիւն կտակին՝ զոր պատուի-
րեաց ձեզ Ա՟ծ: Եւ զխորանն և զա՟մ կահիւ սպա-
սուն նոյնպէս սրսկեաց զարիւնն: Եւ գրեթէ ա՟մ ինչ
արեամբն սրբէր ըստ օրինացն. և առանց հեղման ա-
րեան չլինէր թողութ՟ի: Ապա հարկ էր օրինաւորացն
այնպիսեօքն սրբել. և բուն իսկ երկնաւորացն՝ առաւել
եւս պատարագօք քան զնոյնս: Զի ոչ եթէ ի ձեռա-
գործ սրբութ՟իսն եմուտ ք՟ս յօրինակս ճշմարտութ՟են.
այլ ի բուն իսկ յերկինս, յանդիման լինել երեսացն
Ա՟յ վ՟ն մեր: Ոչ զի բազում անգամ մատուցանիցէ
զանձն պատարագ՝ ո՟պ քահանայապետն, որ մտանէր
ի սրբութ՟ի սրբութ՟եցն ամի ամի արեամբ օտարաւ.
ապա թէ ոչ՝ պարտ էր նմա բազում անգամ չարչա-
րել ի սկզբանէ աշխարհի. բայց արդ աւասիկ մի անգամ
ի կատարած յաւիտեանց՝ յանարգութ՟ի մեղաց իւրով

պատարագաւն յայտնեալ է։ Եւ զոր օրինակ կայ մնայ մարդկան մի անգամ մեռանել, և յետ այնորիկ դատաստան. Նոյնպէս և Քս մի անգամ մատուցեալ պատարագ առ ի բառնալոյ զմեղս բազմաց. իսկ յերկրորդումն առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ, որ ակն ունիցին նմա հաւատովք ի փրկութի։ 28։

Շարական Դկ։

Սօտուն ըմպեմ քեզ ըզլեղին և ըզքացախն ի ծարաւին. ո՛րքեր կամաւ զի քա՛ղցրասցին ճաշա՛կք պղ՛տղոյն դառնագունին. ը՛զդառնութիւն թունա՛ւո՛րին զոր ի մա՛սունս հոգւոյս արկին. հե՛րքեա ի բաց հանդե՛րձ սովին ե՛ւ քա՛ղցրասցի սէր քո՛ ի սմին։

Ստեղնեալ ծառոյ մահաբերին այն որ բուսաւ ի մէջ դրախտին. փոխան բարձեր ըզփայտ խաչին ի Գողգոթա հա՛ներ տեղին. զիմ առ ի մեղս անկեալ զոգի և ծանրագոյն բարձող բեռին. բարձ ի յուսոյդ ըստ ոչխարին հան ի յերկինս յուխտեալ տեղին։

Ի յուրբաթու ժամ երրորդին բեւեռեցար Տէր ի խաչին. լուծեր զկապանս նախաստեղծին և կապեցեր ըզթշնամին. զիս ամրացո ընդ հովանեաւ կենդանարար քո նըշանին. և ի ծագելն յարեւելից լուսաւորեա լուսով նորին։

Երանեա՛լ աւազակին բացեր ըզդուռն Ադին դրախտին. ըստ հաւատոյ սրտի նորին կատարեցեր ըզխընդրելին. տուր և ինձ Տէր ընդ նըմին լըսել ըզնոյն պատասխանին. այսօր ընդ իս իցես յԱդին ի հայրենին քո առաջին։

Զկնի՝ Ո՛րթի՛ւ։

Աւետարան ըստ Մարկոսի։ Ժե. 1։

Վն խաչելութեն Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ վաղվաղակի ընդ առաւօտն խորհուրդ արարեալ քահանայապետիցն հանդերձ ծերովքն և դպրօք, և ամ ատեանն կապեցին զՅս և տարան մատնեցին Պի-

ղատոսի։ Եհարց զնա Պիղատոս և ասէ. դո՞ւ ես Թագաւորն Հրէից։ Նա պատասխանի ետ նմա և ասէ. դու ասես։ Եւ չարախօսէին զնմանէ յոյժ քահանայապետքն, և նա ոչ ինչ տայր պատասխանի։ Իսկ Պիղատոս դարձեալ հարցանէր զնա. ո՞չ ինչ տաս պատասխանի, տե՛ս՝ քանի՛ ամբաստանեն զքեն։ Եւ Յիսուս այնուհետեւ ոչ ինչ ետ պատասխանի, մինչեւ զարմանալ յոյժ Պիղատոսի։ Բայց ըստ տօնի արձակէր նց̃ զմի ոք զկապեալ, զոր ինքեանք խնդրէին։ Եւ էր՝ որում անուն էր Բարաբբա՝ կապեալ ընդ խռովիչսն, որոց ի խռովելն՝ այր մի սպանեալ էր։ Ի ձայն բարձր սկսաւ աղաղակել ամբոխն և խնդրել՝ ոպ̃ սովոր էր, զի արձակեսցէ նց̃ զԲարաբբայն։ Պատասխանի ետ Պիղատոս և ասէ ցնս̃. կամի՞ք՝ զի արձակեցից ձեզ զարքայն Հրէից։ Քանզի գիտէր թէ առ նախանձու մատնեցին զնա քահանայապետքն։ Որք և զամբոխն հաւանեցուցին՝ զի արձակեսցէ նց̃ զԲարաբբայն։ Դարձեալ պատասխանի ետ Պիղատոս և ասէ ցնս̃. իսկ զի՞նչ կամիք թէ արարից զարքայն Հրէից։ Եւ նոքա դարձեալ աղաղակէին՝ յուզեալք ի քահանայապետից, ի խա՛չ հան զդա։ Ասէ ցնս̃ Պիղատոս. զի՞նչ ինչ չար արարեալ իցէ դորա։ Եւ նոքա առաւել եւս աղաղակէին և ասէին, ի խա՛չ հան զդա։ Իսկ Պիղատոս իբրեւ զմիտս կամեցաւ հաճել զամբոխին, արձակեաց նց̃ զԲարաբբայն. և զՅս̃ գան հարեալ՝ ետ ի ձեռս, զի ի խաչ ելանիցէ։ Եւ զինուորքն տարան զնա ի ներքս ի գաւիթն՝ ուր հրապարակն էր. և կոչեն միանգամայն զա̃մ զգունդն, և զգեցուցանեն նմա քղամիդ կարմիր և ծիրանիս, և եդին ի գլուխ նորա պսակ արարեալ ի փշոց։ Եւ սկսան ողջոյն տալ նմա և ասել. ողջ̃ եր արքայդ Հրէից։ Եւ ծեծէին զգլուխն եղեգամբ, և թքանէին ընդ երեսս, և ի ծունր իջեալ երկիր պագանէին նմա։ Եւ իբրեւ կատակեցին զնա՝ մերկացուցին զքղամիդն և զծիրանիս,

և զգեցուցին Նմա զիւր հանդերձ, և ածին արտաքս՝ զի ի խաչ հանցեն զնա: Եւ ունէին պահակ զՍիմոնն Կիւրենացի՝ որ ընդ այն անցանէր՝ եկեալ յագարակէ, զհայրն Աղեքսանդրի և Ռուփայ. զի բարձցէ զխաչափայտն Նր̃: Եւ ածեն զնա ի Գողգոթա, տեղի մի՝ որ Թարգմանի՝ տեղի կառափելոյ: Եւ տային Նմա գինի զմռսեալ, և Նա ոչ առ. և հանեն զնա ի խաչ: Եւ բաժանեցին զհանդերձս Նր̃, արկեալ վիճակս ի վր̃՝ թէ ո՛ զինչ առնուցու: Էր ժամ երրորդ, և հանին զնա ի խաչ: Եւ էր գիր վնասու Նր̃ գրեալ՝ թէ Թագաւոր է Հրէից: Եւ ընդ Նմա հանին ի խաչ երկուս աւազակս, մի ընդ աջմէ և մի ընդ ահեկէ Նր̃: Եւ լցաւ գիրն որ ասէ, թէ Ընդ անօրէնս համարեցաւ: Եւ որք անցանէինն՝ հայհոյէին զնա, շարժեալ զգլուխս իւրեանց և ասէին. վա՜հ որ քակէիր զտաճարն, և զերիս աւուրս շինէիր. ապրեցո՛ զանձն քո և էջ ի խաչէդ: Նոյնպէս և քահանայապետուցն այպն արարեալ ընդ միմեանս հանդերձ դպրօքն, և ասէին. զայլս ապրեցոյց՝ զանձն ոչ կարէ ապրեցուցանել: Քս̃դ արքայդ Իսրայէլի, իջցէ այժմ ի խաչէ այտի, զի տեսցուք և հաւատասցուք դմա. և որ ընդ Նմա ի խաչն ելեալ էին՝ Նախատէին զնա: Եւ իբրեւ վեց ժամ եղեւ՝ խաւար կալաւ զա̃մ երկիր մինչեւ ցինն ժամ: Եւ յիններորդ ժամուն աղաղակեաց Յս̃ ի ձայն մեծ, և ասէ. Է՛լի, Է՛լի, լամա սաբաքթանի. որ Թարգմանի՝ Ած̃ իմ, Ած̃ իմ, ընդէ՞ր թողեր զիս: Եւ ոմանք ի Նոցանէ որ շուրջն կային զնովաւ՝ իբրեւ լուան; ասէին թէ զԵղիա կարդայ: Եւ ընթացեալ մի ոմն՝ ելից սպունգ մի քացախով, և հարեալ յեղեգան՝ տայր ըմպել Նմա, և ասէ. Թո՛յլ տուր տեսցուք՝ գա՞յ Եղիա իջուցանել զդա: Եւ Յս̃ արձակեաց ձայն մեծ և եհան զոգի: Եւ վարագոյր տաճարին պատառեցաւ յերկուս՝ ի վերուստ մինչեւ ի խոնարհ: Եւ տեսեալ հարիւրապետին որ կայր անդ՝ թէ աղաղակեաց և ե-

հան զոգի, ասէ. արդարեւ այրս այս Որդի Այ էր։ Էին և կանայք՝ որ հայէին ի հեռաստանէ. յորս էր Մարիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակովբու փոքրկան և Յովսեայ մայրն և Սողոմէ. որք յորժամ էրն ի Գալիլեա զհետ շրջէին նորա և պաշտէին զնա. և այլ բազում կանայք՝ որք ընդ նմա իսկ ելեալ էին յԵրուսաղէմ։ 41։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմեա։ Երեք անգամ կրկնել։

Նաւ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Եօթներորդ Սաղմոս ՁԷ։

Կց. Եղէ. ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Փխ. Տէր Աստուած փրկութեան իմոյ ի տուէ կարդացի, և գիշերի առաջի քո։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ. և կեանք իմ ի դժոխս մերձեցան. և համարեցայ ես ընդ այնոսիկ որ իջանեն ի գուբ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Որպէս վիրաւորս որ ննջեն ի գերեզմանս։

Զորս դու ոչ յիշեցեր. նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնում, ի խաւարի և ի ստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ սրտմութիւն քո. զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նշաւակ իւրեանց։

Մատնեցայ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ:

Մի՛ թէ մեռելո՞ց առնիցես սքանչելիս. կամ բժիշկք յարուցանիցեն, խոստովան առնիցեն առ քեզ:

Մի՛ թէ պատմեսցէ՞ ոք երբեք ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան:

Մի՛ թէ ճանաչիցի՞ն ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ:

Ես առ քեզ Տէր աղաղակեցի. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ:

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն,

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմմէ. ի բարձրութենէ խոնարհեցայ և ապշեցայ:

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո. արհաւիրք քո խռովեցուցին զիս:

Շրջեցան զինեւ ոպ̃ ջուր. զօր ամ̃ պաշարեցին զիս ի միասին:

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ, և զծանօթս իմ վն̃ թշուառութե̃ իմոյ:

Ընթերցուածս յԵրեմեայ մարգարէէ: ԺԱ. 18:

Տէր ծանո ինձ, և ծանեայց. յայնժամ տեսի զգործս նց̃: Ես իբրեւ զգառն անմեղ վարեալ ի սպանդ, ոչ գիտացի՝ թէ զինէն խորհեցան խորհուրդս, և ասեն. եկա՛յք, արկցո՛ւք փայտ ի հաց նր̃, և ջնջեսցուք զնա յերկրէն կենդանեաց. և անուն նորա մի՛ եւս յիշեսցի: Տէ՛ր զօրութեանց, որ ընտրես զիրաւունս և քննես զերիկամունս և զսիրտ, տեսից առ ի քէն զվրէժխնդրութիւն առ ի նոսա. զի քեզ յայտնեցի զիրաւունս իմ: Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր ի վերայ արանցն Անաթովթայ՝ որք խնդրեն զանձն քո և ասեն. մի՛ մարգարէանար վասն մեր, ապա թէ ոչ՝ մեռանիս ի ձեռաց մերոց: Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր զօրու-

թեանց. ահաւասիկ ես այց արարից ի վերայ նոցա. երիտասարդք ն̃ց սրով մեռցին, և ուստերք և դստերք ն̃ց սովու վախճանեսցին: Եւ մնացորդք ոչ եղիցի ն̃ց, զի ածից չարիս ի վ̃ր բնակչացն Անաթովթայ՝ յամի այցելութ̃ե ն̃ց: Արդար ես դու Տէր և մատուցից առաջի քո ազերս, բայց խօսեցայց զիրաւունս: Զի՞ է զի ճանապարհք ամբարշտաց յաջողեալ են, և երջանկացան ամենեքեան որ արհամարհեն զարհամարհանս: Տնկեցեր զնոսա և արմատացան, ծնան որդիս և արարին պտուղ: Մերձ ես դու Տէր ի բերանս ն̃ց, և հեռի յերիկամանց ն̃ց: Եւ դու Տէր գիտես զիս. տեսեր զիս և փորձեցեր զսիրտ իմ առաջի քո. ժողովեա զնոսա իբրեւ զոչխարս ի սպանում̃ն, և նուիրեա զն̃ս յօր սպանման ն̃ց: Մինչեւ յե՞րբ սուգ ունիցի երկիր, և խոտ ա̃մ վայրի ցամաքեսցի: Ի չարեաց բնակչաց երկրին ապականեցան անասուն և թռչուն. զի ասացին թէ ոչ տեսցէ Ա̃ծ զճանապարհս մեր: Ոտք քո ընթանան և լքուսցեն զքեզ. զիա՞րդ կազմիցիս երիվարօք. իսկ արդ՝ յերկի՞րդ խաղաղութ̃ե յուսացեալ իցես. զի՞ գործեսցես ի վերանալ Յորդանան գետոյ: Քանզի և եղբարքն քո և տուն հօր քո, և նոքա դաւեցին քեզ, և նոքին աղաղակեցին զկնի քո. կուտեցան ի վ̃ր քո. մի՛ հաւատար ն̃ց, զի խօսեսցին զքէն չարութ̃ի: Լքի զտուն իմ, թողի զժառանգութ̃ի իմ. ետու զսիրելին անձին իմոյ ի ձեռս թշնամեաց իւրոց: Եղեւ ժառանգութ̃ի իմ ինձ իբրեւ առիւծ յանապատի. ետ ի վ̃ր իմ զբարբառ իւր. վ̃ն այնորիկ ատեցի զնա: ԺԲ. 8:

Պօղոսի առաքելոյն յեբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս: Ժ. 19:

Ունիմք այսուհետեւ ե՛ղբարք՝ համարձակութիւն ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի. զոր նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի ի ձեռն վա-

Ցեսցեն աղքատք և ուրախ եղիցին. խնդրեցէք զԱստուած և կեցցեն անձինք ձեր։

Զի լուաւ Տէր տնանկաց, և զկապեալս իւր ոչ արհամարհեաց։

Օրհնեսցեն զնա երկինք և երկիր, ծով և ամենայն որ զեռայ ի նոսա։

Ա՟ծ փրկէ զՍիովն, և շինեսցին քաղաքք Հրէաստանի. շինեսցեն բնակեսցեն և ժառանգեսցեն ի նմա։

Զաւակ ծառայից քոց հաստատեսցի անդ. և ոյք սիրեն զանուն քո բնակեսցեն ի նմա։

### Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ ԿԳ. 1։

Իսկ այս ո՞վ է՝ որ դիմեալ գայ յԵդովմայ. կարմրութ՟ի ձորձոց իւրոց ի Բոսորայ. գեղեցիկ պատմուճանաւ և բուռն զօրութ՟բ։ Ես խօսիմ զարդարութ՟ի և իրաւունս փրկութ՟ե։ Վ՟ն է՞ր կարմիր են ձորձք քո. և հանդերձք քո իբրեւ հնձանահարի լիոյ հնձանի կոխելոյ։ Հնձան հարի միայն, և ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս. կոխեցի զն՟ս սրտմտութ՟բ և ճմլեցի զն՟ս բարկութ՟բ, և իջուցի յերկիր. և զա՟մ հանդերձս իմ թաթաւեցի։ Զի հասեալ էր ի վ՟ր ն՟ց օր հատուցման, և ամ փրկութ՟ե եկեալ հասեալ։ Հայեցայ, և ոչ ոք էր որ օգնէր. զմտաւ ածի, և ոչ ոք էր որ ի թիկունս հասանէր։ Փրկեաց զն՟ս բազուկ իմ. և սրտմտութիւն իմ միայն զգէմ կալաւ։ Կոխեցի զն՟ս բարկութեամբ իմով, և զենի զն՟ս սրտմտութ՟բ իմով. և իջուցի զնոսա յերկիր։ 6։

### Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս։ Թ. 11։

Այլ Ք՟ս եկեալ քահանայապետ հանդերձելոցն բարեաց՝ մեծաւն և կատարելովն և անձեռագործ խորանաւն, այս ինքն է՝ որ ոչ յայսց արարածոց, և ոչ արեամբ նոխազաց և զուարակաց. այլ իւրով արեամբն

եմուտ միանգամ ի սրբութիւն յաւիտենականս գտեալ զփրկութի՟ւ։ Զի եթէ արիւն ցլուցն և նոխազաց և մոխիր երինջոցն ցանեալ՝ զպղծեալսն սրբէր առ ի մարմնոյ սրբութե՟. ո՞րչափ եւս առաւել արիւն Ք՟ի, որ ի ձեռն Հոգւոյն յաւիտենականի մատոյց զանձն անարատ պատարագ Ա՟յ, սրբեսցէ զխիղճ մոաց ձերոց ի մեռելոտի գործոց անտի՝ պաշտել զԱ՟ծ կենդանի։ Եւ վ՟ն այնորիկ նորոյ ուխտիս է միջնորդ. զի յորժամ մահ լինիցի՝ ի փրկութի՟ վ՟ն առաջին ուխտին յանցանաց, զաւետիս առցեն հրաւիրեալքն ի ժառանգութի՟ յաւիտենից։ Քանզի ուր կտակ է, հարկ է զմահ ի մէջ բերել ղկտակագրին։ Զի կտակ յետ մահու հաստատուն է. ապա թէ ոչ՝ զի՞նչ իցէ հաստատուն, մինչ կտակագիրն կենդանի է։ Ուստի և ոչ առաջինն առանց արեան նորոգէր։ Քանզի իբրեւ պատմեցան ա՟մ պատուիրանք օրինացն ի Մովսիսէ ժողովրդեանն, առեալ զարիւն ցլուցն և նոխազացն, ջրով և բրդով, կարմրով և զոպայիւ, զկտակարանօքն իսկ և զա՟մ ժողովրդեամբն սրսկեաց, և ասէ. Այս է արիւն կտակին՝ զոր պատուիրեաց ձեզ Ա՟ծ։ Եւ զխորանաւն և զա՟մ կահիւ սպասուն նոյնպէս սրսկեաց զարիւնն։ Եւ գրեթէ ա՟մ ինչ արեամբն սրբէր ըստ օրինացն. և առանց հեղման արեան չլինէր թողութի՟։ Ապա հարկ էր օրինաւորացն այնպիսեօքն սրբել. և բուն իսկ երկնաւորացն՝ առաւել եւս պատարագօք քան զնոյնս։ Զի ոչ եթէ ի ձեռագործ սրբութիւն եմուտ Ք՟ս յօրինակս ճշմարտութե՟ն. այլ ի բուն իսկ յերկինս, յանդիման լինել երեսացն Ա՟յ վ՟ն մեր։ Ոչ զի բազում անգամ մատուցանիցէ զանձն պատարագ՝ ո՟պ քահանայապետն, որ մտանէր ի սրբութի՟ սրբութեցն ամի ամի արեամբ օտարաւ. ապա թէ ոչ՝ պարտ էր նմա բազում անգամ չարչարել ի սկզբանէ աշխարհի. բայց արդ աւասիկ մի անգամ ի կատարած յաւիտեանց՝ յանարգութի՟ մեղաց իւրով

Ցեսցեն աղքատք և ուրախ եղիցին. խնդրեցէք զԱստուած և կեցցեն անձինք ձեր։

Զի լուաւ Տէր տնանկաց, և զկապեալս իւր ոչ արհամարհեաց։

Օրհնեսցեն զնա երկինք և երկիր, ծով և ամենայն որ զեռայ ի նոսա։

Ած փրկէ զՍիովն, և շինեսցին քաղաքք Հրէաստանի. շինեսցեն բնակեսցեն և ժառանգեսցեն ի նմա։

Զաւակ ծառայից քոց հաստատեսցի անդ. և որք սիրեն զանուն քո բնակեսցեն ի նմա։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ կգ. 1։

Իսկ այս ո՞վ է՝ որ դիմեալ գայ յԵդովմայ. կարմրութի ձորձոց իւրոց ի Բոսորայ. գեղեցիկ պատմուճանաւ և բուռն զօրութբ։ Ես խօսիմ զարդարութի և իրաւունս փրկութե։ Վ՞ է՞ր կարմիր են ձորձք քո. և հանդերձք քո իբրև հնձանահարի լիոյ հնձանի կոխելոյ։ Հնձան հարի միայն, և ի հեթանոսաց ոչ ոք էր ընդ իս. կոխեցի զնս սրտմտութբ և ճմլեցի զնս բարկութբ, և իջուցի յերկիր. և զամ հանդերձս իմ թաթաւեցի։ Զի հասեալ էր ի վր նց օր հատուցման, և ամ փրկութե եկեալ հասեալ։ Հայեցայ, և ոչ ոք էր որ օգնէր. զմտաւ ածի, և ոչ ոք էր որ ի թիկունս հասանէր։ Փրկեաց զնս բազուկ իմ. և սրտմտութիւն իմ միայն զդէմ կալաւ։ Կոխեցի զնս բարկութեամբ իմով, և զենի զնս սրտմտութբ իմով. և իջուցի զնոսա յերկիր։ 6։

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս։ Թ. 11։

[illegible] …քն եկեալ քահանայապետ հանդերձելոցն բա[illegible]աւն և կատարելովն և անձեռագործ խորա[illegible]ինքն է՝ որ ոչ յայսց արարածոց, և ոչ ա[illegible]ազաց և զուարակաց. այլ իւրով արեամբն

պատարագաւն յայտնեալ է։ Եւ զոր օրինակ կայ մնայ մարդկան մի անգամ մեռանել, և յետ այնորիկ դատաստան. նոյնպէս և Քն մի անգամ մատուցեալ պատարագ առ ի բառնալոյ զմեղս բազմաց. իսկ յերկրորդումն առանց մեղաց յայտնեսցի այնոցիկ, որ ակն ունիցին նմա հաւատովք ի փրկութի։ 28։

### Շարական Դկ։

Ստուն ըմպել քեզ ըզլեղին և ըզքացախն ի ծարաւին. մրրեր կամաւ զի քաղցրասցին ճաշակք պըղտղոյն դառնագունին. ըզդառնութիւն թունաւորին զոր ի մասունս հոգւոյս արկին. հերքեա ի բաց հանդերձ սովին և քաղցրասցի սէր քո ի սմին։

Ստեղնեալ ծառոյ մահաբերին այն որ բուսաւ ի մէջ դրախտին. փոխան բարձեր ըզփայտ խաչին ի Գողգոթա հաներ տեղին. զիմ առ ի մեղս անկեալ զոգի և ծանրագոյն բարձող բեռին. բարձ ի յուսոյդ ըստ ոչխարին հան ի յերկինս յուխտեալ տեղին։

Ի յուրբաթու ժամ երրորդին բեւեռեցար Տէր ի խաչին. լուծեր զկապանս նախաստեղծին և կապեցեր ըզթշնամին. զիս ամրացո ընդ հովանեաւ կենդանարար քո նըշանին. և ի ծագելն յարեւելից լուսաւորեա լուսով նորին։

Երանեալ աւազակին բացեր ըզդուռն Ադին դրախտին. ըստ հաւատոյ սրտի նորին կատարեցեր ըզխընդրելին. տուր և ինձ Տէր ընդ նըմին լըսել ըզնոյն պատասխանին. այսօր ընդ իս իցես յԱդին ի հայրենին քո առաջին։

### Զնի՝ Որթիւ։

### Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԵ. 1։

Վն խաչելութեն Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ վաղվաղակի ընդ առաւօտն խորհուրդ արարեալ քահանայապետիցն հանդերձ ծերովքն և դպրօք, և ամ ատեանն կապեցին զՅն և տարան մատնեցին Պի-

ղատոսի։ Եհարց զնա Պիղատոս և ասէ. դո՞ւ ես Թագաւորն Հրէից։ Նա պատասխանի ետ նմա և ասէ. դու ասես։ Եւ չարախօսէին զնմանէ յոյժ քահանայապետքն, և նա ոչ ինչ տայր պատասխանի։ Իսկ Պիղատոս դարձեալ հարցանէր զնա. ո՞չ ինչ տաս պատասխանի, տե՛ս՝ քանի՜ ամբաստանեն զքէն։ Եւ Յիսուս այնուհետեւ ոչ ինչ ետ պատասխանի, մինչեւ զարմանալ յոյժ Պիղատոսի։ Բայց ըստ տօնի արձակէր նց՟ զմի ոք զկապեալ, զոր ինքեանք խնդրէին։ Եւ էր՝ որում անուն էր Բարաբբա՝ կապեալ ընդ խռովիչսն, որոց ի խռովելն՝ այր մի սպանեալ էր։ Ի ձայն բարձր սկսաւ աղաղակել ամբոխն և խնդրել՝ ոպ՟ սովոր էր, զի արձակեսցէ նց՟ զԲարաբբայն։ Պատասխանի ետ Պիղատոս և ասէ ցնս՟. կամի՞ք՝ զի արձակեցից ձեզ զարքայն Հրէից։ Քանզի գիտէր թէ առ նախանձու մատնեցին զնա քահանայապետքն։ Որք և զամբոխն հաւանեցուցին՝ զի արձակեսցէ նց՟ զԲարաբբայն։ Դարձեալ պատասխանի ետ Պիղատոս և ասէ ցնս՟. իսկ զի՞նչ կամիք թէ արարից զարքայն Հրէից։ Եւ նոքա դարձեալ աղաղակէին՝ յուզեալք ի քահանայապետուցն, ի խա՛չ հան զդա։ Ասէ ցնս՟ Պիղատոս. զի՞նչ ինչ չար արարեալ իցէ դորա։ Եւ նոքա առաւել եւս աղաղակէին և ասէին, ի խա՛չ հան զդա։ Իսկ Պիղատոս իբրեւ զմիտս կամեցաւ հաճել զամբոխին, արձակեաց նց՟ զԲարաբբայն. և զՅս՟ գան հարեալ՝ ետ ի ձեռս, զի ի խաչ ելանիցէ։ Եւ զինուորքն տարան զնա ի ներքս ի գաւիթն՝ ուր հրապարակն էր. և կոչեն միանգամայն զամ՟ զգունդն, և զգեցուցանեն նմա քղամիդ կարմիր և ծիրանիս, և եդին ի գլուխ նորա պսակ արարեալ ի փշոց։ Եւ սկսան ողջոյն տալ նմա և ասել. ողջ՟ եր արքայդ Հրէից։ Եւ ծեծէին զգլուխն եղեգամբ, և թքանէին ընդ երեսս, և ի ծունր իջեալ երկիր պագանէին նմա։ Եւ իբրեւ կատակեցին զնա՝ մերկացուցին զքղամիդն և զծիրանիս,

և զգեցուցին նմա զիւր հանդերձ, և ածին արտաքս՝ զի ի խաչ հանցեն զնա։ Եւ ունէին պահակ զՍիմոն Կիւրենացի՝ որ ընդ այն անցանէր՝ եկեալ յագարակէ, զհայրն Աղեքսանդրի և Ռուփայ. զի բարձցէ զխաչափայտն նր՟։ Եւ ածեն զնա ի Գողգոթա, տեղի մի՝ որ թարգմանի՝ տեղի կառափելոյ։ Եւ տային նմա գինի զմռսեալ, և նա ոչ առ. և հանեն զնա ի խաչ։ Եւ բաժանեցին զհանդերձս նր՟, արկեալ վիճակս ի վր՟՝ թէ ո՞ զինչ առնուցու։ Էր ժամ երրորդ, և հանին զնա ի խաչ։ Եւ էր գիր վնասու նր՟ գրեալ՝ թէ թագաւոր է Հրէից։ Եւ ընդ նմա հանին ի խաչ երկուս աւազակս, մի ընդ աջմէ և մի ընդ ահեկէ նր՟։ Եւ լցաւ գիրն որ ասէ, թէ ընդ անօրէնս համարեցաւ։ Եւ որք անցանէինն՝ հայհոյէին զնա, շարժեալ զգլուխս իւրեանց և ասէին. վա՜հ որ քակէիր զտաճարն, և զերիս աւուրս շինէիր. ապրեցո՛ զանձն քո և էջ ի խաչէդ։ Նոյնպէս և քահանայապետքն այպն արարեալ ընդ միմեանս հանդերձ դպրօքն, և ասէին. զայլս ապրեցոյց՝ զանձն ոչ կարէ ապրեցուցանել։ Քն՟դ արքայդ Իսրայէլի, իջցէ այժմ ի խաչէ այտի, զի տեսցուք և հաւատասցուք դմա. և որ ընդ նմա ի խաչն ելեալ էին՝ նախատէին զնա։ Եւ իբրեւ վեց ժամ եղեւ՝ խաւար կալաւ զա՟մ երկիր մինչեւ ցինն ժամ։ Եւ յիններորդ ժամուն աղաղակեաց Յս՟ ի ձայն մեծ, և ասէ. Է՛լի, Է՛լի, լամա սաբաքթանի. որ թարգմանի՝ Ա՟ծ իմ, Ա՟ծ իմ, ընդէ՞ր թողեր զիս։ Եւ ոմանք ի նոցանէ որ շուրջն կային զնովաւ՝ իբրեւ լուան, ասէին թէ զԵղիա կարդայ։ Եւ ընթացեալ մի ոմն՝ ելից սպունգ մի քացախով, և հարեալ յեղեգան՝ տայր ըմպել նմա, և ասէ. թո՛յլ տուր տեսցուք՝ գա՞յ Եղիա իջուցանել զդա։ Եւ Յս՟ արձակեաց ձայն մեծ և եհան զոգի։ Եւ վարագոյր տաճարին պատառեցաւ յերկուս՝ ի վերուստ մինչեւ ի խոնարհ։ Եւ տեսեալ հարիւրապետին որ կայր անդ՝ թէ աղաղակեաց և ե-

հան զոգի, ասէ․ արդարեւ այրս այս Որդի ԱՅ էր։ Էին և կանայք՝ որ հայէին ի հեռաստանէ․ յորս էր Մարիամ Մագդաղենացի, և Մարիամ Յակովբու փոքրկան և Յովսեայ մայրն և Սողոմէ․ որք յորժամ էրն ի Գալիլեա՛ զհետ շրջէին նորա և պաշտէին զնա․ և այլ բազում կանայք՝ որք ընդ նմա իսկ ելեալ էին յԵրուսաղէմ։ 41․

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տր ողորմեա։ Երեք անգամ կրկնել։

Նշ․ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Եօթներորդ Սաղմոս ՁԷ։

Կց․ Նզէ․ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Փխ․ Տէր Աստուած փրկութեան իմոյ ի տուէ կարդացի, և գիշերի առաջի քո։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր․ խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ․ և կեանք իմ ի դժոխս մերձեցան․ և համարեցայ ես ընդ այնոսիկ որ իջանեն ի գուբ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Որպէս վիրաւորս որ ննջեն ի գերեզմանս։

Զորս դու ոչ յիշեցեր․ նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնում, ի խաւարի և ի ստուերս մահու։

Յիս հաստատեցաւ սրտմութիւն քո․ զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նշաւակ իւրեանց։

Մատնեցայ և ոչ ելանէի․ աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Մի՛ թէ մեռելո՞ց առնիցես սքանչելիս. կամ բժիշկք յարուցանիցեն, խոստովան առնիցեն առ քեզ։

Մի՛ թէ պատմեսցէ՞ ոք երբեք ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան։

Մի՛ թէ ճանաչիցի՞ն ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ։

Ես առ քեզ Տէր աղաղակեցի. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն,

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմմէ. ի բարձրութենէ խոնարհեցայ և ապշեցայ։

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո. արհաւիրք քո խռովեցուցին զիս։

Շրջեցան զինեւ ո՟պ ջուր. զօր ա՟մ պաշարեցի՟ն զիս ի միասին։

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ, և զծանօթս իմ վ՟ս թշուառութ՟ե իմոյ։

Ընթերցուածս յԵրեմեայ մարգարէէ։ ԺԱ. 18։

Տէր ծանո՛ ինձ, և ծանեայց. յայնժամ տեսի զգործս ն՟ց։ Ես իբրեւ զգառն անմեղ վարեալ ի սպանդ, ոչ գիտացի՝ թէ զինէն խորհեցան խորհուրդս, և ասեն. եկա՛յք, արկցո՛ւք փայտ ի հաց ն՟ր, և ջնջեսցուք զնա յերկրէն կենդանեաց. և անուն նորա մի՛ եւս յիշեսցի։ Տէ՛ր զօրութեանց, որ ընտրես զիրաւունս և քննես զերիկամունս և զսիրտ, տեսից առ ի քէն զվրէժխնդրութիւն առ ի նոսա. զի քեզ յայտնեցի զիրաւունս իմ։ Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր ի վերայ արանցն Անաթովթայ՝ որք խնդրեն զանձն քո և ասեն. մի՛ մարգարէանար վասն մեր, ապա թէ ոչ՝ մեռանիս ի ձեռաց մերոց։ Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր զօրու-

թեանց. ահաւասիկ ես այց արարից ի վերայ նոցա. երիտասարդք նց̃ սրով մեռցին, և ուստերք և դստերք նց̃ սովու վախճանեսցին: Եւ մնացորդք ոչ եղիցի նց̃, զի ածից չարիս ի վր̃ բնակչացն Անաթովթայ՝ յամի այցելութե̃ նց̃: Արդար ես դու Տէր և մատուցից առաջի քո աղերս, բայց խօսեցայց զիրաւունս: Զի՞ է զի ճանապարհք ամբարշտաց յաջողեալ են, և երջանկացան ամենեքեան որ արհամարհեն զարհամարհանս: Տնկեցեր զնոսա և արմատացան, ծնան որդիս և արարին պտուղ: Մերձ ես դու Տէր ի բերանս նց̃, և հեռի յերիկամանց նց̃: Եւ դու Տէր գիտես զիս. տեսեր զիս և փորձեցեր զսիրտ իմ առաջի քո. ժողովեա՛ զնոսա իբրեւ զոչխարս ի սպանումն, և նուիրեա՛ զն̃ս յօր սպանման նց̃: Մինչեւ յե՞րբ սուգ ունիցի երկիր, և խոտ ա̃մ վայրի ցամաքեսցի: Ի չարեաց բնակչաց երկրին ապականեցան անասունք և թռչունք. զի ասացին թէ ոչ տեսցէ Ա̃ծ զճանապարհս մեր: Ոտք քո ընթանան և լքուսցեն զքեզ. զիա՞րդ կազմիցիս երիվարօք. իսկ արդ՝ յերկի՞րդ խաղաղութե̃ յուսացեալ իցես. զի՞ գործեսցես ի վերանալ Յորդանան գետոյ: Քանզի և եղբարքն քո և տուն հօր քո, և նոքա դաւեցին քեզ, և նոքին աղաղակեցին զկնի քո. կուտեցան ի վր̃ քո. մի՛ հաւատար նց̃, զի խօսեսցին զքեզ չարութի̃: Լքի զտուն իմ, թողի զժառանգութի̃ իմ. ետու զսիրելին անձին իմոյ ի ձեռս թշնամեաց իւրոց: Եղեւ ժառանգութի̃ իմ ինձ իբրեւ առիւծ յանտառի. ետ ի վր̃ իմ զբարբառ իւր. վն̃ այնորիկ ատեցի զնա: ԺԲ. 8:

Պօղոսի առաքելոյն յԵբրայեցւոց թղթոյն է ընթերցուածս: Ժ. 19:

Ունիմք այսուհետեւ եղբարք՝ համարձակութիւն ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի. զոր նորոգեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի ի ձեռն վա-

րագուրին, այսինքն է՝ մարմնոյ իւրոյ. և քահանայ մեծ ի վերայ տանն Աստուծոյ. մատիցուք ճշմարիտ սրտիւք, լրութեամբ հաւատոց, լուացեալ զսիրտս ի խղճէ չարեաց, և մկրտեալ զմարմին ի ջուրն սրբութեան: Պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ յուսոյն. զի հաւատարիմ է որ խոստացաւն: Եւ զգուշասցուք միմեանց յորդորմամբք սիրոյ և գործոց բարեաց. և մի թողցուք զժողովս միմեանց, ոպ և սովոր են ոմանք. այլ մխիթարեսցուք, և այնչափ ևս առաւել՝ որչափ տեսանիցէք զօրն մերձեալ: Զի կամակար մտօք եթէ յանցանիցեմք յետ ընդունելոյն գիտութեան ճշմարտութեան՝ այնուհետեւ ոչ ևս պիտոյ է վն մեղաց պատարագ, այլ ահեղ ակնկալութիւն դատաստանին և նախանձ հրոյն՝ որ ուտիցէ զհակառակորդսն: Արհամարհեալ ուրուք զօրէնս Մովսէսի՝ առանց ողորմութեց առ երկուք կամ երիւք վկայիւք մեռանէր: Իսկ ո՞րչափ սաստիկ պատժոց արժանի համարիցիք զայն, որ զՈրդին Այ առ ոտն եհար. և զարիւն Նորոյ ուխտին խառնակ համարեցաւ՝ որով և սրբեցաւն. և զՀոգին շնորհաց թշնամանեաց: Այլ գիտեմք զայն՝ որ ասացն. Իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից՝ ասէ Տէր. և դարձեալ՝ թէ Դատի Տէր զժողովուրդ իւր: Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ: 31:

Շարական Դկ:

Բարբառելով զէլէլէլն հիմունք երկրի տատանէին. եւ վարագոյր հին օրինին՝ վերուստ ի վայր պատառէին. արդ ընդ վիմացն որ շարժէին՝ շարժեա զանշարժ սիրտս ի բարքն. ընդ պատառիլ վարագուրին՝ զհին պատառեա ըզգիր պարտին:

Արեգական լոյս քողարկեալ խաւարանայր միջօրէին. և գերեզմանք բանային մարմինք սրբոցըն յառնէին. ընդ խաւարել լուսաւորացն մաքրեա յինէն զգործ

խաւարին. ընդ մեռելոցն որ յառնէին կանգնեա զմեղօք մեռեալ հոգիս։

Նոր սիրո՛յ պատուիրանին գործով լըցող եղեր բանին. աղօթելով առ Հայր յերկինս թողուլ զմեղս որ ի խաչին. ինձ որ հոգւովս հաւատացեալ երկրպագեմ քեզ միածին. թող զլուծումըն հրամանին մի՛ յիշեսցին մեղքն առաջին։

Սարսեցի՛ն սանդարամետք ի յաւանդելն առ Հայր զհոգին. որ ի դըժոխս իջեր ներքին ի բանտ մահու և խաւարին. կապեալ զիշխանըն մահածին հաներ զհոգիսն որ ի բանդին. և զիս հանցես Տէր ընդ նոսին բանտէ մեղաց աղջամըղջին։

ԶՆԻ՛ ՈՐԹԻ՛Ւ։

Աւետարան ըստ Ղուկասու։ ԻԲ. 66։

Վասն խաչելութե̃ Տ̃ն մերոյ Յ̃ի Ք̃ի։

Եւ իբրեւ այգ եղեւ՝ ժողովեցաւ ծերակոյտ ժողովըրդեանն՝ քահանայապետքն և դպիրք, և հանին ածին զնա յատեանն իւրեանց, և ասեն. եթէ դու ես Ք̃ն՝ ասա մեզ։ Ասէ ց̃նս. թէ ասացից ձեզ՝ սակայն ոչ հաւատայք. և եթէ հարցից ինչ զձեզ՝ չտայք ինձ պատասխանի կամ արձակիցէք։ Բայց յայսմհետէ նստցի որդի մարդոյ ընդ աջմէ զօրութե̃ն Ա̃յ։ Եւ ասեն ամենեքեան. ուրեմն դու ես Որդին Ա̃յ։ Եւ նա ասէ ց̃նս. դուք ասէք թէ ես եմ։ Եւ նոքա ասեն. զի՞նչ եւս պիտոյ է մեզ վկայութե̃ի, զի մեզէն իսկ լուաք ի բերանոյ դորա։ Եւ յարուցեալ ա̃մ բազմութի̃ն ն̃ց՝ ածին զնա առ Պիղատոս։ Եւ սկսան չարախօս լինել զնմանէ և ասել. գտաք զսա՝ զի թիւրէր զազգս մեր, և արգելոյր ի տալոյ հարկս կայսեր, և ասէր զանձնէ թէ Ք̃ն իցէ թագաւոր։ Իսկ Պիղատոս եհարց զնա և ասէ. դո՞ւ ես թագաւորն Հրէից։ Նա պատասխանի ետ նմա և ասէ. դու ասացեր։ Ասէ Պիղատոս ցքահանայապետսն և ցժողովուրդսն. չգտանեմ ինչ վ̃նաս յառնս յայսմիկ։

Եւ նոքա պնդէին եւ ասէին, թէ խռովէ զժողովուրդս, ուսուցանէ ընդ ամ՟ Հրէաստան՝ սկսեալ ի Գալիլեէ մինչեւ ցայսր։ Իսկ Պիղատոս իբրեւ լուաւ զԳալիլեէ՝ եհարց եթէ Գալիլեացի՞ է այրն։ Եւ իբրեւ գիտաց թէ յիշխանութենէ Հերովդի է՝ ետ տանել զնա առ Հերովդէս. քանզի եւ նա յԵղ՟էմ էր յաւուրսն յայնոսիկ։ Եւ Հերովդէս իբրեւ ետես զՅս՟՝ ուրախ եղեւ յոյժ, զի ցանկայր ի բազում ժամանակաց տեսանել զնա. քանզի լսէր բազում անգամ զնմանէ, եւ ակն ունէր նշան ինչ լեալ՝ տեսանել ի նմանէ։ Հարցանէր զնա բանիւք բազմօք. եւ նա ոչինչ ետ նմա պատասխանի։ Կային քահանայապետքն եւ դպիրք, եւ պնդագոյնս չարախօսէին զնմանէ։ Արհամարհեաց զնա եւ Հերովդէս հանդերձ իւրովք զօրականօքն, եւ այպն արարեալ՝ արկ զնովաւ հանդերձս սպիտակս, եւ ետ տանել անդրէն առ Պիղատոս։ Եւ եղեն բարեկամք Պիղատոս եւ Հերովդէս յաւուր յայնմիկ, քանզի յառաջ թշնամիք էին միմեանց։ Կոչեաց Պիղատոս զքահանայապետսն եւ զիշխանս եւ զժողովուրդն, եւ ասէ ցնս՟. ածէք մատուցէք ինձ զայրս զայս իբրեւ զխոտորեցուցիչ ժողովրդեանն. եւ ահաւասիկ առաջի ձեր դատեցայ, եւ վնաս ինչ ոչ գտի յառնս յայսմիկ՝ զորոց դուք չարախօսէքդ զդմանէ։ Այլ եւ ոչ Հերովդէս, քանզի ետու տանել զդա առ նա. եւ արդ՝ ոչինչ մահու արժանի է գործեալ դորա. խրատեցից զդա եւ արձակեցից։ Զի հարկ էր մի մի ըստ տօնի արձակել նոցա։ Եւ նոքա աղաղակէին ամ՟ բազմութ՟բն եւ ասէին. բա՛րձ զդա, եւ արձակեա՛ մեզ զԲարաբբա. որ էր վս՟ խռովութ՟ն իրիք եղելոյ ի քաղաքին եւ սպանութ՟ն մտեալ ի բանտ։ Դարձեալ Պիղատոս սկսաւ խօսել. քանզի կամէր արձակել զՅս՟։ Եւ նոքա անդրէն աղաղակէին եւ ասէին. ի խա՛չ հան զդա։ Եւ նա երիցս ասէ ցնս՟. զի՞նչ չար արար սա. ոչինչ վնաս մահու գտի ի սմա.

խրատեցից զսա և արձակեցից: Եւ նոքա ստիպէին մեծաձայն, և խնդրէին զնա ի խաչ հանել. և զօրանային բարբառք նոցա և քահանայապետիցն: Եւ Պիղատոս հաւանեցաւ առնել զհայցուածս ն՟ր: Արձակեաց նոցա զԲարաբբայն՝ զոր վ՟ն խռովութ՟ե և սպանութ՟ե արկեալ էր ի բանտ, զոր և խնդրէինն իսկ. և զՅ՟ս մատնեաց կամաց ն՟ց: Իբրեւ առին գնացին զնա՝ ըմբռնեցին զոմն Սիմովն Կիւրենացի՝ որ գայր յանդէ. եդին ի վ՟ր ն՟ր զխաչն բերել զկնի Յ՟ի: Եւ երթայր զհետ ն՟ր բազմութ՟ի ժողովրդեանն, և կանանց՝ որ կոծէին և աշխարէին զնա: Դարձաւ Յիսուս և ասէ ց՟նս. դստերք Ե՟ղէմի, մի լայք ի վ՟ր իմ, այլ լացէք ի վ՟ր անձանց և ի վ՟ր որդւոց ձերոց: Զի եկեսցեն աւուրք՝ յորս ասիցեն, թէ երանի՛ ամլոց և որովայնից որ ոչ ծնան, և ստեանց որ ոչ դիեցուցին: Յայնժամ սկսանիցեն ասել լերանց՝ թէ անկերո՛ւք ի վ՟ր մեր, և բլրոց՝ թէ ծածկեցէք զմեզ: Զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն՝ ընդ չորն զի՞նչ լինիցի: Ածին և այլ երկուս չարագործս՝ սպանանել ընդ նմա: Իբրեւ չոքան ի տեղին՝ կոչեցեալ Գագաթն՝ անդ հանին զնա ի խաչ. և զչարագործսն զոմն ընդ աջմէ և զոմն ընդ ձախմէ խաչեցին: Եւ Յ՟ս ասէ. Հայր, թո՛ղ դոցա, զի ոչ գիտեն զի՞նչ գործեն: Եւ ի բաժանել զհանդերձս ն՟ր՝ արկին վիճակս: Եւ կայր ժողովուրդն հայեցեալ: Անգոսնէին զնա իշխանքն հանդերձ նոքօք, և ասէին. զայլս ապրեցոյց, ապրեցուսցէ և զանձն՝ եթէ դա է Ք՟ս որդի Ա՟յ ընտրեալն: Այպն առնէին զնա և զինուորքն, եկեալ առաջի՝ մատուցանէին նմա քացախ և ասէին. եթէ դու ես թագաւորն Հրէից՝ փրկեա՛ զանձն քո: Եւ էր գիր գրեալ ի վ՟ր ն՟ր՝ յունարէն և դաղմատերէն և եբրայեցերէն գրով, թէ սա է արքայն Հրէից: Իսկ մի ոմն ի կախելոց չարագործացն հայհոյէր զնա և ասէր. ո՞չ դու ես Ք՟ն, փրկեա՛ զանձն քո և զմեզ: Պատաս-

խանի ետ ընկերն սաստելով նմա և ասէ. չերկնչի՞ս դու յԱյ՞ զի ի նմին պատժի կաս։ Եւ մեք յիրաւի՝ զի արժանի որոց գործեցաքն՝ առնումք զհատուցումն. և սա ապիրատ ինչ ոչ գործեաց։ Եւ ասէ ցՅս. յիշեա՛ զիս Տէր՝ յորժամ գայցես արքայութբ քով։ Եւ ասէ ցնա Յիսուս. ամէն ասեմ քեզ, այսօր ընդ իս իցես ի դրախտին։ Եւ էր իբրեւ վեցերորդ ժամ. և խաւար եղեւ ի վր ամ երկրի մինչեւ ցիններորդ ժամն. խաւարեցաւ արեգակն։ Եւ հերձաւ վարագոյր տաճարին ընդ մէջ։ Եւ կարդաց Յս ի ձայն մեծ, և ասէ. Հա՛յր, ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ։ Զայս իբրեւ ասաց՝ եհան զոգի։ Եւ տեսեալ հարիւրապետին զոր ինչ եղեւն՝ փառաւոր արար զԱծ և ասէ. արդարեւ այրս այս արդար էր։ Եւ ամ ժողովուրդքն որ եկեալ էին և տեսանէին զտեսիլն զայն և զգործ, բախէին զկուրծս և դառնային։ Կային և ամ ծանօթքն նր ի հեռաստանէ, և կանայք որք եկեալ էին զհետ նր ի Գալիլեէ՝ տեսանէին զայն։ 49։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։ Երե. անգամ կրկնեա։

Եւ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Ութներորդ Սաղմոս ՃԱ։

ԿՏ. Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ, նմանեցայ ես հաւալուսան յանապատի։

Փխ. Տէր լո՛ւր աղօթից իմոց. աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն։

Յաւուր նեղութե իմոյ խոնարհեցո առ իս զունկն քո. յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի լո՛ւր ինձ։

Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ. և ոսկերք իմ որպէս խռիւ չորացան։

Հարայ որպէս խոտ, և ցամաքեաց սիրտ իմ. մոռացայ ուտել զհաց իմ ի ձայնէ հեծութեան իմոյ։

Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ, նմանեցայ ես հաւալսան յանապատի։

Եղէ ես որպէս բու յաւերակի. տքնեցայ, և եղէ ես որպէս ճնճղուկ միայն ի տանիս։

Նախատեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ, և գովիչք իմ ինեւ երդնուին։

Զմոխիր որպէս զհաց կերայ, և զըմպելի իմ արտասուօք խառնեցի։

Ցերեսաց բարկութեան սրտմտութեան քո. զի դու բարձրացուցեր և խոնարհեցուցեր զիս։

Աւուրք իմ որպէս հովանի անցին. և ես որպէս խոտ ցամաքեցայ։

Դու Տէր յաւիտեան կաս. և յիշատակ քո յազգէ մինչեւ յազգ։

Դու յարուցեալ գթասցիս ի վ՟ր Սիովնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ։

Հաճեցան ծառայք քո ընդ քարինս նորա. և ի հողս նորա գթասցին։

Երկիցեն հեթանոսք յանուանէ քումմէ, և ամենայն թագաւորք երկրի ի փառաց քոց։

Շինէ Տէր զՍիոն, և երեւեսցի փառօք իւրովք ի նմա։

Հայեցաւ նա յաղօթս խոնարհաց, և ոչ արհամարհեաց զխնդրուածս նոցա։

Գրեսցի այս յազգ այլ. ժողովուրդ՝ զոր ստացեալ է, օրհնեսցէ զՏէր։

Հայեցաւ նա ի բարձանց ի սրբութենէ իւրմէ. Տէր յերկնից յերկիր հայեցաւ։

Լսել զհեծութիւն կապելոց, և արձակել զորդիս մահապարտաց։

Պատմել ի Սիովն զանուն Տեառն. և զօրհնութիւնս նորա յԵրուսաղէմ։

Ժողովել ժողովրդոց ի միասին, և թագաւորաց ծառայել Տեառն։

Պատասխանի ետ նմա ի ճանապարհի զօրութ՟ե իւրոյ. զնուազութ՟ի աւուրց իմոց ասա ինձ, և մի հաներ զիս ի կէս աւուրց իմոց, զի ազգէ յազգ են ամք քո:

Ի սկզբանէ Տէր զհիմունս երկրի հաստատեցեր, և գործք ձեռաց քոց երկինք են:

Նոքա անցանեն, և դու կաս և մնաս յաւիտեան:

Ամենեքեան որպէս զձորձս մաշեսցին. որպէս զվերարկուս փոխեսցես զնոսա և փոխեսցին:

Բայց դու նոյն իսկ ես, և ամք քո ոչ անցանեն. որդիք ծառայից քոց բնակեսցեն ի նմա. և զաւակի նց՟ յաւիտեան յաջողեսցի:

Ընթերցուածս ի Զաքարեայ մարգարէէ: ԺԴ. 5:

Եւ եկեսցէ հասցէ Տէր Ած՟ իմ, և ամ՟ սր՟բք ընդ նմա: Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ ոչ եղիցի լոյս. և ցուրտ և պարզ: Եղիցի օր մի, և օրն այն յայտնի Տն՟. ոչ տիւ իցէ և ոչ գիշեր. և ընդ երեկս եղիցի լոյս: Յաւուր յայնմիկ բղխեսցէ ջուր կենդանի յԵ՟էմ. կէս նր՟ ի ծով՟ն առաջին, և կէս նր՟ ի ծով՟ն որ յետոյ. զամառն և զգարուն. նոյնպէս եղիցի: Եւ եղիցի Տէր թագաւոր ի վր՟ ամ՟ երկրի. յաւուր յայնմիկ եղիցի Տէր մի՝ անուն նր՟ մի: Պատել զամ՟ երկիր, զանապատն՝ ի Գաբայ մինչեւ ցՌեմո՟ն՝ ընդ կողմ՟ն հարաւոյ Ե՟էմի: Եւ Հռամ ի տեղւոջ իւրում կացցէ. ի դրանէն Բենիամինի մինչեւ ի տեղի դրանն առաջնոյ. մինչեւ ի դուռն անկեանցն և մինչեւ ցաշտարակն Անամայէլի, մինչեւ ի հնձանս թագաւորին: Եւ բնակեսցեն ի նմա, և նզովք ոչ եւս լիցին. և բնակեսցէ Երուսաղէմ յուսով: 11:

Պողոսի առաքելոյն ի Տիմոթէոսի առաջին թղթոյն է ընթերցուածս: Զ. 13:

Պատուիրեմ քեզ առաջի Այ՟՝ որ կենդանի առնէ զամ՟, և Յսի Քսի՝ որ վկայեաց առաջի Պոնտացւոյ Պիղատոսի զբարւոք դաւանութ՟ին. պահել քեզ զպա-

տուփրանն անբիծ, անարատ՝ մինչեւ ի յայտնութի Տ՟ն մերոյ Յ՟ի Ք՟ի. զոր յիւր ժամանակս ցուցցէ երանելին և միայն հզօր, թագաւոր թագաւորաց և տէր տերանց. որ միայն ունի զանմահութի՟՝ բնակեալ ի լոյս անմատոյց. զոր ոչ ոք ետես ի մարդկանէ և ոչ տեսանել կարող է. որում պատիւ և զօրութիւն յաւիտեանս. ամէն: 16:

Շարական Դկ:

Ողբերացն անապական որ յետ մահուն անմահարար. բըղխեալ ի քէն վըտակ կրկին ի նորոգումըն կողածնին. բացըզըբերան իմ յարբուցումըն քո արեան կենարարին. լուա դարձեալ յաւազանին թէ ոչ շնորհօք այլ արտասուօք:

Յանմահիդ մեռանելոյ զմեռեալ հոգիս կենդանացո. թաղմամբ ի նոր գերեզմանի զթաղեալս ի մեղս վերածեա. ի գբի ներքնումն իջանելովն ի գբոյն մեղաց վերաբերեա. ի ստուեր մահու բընակելով լուսաւորեա և զիս հոգւով:

Սիրտ իմ առ քեզ աղաղակէ Բանդ որ ընդ Հօր ի սկզբանէ. որ կամաւոր վասն մարդկան կրեցեր մարմնով զայս մահ. ինձ լըսելի արա ըզձայն յարքայութեանդ քո կոչման. ընդ ժողովոցն անդ անդրանկացն օրհնել ըզքեզ միշտ յաւիտեան:

Զ՟ՆԻ՝ Որթիւ:

Աւետարան ըստ Յովհաննու: ԺԹ. 17:

Վ՟ն խաչելութե՟ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ նոքա առեալ տանէին զնա. և բարձեալ էր ինքնին զխաչափայտն, և ելանէր ի տեղին՝ որ անուանեալ էր Գագաղթան, և կոչէր եբրայեցերէն Գողգոթա. ուր և ի խաչն իսկ հանին զնա. և ընդ նմա երկուս եւս այլս աստի և անտի, և ի միջի զՅ՟ս: Գրեաց և տախտակ Պիղատոս, և եդ ի վ՟ր խաչին. և էր գրեալ.

Յս՟ Նազովրեցի՝ Թագաւոր Հրէից։ Զայն տախտակ ընթերցան բազումք ի Հրէից, զի մօտ էր ի քաղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Յս՟. և էր գրեալ եբրայեցերէն, դաղմատերէն և յունարէն։ Ասեն ցՊիղատոս քահանայապետքն Հրէից. մի՛ գրեր Թագաւոր Հրէից, այլ թէ նա ասաց՝ Թագաւոր եմ Հրէից։ Պատասխանի ետ Պիղատոս. զոր ինչ գրեցի՝ գրեցի։ Իսկ զինուորքն իբրեւ հանին ի խաչ զՅս՟, առին զհանդերձս նր՟, և արարին չորս մասունս, իւրաքանչիւր զինուորի մասն։ Իսկ զպատմուճանն՝ քանզի էր առանց կարանի՝ ի վերուստ փորանկեալ ամենեւին. ասեն ցմիմեանս. մի՛ պատառեսցուք զայդ, այլ արկցուք վիճակս ի վր՟ դորա՝ ում և ելցէ։ Զի լցցի գիրն՝ որ ասէ. Բաժանեցան զհանդերձս իմ յիւրեանս, և ի վր՟ պատմուճանի իմոյ վիճակս արկին։ Զինուորքն՝ զայս ինչ գործեցին։ Եւ կային առ խաչին Յս՟ի մայրն նր՟, և քոյր մօր նորա Մարիամ Կղէովպա, և Մարիամ Մագդաղենացի։ Յս՟ իբրեւ ետես զմայրն և զաշակերտն՝ զոր սիրէր, զի կայր մօտ. ասէ ցմայրն, կին դու՝ ահա որդի քո։ Ապա ասէ ցաշակերտն. ահա մայր քո։ Եւ յայնմ ժամանակէ առ աշակերտն՝ զնա առ իւր։ Յետ այսորիկ իբրեւ գիտաց Յս՟. եթէ ահա ամ՟ ինչ կատարեալ է, զի կատարեսցի գիրն, ասէ. Ծարաւի եմ։ Եւ անդ կայր աման ինչ՝ լի քացախով. և նոցա սպունգ լցեալ քացախով ընդ լեղւոյ՝ շուրջ եդեալ զմշտկաւ զոպայի՝ մատուցին ի բերան նր՟։ Իբրեւ առ Յիսուս զքացախն հանդերձ լեղւովն՝ ասէ. ամենայն ինչ կատարեալ է։ Եւ խոնարհեցուցեալ զգլուխն՝ աւանդեաց զոգին։ Իսկ Հրեայքն՝ քանզի ուրբաթ էր, զի մի՛ անդէն ի խաչին ագանիցին մարմինքն մինչեւ ցշաբաթն, զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ. աղաչեցին զՊիղատոս՝ զի խորտակեսցեն զբարձս նց՟, և բարձցին։ Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս, նոյնպէս և զմիւսոյն՝

որ ընդ նմա ի խաչն ելեալ էր։ Բայց իբրեւ եկին առ Յն, և տեսին զի այն ինչ մեռեալ էր, ոչ խորտակեցին զբարձս նր. այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նր. և վաղվաղակի ել արիւն և ջուր։ Եւ որ եւտեսն՝ վկայեաց, և ճշմարիտ է վկայութիւն նր. և նա գիտէ թէ ճշմարիտ ասէ, զի և դուք հաւատասջիք։ Այս եղեւ՝ զի լցցի գիրն, եթէ Ոսկր նր մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս գիր ասէ, եթէ Հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն։ 37։

Աղօթք հանդերձ սաղմոսելով զՏր աղաչեսցուք։ Տր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Յետ այսորիկ դնեն զխաչն եւ զաւետարանն ի վերայ բեմին, եւ համբուրեն ամենեքեան ասելով։

Շարական Բկ։

Խաչի քո Քս երկիր պագանեմք. եւ որ ի կարգին. 385։
Ձայն Քրզ. Սուրբ խաչիւս։ Աղ. Պահպանեա զմեզ Քս։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։
Եւ արձակին ի խաղաղութիւն։

---

## ԵՐԵԿՈՅԻՆ

Ի տասն ժամն ժողովին եւ մտանեն յեկեղեցին, եւ կատարեն զկարգ Թաղմանն Քրիստոսի։ Բայց ոմանք ի ժամատունն կատարեն։ Եւ սկսանին Ես առ Ած։ Խոնարհեցո եւ Ապրեցո։ Ձայն՝ Լոյս զուարթ։

Մեսեդի։

Նստուն ի կերակուր ինձ լեղի. և ի ծարաւ իմ արբուցին քացախ։

Եղիցին սեղանք նց առաջի նց յորոգայթ, ի հատուցումն և ի գայթագղութիւն։

Ընթերցուածս յԵրեմեայ մարգարէէ։ ԺԱ. 18։

Տէր ծանո ինձ, և ծանեայց. յայնժամ տեսի զգործս նց։ Ես իբրեւ զգառն անմեղ վարեալ ի սպանդ, ոչ

գիտացի՝ թէ զինէն խորհեցան խորհուրդս, և ասեն. եկա՛յք, արկցո՛ւք փայտ ի հաց նր, և ջնջեսցուք զնա յերկրէն կենդանեաց. և անուն նորա մի՛ եւս յիշեսցի: Տէր զօրութեանց, որ ընտրես զիրաւունս և քննես զերիկամունս և զսիրտ, տեսից առ ի քէն զվրէժխնդրութիւն առ ի նոսա. զի քեզ յայտնեցի զիրաւունս իմ: Վասն այնորիկ այսպէս ասէ Տէր ի վերայ արանցն Անաթովթայ՝ որք խնդրեն զանձն քո և ասեն. մի՛ մարգարէանար վասն մեր, ապա թէ ոչ՝ մեռանիս ի ձեռաց մերոց: Վասն այդորիկ այսպէս ասէ Տէր զօրութեանց. աՀաւասիկ ես այց արարից ի վերայ նոցա. երիտասարդք նց սրով մեռցին, և ուստերք և դստերք նց սովու վախճանեսցին: Եւ մնացորդք ոչ եղիցի նց, զի ածից չարիս ի վր բնակչացն Անաթովթայ՝ յամի այցելուե նց: Արդար ես դու Տէր և մատուցից առաջի քո աղերս, բայց խօսեցայց զիրաւունս: Զի՞ է զի ճանապարհք ամբարշտաց յաջողեալ են, և երջանկացան ամենեքեան որ արհամարհեն զարհամարհանս: Տնկեցեր զնոսա և արմատացան, ծնան որդիս և արարին պտուղ: Մերձ ես դու Տէր ի բերանս նց, և հեռի յերիկամանց նց: Եւ դու Տէր գիտես զիս. տեսեր զիս և փորձեցեր զսիրտ իմ առաջի քո. ժողովեա՛ զնոսա իբրեւ զոչխարս ի սպանումն, և նուիրեա՛ զնս յօր սպանման նց: Մինչեւ յե՞րբ սուգ ունիցի երկիր, և խոտ ամ վայրի ցամաքեսցի: Ի չարեաց բնակչաց երկրին ապականեցան անասուն և թռչուն. զի ասացին թէ ոչ տեսցէ Ած զճանապարհս մեր: Ոտք քո ընթանան և լքուցեն զքեզ. զիա՞րդ կազմիցիս երիվարօք. իսկ արդ՝ յերկի՞րդ խաղաղութե յուսացեալ իցես. զի՞ գործեսցես ի վերանալ Յորդանան գետոյ: Քանզի և եղբարքն քո և տուն հօր քո, և նոքա դաւեցին քեզ, և նոքին աղաղակեցին զկնի քո. կուտեցան ի վր քո. մի՛ հաւատար նց, զի խօսեսցին զքեն չարութի: Լքի զտուն

իմ, Թողի զժառանգութիւն իմ. ետու զսիրելին անձին իմոյ ի ձեռս թշնամեաց իւրոց: Եղեւ ժառանգութիւն իմ ինձ իբրեւ առիւծ յանտառի. ետ ի վր̃ իմ զբարբառ իւր. վն̃ այնորիկ ատեցի զնա: ԺԲ. 8:

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ: ԾԲ. 13:

Ահաւադիկ ի միտ առցէ մանուկ իմ. վերասցի եւ բարձրասցի եւ փառաւորեսցի յոյժ: Զոր օրինակ զարմասցին բազումք ի վր̃ քո. այնպէս անշքեսցի տեսիլ քո ի մարդկանէ, եւ փառք քո յորդւոց ի մարդկանէ: Այնպէս զարմասցին ազգք բազումք ի վր̃ քո, եւ կարկեսցեն թագաւորք զբերանս իւրեանց: Զի որոց ոչ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն, եւ որոց ոչ իցէ լուեալ՝ ի միտ առցեն: Տէր, ո՞ հաւատաց լրոյ մերում. եւ բազուկ Տեառն ու̃մ յայտնեցաւ: Պատմեցաք առաջի նորա իբրեւ զմանուկ, իբրեւ զարմատ ի ծարաւուտ երկրէ. ոչ գոյր նր̃ տեսիլ եւ ոչ փառք՝ տեսաք մեք զնա, եւ ոչ գոյր նր̃ տեսիլ եւ ոչ գեղեցկութիւն: Այլ տեսիլ նր̃ անարգ՝ նուազեալ քան զա̃մ որդւոց մարդկան. այր մի ի հարուածս եւ գիտէ համբերել ցաւոց. զի դարձուցեալ զերեսս իւր անարգեցաւ եւ ոչինչ համարեցաւ: Նա զմեղս մեր բառնայ եւ վասն մեր չարչարի. եւ մեք համարեցաք զնա ի ցաւս եւ ի հարուածս եւ ի չարչարանս իբրեւ յԱՅ: Բայց նա վիրաւորեցաւ վն̃ մեղաց մերոց, եւ պատժեցաւ վն̃ մերոց անօրէնութեանց. խրատ խաղաղութեան մերոյ ի նմա, եւ նր̃ վիրօքն բժշկեցաք: Ամենեքին իբրեւ ոչխարք մոլորեալք՝ այր ի ճանապարհի իւրում մոլորեցաւ, եւ Տէր մատնեաց զնա առ մեղս մեր: Եւ նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր. իբրեւ ոչխար ի սպանդ վարեցաւ, եւ իբրեւ որոջ առաջի կտրչի անմռունչ կայ, այնպէս ոչ բանայ զբերան իւր: Առ խոնարհութեան նր̃ դատաստան նր̃ բարձաւ. եւ զազգատոհմ նր̃ ո՞ պատմեսցէ. զի բառնան յերկրէ կեանք նր̃. յանօրէնութեանց ժողովրդեան իմոյ ի մահ վարեցաւ:

Եւ տաց զչարս փոխանակ գերեզմանի Նր̃, և զմեծա-
մեծս փոխանակ մահու Նր̃. զի անօրէնութիւն ոչ գոր-
ծեաց, և ոչ գտաւ նենգութիւն ի բերան Նր̃։ Եւ Տէր
կամի սրբել զնա ի վիրաց անտի. եթէ տայցէք զվասն
մեղացն, անձինք ձեր տեսցեն զաւակ երկայնակեաց.
և կամի Տէր ի ձեռն Նր̃ բառնալ ի ցաւոց անձին Նր̃։
Ցուցանել նմա լոյս և ստեղծուլ իմաստութ̃բ. արդա-
րացուցանել զարդարն՝ որ մտադիւրն ծառայեաց բազ-
մաց. և զմեղս Նց̃ նա վերացուսցէ։ Վ̃ն այսորիկ նա
ժառանգեսցէ զբազումս, և զաւար հզօրաց բաշխեսցէ.
փոխանակ զի ի մահ մատնեցաւ անձն Նր̃, և ընդ անօ-
րէնս համարեցաւ. և նա զմեղս բազմաց վերացոյց, և
վն̃ անօրէնութ̃եց նոցա մատնեցաւ։ Ծգ. 12։

Սաղմոս ԻԱ։

ԿՑ. Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ իւրեանց. և
ի վերայ պատմուճանի իմոյ վիճակս արկանէին։

Փխ. Ա̃ծ Ա̃ծ իմ, նայեա́ց առ իս. ընդէ՞ր թողեր զիս.
հեռի եղէ ի փրկութ̃է իմմէ վն̃ բանից յանցանաց իմոց։

Աստուած իմ ի տուէ կարդացի առ քեզ, և ինձ ոչ
լուար. ի գիշերի, և ինձ ոչ անսացեր։

Դու ի սր̃բս բնակեալ ես. և գովեալ յԻսրայէլի։

Ի քեզ յուսացան հարքն մեր. յուսացան ի քեզ և
փրկեցեր զնոսա։

Առ քեզ աղաղակեցին և կեցին. ի քեզ յուսացան
և ոչ ամաչեցին։

Այլ ես որդն եմ, և ոչ եմ մարդ. նախատինք մարդ-
կան և արհամարհանք ժողովրդոց։

Ամենեքեան որ տեսանէին զիս՝ արհամարհէին զինև.
խօսէին շրթամբք և շարժէին զգլուխս իւրեանց։

Յուսացաւ ի Տէր, և փրկեսցէ զնա. կեցուսցէ զնա, զի
կամի զնա։

Դու ես որ հանար զիս յարգանդի. յոյս իմ ի
ստեանց մօր իմոյ։

Ի քեզ անկայ ես յարգանդէ. յորովայնէ մօր իմոյ դու ես Աստուած իմ։

Մի՛ ի բացեայ առնիր յինէն. զի նեղութիւնք մերձեալ են, և ոչ ոք է որ օգնէ ինձ։

Շուրջ եղեն զինեւ զուարակք բազումք. և ցուլք գէրք պաշարեցին զիս։

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց՝ որպէս առիւծ զի մռնչէ և յափշտակէ։

Եւ որպէս զջուր հեղայ և ցրուեցան ամենայն ոսկերք իմ. և եղեւ սիրտ իմ որպէս մոմ հալեալ ի մէջ որովայնի իմոյ։

Չորացաւ որպէս խեցի զօրութիւն իմ. լեզու իմ ի քիմս իմ կցեցաւ. և ի հող մահու իջուցին զիս։

Շուրջ եղեն զինեւ շունք բազումք. և ժողովք չարաց պաշարեցին զիս։

Ծակեցին զձեռս իմ և զոտս իմ, և թուեցին զա՟մ ոսկերս իմ. և նոքա հայեցան և տեսին զիս։

Բաժանեցան զհանդերձս իմ ի մէջ իւրեանց. և ի վ՟ր պատմուճանի իմոյ վիճակս արկանէին։

Դու Տէր, մի՛ հեռի առներ զօգնութիւնս քո յինէն. և Տէր յօգնել ինձ նայեա՛ց։

Փրկեա՛ ի սրոյ զանձն իմ. և ի ձեռաց շանց զմիամօրութիւն իմ։

Փրկեա՛ զիս ի բերանոյ առիւծու. յեղջերէ միեղջերուի զխոնարհութիւն իմ։

Պատմեցից զանուն քո եղբարց իմոց. ի մէջ եկեղեցւոյ օրհնեցից զքեզ։

Երկիւղածք Տեառն օրհնեցէք զՏ՟ր. ամենայն զաւակն յակովբեան փառաւոր արասցեն զնա։

Երկիցէ ի Տեառնէ ամենայն զաւակն Իսրայէլի, զի ոչ արհամարհեաց և ոչ անարգեաց զաղօթս աղքատի. և ոչ դարձոյց զերեսս իւր յինէն. այլ ի կարդալ իմում առ նա՝ լուաւ ինձ։

Ի քէն է գովութիւն իմ. յեկեղեցիս մեծս օրհնե-
ցից զքեզ:

Զուխտս իմ կատարեցից առաջի ամ երկիւղածաց Նր:
կերիցեն տնանկք և յագեսցին. օրհնեսցեն զՏէր որք
խնդրեն զնա:

կեցցեն սիրտք Նոցա յաւիտեանս յաւիտենից. յի-
շեսցեն, և դարձցին առ Տէր ամենայն ծագք երկրի:

Երկիր պագցեն Նմա ամ տոհմք ազանց. զի Տեառն է
արքայութի, և Նա տիրէ ի վր ամ հեթանոսաց:

կերան և երկիր պագին Նմա ամ պարարտք երկրի.
առաջի Նր անկցին ամենեքեան որ իջանեն ի հող:

Անձն իմ Նովաւ կեայ. և զաւակ իմ ծառայեսցէ Նմա:

Պատմեսցի Տռն ազգ որ գալոց է. պատմեսցեն զար-
դարութիւն Նորա ժողովրդեան որ ծնանելոց իցէ՝ զոր
արար Տէր:

Այս Ողորմեա առեն այսպէս:

Ուղիղ եղիցին աղաչանք իմ.
Որպէս խունկ առաջի քո Տէր:
Տարածումն ձեռաց իմոց.
Պատարագ երեկոյի:

Զկնի՝ Քարոզ. Աղաչեսցուք. նոյն ձայն:

Օ Սուրբ Ածն ի ձայնն առնէալ ... եւ ժողովուրդն
. մեղան եւ գլխիկոյ՝ բազմապատկեալ առեն:

Համբարձէ ԴԶ. ԱՏ:

Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք մե
Երրորդութեն լոյս որ ընդ Հօր է յէութե. ի
քահանայից դատապարտեալ եկեալ ի խաչ ելա-
նել. անըմահ թագաւորն: Փառք Հօր: Զոր
երկինք ոչ բաւէին տանել. զփառ յտ պատուհասի
ուսով բարձեալ. եւ եկեալ ի տեղի կառափելման
ի խաչ ելանել. անըմահ թագաւորն: Այժմ
և միշտ: Հիացեալ պետութեանց երկնից ընդ Թա-

զումըն Տէ՟ն ի նոր գերեզմանի. քանզի զիմ. որ անմահն է յէութեան վս՟ արարածոց փրկութե՟ ընդ մահ ճաշակեաց. անմահ թագաւորըն։

Եւ զկնի առ Սաղմոս ԺԵ. է ՃԷ։

ԿՑ. Զի ոչ թողցես զանձն իմ ի դժոխս. և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութի՟։

Փխ. Պահեա՛ զիս Ած՟, զի ես ի քեզ յուսացայ. ասացի Տեառն, Տէր իմ ես դու, և բարիք իմ քեզ չեն ինչ պիտոյ։

Սր՟ց քոց որ են յերկրի քում. սքանչելի արարեր զամենայն կամս իմ ի նոսա։

Յաճախեցին հիւանդութիւնք նոցա. յետ այսորիկ ապա փաղփաղեցին։

Ոչ ժողովեցայց ի ժողովս նոցա յարեանց. և ոչ յիշեցից զանուանս ն՟ց ի շրթունս իմ։

Տէր բաժին ժառանգութե՟ իմոյ և բաժակի իմոյ դու ես, որ այսրէն դարձուցանես զժառանգութի՟ իմ յիս։

Վիճակք ելին ինձ ընդ ընտիրս. և ժառանգութիւն իմ հաճոյ եղեւ ինձ։

Օրհնեցից զՏէր՝ որ իմաստուն արար զիս. մինչ ի գիշերի եւս խրատեցին զիս երիկամունք իմ։

Յառաջագոյն տեսանէի զՏէր առաջի իմ յա՟մ ժամ. զի է ընդ աջմէ իմմէ, զի մի՟ սասանեցայց։

Վս՟ այսորիկ ուրախ եղեւ սիրտ իմ. և ցնծացաւ լեզու իմ. եւս և մարմին իմ բնակեսցէ յուսով։

Զի ոչ թողցես զանձն իմ ի դժոխս. և ոչ տացես սրբոյ քում տեսանել զապականութիւն։

Ցուցեր ինձ զճանապարհս քո կենաց. լցուցեր զիս ուրախութե՟ երեսաց քոց ի քաղցրութե՟ վայելչութե՟ աջոյ քո մինչ ի սպառ։

Ընթերցուածս յԱռակաց։ Իմաստ. Բ. 1։

Խորհեցան յանձինս իւրեանց զանուղղայս. և ասեն. սակաւ և ցաւագին են կեանք մեր. և ոչ գոյ բժշկու-

թիւն ի վախճանի մարդոյ. և ոչ երեւեցաւ որ դարձաւ ի դժոխոց։ Զի յանկարծակի իմն եղեաք, և յետ պստրիկ լինիցիմք իբրեւ զչեղեալս. զի իբրեւ զծուխ է շունչ յռնգունս մեր, և իբրեւ զկայծակն՝ բանն ի շարժման սրտի մերոյ։ Ցորոյ ի շիջանելն՝ մոխիր լինի մարմինն. և ոգին սփռի իբրեւ զօդ թոյլ։ Եւ անուն մեր մոռասցի ժամանակաւ. և ոչ ոք յիշատակեսցէ զգործս մեր. և անցցեն կեանք մեր իբրեւ զհետս ամպոյ. և իբրեւ զշամանդաղ ցրուեսցին հալածեալք ի ճառագայթից արեգական. և ի տապոյ նր՟ ծանրացեալք։ Զի անցք ստուերի են կեանք մեր. և չիք խափան վախճանի մարդոյ. զի կնքեցաւ, և ոչ ոք է որ դարձուցանէ։ Արդ՝ եկայք և վայելեսցուք ի բարութիս՝ որ կան. և վարեսցուք արարածովքս՝ զբաղեալք իբրեւ ի մանկութե՟։ Պէսպէս գինեօք և անոյշ իւղովք լցցուք. մի անցցէ առ մեօք ծաղիկ գարնայնոյ։ Բոլորիւք վարդից պսակեսցուք՝ մինչ չեւ թառամեալ իցեն։ Մի ոք ամենեւին անմասն լիցի ի մեծ ուրախութենէս մերմէ։ Յամ՟ տեղիս թողցուք զնշանակ ուրախութեան, զի այն է բաժին մեր, և սոյն վիճակ։ Բռնադատեսցուք զաղքատն անիրաւութ՟բ. մի խնայեսցուք յայրին. մի խորշեսցուք ի բազմաժամանակեայ ալեաց ծերոյն։ Եւ օրէնս արդարութե՟ բռնութե՟ մեր եղիցի, զի տկարութի՟ անպիտան յանդիմանի։ Դարանակալ լիցուք արդարոյն, զի դժպհի եղեւ մեզ. և հակառակ կայ գործոց մերոց. և նախատինս դնէ մեզ զյանցանս օրինացն. և բամբասէ զմեզ մեղօք մանկութե՟ մերոյ։ Խոստանայ ունել զգիտութի՟ Այ՟. և Որդի Այ՟ զանձն իւր անուանէ։ Եւ եղեւ յանդիմանութի՟ մտաց մերոց։ Ծանր է մեզ և տեսանել զնա՝ զի աննման են այլոց կեանք նր՟, և այլազգի շաւիղք նր՟։ Ի գարշութի՟ համարեցաք նմա և խորշի ի ճանապարհաց մերոց՝ ոպ՟ ի պղծութեց՟. երանէ զվախճան արդարոց, և հպարտացեալ կոչէ հայր զԱծ՟։

Տեսցուք թէ ճշմարիտ իցեն բանք նր̃. և փորձեսցուք զվախճան նորա։ Եթէ իցէ արդարև Որդի Աստուծոյ՝ պաշտպանեսցէ նմա. և փրկեսցէ զնա Աստուած ի ձեռաց հակառակորդաց։ Թշնամանօք և գանիւք խոշտանգեսցուք զնա, զի զչափ առցուք հեզութեան նորա, և խելամուտ լիցուք անոխակալութեան նորա։ Մահու խայտառակութեան դատեսցուք զնա. եթէ լինիցի՞ այցելութիւն նմա ի բանից իւրոց։ Զայս խորհեցան և խաբեցան. զի կուրացոյց զնոսա չարութիւն իւրեանց։ Եւ ոչ ծանեան զխորհուրդս Աստուծոյ, և ոչ վարձուց ակն կալան սրբութեան. և ոչ ընտրեցին զպատիւ ոգւոց անարատից։ 22։

Ընթերցուածս ի Զաքարեայ մարգարէէ։ ԺԲ. 8։

Նյւ եղիցի յաւուր յայնմիկ պաշտպանեսցէ Տէր ա̃մ բնակչացն Երուսաղեմի. և եղիցի՝ որ տկարն իցէ ի նոսա յաւուր յայնմիկ՝ իբրև զԴաւիթ. և տունն Դաւթի իբրև զտունն Ա̃Յ՝ իբրև զհրեշտակ Տն̃ն առաջի նց̃։ Եւ եղիցի յաւուր յայնմիկ՝ խնդրեցից բառնալ զա̃մ ազգս եկեալս ի վր̃ Եր̃եմի։ Եւ հեղից ի վր̃ տանն Դաւթի և ի վր̃ բնակչաց Եր̃եմի հոգի շնորհաց և գթութե̃։ Եւ հայեսցին առ իս փոխանակ կաքաւելոյն. և կոծեսցին ի վերայ նորա կոծ իբրև ի վերայ սիրելոյ. և աշխարհեսցեն աշխար իբրև ի վր̃ անդրանկան։ Յաւուր յայնմիկ սաստկասցի կոծ յԵր̃եմ. իբրև զկոծ նռնենեաց կոտորելոց ի դաշտի։ Եւ կոծեսցի երկիր ըստ ազգս ազգաց առանձինն։ Ազգ տանն Դաւթի առանձինն, և կանայք նց̃ առանձինն. ազգ տանն Նաթանայ առանձինն, և կանայք նց̃ առանձինն. ազգ տանն Ղեւեայ առանձինն, և կանայք նց̃ առանձինն. ազգ տանն Շմաւոնի առանձինն, և կանայք նց̃ առանձինն։ Ամենայն ազգք մնացեալք առանձինն, և կանայք նոցա առանձինն։ 14։

Պետրոսի առաքելոյն ի կաթուղիկեայց առաջին թղթոյն է ընթերցուած: Գ. 17:

Զի լաւ է բարեգործաց, եթէ կամիցին ըստ Այ կամացն չարչարել՝ քան չարագործացն. զի և Քս մի անգամ վս մեղաց ի վր ձեր մեռաւ, արդարն ի վր անարդարոց, զի զձեզ մերձեցուսցէ առ Աճ. թէպէտ և մեռաւ մարմնով, այլ կենդանի է Հոգւով: Որով և ոգւոցն՝ որ էին ի բանտին, երթեալ քարոզեաց՝ երբեմն ապստամբելոցն, յորժամ Ներէր նոցա Աստուծոյ երկայնմտութիւնն յաւուրս Նոյի, յորս տապանն կազմէր. յոր նուազունք, այս ինքն՝ ոգիք իբրեւ ութ ապրեցան ի ջրոյն: 20:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք. առաւօտուց եղիցի ուրախութիւն:

Զնէ՝ Ո՛րթի՛ւ:

Աւետարան ըստ Մատթէոսի: ԻԷ: 57:

Վասն թաղման Տեառն մերոյ Յնի Քնի:

Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ, որում անուն էր Յովսէփ, որ և աշակերտեցաւ իսկ Յնի: Սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յնի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն: Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց նբ կտաւովք, և եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի. և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց: Անդ էր Մարիամ Մագդաղենացի և միւս Մարիամն, նստէին հանդէպ գերեզմանին: 61:

Զնէ՝

Մ՛թ Աճ՛, ն՛բ և հըզօ՛ր, ն՛բ և անմահ. ողո՛րմեա՛ մե՛զ:

Եւ ապա նախատօնակ ասա, զի Ննջումն Տեառն է. ասելով

Շարական Բ2:

Պարգեւատուն ամենեցուն. Տես խոր աւուրն. 435:

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո է Տէ–։ Աղօթք. Քում ամենազօր և հրաշալի թաղմանդ։

Եւ դնեն զսուրբ խաչն եւ զաւետարանն ի բարձրոցի կամ ի վերայ գերեզմանի, պատեալ սպիտակ պատարագակալաւ ի խորհուրդ պատանաց Քրիստոսի։ Եւ երկրպագեն եւ համբուրեն միաբան ամենեքեան զսուրբ խաչն։ Եւ պար առեալ ասեն

Շարական ԲԿ։

Խաչի քո Քրիստոս երկիր պագանեմք. եւ որ է կարգին. 385։

Ապա ասէ տաղ ողբոյն. Աստուածին կոյսն Մարիամ։

Զկնի՝ Քրոզ. Մեծ խաչիւս։ Աղօթք. Պահպանեա զմեզ։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։

Եւ արձակին խաղաղութեամբ։



# ԱՒԱԳ ՇԱԲԱԹ, ԴԿ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

Վառեն լոյս յառաջ խորանն միայն։ Կանոնագլուխ ԴԿ. Զմահու Դաւթեայն սաղ. Դատեա Տէր զայնոսիկ։

Օրհնութիւն ԲՁ։

Պարգեւատուն ամենեցուն այսօր. խնդրէր պարգեւս ի Պիղատոսէ. և արկողն ըզլոյս որպէս զօթոց հաւանի պատիւ ի Յովսէփայ։ Կենդանատուն ամենեցուն այսօր. դնի ի նոր գերեզմանի. և գանձն անմահութեան կնքի մատանեաւ քահանայից։ Արարածոց փրկութիւն Քրիստոս այսօր. եդաւ ի նորափոր վիմի. զոր օրհնեն զօրք երկնից երգով պահպանի ի զինուորաց։

† Կենդանին յաւիտենից Քրիստոս այսօր. խնդրի ոչ մեռեալ ի Պիղատոսէ. և մերկութեան ծածկոյթն Ադա–

մայ յանձն առնու պատիւ ի Յովսէփայ։ Անմահու-
թեանց տուող Քն այսօր. ի հող մահու խոնարհեցաւ.
և բնակեալն ի լոյս յանմատոյց թաղեցաւ մարմնով
ի սիրտ երկրի։ Արեգակն արդարութե Քրիստոս այս-
օր. եդաւ ի գբի ստուերականի. և փառացըն հօր
ճառագայթ ծածկեցաւ վիմով ի մէջ երկրի։

† Աուսածին մարմնով Քրիստոս այսօր. դընի ի կոյս
գերեզմանի. և լուծիչն երկանց դժոխոց մատանեաւ
կնքի քահանայից։ Արթուն բնութք արարիչն ամե-
նեցուն այսօր. ննջէ ի մէջ մահացելոց. որ պահէ
զիսրայէլ անքուն պահպանի ի զինուորացն։

Որ թագաւորդ ես թագաւորաց Քս. ի ծառայէ դա-
տապարտեալ համբերելով վասըն մեր. երկայնամիտ
Տէր քեզ փառք։ Որ պատուական խաչիւըդ քո
Քրիստոս. և նոքօք արեանըդ քո հեղմամբ կեցուցանել ըզ-
մեզ կամեցար. երկայնամիտ Տէր քեզ փառք։ Որ
մարդասիրապէս վասն ամենեցուն ամենայնի համբե-
րեցեր եւ ի մահու ըզմահ կոխեցեր. երկայնամիտ
Տէր քեզ փառք։

Արծաթսիրութեամբըն մոլեալ Յուդա. զիւր ըզմեծ
ըզվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հրէիցըն
մատնէր։ Ընդ որում ես համբուրեցից ասէ ըզնա
կալարուք. ով համբոյր նենգութեան նշան եւ ա-
ռիթ մահու։ Մերկացաւ յինքենէ զածային նոր հո-
գին. և ըզգեցաւ ըզսատանայ որպէս զհանդերձ ար-
կաւ զիւրեաւ։

Որ նըստիս ի քրովբէս Աըծ Բանդ. այսօր վասըն
մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձիթենեաց.
* օրհնեմք ըզքեզ անդադար երգով։ Որ համագոյ
ես խորհըրդոցըդ հայրենի. աշակերտաց քոց ծանու-

ցեր ըզխորհուրդ քոյ գալըստեանն. օրհնեմք։ Որ ամենայնից ես արարիչ և ըստեղծիչ կենդանութեն. այսօր ըզծածկեալ խորհուրդ Երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սըրբոյ քո. օրհնեմք։

ՀՈԳ. Նոյն և նըման Հօր և Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բըղխումըն Հօր անքըննաբար առող յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց առաքելոց. արբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեն։ Էից ստեղծող արարածոց որ շըրջէիր ի վեր ջրոց. նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. գըգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս ծծակերպ. արբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեն։ Բաժնուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և առաքեալս ի ձըկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քարոզ բանի քում զհալածողս. արբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։

ՆՆՉ. Ի ձայն փողոյ գալըստեան քո Տէր ամ հոգիք զարթիցեն կալ ի դատաստանի քում Քս Ած մեր։ Յորժամ հընչէ բարբառն ահագին. և հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմքը փառըք գալըստեան քո Տէր։ Յորժամ առնես հատուցումըն Տր. և սուրբըք քո պարծեսցին ի քեզ. եւ մեզ շնորհեսցես փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ։

ԱՓՆ։ Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց. ձայնիւ երգով գոչեն և աղաղակեն Աստուած աստուծոց և Տէր տերանց փըրկիչ գոլով։ Առաքեցեր զքո միածինըդ մարմնանալ ի սբ կուսէն. եւ անարատ ծընանել յու-

րովայնէ ա՛նապական. բա՛ռնալով ըզմեր նեղութիւնս. Ա՛ստուած ա՛ստուծոց և Տէր տե՛րանց փրկի՛չ գոլով։ Շնո՛րհք բա՛րի յԵ՛րուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց. զի արարի՛չն յաւիտենից տըղայ ե՛ղեալ յօրդէգրութի՟ կե՛նաց կոչէ. Ա՛ստուած ա՛ստուծոց և Տէր տե՛րանց փրկի՛չ գոլով։

Խչ։ Ընդ թաղումն քո յերկրի՛ երկիրս երկինք անուանեցաւ. Նախահայրըն մեր Ադամ վերըստին նորոգեցաւ. աղաչեմք սովաւ փրկի՛չ պահպանեա զանձինըս մեր։ Թագաւորն արարածոց. բազկատարած կայր ի խաչին. վս՟ Ադամայ նախաստեղծին ճաշակման որ ի դրախտին. աղաչեմք սովաւ փրկի՛չ պահպանեա զանձինըս մեր։ Փառք Հօր։ Ժամըն տիւ եղեւ գիշեր. Տէրն ի խաչին բեւեռեցաւ. գեղարդեամբըն խոցեցաւ. ի հող մահու խոնարհեցաւ. աղաչեմք սովաւ փրկի՛չ պահպանեա զանձինըս մեր։

Այժմ և միշտ։ Ցընծութիւն արարածոց ք՟ն այսօր. արտասուի ոչ մեռեալ ի տրտմազգեցից. և բուրումն անմահութե՟ խընկի ի զգաստից իւղաբերից։

Մաղթանք. Փառք հրաշափառ թաղման քոյ Տէր։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Եդին զիս ի գբի ներքնում. ի խաւարի և ի ստուերս մահու։ Ցիս հաստատեցաւ սրտմըտութիւն քո. զա՟մ զբօսանըս քո ածեր ի վերայ իմ։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Փ. Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի. և ի մեռեալս ազատ։ Որպէս վիրաւորս. որք ննջեն ի գերեզմանի։

Փառք և։ Այժմ և. ալէլուիա։

---

## ՅԱՐԱՒՕՏՈՒՆ

Հարց Գ Զ. Ղոր ձեռնձգեցին տաղ ցած:

Օ քեզ օրհնեմք Թագաւոր յաւիտենից անմահ. Աստուածդ հարցն մերոց: Զոր ոչ բնութիւնք արարածոց զԱստուած տանէին. մահուամբ սահմանեալ դնէր ի նոր գերեզմանի. նոր զիս ընդունելով մարմնոյդ. գովեմք զքեզ Տէր հարցն մերոց: Որ անփակ գրով հաստատեալ քարտէս. կնքի մատանեաւ անկորուստ պահելով ընդմէջ հաւատով Երրորդութեամբդ. գովեմք զքեզ Տէր հարցն մերոց:

Գ. Ըզտէր օրհնեսցէք. և բարձր արարէք զնա յաւիտեան: Փառք Հօր: Օրհնեսցէք. Զքեզ Թագաւորն յիմանալի զօրացն ահիւ պատուեալ. եւ բարձր արարէք զնա յաւիտեան: Այժմ և: Օրհնեսցէ. Զանյաղթելի զԹագաւորն որ պահի ի զինուորաց գանձն անմահութեան. եւ բարձր արարէք զնա յաւիտեան:

Մեծաց. Գ Զ: Ըստ ածին երկնային դուռն ծածկին ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ: Փառք Հօր: Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակել հաճեցաւ ի քում յորովայնի. ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ: Այժմ և: Որ բոցեղէն սրովբէիւք շրջափակեալ պահիւր. այսօր ի մէջ մարդկան ի գիրկս հողեղինի յայտնեցաւ. ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ:

Ողորմ. Գ Զ: Որ բաշխողդ ես բարութեանց եւ պարգևատու արարածոց քոց. այսօր հաճեցար խոնարհիլ ի պարգևել մասին ի Պիղատոսէ. զի և մեզ շնորհեսցես պարգևս ողորմութեան քո: Փառք Հօր:

Որ զանձամբ ըզլոյս փառաց իբրեւ զօթոց ըզգեւ արկեր այսօր անձամբ խոնարհութեամբ պատեցար ի Յովսէփայ ի գերեզմանի տուքնեալ. զի ըզհնութիւն մեղաց մերոց նորոգեսցես ի կեանս անմահս։ Այժմ և միշտ։ Որ յէութեանդ ես ընդ Հօր անպարագրելի բանդ. այսօր մատանեալ քահանայիցըն պարագրիլ ի յանձն առեր անկողոպտելի գանձ. զի ըզմեզ փրկեսցես ի յանցանաց մեղաց մերոց։

Տէրյերկն. ԳՁ։ Յովսէփ ճշմարիտ եւ արդար հայցէր ի Պիղատոսէ զհասարակաց ըզպարգեւատուն. որ տուաւ մեզ գանձ անկողոպտելի։ Փառք Հօր։ Պատեաց ն՝բ կտաւովք զմարմինըն տէրունական զարկողն ըզլոյս որպէս զօթոց. որ զգեցուցէ մեզ ըզգեստ անկողոպտելի։ Այժմ և միշտ։ Եդաւ ի նորափոր ի վիմի և մատանեալ կնքեցաւ. որ զնախաստեղծըն կենդանացոյց. եւ զմարդկան կապանըս մահու եղծ։

Առաւ. Երգ։ Եդին զիս ի գբի ներքնում. ի խաւարի եւ ի ստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ. սրտմտութիւն քո. զամենայն զբօսանըս քո ածեր ի վերայ իմ։

Քարոզ. փառաւորեսցուք. կամ գանձ։

Մանկունք. Դկ. ՍՏ։ Յովսէփ քեզ հաւատացեալ Պիղատոսի աղերսէր. շնորհել զտէրունեանդ մարմին։ Փառք Հօր և։ Զանապական զաստուածացեալ մարմինդ պատեալ սուրբ կտաւովք. եւ եդ ի գերեզմանի։ Այժմ և միշտ։ Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի քերովբէս. վիմով կնքեցար յերկրի։

Քրզ. Վն խաղաղութեան։ Աղ. Սբ ես Տէր։

Եւ ապա ասեն սաղմոսն Սաղմոս ՁԷ. ողբաձայն յարեանն է վերայ սաղմոսարանի, միաբան զփոխն է ըման։

48. Եդին զիս ի գբի։ ներքնոմմմ–մմմ–մմմ–մմումն. ի խաւարի եւ ի ստուերս մահհոմմու։

Փխ. Տէր Ած փրկութեան իմոմմյ. ի տուէ՛ոյ. կարդացի եւ գիշերի առաւ.մջի քո։ ոմմ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր. խոնարհեսցի ունկն քո ի խնդրուածս իմ։

Զի լցաւ չարչարանօք անձն իմ. և կեանք իմ ի դժոխս մերձեցան. և համարեցայ ես ընդ այնոսիկ որ իջանեն ի գուբ։

Եղէ.ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Որպէս վիրաւորս որ ննջեն ի գերեզմանս։

Զորս դու ոչ յիշեցեր. նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնում, ի խաւարի և ի ստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո. զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նշաւակ իւրեանց։

Մատնեցայ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ Տէր զօրհանապազ. և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Մի թէ մեռելոց առնիցես սքանչելիս. կամ բժիշկք յարուցանիցեն, խոստովան առնիցեն առ քեզ։

Մի թէ պատմեսցէ՞ ոք երբեք ի գերեզմանի ողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան։

Մի՛ թէ ճանաչիցի՞ն ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկիր մոռացեալ։

Ես առ քեզ Տէր աղաղակեցի. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։

Ընդէ՞ր Տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն,

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմմէ. ի բարձրութենէ խոնարհեցայ և ապշեցայ։

Ցիս հաստատեցաւ բարկութիւն քո. արհաւիրք քո խռովեցուցին զիս։

Շրջեցան զինեւ ոպ ջուր. զօր ամ պաշարեցին զիս ի միասին։

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ, և զծանօթս իմ վն թշուառութն իմոյ։

Ջնի՝ Ո՛րթիւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ Իէ. 62։

Վասն թաղման Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ ի վաղիւ անդր՝ որ է յետ ուրբաթուն, ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիքն առ Պիղատոս, և ասեն. տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր՝ մինչ կենդանին էր, թէ յետ երից աւուրց յառնեմ։ Արդ՝ հրամայեա զգուշանալ գերեզմանին մինչեւ ցերիս աւուրս, գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա, և ասիցեն ժողովրդեանն, թէ յարեաւ ի մեռելոց. և լինիցի յետին մոլորութին չար քան զառաջինն։ Ասէ ցնս Պիղատոս. ունիք զզօրականն, երթա՛յք զգուշացարո՛ւք ոպ և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին, և կնքեցին զվէմն համդերձ զօրականօքն։ 66։

Եւկ. Տէրն յետ ստեղծման։

Քարոզ. Խնդրեսցուք։ Կեցո Տէր։ Աղօթք. Քում ամենազօր և հրաշալի թաղմանդ։

Եթէ կամիս՝ տաղ Եւս ասա Նաղման։

Եւ դնեն զսուրբ խաչն յատեան, պատեալ ազնուական պաստառակալաւ: Եւ երկրպագեն եւ համբուրեն զսուրբ խաչն եւ զաւետարանն: Եւ ասեն

Շարական ԲԿ:

Խաչի քո Քս երկիր պագանեմք. Եւ որ է կարգն. 385:

Քարոզ. Սբ խաչիւս: Աղօթ. Պահպանեա:

---

## ՑԵՐԵԿՈՅԻ

Ճրագալոյցն սուրբ Զատկին՝ յետ ժամն ժողովին ի սուրբ մատրանն, եւ լուցանեն երեք կանթեղս: Եւ ասեն զՃաշու ժամն. եւ Նշխար գործի: Իսկ Խոնարհեցո եւ Ապրեցո ոչ գոյ: Այլ զկնի ճաշոյն սկսանի եպիսկոպոսն կամ աւագերէցն յաջակողմեան դասէն բարձր ձայնիւ

Սաղմոս ՃԺԲ:

ԿՑ. Եղիցի անուն Տն օրհնեալ. յայսմհետէ մինչեւ յաւիտեան:

Փխ. Օրհնեցէք մանկունք զՏէր. և օրհնեցէք զանուն Տեառն:

Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայսմհետէ մինչեւ յաւիտեան:

Յարեւելից մինչեւ ի մուտս արեւու օրհնեալ է անուն Տեառն:

Բարձր է ի վերայ ամենայն ազգաց Տէր. և յերկինս են փառք նորա:

Ո՞վ է որպէս Տէր Աձ մեր ի բարձունս բնակեալ, և զխոնարհս տեսանէ յերկինս և յերկրի:

Յարուցանէ զաղքատս յերկրէ. և բարձր առնէ զտառապեալս յաղբեւաց:

Նստուցանէ զնոսա իշխանս. ընդ իշխանս ժողովրդեան իւրոյ:

Բնակեցուցանէ զամուլն ի տան ուրախամիտ, որպէս մայր որդւովք բերկրեալ:

Ձնի՝ Շարական ԳՁ:

Այսօր ա̃ծութիւնն զուարճանայ նոր հաստատելով զերկիր. պարեք սուրբք փառաբանեն զուարթնոց. եւ մեք ձայնիւ օրհնութե̃ զարդարեսցուք սուրբ ըզտօնս: Այսօր եւ մեք ցընծամք տօնիւս ընդհանուր հնչմամբ. մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի. առ Ա̃ծ գոհութիւնք ընթանան. պատմեն անդադար զբան կենդանի: Խնդա եւ զուարճացիր եկեղեցի. կոյս սբ̃ եւ հարսն երկնաւոր փեսայի. ահա տեսանեմք զօծեալն ըզՔրիստոս. գոլով առ քեզ լոյսըն հեթանոսաց:

Ալէլուիա. ալէլուիա: Եւ եւս խաղաղութե̃ զՏէր աղ:

Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւ:

Սաղմոս ՃԺԷ:

ԿՑ. Այս օր է զոր արար Տէր. եկայք ցնծասցուք եւ ուրախ եղիցուք ի սմա:

Փխ. Խոստովան եղերուք Տն̃, զի բարի է. զի յաւիտեան է ողորմութի̃ նորա:

Ասասցէ տունն Իէլի. զի յաւիտեան է ողորմութի̃ նր̃:

Ասասցէ տունն Ահարովնի. զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Ասասցեն երկիւղածք Տեառն. զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Ի նեղութե̃ իմում ես առ Տէր կարդացի. եւ լուաւ ինձ յանդորր:

Տէր է իմ օգնական, եւ ես ոչ երկեայց. զի՞ արասցէ ինձ մարդ:

Տէր է իմ օգնական, եւ ես տեսից ի թշնամիս իմ:

Բարի է յուսալ ի Տէր՝ քան յուսալ ի մարդիկ. բարի է յուսալ ի Տէր՝ քան յուսալ յիշխանս:

Ամենայն ազինք շրջեցան զինեւ. եւ անուամբ Տեառն յաղթեցի նոցա:

Շրջելով շրջեցան զինեւ, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տ՟ն վանեցի զնոսա։

Շուրջ եղեն զինեւ ոպ՟ մեղուք. վառեցան բորբոքեցան ոպ՟ փուշք ի հուր. և անուամբ Տ՟ն մերժեցի զն՟ս։

Ի մերժելն դրդուեցայ, և եղէ մերձ ի գլորել. և Տէր ընկալաւ զիս։

Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տ՟ր. և եղեւ ինձ ի փրկութիւն։

Ձայն ցնծութե՟ փրկութե՟ ի յարկս արդարոց։

Աջ Տեառն արար զօրութի՟. աջ Տեառն բարձր արար զիս. և աջ Տեառն արար զօրութիւն։

Ոչ մեռայց, այլ կեցից. և պատմեցից զգործս Տ՟ն։

Խրատելով խրատեաց զիս Տէր. և ի մահ ոչ մատնեաց։

Բացէք ինձ զդրունս արդարութե՟. զի մտից ընդ այն և խոստովան եղէց Տեառն։

Այս դուռն Տ՟ն է. և արդարք մտանեն ընդ սա։

Խոստովան եղէց քեզ Տէր, զի լուար ինձ, և եղեր ինձ ի փրկութիւն։

Վէմն զոր անարգեցին շինողքն՝ նա եղեւ գլուխ անկեան։

Ի Տեառնէ եղեւ այս. և է սքանչելի յաչս մեր։

Այս օր է զոր արար Տէր. եկա՛յք ցնծասցուք և ուրախ եղիցուք ի սմա։

Ո՛ Տէր փրկեա՛, ո՛ Տէր առաջնորդեա՛. օրհնեալ որ գալոց ես անուամբ Տեառն. և օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն։

Տէր Ա՟Ծ մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչեւ յանկիւնս սեղանոյ։

Ա՟Ծ իմ ես դու, և խոստովան եղէց քեզ. Ա՟Ծ իմ ես դու, և բարձր արարից զքեզ։

Խոստովան եղէց քեզ Տէր՝ զի լուար ինձ, և եղեր ինձ ի փրկութիւն։

խոստովան եղերուք Տեառն, զի բարի է. զի յաւիտեան և ողորմութիւն Նորա։

Ապա ընթեռնուն շուրջանակ երկոտասան ընթերցուածս։

Ա. Ընթերցուածս ի Ծննդոց։ Ա. 1։

Ի սկզբանէ արար Աստուած. Տե. է 207։
Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Եւ ետս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Բ. Ընթերցուածս ի Ծննդոց։ ԻԲ. 1։

Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ. Տե. 305։
Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Եւ ետս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Գ. Ընթերցուածս յԵլից։ ԺԲ. 1։

Եւ խօսեցաւ Տէր ընդ Մովսէսի և ընդ Ահարոնի յերկրին Եգիպտացւոց, և ասէ։ Ամիսս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց. առաջին եղիցի ձեզ յամիսս տարւոյ։ Խօսեաց ընդ ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրայէլի և ասասցես. ի տասներորդում ամսեանս այսորիկ առցեն իւրեանց իւրաքանչիւր ոչխար ըստ տունս ազգացն, ոչխար ըստ երդ։ Եւ եթէ սակաւք իցեն ի տանն, որպէս թէ չիցեն բաւական լինել ոչխարին, առցէ ընդ իւր զդրացի իւր և զընկեր իւր ըստ մարդաթուի՝ իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում համարեսցի յոչխարն։ Ոչխար կատարեալ՝ արու, տարեւոր, անարատ լիցի ձեզ. յօդեաց և յայծեաց առնուցուք։ Եւ եղիցի ձեզ պահել մինչեւ ի չորս և ի տասն աւուր ամսոյս այսորիկ. և զենցեն զնա ամենայն բազմութիւն ժողովրդեան որդւոցն Իսրայէլի ընդ երեկս։ Եւ առցեն յարենէ անտի, և դիցեն ի վերայ երկուց սեմոցն և բարաւորի տանցն, յորս ուտիցեն զնա ի նոսա։ Եւ կերիցեն զմիսն ի գիշերիս յայսմիկ

խորովեալ հրով։ Բաղարջ ընդ եղեգի կերիցեն։ Եւ ոչ ուտիցէք ի նոցանէ հում. և ոչ պախ եփեալ ջրով՝ այլ խորովեալ հրով, զգլուխն ոտիւքն հանդերձ և զփորոտին նորա։ Եւ ոչ թողուցուք ի նմանէ յայգ. և ոսկր մի՛ բեկանիցէք ի նմանէ. և որ ինչ մնայցէ ի նմանէ յայգ՝ հրով այրեսջիք։ Եւ այսպէս ուտիցէք. գօտիք ձեր ընդ մէջս, և կօշիկք ձեր յոտս, և ցուպ ձեր ի ձեռին. փութանակի ուտիցէք, զի զատիկ Տ̃ն է։ Եւ անցից ընդ ա̃մ երկիրդ Եգիպտացւոց ի գիշերիս յայսմիկ, և հարից զա̃մ անդրանիկ երկրիդ Եգիպտացւոց ի մարդոյ մինչեւ յանասուն, և յա̃մ դիսն Եգիպտացւոց արարից վրէժխնդրութի̃. զի ես եմ Տէր։ Եւ եղիցի ձեզ արիւնդ նշանակեալ ի վ̃ր տանց՝ յորս իցէք դուք անդ։ Եւ տեսից զարիւնդ, և ապրեցուցից զձեզ. և ոչ լինիցին ի ձեզ հարուածք ի սատակել, յորժամ հարկանիցեմ յերկրիդ Եգիպտացւոց։ Եւ եղիցի ձեզ արիւնդ այդ ի յիշատակ, և տօնիցէք զդա տօն Տեառն յազգս ձեր. օրէն յաւիտենական տօնիցէք զդա։ Զեօթն օր բաղարջ ուտիցէք. յառաջնմէ իսկ օրէ անտի անհետ առնիջիք զխմոր ի տանց ձերոց. ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն այն յԻսրայէլէ։ Յառաջնմէ օրէ անտի մինչեւ ցօրն եօթներորդ նուիրեալ եղիցի ձեզ սուրբ. զամենայն գործ սպասու մի՛ գործիցէք ի նմա, բայց միայն որ գործիցի ամենայն անձին՝ այն միայն գործեսցի ձեզ։ Եւ պահեսջիք զպատուիրանս զայս, զի յաւուր յայսմիկ հանից զզօրութիւն ձեր յերկրէս Եգիպտացւոց. և առնիցէք զօրս զայս յազգս ձեր օրէն յաւիտենական։ Ի սկսանել չորեքտասաներորդի աւուր ամսոյն առաջնոյ՝ յերեկորեայ բաղարջ ուտիցէք, մինչեւ ցքսան և մի օր ամսոյն ցերեկոյ։ Զեօթն օր մի՛ գտցի խմոր ի տունս ձեր. ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն այն ի ժողովրդենէ Իէ̃լի, յեկաց և ի բնակաց երկրին։ Խմորեալ

մի՛ ուտիցէք. յամ բնակութեն ձերում ուտիցէք բաղարջ: Եւ կոչեաց Մովսէս զամ ծերակոյտ որդւոցն Իսրլի, և ասէ ցնոսա. երթայք առէք ձեզ ոչխար ըստ ազգաց ձերոց, և զենջիք ի զատիկ: Եւ առնացուք մշտիկ զոպայի թաթաւեալ յարեան՝ որ առ դրօքն իցէ, և սրսկեսջիք զբարաւորան և զերկոքումբք սեմովքն յարենէ անտի որ առ դրօքն. բայց դուք մի՛ ելանիցէք իւրաքանչիւր ըստ դուռն տան իւրոյ մինչև ցառաւօտ: Եւ անցցէ Տէր հարկանել զԵգիպտացիսդ, և տեսանիցէ զարիւնն որ ի վր բարաւորին և ի վր երկուց սեմոց, և զանց առնիցէ Տէր զդրօքն, և ոչ տայցէ թոյլ սատակչին մտանել ի տունս ձեր և հարկանել: Եւ պահեսջիք զբանս զայս՝ օրէն քեզ և որդւոց քոց մինչև ցյաւիտեան: 24:

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա: Երէ+ անգամ կրկնեա:

Եւ եւս խաղաղութն: Օրհնութի և փառք:

Դ. ընթերցուածս ի Յովնանու մարգարէէ: Ա. 1:

Եւ եղև բան Տն առ Յովնան որդի Ամաթեայ, և ասէ. Արի և գնա ի Նինուէ քաղաք մեծ. և քարոզեսջիր անդ, զի ել աղաղակ չարութե նր առ իս: Եւ յարեաւ Յովնան փախչել ի Թարսիս յերեսաց Տն. էջ ի Յոպպէ, և եգիտ նաւ որ երթայր ի Թարսիս. ետ գինս և եմուտ ի նաւ նաւել ընդ նս ի Թարսիս յերեսաց Տն: Եւ Տէր յարոյց հողմ ի ծովուն, և եղև մրրիկ մեծ ի ծովուն. և նաւն ի վտանգի կայր ի խորտակել: Եւ երկեան նաւավարքն երկիւղ մեծ. և աղաղակէին առ իւրաքանչիւր ածս իւր. և ընկեցին զկարասին որ էր ի նաւին՝ ի ծով անդր, զի թեթևացուսցեն յինքեանց: Եւ Յովնան իջեալ ի խորշ մի նաւին՝ ննջէր և խորդայր: Մատեաւ առ նա նաւապետն և ասէ. զի՞նչ է այդ՝ զի խորդաս. արի՛, կարդա՛ զՏր Ա-

տուած քո, Թերեւս ապրեցուսցէ զմեզ Աստուած, և
մի կորիցուք։ Եւ ասեն իւրաքանչիւր ցընկեր իւր. ե-
կայք արկցուք վիճակս և տեսցուք վասն ո՞յր են չա-
րիքս այս ի վերայ մեր։ Արկին վիճակս, և ել վիճակն
Յովնանու։ Եւ ասեն ցնա. պատմեա մեզ, վասն է՞ր են
չարիքս այս մեզ. զի՞նչ արուեստ է քո. ուստի՞ գաս կամ
յո՞ երթաս. յորմէ՛ աշխարհէ ես կամ յորմէ՛ ժողո-
վըրդենէ. Ասէ ցնոսա. ծառա՛յ Տեառն եմ ես, և զՏէր
Ած երկնից պաշտեմ, որ արար զծով և զցամաք։ Եւ
երկեան արքն երկիւղ մեծ, և ասեն ցնա. զի՞նչ գործե-
ցեր զայդ. զի գիտացին եթէ յերեսաց Տեառն փա-
խուցեալ էր, քանզի պատմեաց նոցա։ Եւ ասեն ցնա.
զի՞նչ արասցուք քեզ, և դադարեսցէ ծովս ի մէնջ.
զի ծովն առաւել եւս խռովեալ էր և յարուցանէր
մրրիկ ի վր նց։ Եւ ասէ ցնս Յովնան. առէք ընկեցէք
զիս ի ծովդ, և դադարեսցէ ի ձէնջ ծովդ. զի գիտեմ
ես՝ եթէ վս իմ է մրրիկս այս մեծ ի վր ձեր։ Եւ ջա-
նային արքն դարձուցանել զնաւն ի ցամաք, և ոչ կա-
րէին. զի ծովն եւս քան զեւս խռովէր և սաստկանայր
ի վր նց։ Աղաղակեցին առ Տէր և ասեն. քա՛ւ լիցի
Տէր, մի՛ կորիցուք վս անձին առնս այսորիկ. մի՛ ածեր
ի վերայ մեր արիւն արդար. զի դու Տէր ոչ կամեցար՝
և արարեր։ Եւ առին զՅովնան և ընկեցին ի ծովն. և
դադարեաց ծովն ի խռովութե իւրմէ։ Եւ երկեան արքն
երկիւղ մեծ ի Տեառնէ. զենին զոհս Տեառն և ուխ-
տեցին ուխտս։ Եւ հրաման ետ Տէր կիտին մեծի կլա-
նել զՅովնան. և էր Յովնան ի փոր կիտին զերիս տիւս
և զերիս գիշերս։ Եւ եկաց Յովնան յաղօթս առ Տէր
Ած ի փոր կիտին։ Եւ ասէ. Ի նեղութե իմում աղա-
ղակեցի առ Տէր Ած իմ, և լուաւ ինձ յորովայնէ դժո-
խոց աղաղակի իմում. լո՛ւր Տէր ձայնի իմում։ Ընկեցեր
զիս ի խորս սրտից ծովու. և գետք պաշարեցին զիս.
Ամենայն զբօսանք քո՝ և ալիք քո անցին ի վր իմ։ Եւ

տեսացի՝ թէ մերժեցայ յաչաց քոց. արդ՝ իցէ՞ թէ յաւելից հայել ի տաճար սր̄ քո: Հեղան զինեւ ջուրք մինչեւ յոգիս, անդունդք անհնարինք պաշարեցին զիս: Եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց. իջի յերկիր, որոյ նիգք իւր աղխք յաւիտենից. և ելցեն յապականութե̄ կեանք իմ: Առ քեզ Տէր Ած̄ ի նուաղել հոգւոյ իմոյ կարդացի. զՏէր յիշեցի. և եկեսցեն աղօթք իմ ի տաճար սր̄ քո: Որ պահէին զունայնութի̄ և զսուտութի̄՝ զողորմութի̄ իւրեանց թողին: Այլ ես ի ձայն օրհնութե̄ և խոստովանութե̄ մատուցից քեզ պատարագ, զոր ուխտեցի, և հատուցից փրկութե̄ Տեառն: Եւ հրամայեցաւ ի Տեառնէ վիշապ ձկանն, և եթուք զնա ի ցամաք: Եւ եղեւ բան Տեառն առ Յովնան երկրորդ անգամ, և ասէ: Արի և գնա́ ի Նինուէ քաղաք մեծ, և քարոզեսջիր ի նմա ըստ առաջին քարոզութե̄ն զոր խօսեցայ առ քեզ: Յարեաւ Յովնան և գնաց ի Նինուէ, ոպ̄ խօսեցաւ ընդ նմա Տէր. և Նինուէ էր քաղաք մեծ Այ̄, իբրեւ գնաց երից աւուրց ճանապարհի: Եւ սկսաւ Յովնան մտանել ի քաղաքն իբրեւ աւուր միոյ ճանապարհի. քարոզեաց և ասէ. այլ եւս երեք աւուրք՝ և Նինուէ կործանեսցի: Եւ հաւատացին արքն Նինուէացիք յԱծ̄, և քարոզեցին պահս, և քուրձ զգեցան ի մեծամեծաց մինչեւ ցփոքունս իւրեանց: Եհաս բանն առ թագաւորն Նինուէացւոց. յարեաւ յաթոռոյ իւրմէ, և մերկացաւ զպատմուճան իւր. զգեցաւ քուրձ և նստաւ ի վր̄ մոխրոյ: Եւ քարոզեցաւ ի Նինուէ ի թագաւորէն և ի մեծամեծաց իւրոց. թէ մարդ և անասուն, խաշն և արջառ մի́ ինչ ճաշակեսցեն և մի́ ճարակեսցին, և մի́ ջուր արբցեն: Եւ զգեցան քուրձ մարդ և անասուն. և աղաղակեցին առ Ած̄ սրտի մտօք, և դարձան իւրաքանչիւր ի ճանապարհաց իւրեանց չարաց, և յանիրաւութե̄՝ որ ի ձեռս իւրեանց: Եւ ասեն՝ ո՞ գիտէ՝ ապաշաւեսցէ Ած̄ և դարձցի ի

բարկութենէ սրտմտութեան իւրոյ, և մի՛ կորիցուք։ Եւ ետես Աստուած զգործս նոցա, զի դարձան իւրաքանչիւր ի ճանապարհաց իւրեանց չարաց. և զղջացաւ Աստուած ի վերայ չարեացն՝ զոր խօսեցաւ առնել նոցա, և ոչ արար։ Եւ տրտմեցաւ Յովնան տրտմութիւն մեծ և խռովեցաւ։ Եւ եկաց յաղօթս առ Տէր Աստուած և ասէ. ով Տէր, ո՞չ այս այն բանք են իմ՝ մինչ էի անդէն յերկրին իմում. վասն այնորիկ աճապարեցի փախչել ի Թարշիշ. զի գիտէի՝ թէ ողորմած ես դու և գթած, երկայնամիտ և բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց։ Եւ արդ՝ Տէր Տէր, առ զոգի իմ յինէն. զի լաւ է ինձ մեռանել՝ քան թէ կեալ կենդանի։ Եւ ասէ Տէր ցՅովնան՝ թէ արդարև յո՞յժ տրտմեալ իցես։ Եւ ել Յովնան ի քաղաքէ անտի, և նստաւ յանդիման քաղաքին. և արար իւր հովանի և նստաւ ընդ հովանեաւն՝ մինչև տեսանիցէ, թէ զինչ լինիցի քաղաքին։ Եւ հրաման ետ Աստուած դդմենւոյն. և ել ի վերայ գլխոյն Յովնանու՝ լինել հովանի ի վերայ գլխոյ նորա, զովացուցանել զնա ի տառապանաց իւրոց։ Եւ ուրախ եղև Յովնան ի վերայ դդմենւոյն յուրախութիւն մեծ։ Եւ հրաման ետ Աստուած որդանն առաւօտուն ի վաղիւ անդր, եհար զդդմենին, և ցամաքեցաւ։ Եւ եղև ի ծագել արեւուն՝ հրամայեաց Աստուած հողմոյ խորշակի տապախառնի, և անկաւ արեւն զգլխովն Յովնանու. և կայր ի տարակուսի, և քաղէին ոգիք նորա. և ասէր՝ լաւ էր ինձ մեռանել քան զայս կեանս իմ։ Եւ ասէ Տէր Աստուած ցՅովնան. թէ արդարև յո՞յժ տրտմեալ իցես ի վերայ դդմենւոյն. և ասէ՝ յոյժ տրտմեալ իցեմ մինչև ցմահ։ Եւ ասէ Տէր. դու խնայեցեր ի դդմենին յոր չեղեր ինչ աշխատ և ոչ սնուցեր զնա. որ գիշերի ել և միւս գիշերի կորեաւ։ Ես ո՞չ խնայեցից ի Նինուէ քաղաք մեծ, յորում բնակեալ են աւելի քան զերկոտասան բիւր մարդիկ, որ ոչ ծանեան զաջ և զահեակ իւրեանց. և անասուն բազում։ Դ. 11։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնել։

Եւ ես խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Ե. Ընթերցուածս յԵլից։ ԺԴ. 24։

Եւ եղեւ յառաւօտին պահու հայեցաւ Տէր ի բանակն Եգիպտացւոց սեամբ հրոյ եւ ամպոյ. և խռովեաց զբանակն Եգիպտացւոց։ Եւ կապեաց զանիւս կառաց նց̃. և վարէր զնս̃ բռնութբ̃։ Ասեն Եգիպտացիքն. փախիցուք յերեսաց Իսրայէլի. զի Տէր պատերազմի վս̃ նց̃ ընդ Եգիպտացիսս։ Եւ ասէ Տէր ցՄովսէս. ձգեա զձեռն քո ի վր̃ ծովուդ. և կարկատեսցի անդրէն ջուրդ, և ծածկեսցէ զԵգիպտացիսդ, զկառս դոցա և զհեծեալս իւրեանց։ Եւ ձգեաց Մովսէս զձեռն իւր ի վր̃ ծովուն. և դարձաւ ջուրն ընդ առաւօտն ի տեղի իւր և Եգիպտացիքն փախեան յերեսաց ջրոյն. և թօթափեաց Տէր զԵգիպտացիսն ի մէջ ծովուն։ Եւ դարձուցեալ զջուրսն, ծածկեաց զկառս և զհեծեալս և զա̃մ զօրութիւն փարաւոնի, որ մտեալ էին զհետ նց̃ ի ծով անդր, և ոչ մնաց ի նոցանէ և ոչ մի։ Եւ որդիքն Իսրայէլի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն. և ջուրն պարիսպ էր ընդ աջմէ նոցա և ընդ ահեկէ իւրեանց։ Եւ ապրեցոյց Տէր զԻսրայէլ յաւուր յայնմիկ ի ձեռաց Եգիպտացւոցն։ Եւ ետես Իսրայէլ զԵգիպտացիսն մեռեալս առ ափն ծովուն. և ետես Իսրայէլ զձեռն մեծ զոր արար Տէր ընդ Եգիպտացիսն, և երկեաւ ժողովուրդն ի Տն̃է, և հաւատացին յԱծ̃ և ի Մովսէս ծառայ նր̃։ Յայնժամ երգեաց Մովսէս և որդիքն Իսրայէլի զօրհնութի̃ս զայս Այ̃, և ասեն. Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փառաւորեալ. զերիվարս և զհեծեալս նց̃ ընկէց ի ծով։ Օգնական ընդունելի իմ Տէր, և եղեւ ինձ ի փրկութի̃. սա է իմ Ած̃, և փառաւոր արարից զսա, Ած̃ հօր իմոյ, և բարձր արա-

րից զսա։ Տէր խորտակէ զպատերազմունս, Տէր անուն Նր̅։ Զկառս փարաւոնի և զզօրութիս Նր̅ ընկէց ի ծով. զընտիրս հեծելոց և զսպառազէնս ընկղմեաց ի ծով կարմիր։ Խորք ծածկեցին զնս̅. ընկլան յանդունդս իբրեւ զվէմս։ Աջ քո Տէր փառաւորեալ է զօրութեամբ, աջ քո Տր̅ խորտակեաց զթշնամիս։ Եւ բազմութեամբ փառաց քոց մանրեցեր զհակառակորդս. առաքեցեր զբարկութի̅ քո, և եկեր զնս̅ իբրեւ զեղէգն։ Եւ հողմով սրտմտութե̅ քոյ բաժանեցան ջուրք. պաղեցան ոպ̅ պարիսպ ջուրք. պաղեցան ալիք ի մէջ ծովու։ Ասաց թշնամին, հալածեցից և հասից. բաժանեցից զաւար, և լցուցից ի նոցանէ զանձն իմ. սատակեցից սրով իմով. տիրեսցէ նց̅ ձեռն իմ։ Առաքեցեր զհողմն̅ քո, և ծածկեաց զնս̅ ծով. ընկղմեցան ոպ̅ կապար ի ջուրս սաստիկս։ Ո՞վ իցէ նման քեզ. յա̅ծս, Տէր. և կամ ո՞վ նմանիցէ քեզ, փառաւորեալդ ի սր̅ս սքանչելի փառօք՝ որ առնես զնշանս։ Ձգեցեր զաջ քո, և եկուլ զնս̅ երկիր։ Առաջնորդեցեր արդարութեամբ ժողովրդեան քում, այսմ՝ զոր փրկեցեր. մխիթարեցեր զօրութբ̅ քով ի բանակետղ սրբութե̅ քոյ։ Լուան ազգք և բարկացան. և երկունք կալան զբնակիչս Քանանացւոց։ Յայնժամ տագնապեցան դատաւորք Եդովմայ և իշխանք Մովաբացւոց։ Կալաւ զնս̅ դողումն̅. հալեցան ա̅մ բնակիչք Քանանացւոց։ Անկցի ի վր̅ նց̅ ահ եւ երկիւղ, մեծութբ̅ բազկի քո քարասցին, մինչեւ անցցէ ժողովուրդ քո Տէր, մինչեւ անցցէ ժողովուրդ քո այս՝ զոր ստացար։ Տարեալ տնկեսցես զնս̅ ի լեառն ժառանգութե̅ քո, ի պատրաստութի̅ բնակութեան քո, զոր արարեր Տէր սրբութի̅. Տէր զոր պատրաստեցին ձեռք քո. Տէր թագաւոր յաւիտեան և յաւիտեանս և եւս։ Զի մտին երիվարք փարաւոնի կառօք և հեծելովք Նր̅ ի ծով. և ած ի վր̅ նց̅ Տէր զջուրս ծովուն. և որդիքն Իսրայէլի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն։ Եւ առ Մարի-

ամ մարգարէ քոյր Ահարոնի զթմբուկն ի ձեռս իւր․ և ելին ամ կանայք զհետ նր թմբկօք և պարուք։ Եւ յառաջէր Մարիամ, և ասէր․ օրհնեսցուք զՏէր՝ զի փառօք է փառաւորեալ․ զերիվարս և զհեծեալս ընկէց ի ծով։ Ժբ․ 21։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Եւ եւս խաղաղութն։ Օրհնութի և փառք։

Յորժամ զՕրհնեսցուքն կարդան, եւ զԼուսաւորեայն զփ-ոայեայ հանդերձեալ են կարդալ, յայնժամ լուցանեն ջահս եւ կանթեղս, եւ տան մոմեղէն ի ձեռս ամենեցուն։ Եւ ելանեն մկրտան յաւազանն, եւ երգեն

Շարական Գ2։

Լուսաւորեա Երուսաղէմ զի հասեալ է լոյս քո․ զարդարեա զամուսինս քո․ և փառք Տեառն ի վերայ քո ծագեսցի։ Օրհներգութեամբ սաղմոսիւք քեզ վայելէ Աստուծ օրհնութի ի Սիովնէ․ և քեզ մատուցին աղօթք յԵրուսաղէմ։ Գովեա Երուսաղէմ զՏէր և օրհնեա զԱստուած քո․ ընտիր ժողովուրդ դշխոյ դուստր Սիովնի։

Ձ․ ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ Կ․ 1։

Լուսաւորեաց, լուսաւորեաց Եմ, զի հասեալ է լոյս քո, և փառք Տեառն ի վր քո ծագեսցեն։ Զի ահա խաւար ծածկեաց զերկիր, և մառախուղ՝ զհեթանոսս․ բայց ի քեզ Տէր յայտնեսցի, և փառք նր ի քեզ երեւեսցին։ Եւ գնասցեն թագաւորք ի լոյս քո, և հեթանոսք ի ծագել լուսոյ քոյ։ Համբարձ շուրջ զաչս քո, և տես ժողովեալ առ քեզ զամ մանկունս քո․ զի եկին հասին ի հեռաստանէ որդիք քո․ և դստերք քո ի վր ուսոց նոցա բարձեալ բերիցեն։ Յայնժամ տեսցես և խնդասցես․ երկիցես և զար-

Հուրեսցիս ի սրտի քում. զի փոխեսցի ի քեզ մեծութ̃ի ծովու և ազգաց և ժողովրդոց: Եկեսցեն ի քեզ երամակք ուղտուց. և ծածկեսցեն զքեզ ուղտերամակքն Մադիամու և Գեփայ. ամենեքեան ի Սաբայ եկեսցեն, բերել ոսկի և կնդրուկ և ականս պատուականս. և զփրկութ̃ե Տեառն առցեն զաւետիս: Եւ ա̃մ խաշինքն Կեդարու ժողովեսցին առ քեզ. և խոյքն Նաբէովթայ ածցին, և մատուսցին ընդունելի պատարագք ի վ̃ր սեղանոյ իմոյ. և տունն աղօթից իմոց փառաւորեսցի: Ո՞վ են սոքա՝ որք իբրեւ զամպս թռուցե̃լ են, և իբրեւ զաղաւնիս ձագախառն երամովին գան առ իս: Ինձ ակն ունին կղզիք և նաւք Թարշշի՝ յառաջագոյն ածել զորդիս քո ի հեռաստանէ, զարծաթն և զոսկի ընդ̇ իւրեանս. վ̃ն անուան Տեառն ս̃րբյն և վասն ս̃րբյն Իսրայէլի փառաւորելոյ: Եւ շինեսցեն որդիք այլազգեաց զպարիսպ քո. և թագաւորք ն̃ց ընծայեսցին քեզ. զի վ̃ն բարկութ̃ե իմոյ հարի զքեզ, և վ̃ն ողորմութ̃ե իմոյ սիրեցի զքեզ: Եւ բացցին դրունք քո հանապազորդ ի տուէ և ի գիշերի, և մի՛ փակեսցին, կրել ի քեզ զզօրութիւն ազգաց, և զթագաւորս իւրեանց ածիցեն առ քեզ: Զի ազգք և թագաւորք որ քեզ ոչ ծառայիցեն՝ կորիցեն. և ազգքն աւերելով աւերեսցին: Եւ փառքն Լիբանանու առ քեզ եկեսցեն սարդիւն և սօսիւ և նոճով և մայրիւ առ հասարակ՝ փառաւոր առնել զտեղի սրբութեան իմոյ. և զտեղի ոտից իմոց փառաւորեցից: 13:

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք: Տէր ողորմեա: Երե. անգամ կրկնեա:

Եւ եւս խաղաղութեան: Օրհնութիւն և փառք:

Է. ընթերցուած ի Յովբայ: ԼԸ. 1:

Ո՞վ է դա՝ որ թագուցանէ յինէն զխորհուրդս. ժողովեալ զբանս ի սրտի, և համարի յինէն թագուցա-

նել։ Պնդեա՛ իբրեւ զայր զմէջ քո. հարցից զքեզ, և տո՛ւր ինձ պատասխանի։ Ո՞ւր էիր՝ մինչ ես հիմունս արկանէի երկրի. պատմեա՛ ինձ, եթէ խելամուտ ես հանճարոյ։ Ո՞վ եդ զչափ դորա, թէ գիտիցես. կամ ո՞վ արկ ի վ՜ր դորա լար։ Յէ՞ր վ՜ր հաստատեցան աղխք դորա. ո՞վ է՝ որ արկ զվէմն անկեան ի դմա։ Յորժամ եղեն աստեղք ծերք՝ ա՜մ հրեշտակք աստեղաց օրհնեցին զիս մեծաձայն. և ա՜մ հրեշտակք իմ գովեցին։ Փակեցի զծով դրամբք՝ յորժամ ծնաւ յորովայնէ մօր իւրոյ ելանել։ Եդի նմա զմէգ ի հանդերձ, և զմառախուղ նմա ի խանձարուրս։ Եդի նմա սահմանս՝ եդեալ փականս և դրունս։ Ասացի. ցայդ վայր եկեսցես, և այլ մի՛ անցանիցես. այլ այդրէն ի քեզ խորտակեսցին ալիք քո։ Եթէ առ քե՞ւ կարգեցի զլոյսն առաւօտին. արուսեակն ետես զկարգ իւր՝ հասանել ի վ՜ր թեւոց երկրի, թօթափել զամպարիշտս ի նմանէ։ Կամ թէ քո՞ առեալ զհողն կաւ՝ ստեղծեր կենդանի, և խօսուն եդիր զնա յերկրի։ Եւ մերժեցե՞ր զլոյսն յամպարշտաց. զբազուկս ամբարտաւանից խորտակեցե՞ր։ Հասեա՞լ իցես յակն ծովու. և ընդ հետս անդընդոց շրջեցա՞ր։ Բանայցե՞ն քեզ ահիւ դրունք մահու. բարապանաց դժոխոց տեսեալ զքեզ սարսեսցե՞ն։ Խելամո՞ւտ իցես լայնութեան առ ի ներքոյ երկնից. աղէ՝ պատմեա՛ ինձ՝ ո՛րչափ իցէ։ Զի՞նչ երկիր իցէ՝ յորում լոյսն ագանիցի, կամ զի՞նչ տեղի խաւարի։ Տանիցե՞ս զիս ի սահմանս ն՜ց. եթէ խելամո՞ւտ իցես շաւղաց ն՜ց։ Թերեւս գիտիցե՞ս և ընդ ա՞յն ժամանակս ծնեալ իցես. և թիւ աւուրց քոց բազում իցէ։ Երթեա՞լ իցես ի շտեմարանս ձեան. և զգանձս կարկտի տեսեա՞լ իցես։ Համբարեա՞լ կայցէ քեզ ի ժամանակս թշնամեաց, յօր մարտի և պատերազմի։ Ուստի՞ ելանիցէ եղեամն. կամ սփռիցի հարաւ ի ներքոյ երկնից։ Ո՞ պատրաստեաց զհոսանս սաստիկս անձրեւաց. և զճանապարհս

ամպրոպաց՝ տեղեալ յերկիր, ուր ոչ գոյ մարդ՝ յանապատ յանմարդի, յագեցուցանել զանկոխն և զանշէն, և բղխեցուցանել զբոյս դալարւոյ։ Ո՞ է հայր անձրեւի, և ո՞վ է որ ծնաւ զշաղս ցօղոյ։ 28։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնել։

Եւ եւս խաղաղութեն։ Օրհնութին և փառք։

Ը. Ընթերցուածս ի Յեսուայ որդւոյ Նաւեայ։ Ա. 1։

Եւ եղեւ յետ վախճանելոյն Մովսիսի ծառայի Տն՝ խօսեցաւ Տէր ընդ Յեսուայ որդւոյ Նաւեայ պաշտօնէի Մովսիսի, և ասէ. Մովսէս ծառայ իմ վախճանեցաւ. արդ յարուցեալ անցցես ընդ այդ Յորդանան՝ դու և ամ ժողովուրդ քո, յերկիր զոր ես տաց որդւոցն Իսրայէլի։ Յամ տեղիս յոր հասանիցեն գնացք ոտից ձերոց՝ ձեզ տաց զնա, ոպ խօսեցայ ընդ Մովսիսի։ Զանապատն և զԼիբանաններն, մինչեւ ցգետն մեծ՝ ցգետն Եփրատ. զամ երկիրն Քետտացւոց մինչեւ ցծովն վերջին, ի մտիցն արեւու՝ ձեզ լիցին սահմանքն։ Եւ ոչ ոք կացցէ ընդդէմ ձեր զամ աւուրս կենաց քոց։ Եւ ոպ էի ընդ Մովսէսի՝ նոյնպէս եղէց և ընդ քեզ. և ոչ թողից զքեզ և ոչ անտես արարից զքեզ։ Զօրացի՛ր և քա՛ջ լեր. զի դու բաժանեսցես ժողովրդեանդ այդմիկ զերկիրն զոր երդուայ հարցն քոց տալ դոցա։ Արդ զօրացի՛ր և քա՛ջ լեր յոյժ, պահել և առնել ըստ ամ օրինացն ոպ պատուիրեաց քեզ Մովսէս ծառայ իմ. և մի՛ խոտորիցիս ի նոցանէ յաջ կամ յահեակ. զի խելամուտ լիցիս ամի զինչ և գործեսցես։ Եւ մի՛ մերժիցես զգիր օրինացս այսոցիկ ի բերանոյ քումմէ. և խոկասցես ի դա ի տուէ և ի գիշերի, զի իմասցիս առնել զամ գրեալսդ ի դմա. և ապա յաջողեսցիս և ուղղեսցես զճանապարհս քո. և ապա խելամուտ լինիցիս։ Ահա պատուիրեմ քեզ. զօրացի՛ր և քա՛ջ լեր.

մի՛ զանգիտիցես և մի՛ երկնչիցիս, զի ընդ քեզ է Տէր Ա՟ծ քո յա՟մ տեղիս ուր և երթայցես։ 9։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա՛։ Երէ. անգամ կրկնեա։

Եւ ևս խաղաղութ՟ն։ Օրհնութ՟ի և փառք։

Թ. ընթերցուածս ի չորրորդ Թագաւորութ՟ց։ Բ. 1։

Եւ եղեւ ի վերացուցանել Տեառն զԵղիա շարժմամբ յերկինս. և գնացին Եղիա և Եղիսէէ ի Գաղգաղա։ Եւ ասէ Եղիա ցԵղիսէէ. Նի՛ստ դու աստ. զի Տէր առաքեաց զիս ի Բեթէլ։ Եւ ասէ Եղիսէէ. կենդանի է Տէր, և կենդանի է անձն քո՝ թէ թողից զքեզ։ Եւ եկին ի Բեթէլ։ Եւ ելին որդիք մարգարէիցն որ ի Բեթէլ՝ առ Եղիսէէ, և ասեն ցնա. եթէ գիտիցե՞ս զի այսօր առնու Տէր զտէրդ ի գլխոյ քումմէ։ Եւ ասէ. գիտեմ և ես, լո՛ւռ լերուք։ Եւ ասէ Եղիա ցԵղիսէէ. Նի՛ստ դու աստ. զի Տէր առաքեաց զիս յԵրիքով։ Եւ ասէ. կենդանի է Տէր, և կենդանի է անձն քո՝ թէ թողից զքեզ։ Եւ եկին յԵրիքով։ Եւ մատեան որդիք մարգարէիցն որ յԵրիքով՝ առ Եղիսէէ, և ասեն ցնա. եթէ գիտիցե՞ս՝ զի այսօր առնու Տէր զտէրդ ի գլխոյ քումմէ։ Եւ ասէ. գիտեմ և ես, լո՛ւռ լերուք։ Եւ ասէ ցնա Եղիա. Նի՛ստ դու աստ. զի Տէր առաքեաց զիս ի Յորդանան։ Եւ ասէ Եղիսէէ. կենդանի է Տէր, և կենդանի է անձն քո՝ թէ թողից զքեզ։ Եւ գնացին երկոքեան. և յիսուն այր՝ յորդւոց մարգարէիցն. և կացին ի հանդիպոջ ի բացեայ. և երկոքին կացին յեզերն Յորդանանու։ Եւ ա՛ռ Եղիա զմաշկեակն իւր և ծալեաց և եհար զջուրն. և բաժանեցաւ ջուրն յայս կոյս և յայն կոյս. և անցին երկոքեան ընդ ցամաք։ Եւ եղեւ ընդ անցանելն նոցա՝ ասէ Եղիա ցԵղիսէէ. խնդրեա՛ զինչ արարից քեզ մինչ չև վերացեալ իցեմ ի քէն։ Եւ ասէ Եղիսէէ. եղիցի կրկին ոգի քո ի վերայ

իմ։ Եւ ասէ Եղիա. դժուարինս խնդրեցեր. բայց եթէ տեսանիցես զիս յամբառնալ իմում ի քէն, եղիցի այնպէս. ապա թէ ոչ՝ մի՛ եղիցի։ Եւ եղեւ մինչդեռ գնային նոքա, երթային և խօսէին. և ահա կառք հրեղէնք և երիվարք հրեղէնք անջրպետեցին ի մէջ երկոցունց. և վերացաւ Եղիա շարժմամբ յերկինս։ Եւ Եղիսէէ հայէր. և աղաղակէր. հա՛յր, հա՛յր, կառքդ Իսրայէլի և հեծեալքդ նր̃. և այլ ոչ եւս ետես զնա, և բուռն եհար զհանդերձից իւրոց, և պատառեաց յերկուս ծուէնս։ Եւ ա՛ռ Եղիսէէ զմաշկեակն Եղիայի զոր ընկեց ի վերայ նորա, և դարձաւ Եղիսէէ և եկաց առ եզերն Յորդանանու։ Եւ ա՛ռ զմաշկեակն Եղիայի զոր ընկեց ի վերայ նորա. և եհար զջուրն և ասէ. ո՞ւր ես Տէր Ած̃ Եղիայի Ափփով։ Եւ եհար զջուրսն. և բաժանեցան յայս կոյս և յայն կոյս. և անց Եղիսէէ։ Իբրեւ տեսին որդիք մարգարէիցն որք յԵրիքով ի հանդիպոյն, և ասեն. հանգեաւ ոգին Եղիայի ի վերայ Եղիսէի. և եկին ընդ առաջ նորա. և երկիր պագին նմա ի վերայ երկրի։ Եւ ասեն ցնա. ահաւասիկ են ընդ ծառայս քո որդիք զօրութեան արք յիսուն. երթիցեն և խնդրեսցեն զտէրն քո, գուցէ առ զնա Հոգի Տեառն, և ընկեց զնա առ Յորդանանու կամ ի վերայ միոյ ուրուք ի լերանց կամ ի վերայ միոյ ուրուք ի բլրոց։ Եւ ասէ Եղիսէէ. մի՛ առաքէք։ Եւ բռնադատեցին զնա՝ մինչև ամաչէր, և ասէ. առաքեցէ՛ք։ Եւ առաքեցին յիսուն այր. և խնդրեցին զերիս աւուրս, և ոչ գտին զնա։ Եւ դարձան առ նա. և նա նստէր յԵրիքով. և ասէ ցնոսա Եղիսէէ. ո՞չ ասացի ձեզ՝ թէ մի՛ երթայք։ Եւ ասեն արք քաղաքին ցԵղիսէէ. ահաւասիկ բնակութի̃ քաղաքիս բարի է, ոպ̃ և տէրդ իսկ տեսանէ. և ջուրքս չար, և երկիրս անզաւակ։ Եւ ասէ Եղիսէէ. առէ՛ք առ իս կուժ մի նոր, և դի՛ք այդր. և բերին առ նա։ Եւ ել Եղիսէէ յականս ջուրցն, և արկ անդր աղ. և ասէ.

այսպէս ասէ Տէր. բժշկեմ զջուրսդ զայդոսիկ, և մի՛ եւս լիցի այտի մահ և անզաւակութիւն։ Եւ բժշկեցան ջուրքն մինչեւ ցայսօր ըստ բանին Եղիսէի զոր խօսեցաւ։ 22։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Եւ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

Ժ. Ընթերցուածս յԵրեմեայ մարգարէէ։ ԼԱ. 31։

Ահաւասիկ աւուրք գան, ասէ Տէր, և ուխտեցից տանդ Իսրայէլի և տանդ Յուդայ ուխտ նոր։ Ոչ ըստ ուխտին զոր ուխտեցի ընդ հարս նոցա՝ յաւուր յորում առի զձեռանէ նց̃՝ հանել զնս̃ յերկրէն Եգիպտացւոց. զի նոքա ոչ կացին յուխտին իմում, և ես անփոյթ արարի զնոցանէ, ասէ Տէր։ Այլ այս է ուխտ՝ զոր ուխտեցից տանդ Իսրայէլի յետ աւուրցն այնոցիկ, ասէ Տէր. տաց զօրէնս իմ ի միտս նոցա, և ի սիրտս նոցա գրեցից զնս̃. և եղէց նց̃ յԱծ̃, և նոքա եղիցին ինձ ի ժողովուրդ։ Եւ մի՛ եւս ուսուցանիցեն իւրաքանչիւր զընկեր իւր, իւրաքանչիւր զեղբայր իւր՝ ասել թէ ծանի՛ր զՏէր. զի ամենեքեան ծանիցեն զիս ի փոքրկանց նոցա մինչեւ ի մեծամեծս, ասէ Տէր. զի քաւիչ եղէց անիրաւութեց̃ նց̃, և զմեղս նց̃ ոչ եւս յիշեցից։ 34։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնեա։

Եւ եւս խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք։

ԺԱ. Ընթերցուածս յԵզեկիելէ մարգարէէ։ ԼԷ. 1։

Եւ եղեւ ի վերայ իմ ձեռն Տեառն, և եհան զիս հոգւով Տեառն, և եդ զիս ի մէջ դաշտին. և այն լի էր ոսկերօք մարդկան։ Եւ շրջեցոյց զիս շուրջ զոսկերօքն. և ահա բազում յոյժ էին ի վերայ երեսաց դաշտին, և ցամաքեալք յոյժ։ Եւ ասէ ցիս. որդի՛

մարդոյ, իցէ՞ թէ կենդանի լինիցին ոսկերքդ այդոքիկ: Եւ ասեմ. Տէր Տէր, դու գիտես զայդ: Եւ ասէ ցիս. որդի՛ մարդոյ, մարգարեա՛ց ի վերայ ոսկերացդ այդոցիկ և ասասցես ցդոսա. ոսկե՛րք ցամաքեալք՝ լուարո՛ւք զպատգամս Տեառն: Այսպէս ասէ Տէր Տէր ցոսկերսդ ցայդոսիկ. ահաւասիկ ես ածեմ ի վերայ ձեր շունչ կենդանի: Եւ տաց ի ձեզ ջիլս, և ածից ի վերայ ձեր մարմինս, և ձգեցից ի վերայ ձեր մորթ, և տաց զոգի իմ ի ձեզ, և լինիջիք կենդանի. և ծանիջիք եթէ ես եմ Տէր: Եւ մարգարէացայ ոպ՟ և հրաման ետ ինձ Տէր. և եղև բարբառ ի մարգարէանալն իմում, և ահա շարժումն. և մերձեցաւ ոսկր առ ոսկր՝ առ իւրաքանչիւր յօդս: Եւ տեսի, և ահա ջիլք և մարմինք պատէին, և ձգէր ի վերայ նց՟ մորթ. և շունչ ոչ գոյր ի նս՟: Եւ ասէ ցիս. մարգարեա՛ց որդի մարդոյ, մարգարեա՛ց ի վերայ շնչոյն, և ասասցես ցշունչն. այսպէս ասէ Տէր Տէր. ե՛կ շունչ ի չորից հողմոց, և փչեա՛ ի մեռեալս յայսոսիկ, և կեցցեն: Եւ մարգարէացայ՝ ոպ՟ և հրաման ետ ինձ Տէր. և եմուտ ի նս՟ շունչ, և եղեն կենդանի. և կանգնեցան կացին ի վերայ ոտից իւրեանց՝ ժողովուրդ բազում յոյժ յոյժ: Եւ խօսեցաւ ընդ իս Տէր, և ասէ. որդի՛ մարդոյ, ոսկերքդ այդոքիկ ամ՟ տունդ Իսրայէլի է. և դոքա ասեն. չորացան ոսկերք մեր, հատաւ յոյս մեր և մեռաք: Վն՟ այդորիկ մարգարեա՛ց և ասասցես ցդոսա. այսպէս ասէ Տէր Տէր. ահաւադիկ ես բացից զգերեզմանս ձեր, և հանից զձեզ ի գերեզմանաց ձերոց ժողովուրդ իմ, և տարայց զձեզ յերկիրն Իսրայէլի: Եւ ծանիջիք՝ թէ ես եմ Տէր. ի բանալ ինձ զգերեզմանս ձեր, և հանել զձեզ ի գերեզմանաց ձերոց ժողովուրդ իմ: Եւ տաց զոգի իմ ի ձեզ. և լինիջիք կենդանի. և եդից զձեզ յերկրին ձերում: Եւ ծանիջիք թէ ես եմ Տէր. խօսեցայ և արարից, ասէ Տէր Տէր: 14:

Աղօթք հանդերձ ծունր դնելով զՏէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ Երեք անգամ կրկնել։

Եւ եւս խաղաղութե։ Օրհնութի և փառք։

Յաւուրս ընթերցուածոյս մտանեն յեկեղեցին, եւ կարդան զԴանիէլն ի բեմն։ Եւ ժամարարն ասա առնեն։

ԺԲ. Ընթերցուածս ի Դանիէլէ Մարգարէէ։ Գ. 1։

Յամին ութուտասներորդի Նաբուքոդոնոսորայ արքայի, արար պատկեր ոսկի. բարձրութի նր վաթսուն կանգուն, և լայնութի նր կանգուն վեց. և կանգնեաց զնա ի դաշտին Դէերայ յաշխարհին Բաբելացւոց։ Եւ արձակեաց ժողովել զզօրավարս և զզօրագլուխս և զկուսակալս, զպետս և զբռնաւորս և զգործակալս և զամ իշխանս աշխարհաց՝ գալ ի նաւակատիս պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուքոդոնոսոր։ Եւ ժողովեցան կուսակալք, զօրավարք և զօրագլուխք, պետք և բռնաւորք, մեծամեծք և գործակալք և ամ իշխանք աշխարհաց՝ գալ ի նաւակատիս պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուքոդոնոսոր. և կային առաջի պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուքոդոնոսոր։ Եւ քարոզ կարդայր զօրութբ և ասէր. ձեզ ասի ազգք և ազինք և լեզուք։ Յորժամ լսիցէք զձայն փողոյ, սրնգի, թմբկի և քնարի և տաւղի և երգոց միաբանութե և ամ ազգաց արուեստականաց, անկանիջիք և երկիր պագանիջիք պատկերին՝ զոր կանգնեաց Նաբուքոդոնոսոր արքայ։ Եւ որ ոչ անկեալ երկիր պագանիցէ՝ ի նմին ժամու ընկեսցի ի հնոց հրոյն բորբոքելոյ։ Եւ եղեւ իբրեւ լուան ազգքն զձայն փողոյն, սրնգի, տաւղի և նուագարանաց և ամ ազգաց արուեստականաց, անկանէին ամ ազգք և ազինք և լեզուք և երկիր պագանէին պատկերին ոսկւոյ, զոր կանգնեաց արքայն Նաբուքոդոնոսոր։ Յայնժամ մատեան արք Քաղդէացիք և եղեն չարախօս զՀրէից առ

Նաբուքոդոնոսոր: Եւ ասեն. արքայ, յաւիտեան կեաց: Դու հրաման ետուր ամ մարդոյ՝ որ լսիցէ զձայն փողոյ և սրնգի և քնարի և տաւղի և նուագարանաց և ամենայն ազգաց արուեստականաց: Եւ որ ոչն անկեալ երկիր պագանիցէ պատկերին ոսկւոյ՝ անկցի ի հնոց հրոյն բորբոքելոյ: Արդ՝ են աստ արք Հրեայք, զորս կացուցեր ի վր գործոց աշխարհիս Բաբելացւոց, Սեդդրաք, Միսաք և Աբեդնագով, որ ոչ հնազանդեցան հրամանի քում արքայ, և զդիս քո ոչ պաշտեն, և պատկերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ պագանեն: Յայնժամ Նաբուքոդոնոսոր սրտմտութբ և բարկութբ հրամայեաց ածել զՍեդրաք, զՄիսաք և զԱբեդնագով. և ածին առաջի թագաւորին: Պատասխանի ետ Նաբուքոդոնոսոր և ասէ ցնս. թէ արդարև Սեդրաք Միսաք և Աբեդնագով, զդիս իմ ո՞չ պաշտիցէք, և պատկերին ոսկւոյ՝ զոր կանգնեցի, երկիր ո՞չ պագանիցէք: Բայց արդ եթէ պատրաստք լինիցիք, զի յորժամ լսիցէք զձայն փողոյ, սրնգի և թմբկի և քնարի, և զմիաբանութի ամ ազգաց արուեստականաց, անկանիցիք և երկիր պագանիցէք պատկերին զոր արարի. ապա թէ ոչ պագանիցէք երկիր՝ ի նմին ժամու անկցիք ի հնոց հրոյն բորբոքելոյ. և ո՞վ է Ած՝ որ փրկեսցէ զձեզ ի ձեռաց իմոց: Պատասխանի ետուն Սեդրաք, Միսաք և Աբեդնագով, և ասեն ցարքայ Նաբուքոդոնոսոր. ոչ ինչ է պիտոյ մն բանիդ այդորիկ տալ քեզ պատասխանի: Զի է մեր Ած յերկինս՝ զոր մեքն պաշտեմք. կարող է փրկել զմեզ ի հնոցէ հրոյդ բորբոքելոյ. և ի ձեռաց քոց արքայ՝ ապրեցուցանել զմեզ: Ապա թէ ոչ՝ այս ինչ յայտնի լիցի քեզ արքայ. զդիս քո մեք ոչ պաշտեմք, և պատկերիդ ոսկւոյ զոր կանգնեցեր՝ երկիր ոչ պագանեմք: Յայնժամ Նաբուքոդոնոսոր լի եղեւ սրտմտութբ. և գոյն երեսաց նորա շրջեցաւ ի վերայ Սեդրաքայ, Միսաքայ և Աբեդնագովի, և ասէ. ջեռու-

ցէք զհնոցն եօթնապատիկ՝ զի մինչեւ ի վախճան այրեսցին։ Եւ արք հինգ զօրաւորք զօրութբ՝ կապեցին զՍեդրաք զՄիսաք եւ զԱբեդնագով՝ արկանել ի հնոց հրոյն բորբոքելոյ։ Յայնժամ արքն այնոքիկ կապեցան պատմուճանօք եւ վարտեօք, արտախուրակօք եւ զանկապանօք իւրեանց, եւ ընկեցան ի մէջ հնոցի հրոյն բորբոքելոյ։ Զի հրաման թագաւորին սաստկանայր. եւ հնոցն բորբոքէր եօթնապատիկ առաւել յոյժ։ Եւ երեքեան նոքա Սեդրաք, Միսաք եւ Աբեդնագով, անկան ի մէջ հնոցին կապեալք։ Եւ գնային ի մէջ հրոյն, օրհնէին եւ գովէին զՏէր Ած։ Յարեաւ Ազարիա. եւ եկաց յաղօթս այսպէս. եբաց զբերան իւր ի մէջ հրոյն եւ ասէ։ Օրհնեալ ես Տէր Ած հարցն մերոց. գովեալ եւ փառաւորեալ է անուն քո յաւիտեան։ Զի արդար ես յամի զոր արարեր ի վերայ մեր, եւ ամ գործք քո ճշմարիտ են. եւ ուղիղ են ճանապարհք քո, եւ ամ դատաստանք քո ճշմարտութի։ Եւ իրաւունս ճշմարտութեան արարեր՝ ըստ ամի զոր արարեր մեզ եւ քաղաքին սբյ հարցն մերոց Եղէմի. զի ճշմարտութեամբ եւ յիրաւի ածեր զայս ամենայն վն մեղաց մերոց։ Զի մեղաք եւ անօրինեցաք՝ ապստամբ լինել ի քէն. եւ առաւել մեղաք յամի։ Եւ պատուիրանաց քոց ոչ անսացաք. ոչ պահեցաք եւ ոչ արարաք՝ ոպ պատուիրեցեր մեզ, զի բարի լինիցի մեզ։ Եւ զամ զոր ածեր ի վերայ մեր, եւ զամ զոր արարեր մեզ՝ արդար դատաստանաւ արարեր։ Եւ մատնեցեր զմեզ ի ձեռս թշնամեաց մերոց անօրինաց, խստաց եւ ապստամբողաց, եւ թագաւորի անիրաւի եւ չարի քան զամ երկիր։ Եւ արդ՝ ոչ գոյ մեզ բանալ զբերանս մեր, զի ամօթ եւ նախատինք եղաք ծառայից քոց պաշտօնէից։ Այլ մի՛ մատներ զմեզ ի սպառ վն անուան քո. եւ մի՛ ցրեր զուխտ քո։ Եւ մի՛ ի բացէ առներ զողորմութիւնս քո ի մէնջ. վն Աբրահամու սիրելւոյ քոյ՝ եւ վն Իսահակայ ծառայի քոյ եւ վն Իսրայէլի սբյ քոյ։

*Որոց խօսեցար բազմացուցանել զզաւակ նց իբրեւ զաստեղս երկնից, և իբրեւ զաւազ առ ափն ծովու։ Եւ արդ Տէր նուազեցաք քան զամ ազգս, և եմք տառապեալք յամ երկրի այսօր վս մեղաց մերոց։ Եւ ոչ գոյ ի ժամանակի յայսմիկ իշխան, մարգարէ և առաջնորդ. ոչ ողջակէզք և ոչ զոհք և ոչ պատարագք և ոչ խունկք, և ոչ տեղի տալոյ երախայրիս առաջի քո և գտանել զողորմութի ի քէն. այլ անձամբք բեկելովք և հոգւովք տառապանաց ընդունելի լիցուք։ Իբրեւ զողջակէզս խոյոց և զուարակաց, և իբրեւ զբիւրաւորս գառանց պարարտաց, այնպէս եղիցի պատարագս մեր այսօր առաջի քո. լինել կատարեալ զկնի քո. զի չիք ամօթ յուսացելոցս ի քեզ։ Եւ արդ՝ գամք զհետ քո ամ սրտիւք մերովք. երկնչիմք ի քէն, և խնդրեմք զերեսս քո։ Մի՛ յամօթ առներ զմեզ, այլ արա՛ ընդ մեզ ըստ հեզութե քում և ըստ բազում ողորմութեան քում։ Եւ փրկեա՛ զմեզ վս սքանչելեաց քոց, և տո՛ւր փառս անուան քում Տէր։ Եւ յամօթ լիցին ամենեքեան՝ որք ցուցանեն չարիս ծառայից քոց, և ամաչեսցեն յամ բռնութե իւրեանց. և զօրութիւն նոցա խորտակեսցի։ Եւ ծանիցեն զի դու ես Տէր Ած միայն և փառաւորեալ ի վերայ ամ տիեզերաց։ Եւ ոչ դադարէին՝ որք արկին զնոսա սպասաւորք թագաւորին՝ զհնոցն բորբոքելոյ նաւթիւ և ձիթով և վշով և որթով։ Եւ ելանէր դիզանայր բոցն ի վերոյ քան զհնոցն ի քառասուն և յինն կանգուն։ Եւ շրջէր պատէր շուրջ զհնոցաւն և այրէր զորս գտանէր ի Քաղդէացւոց անտի։ Եւ հրեշտակ Այ էջ եկաց ընդ Ազարիանն ի հնոցի անդ. և թօթափեաց զբոց հրոյն ի հնոցէ անտի։ Եւ արար ի մէջ հնոցին իբրեւ զհողմ որ ցօղագին շնչիցէ. և ոչ մերձենայր ամենեւին հուրն ի նս, ոչ տրտմեցուցանէր և ոչ նեղէր զնոսա։ Յայնժամ երեքեանն իբրեւ ի միոջէ բերանոյ օրհնէին և գովէին*

և փառաւոր առնէին զԱ̃ծ ի մէջ հնոցին և ասէին։ Օրհնեալ ես Տ̃ր Ա̃ծ հարցն մերոց․ գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս․ և օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց․ գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս։ Օրհնեալ ես ի տաճարի փառաց սրբութեան քո․ գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս։ Օրհնեալ ես, որ հայիս յանդունդս և նստիս ի քերովբէս․ գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս։ Օրհնեալ ես ի վերայ աթոռոյ արքայութե̃ քո․ գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս։ Օրհնեալ ես ի վերայ հաստատութեան երկնից․ գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեանս։ Օրհնեցէք ամենայն գործք Տ̃ն զՏէր․ * օրհնեցէք և բա́րձր արարէք զնա յաւիտեան։ Օրհնեցէք երկինք զՏէր․ օրհնեցէք։ Օրհնեցէք հրեշտակք Տեառն զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ջուրք ա̃մ որ ի վերոյ քան զերկինս զՏէր․ օրհնեցէք և բարձր։ Օրհնեցէք ա̃մ զօրութի̃ք Տեառն զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք արեւ և լուսին զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ա̃մ աստեղք երկնից զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ա̃մ անձրեւք և ցօղք զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ա̃մ հողմք զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք հուր և տապ զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ցուրտ և տօթ զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք եղեամն և ձիւնաբեր զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք սառն և պարզ զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք պաղ և ձիւն զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք տիւք և գիշերք զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք լոյս և խաւար զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ամպք և փայլատակունք զՏէր․ օրհնե։ Օրհնեսցէ երկիր զՏէր․ օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան։ Օրհնեցէք լերինք և բարձունք զՏէր․ օրհ։ Օրհնեցէք ա̃մ բոյսք երկրի զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք աղբերք զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ծովք և գետք զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք կէտք և ա̃մ կայտառք որ ի ջուրս զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք թռչունք երկնից զՏէր․ օրհնե։ Օրհնեցէք ա̃մ

գազանք և անասունք զՏէր. օրհնեցէ՛ք և բա՛րձր արարէք զնա յաւիտեան: Օրհնեցէ՛ք որդիք մարդկան զՏէր. օրհնեցէք և բարձր արարէ՛ք զնա յաւիտեան: Օրհնեսցէ Իսրայէլ զՏէր. օրհնեսցէ և բարձր արասցէ զնա յաւիտեան: Օրհնեցէ՛ք քահանայք զՏէր. օրհնեցէ՛ք և բարձր արարէք զնա յաւիտեան: Օրհնեցէք ծառայք Տեառն զՏէր. օրհնեցէ՛ք և բարձր արարէք զնա յաւիտեան: Օրհնեցէ՛ք հոգիք և շունչք արդարոց զՏէր. օրհնեցեք և բարձր արարէք զնա յաւիտեան: Օրհնեցէ՛ք սուրբք և խոնարհք սրտիւք զՏէր. օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեան: Օրհնեցէ՛ք Անանիա, Ազարիա և Միսայէլ զՏէր. օրհնեցէ՛ք և բա՛րձր արարէք զնա յաւիտեան: Զի փրկեաց զմեզ ի դժոխոց, և ի ձեռաց մահու ապրեցոյց զմեզ. և փրկեաց զմեզ ի հնոցէս, և ի միջոյ բորբոքեալ բոցոյս, և ի միջոյ հրոյս փրկեաց զմեզ: Գոհացարո՛ւք զՏէրն՝ զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմ Նորա: Օրհնեցէ՛ք ամենայն պաշտօնեայք Տեառն զԱստուածն աստուծոց: Օրհնեցէ՛ք և գոհացարո՛ւք, զի յաւիտեան է ողորմ Նորա: 91:

Յաւելն ըՀարցի առաջնումն՝ յամէն փոխի խառնել ամէն յեկեղեցին. Եւ դառն խաղ է յետոյ երկրորդ քահանայից: Եւ երբ ըՕրհնեցէ՛ք ամենայն գործքն ասասցեն՝ դպիրքն երգեն քաղցր յայնկա, ասելով.

Օրհնեցէ՛ք, գովեցէ՛ք, և բա՛րձր արարէք զնա յաւիտեան:

Եւ ի կատարման Հարցի առաջնոյն՝ սարկաւագն քարոզ յայնմ փոխէ. Օրհնեա՛ տէր: Եւ պատարագն մատչի:

---

Զկնի արձակման պատարագին ասասցեն նախատօնակ աւուր Յարութեան Տեառն:

Շարական ԱՁ:

Այսօր յարեաւ ի մեռելոց. Տե՛ս ի վեր երեսն 469:

Ձ՚ն՝ Ո՛րթի՛ւ։

Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԸ. 16։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յսի քսի։

Իսկ մետասան աշակերտքն՝ գնացին ի Գալիլեա, ի լեառնն՝ ուր ժամադիր եղեւ նց Յս։ Իբրեւ տեսին զնա՝ երկիր պագին նմա. և ոմանք յերկուացան։ Եւ մատուցեալ Յս խօսեցաւ ընդ նս և ասէ. տուաւ ինձ ամ իշխանութի յերկինս և յերկրի. ոպ առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ զձեզ։ Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամ հեթանոսս. մկրտեցէք զնս յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սբյ։ Ուսուցէք նց պահել զամ որ ինչ պատուիրեցի ձեզ. և ահաւասիկ ես ընդ ձեզ եմ ղամ աւուրս մինչեւ ի կատարած աշխարհի։ 20։

Քրղ։ Խնդրեսցուք։ Կեցո յոյնի։ Աղ. Թագաւոր խաղ։

Օրհնեալ Տէր մեր։ Հայր մեր որ։

Եւ արժանին խաղաղութեամբ։



# ԿԻՐԱԿԷ, ԱԶ.

# ԶԱՏԻԿ ՅԱՐՈՒԹԵԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ

---

### Ի ԳԻՇԵՐԻ

Հոլովումն է, եւ դնի օրհնութիւն է վերայ ճաշմոցէ յառաջեանն:

Եւ ասէն կանոնագլուխ ԱԶ. Դատեա՛ Տէր:

### Օրհնութիւն ԱԶ:

Այսօր յարեաւ ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր. քեզ աւետիք խնդութեան. հարսն ի յերկրէ եկեղեցի * օրհնեա՛ ի ձայն ցնծութեան զԱստուած քո Սիովն: Այսօր անճառ լոյսն ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո. լուսաւորեա՛ Երուսաղէմ. քանզի յարեաւ լոյս քո Քրիստոս. օրհնեա՛: Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն. եւ քեզ ծագեաց լոյս գիտութեան. յարուցեալն ի մեռելոց Քրիստոս. օրհնեա՛ ի:

† Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի. արասցուք տօն ցնծութեան. նորոգեալքս ի հնութենէ մեղաց ասելով. Քս յարեաւ ի մեռելոց: Այսօր հրեշտակքն լուսափայլ ի յերկնից իջեալ. զարհուրեցոյց ըզպահապանսն. եւ նա կանանցն քարոզէր ասելով. Քս յարեաւ ի մեռելոց:

Ցոր: Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն. ի խնկել զանապական մարմինն: Եւ գտին ըզվէմն բարձեալ ի դրաց գերեզմանին. եւ լուեալ բարբառ ի հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց զմահ: Եւ հանդիպեալ քո

Տէր առաքելոցն եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց:

* Փառք յարութեան քո Տէր: Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնիդ ըզգեցաք զանմահութիւն. փառք: Խաբանօք փայտին ճաշակեցաք ըզմահ. իսկ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան. փառք:

Ընդ կանանցն իւղաբերսն առ քեզ առաւօտեմբք կենդանիդ յաւիտենից Քն ընկալ և ըզմերս. փոխանակ խընկոցըն զօրհնաբանութիւնս: Փոխանակ սբ աւետաւոր զուարթնոյն գըթութի քո մեզ հանդիպեսցի յուսով գիտութեան. մըխիթարել ըզհոգիս եւ լուսաւորել: Ընդ նոսին աւետարանութեամբ քարոզեսցուք. ըզքո միայնը զսքանչելիսդ. որ յարեարդ ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ:

Որ անճառ էութեամբ հօր ես փառակից չարչարիլ մարմնով յանձն առեր վասն մեր. մըշտընջենաւոր օրհնութբ ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր: Որ էակդ ես ընդ հօր եւ սբ հոգւոյն. խաչեցար և թաղեցար կամաւ հօր վասն մեր. մըշտընջենաւոր օրհնութբ ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր: Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք. շնորհելով ածապէս յարութի տիեզերաց. յամենայն արարածոց յաւիտենից օրհնեալ ես Տէր:

ՀՈԳ. Որ ի քրովբէական կառսըդ հանգչիս. այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցըն սբ հոգի. * օրհնեալ ես թագաւոր անմահ: Որ գընաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն սբ հոգի. օրհնեալ: Որ խնամես տեսչութբ զքո զարարածս. այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո սբ՝ հոգի. օրհնեալ:

ՆՂ։ Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դասս անդրանկաց գրելոց ի յերկինս։ Ընկալ վասն սոցա ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։ Հաշտեա ի ձեռն սբ մարմնոյ և արեան քո Տէր. եւ պարգեւեա նոցա դասիլ յաջակողմեանսն քո։

ԱՁՆ։ Յարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս. որ ըզնընջեցեալսն յԱդամայ կենագործէ անապական * գքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Արարողին երկնի և երկրի եղեր տաճար և առագաստ. որ ըզնընջեցեալսն մեր հրեղէն նորոգէ. գքեզ մեծա։ Կերակրողին տիեզերաց արբուցեր ըզքո սբ ըզկաթն. որ ըզնընջեցեալսն մեր վերըստին նորոգէ. գքեզ մեծա։

ԽՆ։ Որ զանարատ բազուկս քո ի խաչին տարածեցեր Քս Աստուած. եւ նշան յաղթութեան ետուր մեզ. * սովաւ ըզկեանս մեր պահեա։ Որ զաշխարհակեցոյց բազկատարածութի խաչի քո Քս Ածդ. գաւազան զօրութե ետուր մեզ. սովաւ։ Փառք Հօր։ Որ ըզմեռեալսն ի ճաշակմանէ փայտին յանցանաց. կենաց փայտիւդ կենագործեցեր. սովաւ։

Այժմ և միշտ։ Այսօր նոր Իսրայէլ կոչեցեալք ի Քրիստոս. ազատեալք արեամբ գառինն Աստուծոյ. պարեսցուք ընդ երկնայնոցն ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց։

Մաղթանք. փառք հրաշափառ յարութեան։

Աւետ. Յարութեան ԱԶ. Ողորմութի Տեառն լի։ 36։

---

Տէր առաքելոցն եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց։

* Փառք յարութեան քո Տէր։ Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնին զգեցաք զանմահութիւն. փառք։ Խաբանօք փայտին ճաշակեցաք զմահ. իսկ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան. փառք։

Ընդ կանանցն իւղաբերիցն առ քեզ առաւօտեմբք կենդանին յաւիտենից Քս ընկալ եւ զմերս. փոխանակ խնկոցըն զօրհնաբանութիւնս։ Փոխանակ ս̃բ աւետաւոր զուարթնոյն գթութի քո մեզ հանդիպեսցի յուսով գիտութեան. մխիթարել զհոգիս եւ լուսաւորել։ Ընդ նոսին աւետարանութեամբ քարոզեսցուք. ըզքո միայնը զքանչելիսդ. որ յարեար ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ։

Որ անճառ էութեամբ Հօր ես փառակից չարչարիլ մարմնով յանձն առեր վասն մեր. մշտընջենաւոր օրհնութի ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր։ Որ էակդ ես ընդ Հօր եւ ս̃բ Հոգւոյն. խաչեցար եւ թաղեցար կամաւ Հօր վասն մեր. մշտընջենաւոր օրհնութի ի հրեշտակաց օրհնեալ ես Տէր։ Որ միւսանգամ գալոց ես հայրենի փառօք. շնորհելով ա̃ծապէս յարութի տիեզերաց. յամենայն արարածոց յաւիտենից օրհնեալ ես Տէր։

ՀՈԳ. Որ ի քրովբէական կառսդ հանգչիս. այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցն ս̃բ Հոգի. * օրհնեալ ես թագաւոր անմահ։ Որ գնաս ի վերայ թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսն ս̃բ Հոգի. օրհնեալ։ Որ խնամես տեսչութի զքո զարարածս. այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո ս̃բ Հոգի. օրհնեալ։

ՆՆՉ։ Զհոգիս ծառայից քոց Քրիստոս. ընկալ ի դասս անդրանկաց գրելոց ի յերկինս։ Ընկալ վասըն սոցա ըզքանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրըն յետնում։ Հաշտեա ի ձեռըն սբ մարմնոյ և արեան քո Տէր. եւ պարգեւեա նոցա դասիլ յաջակողմեանըն քո։

ԱՁՆ։ Յարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս. որ ըզնընջեցեալսըն յԱդամայ կենագործէ անապական * զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Արարողին երկնի և երկրի եղեր տաճար և առագաստ. որ ըզնընջեցեալսըն մեր հրեղէն նորոգէ. զքեզ մեծա։ Կերակրողին տիեզերաց արբուցեր ըզքո սբ ըզկաթն. որ ըզնընջեցեալսըն մեր վերըստին նորոգէ. զքեզ մեծա։

ԽՆ։ Որ զանարատ բազուկս քո ի խաչին տարածեցեր Քս Աստուած. եւ նըշան յաղթութեան ետուր մեզ. * սովաւ ըզկեանըս մեր պահեա։ Որ զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչին քո Քս Ած. գաւազան զօրութեան ետուր մեզ. սովաւ։ Փառք Հօր։ Որ ըզմեռեալըն ի ճաշակմանէ փայտին յանցանաց. կենաց փայտիւըն կենագործեցեր. սովաւ։

Այժմ և միշտ։ Այսօր նոր Իսրայէլ կոչեցեալք ի Քրիստոս. ազատեալք արեամբ գառինն Աստուծոյ. պարծեսցուք ընդ երկնայնոցն ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց։

Մաղթանք. Փառք հրաշափառ յարութեան։

Ալէլու. Յարութեան ԱԶ. Ողորմութք Տեառն լի։ 36։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒՆ

Հարց Դկ։

Այսօր մեծ անուանիք Ադամայ նախաստեղծին տըրուան. որք որ ննջեն լուսաւոր եղեւ քեզ յարուցեալըն քն. * Արծ Հարցըն մերոց։ Այսօր ձայն աւետեաց յեւայի գուշեն լըսեալս. դստերք իւղաբերք տեսաք յարուցեալ ըզյարուեալըն քո քն Արծ։ Այսօր հրեշտակք յերկնից իջեալ տան զաւետիս մարդկան յաւրեաւ խաչեալն և յարոյց ըզձեզ ընդ ինքեան. Արծ։

Գ. Բզտր՝ * օրհնեցէք եւ բարձր արարէքըզնա յաւիտեան։ փառք Հօր։ Այսօր Տրըն մեր յարեաւ. եկայք պարեսցուք ընդ հրեշտակս. յաղթական երգով. օրհնեց։ Այժմ և։ Այսօր սիւն լուսոյ ծագեաց մե եկեղեցւոյ. յարուցեալն ի մեռելոց քն. օրհնեց։

Մեծաց. Դկ։ Աստուածածին տաճար լուսոյ. որ մարմնով պարագրեալ անճառաբար ծընար զԲանն Աստուած. * զքեզ բարեբանեալ մեծացուցանեմք։ փառք Հօր։ Ուրախ լեր և բերկրեա մայր եւ կոյս. քանզի ծընեալըն ի կուսէդ այսօր վերըստին յարուց ծընաւ ի կոյս գերեզմանէն. զքեզ բարե։ Այժմ և։ Ցընծա և զուարճացիր հարսն ի յերկրէ երկնից. քանզի այսօր երկնայնոցն իջեալ տային քեզ զաւետիս յարուե միածնի՝ Որդւոյ քո. զքեզ բարե։

Իւղաբերից Աւետ. Յովհ։ Եւ ի միաշաբաթոջն։ 46։

Ալ. երգ։ փառք յարութեան քո Տէր։

Գնձ. Լուսապայծառ հրեշտակըն նըստեալով ի կենսատու գերեզմանին։ Եւ աւետէր կանանցն՝ յարեաւ Աստուած։

Ողորմ. Դկ։ Այսօր ըզպասեք չարչարանաց եւ Իսրայէլի փոխեցեր. ի փրկութիւն հոգւոց զատիկ.

նք յարութեամբ քո Քրիստոս: փառք Հօր և: Այսօր ընդ արեանց օրինակին անբան գառանցն զենմանց. պարգևեցեր մեզ գառն Աստուծոյ. զարիւնըդ քո փրկական: Այժմ և: Այսօր ընդ անդրանկացն ազատութեան ազատեցեր ըզգերեալսն. պըտուղ կենաց նընջեցելոց և անդրանիկ մեռելոց:

Տէր յերկնից Դկ. յորում է յետին տունն ամենեքեան համբուրեն զմիմեանս:

Այսօր հրեշտակք ի յերկինս ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ ի յերկնից տան աւետիս աշխարհի. ցընծացէք այսօր Քրիստոս յարեաւ ի մեռելոց: Այսօր զուարթունն ի վիմին խընկաբերից սուրբ կանանցն. փողէր ձայնիւ ցընծութեան պատմել աշակերտացն ասելով. ցընծացէք այսօր Քն յարեաւ ի մեռելոց: փառք Հօր: Այսօր վիմին հաւատոյ եւ Յովհաննու սիրելւոյ. ընդ հակառակս ընթացեալ ի գերեզման յարուցելոյն. զոր տեսեալ պատմէին Քն յարեաւ ի մեռելոց: Այժմ և: Այսօր եւ մեք զուարճացեալք պայծառասցուք տօնիւս. ընդ հաշտութեան Այ միմեանց արկցուք գիրկս սիրով. եւ միաբան. գոչեսցուք Քն յարեաւ ի մեռելոց:

Ասա. Երգ Յարութեան ԱՁ. Զյարութի: Յարեաւ ԱՃ:

Քարոզ. Ասասցուք. կամ գանձ:

Զկնի ՍՃ Աճին զգենուն շուրջառ, եւ ելանեն ի դուռն եկեղեցւոյն խաչիւ եւ աւետարանաւ, խնկովք եւ մոմեղինօք եւ ամենայն զարդու: Եւ սկսանին

Շարական ԱՁ:

Այսօր յարեաւ ի մեռելոց փեսայն անմահ եւ երկնաւոր. քեզ աւետիք խընդութեան հարսն ի յերկրէ եկեղեցի. օրհնեա ի ձայն ցընծութեան

զԱստուած քո Սիովն։ Այսօր անճառ լոյսն ի լուսոյ լուսաւորեաց. զմանկունս քո լուսաւորեա Երուսաղէմ. քանզի յարեաւ լոյս քո Քս. * օրհնեա ի ձայն ցնծութեան զԱստուած քո Սիովն։ Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն. եւ քեզ ծագեաց լոյս գիտութեան. յարուցեալն ի մեռելոց Քրիստոս. օրհնեա ի։

Սաղմոս ԿԴ։

«Քեզ վայելէ օրհնութիւն ԱԾ ի Սիովն. և քեզ տացին աղօթք յԵղէմ։

Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամ մարմին եկեսցէ։

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր. զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես։

Երանի զորս ընտրեցեր և ընկալար. և բնակեսցեն ի գաւիթս քո։

Լցցուք մեք ի բարութենէ տան քո. սուրբ է տաճար քո՝ սքանչելի արդարութեամբ։

Լուր մեզ ԱԾ փրկիչ մեր. յոյս ամենայն ծագաց երկրի, և որ ի ծով հեռի։

Ո պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով. զգեցեալ է զզօրութիւն։

Ո խռովեցուցանէ զմեծութիւն ծովու, և զձայն ալեաց նորա ցածուցանէ։

Խռովեսցին հեթանոսք. և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց։

Ելս առաւօտու և ընդ երեկոյս զուարճացին. հայեցար յերկիր, արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն նորա։

Գետն ԱՅ լի եղեւ ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն։

Զակօս նորա արբեցուցեր, և բազում արարեր զարմտիս նորա։

Ի ցօղել Նոցա ղուարթ եղիցի բոյս Նորա. օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քոյ:

Դաշտք քո լցցին պարարտութեամբ. պարարտասցին գեղեցկութիւնք անապատի:

Բլուրք ցնծութ զգեցցին, և զգեցցին խոյք մաքեաց:

Հովիտք բազում արասցեն ցորեան, աղաղակեսցեն և օրհնեսցեն:

Ընթերցուածս ի Գործոց առաքելոց: Ա. 1:

Զբանն առաջին զոր արարի վն ամի, ո Թէոփիլէ, զոր սկսաւ Յս առնել և ուսուցանել՝ մինչեւ յօրն պատուիրելոյ առաքելոցն ի ձեռն Հոգւոյն սբյ, զորս ընտրեացն, և վերացաւ: Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ չարչարանացն իւրոց ի բազում արուեստս՝ յաւուրս քառասուն երեւել նց և ասել վն արքայութեանն Աստուծոյ: Եւ ի հաղորդել ընդ Նոսա հացիւ՝ պատուէր տայր նց՝ յԵրուսղմէ մի մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր լուարուքն յինէն: Զի Յովհաննէս մկրտեաց ի ջուր, այլ դուք մկրտիցիք ի Հոգին սբ՝ ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ: Եւ Նոքա մատուցեալ հարցանէին զնա և ասէին. Տէր, եթէ ի ժամանակի՞ աստ յայսմիկ հաստուցանելոց իցես զարքայութիւնն Իսրայէլի: Ասէ ցնս. ոչ է ձեր գիտել զժամս և զժամանակս, զոր Հայր եդ յիւրում իշխանութեն. այլ առջիք զօրութի ի հասանել Հոգւոյն սբյ ի վր ձեր. և եղիջիք ինձ վկայք յԵրուսղէմ և յամ Հրէաստանի և ի Սամարիա, և մինչեւ ի ծագս երկրի: 8:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Կասեալ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ:

ՋՐԻ՝ Որթիւ:

Աւետարան ըստ Մարկոսի: ԺԶ. 2:

Վասն յարութե Տեառն մերոյ Յսի Քսի:

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն գան ի գերեզմանն ընդ արեւագալն, և ասէին ցմիմեանս. ով թաւալե-

ցուցէ մեզ զվէմն ի դրաց գերեզմանին: Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր զվէմն ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ: Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն, տեսին երիտասարդ մի զի նստէր ընդ աջմէ կողմանէ՝ զգեցեալ պատմուճան սպիտակ, և զարհուրեցան: Եւ նա ասէ ցնա. մի՛ երկնչիք. զՅն խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն, յարեաւ՝ չէ աստ. ահաւադիկ տեղին՝ ուր եդին զնա: Այլ երթայք ասացէք ցաշակերտս նր և ցՊետրոս, եթէ ահա յառաջագոյն երթայ քան զձեզ ի Գալիլեա, անդ տեսանիցէք զնա՝ ոպ ասացն ձեզ: Եւ իբրեւ լուան՝ ելին և փախեան ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ոչ ումեք ինչ ասացին, զի երկնչէին: 8:

Այս կարգ է ժամարարութեանն կատարել: Եւ ապա եղանակեն խաչիւ եւ աւետարանաւ, խնկովք եւ մոմեղինօք եւ ամենայն զարդուք ի դուրս: Եւ շուրջ գալով զեկեղեցեաւն, ասեն շարական յամէն ձայնէ մի մի զառաջին Տէրյերկնիցն. եւ կարգաւն է զոր կոչեն եկեղեցւոյն զխորհրդոց փոխերն:

Առաջին Շարական ԱՁ:

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն. ի խնկել զանապական մարմինն: Եւ գտին զվէմն բարձեալ ի դրաց գերեզմանին. եւ լուեալ բարբառ ի հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց զմահ: Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց:

Ձնէ՛ Որթի՛ւ: Դէպ յարեւելս կարդա:

Աւետարան ըստ Յովհաննու: ԺԹ. 38:

Վասն թաղման Տեառն մերոյ Յսի Քսի:

Յետ այսորիկ աղաչեաց զՊիղատոս Յովսէփ՝ որ յԱրիմաթեայ էր, աշակերտ Յսի ի ծածուկ՝ վն ահին Հրէից, զի բարձցէ զմարմինն Յսի: Եւ հրամայեաց Պի-

ղատոս եկին և բարձին զնա: Եկն և Նիկոդեմոս՝ որ եկեալն էր առ Յս̃ ի գիշերի զառաջինն. և եբեր զմուռս խառն ընդ հալուէս՝ իբրև լտերս հարիւր: Առին զմարմինն Յս̃ի, և պատեցին կտաւովք՝ խնկովք հանդերձ, ոպ̃ օրէն էր Հրէից պատել: Եւ էր ի տեղւոջն յորում խաչեցաւ՝ պարտէզ. և ի պարտիզի անդ գերեզման նոր, յորում ոչ ոք երբեք էր եդեալ: Անդ՝ վս̃ ուրբաթուն Հրէից, զի մօտ էր գերեզմանն՝ եդին զՅս̃: 42:

Եւ երթեան յարեւմտեան կողմն, ասելով

Երկրորդ Շարական Ակ:

Առաքե՛ցա՛ր ի Հօրէ Բա՛նդ Աստո՛ւած ի՛ փրկու՛թի՛ ազգի՛ մարդկա՛ն. օ՛րհնե՛մք ըզքե՛զ սո՛ւրբ Ա՛ստո՛ւա՛ծ: Ի՛ գերե՛զմա՛ն իջե՛ր Թագա՛ւո՛ր անմա՛հ. և՛ւ ի Հօ՛րէ՛ ոչ մեկնե՛ցար. օ՛րհնե՛մք ըզքե՛զ սո՛ւրբ Ա՛ստո՛ւա՛ծ: Ի՛ յե՛րրո՛րդ աւո՛ւր յարեա՛ր ա̃՛ծապէս և՛ւ ի յե՛րկի՛նըս համբարձա՛ր. փա՛ռք յա՛րութեան քո՛ Տէ՛ր. օ՛րհնե՛մք ըզքե՛զ սո՛ւրբ Ա՛ստո՛ւա՛ծ:

Ձյն՝ Ո՛րթի՛ւ: Դէպ յարեւմուտս կարգաւ:

Աւետարան ըստ Ղուկասու: ԻԳ. 50:

Վասն Թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ ահա այր մի, անուն Յովսէփ, որ էր Նախարար՝ այր բարեգործ և արդար. սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նց̃, յԱրիմաթեայ քաղաքէ Հրէից. որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեան Այ̃: Սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յս̃ի: Եւ իջուցեալ զնա՝ պատեաց պաստառակալաւ, և եդ ի կռածոյ գերեզմանի. ուր չէր բնաւ զոք եդեալ: Եւ օրն էր ուրբաթ, և շաբաթ լուսանայր: Եւ երթային զհետ նորա կանայք՝ որ եկեալ էին ընդ նմա ի Գալիլեէ. տեսին զգերեզմանն, և ոպ̃ եդաւ մարմինն նր̃: Դարձան, և պատրաստեցին խունկս և իւղս. և ի շաբաթուն հանդարտեցին վս̃ պատուիրանին: 56:

Նա ձայն է հարաւայն կողմ. աւելով

Ներքոյ Շարական ԲՁ։

Ի՛ գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և զխուն-կըս բերին. ի՛ծ պատուի՛ւ թաղման քո՛ զի՛ զմեղօք ըզ-հողմացեալըս վերածեր ի կեանս։ փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս եւ զաղաչանըս մեր ընդ առաւօ-տեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան Եւ-այի ունկամբն։ Նորին աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչըն մեր աւերեաց ըզդըժոխս. եւ զթըշնամին կապեաց ի յանլոյծ կապանս։

ՁՆԻ՝ Որմիթիւ։ Դէպ է հարա կարգա։

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԵ. 42։

Վասն թաղման ցեառն մերոյ Յսի Քսի։

Եւ իբրեւ երեկոյ եղեւ, քանզի ուրբաթ էր՝ որ ի շաբաթն մտանէր, եկեալ Յովսէփ որ յԱրիմաթեայն էր՝ այր պարկեշտ նախարար, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութե Այ. համարձակեցաւ եմուտ առ Պիղատոս, և խնդրեաց զմարմինն Յսի։ Եւ Պիղատոս զարմացաւ թէ այնչափ վաղ մեռաւ. և կոչեցեալ առ ինքն զհա-րիւրապետն, եհարց զնա և ասէ. թէ արդարեւ՝ այն-չափ վա՞ղ մեռաւ։ Եւ իբրեւ ստուգեաց ի հարիւրա-պետէ անտի, շնորհեաց զմարմինն Յովսէփայ։ Եւ Յով-սէփ գնեաց կտաւ, և իջուցեալ զնա պատեաց կտաւովն, և եդ ի գերեզմանի, զոր էր փորեալ ի վիմէ. և թաւ-ալեցոյց վէմ մի ի դուռն գերեզմանին։ Իսկ Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբեայ և Յովսեայ՝ տեսին զտեղին ուր եդաւ։ Եւ իբրեւ անց շաբաթն, Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբեայ և Սողովմէ չքնաղ պատրաստեցին խունկս, զի եկեսցեն օծցեն զնա։ ԺԶ. 1։

Եւ ձայն է Մենաւորացն կողմ. աւելով

Չորրորդ Շարական ԲԿ։

* Քո յարութեամբդ փառօք վայելէ երկայնամիտ Տէր։ Օրհնեալ է քո յարութեանդ Աստուած որ զմահ մահու ծանուցեր քոյին կամաւոր մահուամբդ. քո յարութ։ Գոչումն ահեղ հրեշտակին ի վիմին որ քարոզէր առ նս կանայսն յարեաւ Տէրն ի մեռելոց. քո յարութեանդ։

Ձայն Ութ։ Դէպ ի Հիւսիս կողմն։

. Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԷ. 57։

Վասն Թաղման Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ իբրեւ երեկոյ եղեւ, եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ, որում անուն էր Յովսէփ. որ աշակերտեցաւ իսկ Յիսուսի։ Սա մատուցեալ առ Պիղատոս, խնդրեաց զմարմինն Յսի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն։ Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց նս կտաւով, և եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի, և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց։ Անդ էր Մարիամ Մագդաղենացի և միւս Մարիամն, նստէին հանդէպ գերեզմանին։ Եւ ի վաղիւ անդր որ է յետ ուրբաթուն, ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիքն առ Պիղատոս, և ասեն. տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր՝ մինչ կենդանին էր, թէ յետ երից աւուրց յառնեմ։ Արդ՝ հրամայեա զգուշանալ գերեզմանին մինչեւ ցերիս աւուրս, գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա. և ասիցեն ժողովրդեանն, թէ յարեաւ ի մեռելոց, և լինիցի յետին մոլորութիւն չար քան զառաջինն։ Ասէ ցնս Պիղատոս. ունիք զզօրականն. երթայք զգուշացարուք որպէս և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։ 66։

Եւ ապա գան յատեանն. ասելով

Եւ գան ի հարաւային կողմն. տաւեղով

Երրորդ Շարական ԲՁ։

Ի գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և զխունկս բերին. ի պատիւ թաղման քո զի զմեղօք ըղհողացեալս վերածեր ի կեանս։ փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս եւ զաղաչանս մեր ընդ առաւօտեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան Եւային ունկամբն։ Ետուն աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչն մեր աւերեաց ըզդժոխս. եւ զթշնամին կապեաց ի յանլոյծ կապանս։

Զկնի Որթիւ։ Դեղ է հարաւ կողմա։

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԵ. 42։

Վասն թաղման Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ իբրեւ երեկոյ եղեւ, քանզի ուրբաթ էր՝ որ է շաբաթն մտանէր, եկեալ Յովսէփ որ յԱրիմաթեայն էր՝ այր պարկեշտ նախարար, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեն ԱՅ. համարձակեցաւ եմուտ առ Պիղատոս, և խնդրեաց զմարմինն Յսի։ Եւ Պիղատոս զարմացաւ թէ այնչափ վաղ մեռաւ. և կոչեցեալ առ ինքն զհարիւրապետն, եհարց զնա և ասէ. թէ արդարեւ՝ այնչափ վա՞ղ մեռաւ։ Եւ իբրեւ ստուգեաց ի հարիւրապետէ անտի, շնորհեաց զմարմինն Յովսէփայ։ Եւ Յովսէփ գնեաց կտաւ, և իջուցեալ զնա պատեաց կտաւովն, և եդ ի գերեզմանի, զոր էր փորեալ ի վիմէ. և թաւալեցոյց վէմ մի ի դուռն գերեզմանին։ Իսկ Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Յովսեայ՝ տեսին զտեղին ուր եդաւ։ Եւ իբրեւ անց շաբաթն, Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Սողովմէ գնեցին խունկս, զի եկեսցեն օծցեն զնա։ ԺԶ. 1։

Եւ գան ի հիւսիսային կողմն. տաւեղով

Չորրորդ Շարական ԲԿ։

* Վռ՛ յա՛րո՞ւթե՛ըդ փա՛ռըք վայե՛լէ՛ երկա՛յնամի՛տ Տէ՛ր։ Օ՛րհնեա՛լ է քո յա՛րութի՛ւնդ Ա՛ստը՛ւած ո՛ր ըը՛ղ-մա՛հ մա՛հո՛ւ ծանուցե՛ր քո՛յի՛ն կա՛մա՛ւոր մահուա՛մբդ. քո՛ յա՛րո՞ւթ։ Գո՛չո՛ւմն ա՛հեղ հրե՛շտա՛կի՛ն ի վէ՛մի՛ն ո՛ր քարոզէ՛ր ա՛ռ նը կանա՛յսն յա՛րեա՛ւ Տէ՛րն ի՛ մեռելո՛ց. քո՛ յա՛րո՞ւթեա՛նը՛դ։

Զկնի՝ Ո՛րթի՛ւ։ Դէպ է հեւսիս կարդա։

· Աւետարան ըստ Մատթէոսի։ ԻԷ. 57։

Վասն Թաղման Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ իբրեւ երեկոյ եղեւ, եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ, որում անուն էր Յովսէփ. որ աշակերտեցաւ իսկ Յիսուսի։ Սա մատուցեալ առ Պիղատոս, խնդրեաց զմարմինն Յսի. յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն։ Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց նը կտաւովք, և եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի, և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ գնաց։ Անդ էր Մարիամ Մագդաղենացի և միւս Մարիամն, նստէին հանդէպ գերեզմանին։ Եւ ի վաղիւ անդր որ է յետ ուրբաթուն, ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիքն առ Պիղատոս, և ասեն. տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր՝ մինչ կենդանին էր, թէ յետ երից աւուրց յառնեմ։ Արդ՝ հրամայեա զգուշանալ գերեզմանին մինչեւ ցերիս աւուրս, գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա. և ասիցեն ժողովրդեանն, թէ յարեաւ ի մեռելոց, և լինիցի յետին մոլորութին չար քան զառաջինն։ Ասէ ցնս Պիղատոս. ունիք զզօրականն. երթայք զգուշացարուք ոպ և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։ 66։

Եւ ապա ջան յաւետանն. ասելով

Եւ գան է Հարաւային ձայն. ասելով

Երրորդ Շարական ԲՁ։

Ի՛ գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և զխունկըս իւրեանց. ի՛ պատիւ թաղման քո զի զմեզ ընդ-հողացեալս վերածեր ի կեանս։ փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս եւ զաղաչանըս մեր ընդ առաւօտեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան Եւային ունկամբն։ Եւ տուին աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչըն մեր աւերեաց ըզդըժոխս. եւ զթըշնամին կապեաց ի՝ յանլոյծ կապանս։

Ջնջ՝ Որթիւ։ Դէպ է Հարաւ ձայնդ։

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԵ. 42։

Վասն թաղման Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ իբրեւ երեկոյ եղեւ, քանզի ուրբաթ էր՝ որ ի շաբաթն մտանէր, եկեալ Յովսէփ որ յԱրիմաթեայն էր՝ այր պարկեշտ նախարար, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեն Այ. համարձակեցաւ եմուտ առ Պիղատոս, և խնդրեաց զմարմինն Յսի։ Եւ Պիղատոս զարմացաւ թէ այնչափ վաղ մեռաւ. և կոչեցեալ առ ինքն զհարիւրապետն, եհարց զնա և ասէ. թէ արդարեւ՝ այնչափ վա՞ղ մեռաւ։ Եւ իբրեւ ստուգեաց ի հարիւրապետէ անտի, շնորհեաց զմարմինն Յովսէփայ։ Եւ Յովսէփ գնեաց կտաւ, և իջուցեալ զնա պատեաց կտաւովն, և եդ ի գերեզմանի, զոր էր փորեալ ի վիմէ. և թաւալեցոյց վէմ մի ի դուռն գերեզմանին։ Իսկ Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Յովսեայ՝ տեսին զտեղին ուր եդաւ։ Եւ իբրեւ անց շաբաթն, Մարիամ Մագդաղենացի և Մարիամ Յակովբայ և Սողովմէ չոքան պատրաստեցին խունկս, զի եկեսցեն օծցեն զնա։ ԺԶ. 1։

Եւ գան է Հիւսիսային ձայն. ասելով

Շարական խաչի ԱԶ։

Ո՛ր զանարատ բազուկս քո ի խաչին տարածեցեր Քս Աստուած. եւ նշան յաղթութեան ետուր մեզ. * սովաւ ընկեանս մեր պահեա։ Ո՛ր զաշխարհահակեցոյց բազկատարածութիւն խաչին քո Քս Ա՛րծ. գաւազան զօրութեան ետուր մեզ. սովաւ։ Ո՛ր ըզմեռեալն ի ճաշակմանէ փայտին յանցանաց. կենաց փայտիւն կենագործեցեր. սովաւ։

Զնի՝ Սաղմոս Դ։

ԿՑ. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Փխ. Ի կարդալ իմում լուար ինձ Աձ ըստ արդարութեան. ի նեղութեան ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ, և լուր աղօթից իմոց։

Որդիք մարդկան մինչեւ յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութիւն, և խնդրէք զստութիւն։

Ծաներուք զի սքանչելիս արար Տէր սբյ իւրում. և Տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա։

Բարկանայք և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր, յանկողինս ձեր զղջացարուք։

Մատուցէք պատարագս արդարութեան, և յուսացարուք ի Տէր։

Բազումք ասէին, թէ ո ցուցցէ մեզ զբարութիւն Տեառն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Ի պտղոյ ցորենոյ՝ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու Տէր միայն առանձինն յուսով քով բնակեցուցեր զմեզ։

Ջնջէ՝ Ո՛րթի՛ւ։

Աւետարան ըստ Յովհաննու։ Ժթ. 16։

Վասն խաչելութե Տեառն մերոյ Յսի Քսի։

Յայնժամ ետ զնա (Պիղատոս) ի ձեռս նց, զի ի խաչ ելանիցէ։ Եւ նոքա առեալ տանէին զնա. և բարձեալ էր ինքնին զխաչափայտն, և ելանէր ի տեղին՝ որ անուանէր Գագաթան, և կոչէր եբրայեցերէն Գողգոթա. ուր և ի խաչն իսկ հանին զնա. և ընդ նմա երկուս եւս այլս աստի և անտի, և ի միջի զՅս։ Գրեաց և տախտակ Պիղատոս, և եդ ի վերայ խաչին. և էր գրեալ. Յս Նազովրեցի՝ Թագաւոր Հրէից։ Զայն տախտակ ընթերցան բազումք ի Հրէից, զի մօտ էր ի քաղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւ Յս. և էր գրեալ եբրայեցերէն, դաղմատերէն և յունարէն։ Ասեն ցՊիղատոս քահանայապետքն Հրէից. մի՛ գրեր Թագաւոր Հրէից, այլ թէ նա ասաց՝ Թագաւոր եմ Հրէից։ Պատասխանի ետ Պիղատոս. զոր ինչ գրեցի՝ գրեցի։ 22։

Ապա դառնան խաչիւ և աւետարանաւ շրջադառնան և շարականն։ Տե՛ս երես 57։

Եւ ապա երթան ի գերեզմանն և ասեն Ժամամուտ։

Քանզի յարեաւ ի մեռելոց Քս Ած յաւիտենից արարիչ, և յարութիւն ազգի մարդկան, զոր օրհնեն անդադար զինուորութիւնք հրեշտակաց, և մեք զուարթունք երկնից, ընդ որս գոչելով ասեմք՝ փառք սոսկալի յարութեան քո Տէր։

Կամ զՂազարու ժամամուտն ասա։

Յորժամ եկեալ կենարարն ի գերեզմանն Ղազարու. յորժամ եկեալ կենարարն ի գերեզմանն Ղազարու՝ աւետաւոր ձայնիւն աղաղակէր ասելով. Ղա՛զարէ՝ արի՛ եկ արտաքս։ Իսկ մեռեալն ի գերեզմանէն յարեաւ, և նոյն ինքն զանմահութե պարգեւսն ետ սիրելոյն, և ծծայլին ձայնիւն ի գերեզմանէն կոչեաց.

վքյ և մանկունք Եբրայեցւոց ոստովք օրհնէին զանմահ թագաւորութիւն քո. ովսաննա, օրհնեալ է գալուստ քո՝ օրհնութիւն ի բարձունս. օրհնեալ որ գալոցդ ես անուամբ Տեառն։

Շարական Դկ։

Յիսուս միածինն անմահութեանց պարգևատուն երևեցաւ մեզ. խափանեաց զզօրութիւն մահու։ Բղխմամբ արտասուաց Մարիամու և Մարթայի անկեալ առ ոտսն Տեառն. խնդրէին զնորոգումն եղբօրն։ Բանիւ Բանն Աստուած կենագործեաց զՂազարոս ի թաղմանէ. և եկեալ արտաքս անապական։

Աձն։ Դու ծաղիկ անթառամ տոհմի սեռիս մարդկութեան. և շառաւիղ օրհնութեան նախնւոյ ծնողին մեր բնութեան. բարեխօսեա միածնին Աստուածածին մայր Բանին։ Երկնաւոր արքային եղեր տաճար ըստ երգողին. յանկարծակի փեսային ի յառագաստ բազմեալ քոյին. բարեխօսեա միածնին Աստուածածին մայր Բանին։ Զօրք երկնից անմարմնոց իմանալեացըն զուարթնոց. իջեալ յերկնից ի յերկիր սպասաւորել մեծ արքային. բարեխօսեա միածնին Աստուածածին մայր Բանին։

Խղ։ Այսօր նշան յաղթող երևեալ ի յերկրի. պայծառացոյց զտիեզերս. զէն յաղթութեան ետուր զխաչ քո Տէր. *ապրեցուցանել զմեզ ի պատրանաց թշնամւոյն։ Փայտ կենաց կանգնեալ ի մէջ տիեզերաց լոյս եւ ապաւէն ազգի մարդկան. սա պահեսցէ զմեզ յամենայն վտանգից մերոց. ապրեցուցանել։ Փառք Հօր։ Յաղթող զօրութեամբ խաչի քո պահեա զմեզ Քրիստոս Աստուած որ տարածեցեր զձեռս քո ի նմա. եւ լուծեր զկնիք դատապարտութեան յանցանաց մերոց. ապրեցուցանել։

ՆՃՂ։ Այժմ և։ Ի հարկանել փողոյն հրեշտակապետին

մեծի. ի բանալ գերեզմանացըն զարթիցեն մեռեալքն անապական մարմնով. զարդարին ընդ առաջ քո Տր̃. զապաւինեալսն ի քեզ. զհոգիս նընջեցելոց մեր ըն-կալ յանտրտում ի կեանս. որ օրհնիս երգով ի հրեղէն զուարթնոցն:

Սաղմոս ՃԻԹ. Յայնժամ:

Կց. Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց:

Փխ. Ի խորոց կարդացի առ քեզ Տէր. Տէր լուր ձայնի իմում:

Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց: Թէ զանօրէնութիւս քննես Տէր. Տէր ո՞ կարէ կալ առաջի քո, զի ի քէն է քաւութիւն:

Վասն անուան քո համբերի Տէր. համբեր անձն իմ բանի քում. յուսացաւ անձն իմ ի Տէր: Ի պահէ ա-ռաւօտու մինչև յերեկոյ, ի պահէ առաւօտու յու-սացաւ Իսրայէլ ի Տէր:

Ի Տեառնէ է ողորմութիւն բազում, և ի նմանէ է փրկութի̃. — և նա փրկեաց զԻ̃էլ յամ̃ նեղութեց նր̃:

Աւետարան Յովհ: Եւ էր ոմն հիւանդ: 157:

Մաղթ. Հոգւոցն հանգ: Քրզ. Վս̃ հոգւ: Աղ. Քս̃ Որդի:

Եւ է գտանել յեկեղեցին՝ օրհնեն Երգ. Նորաստեղծեալ:

Զկնի՝ Քրզ. Խնդրեսցուք: Կեցո յայնժամ: Աղ. Քում ա-մենազօր և հրաշալի յարութեդ:

---

Եւ ապա գնեն զսուրբ խաչն և զաւետարանն ի վերայ գերա-կայքն: Եւ շուրջ պար առեալ եղանակեն

Շարական ԲԿ:

Քրիստոս յարեաւ ի մեռելոց: Ընդ արշալուսն ա-ռաւօտուն կանխեալ կանանցն ի գերեզմանն ասե-լով. Քս̃ յարեաւ ի մեռելոց: Եւ առ նոսա ասէր հրեշտակն զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. Քրիստոս յարեաւ ի մեռելոց: Փութացարուք ով

սուրբ կանայք եւ պատմեցէք աշակերտացն ասելով.
Քրիստոս յարեաւ ի մեռելոց։

Աղա Շարական ԲԿ։

Խաչի քո Քս երկիր պագանեմք. եւ որ է կարգն։ 385։
Եւ յասելն՝ զան երկոս երկոս առաջի խաչին, նախ տանուտէրն ծնկաչոքելով, եւ ապա ժողովուրդն ծնրադրութեամբ. եւ համբուրեն զաւագ խաչն եւ զաւետարանն, եւ զմնացեալս տանելով.
Քս յարեաւ ի մեռելոց։ Ձեզ և մեզ մեծ աւետիս։

Քրզ. Սբ խաչիւս։ Աղ. Պահպանեա։

---

# ՑԵՐԵԿՈՑԻՆ

Ի դրան ժամն ծաղկոցն է դասուն եկեղեցւոյն, եւ ասեն է ԲԷ-
Սաղմոս ԿԴ։

Քեզ վայել է օրհնութիւն Աճ ի Սիովն. և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։

Լուր աղօթից իմոց, զի առ քեզ ամ մարմին եկեսցէ։

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր. զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես։

Երանի զորս ընտրեցեր և ընկալար. և բնակեսցեն ի գաւիթս քո։

Լցուք մեք ի բարութենէ տան քո. սուրբ է տաճար քո, սքանչելի արդարութեամբ։

Լուր մեզ Աճ փրկիչ մեր. յոյս ամենայն ծագաց երկրի, և որ ի ծով հեռի։

Ո պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով. զգեցեալ է զօրութիւն։

Ո խռովեցուցանէ զմեծութիւն ծովու. և զձայն ալեաց նորա ցածուցանէ։

Խռովեսցին հեթանոսք. և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց։

Ցելս առաւօտու և ընդ երեկոյս զուարճացին. հայեցար յերկիր, արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն նորա։

գետն Ա՟յ լի եղեւ ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն։

Զակօս ն՟ր արբեցուցեր, և բ՟զմ արարեր զարմտիս ն՟ր։

Ի ցօղել նոցա զուարթ եղիցի բոյս նորա. օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քո։

Դաշտք քո լցցին պարարտութեամբ. պարարտասցին գեղեցկութիւնք անապատի։

Բլուրք ցնծութ՟ի զգեցցին. և զգեցցին խոյք մաքեաց։

Հովիտք բազում արասցեն ցորեան, աղաղակեսցեն և օրհնեսցեն։

Ընթերցուածս ի Գործոց առաքելոց։ Ա. 1։

Զբանն առաջին զոր արարի վ՟ն ա՟մի, ո՛ Թէոփիլէ, զոր սկսաւ Յ՟ս առնել և ուսուցանել՝ մինչեւ յօրն պատուիրելոյ առաքելոցն ի ձեռն Հոգւոյն ս՟բյ, զորս ընտրեացն, և վերացաւ։ Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ չարչարանացն իւրոց ի բ՟զմ արուեստս՝ յաւուրս քառասուն երեւել նոցա և ասել վասն արքայութեանն Աստուծոյ։ Եւ ի հաղորդել ընդ նոսա հացի՝ պատուէր տայր ն՟ց յԵ՟ղէմէ մի՛ մեկնել, այլ սպասել աւետեացն Հօր՝ զոր լուարուքն յինէն։ Զի Յովհաննէս մկրտեաց ի ջուր, այլ դուք մկրտիցիք ի Հոգին ս՟բ՝ ոչ յետ բազում ինչ աւուրցս այսոցիկ։ Եւ նոքա մատուցեալ հարցանէին զնա և ասէին. Տէ՛ր, եթէ ի ժամանակի՞ աստ յայսմիկ հասուցանելոց իցես զարքայութիւնն Իսրայէլի։ Ասէ ց՟նս. ոչ է ձեզ գիտել զժամս և զժամանակս, զոր Հայր եդ յիւրում իշխանութ՟ն. այլ առջիք զօրութ՟ի ի հասանել Հոգւոյն ս՟բյ ի վ՟ր ձեր. և եղիջիք ինձ վկայք յԵ՟ղէմ և յա՟մ Հրէաստանի և ի Սամարիա, և մինչեւ ի ծագս երկրի։ 8։

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Դու յարուցեալ գթասցիս ի վ՟ր Սիովնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ։

Աւետարան ըստ Ղուկասու։ ԻԴ. 13։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ ահա երկուք ի նոցանէ երթային ի նմին աւուր ի գեօղ մի, որ հեռի էր յԵրուսաղէմէ հարիւր և վաթսուն ասպարիսաւ. և էր անուն նր Էմմաւուս։ Եւ նոքա խօսէին ընդ միմեանս վս ամ անցիցն անցելոց։ Եւ եղև ընդ խօսելն նց և ընդ վիճելն, և ինքն իսկ Յս մերձեցաւ և երթայր ընդ նոսա։ Եւ նց աչք կալեալ էին առ ի չճանաչելոյ զնա։ Եւ ասէ ցնս. զի՞նչ են բանքդ՝ վասն որոյ վիճիքդ ընդ միմեանս մինչ դեռ գնայքդ, և տրտմեալ էք։ Պատասխանի ետ մի ոմն ի նոցանէ՝ որում անուն էր Կղէովպաս, և ասէ ցնա. դո՛ւ միայն կաս յԵրուսաղէմ, որ ոչ գիտացեր զինչ գործեցաւ ի նմա յաւուրս յայսոսիկ։ Եւ ասէ ցնոսա. զի՞նչ։ Եւ նոքա ասեն. զՅսէ Նազովրեցւոյ, որ եղեւ այր մարգարէ՝ հզօր արդեամբք և բանիւք առաջի ԱՃ և ամ ժողովրդեանն։ Ո՛րպ մատնեցին զնա քահանայապետքն և իշխանքն մեր ի դատաստան մահու, և հանին զնա ի խաչ։ Մեք ակն ունէաք՝ թէ նա է որ փրկելոց իցէ զԻսրայէլ. այլ և հանդերձ այսու ամի՝ այս երրորդ օր է՝ յորմէ հետէ այն գործեցաւ։ Այլ և կանայք ոմանք ի մէնջ զարմացուցին զմեզ, որք կանխեալ ընդ առաւօտս չոգան ի գերեզմանն, և ոչ գտին զմարմին նր. եկին և ասեն՝ թէ և տեսիլ եւս հրեշտակաց տեսին, որք ասէին զնմանէ թէ կենդանի է։ Եւ գնացին ոմանք ի մէնջ ի գերեզմանն, և գտին նոյնպէս որպէս կանայքն ասացին, բայց զնա ոչ տեսին։ Եւ նա ասէ ցնոսա. ո՛վ անմիտք և հեղգասիրտք ի հաւատալ ամենայնի զոր խօսեցան մարգարէքն։ Ո՞չ զնոյնս պարտ էր չարչարել Քսի, և մտանել ի փառս իւր։ Եւ սկսեալ ի Մովսիսէ և յամ մարգարէիցն՝ մեկնէր նց որ ինչ յամ գիրս գրեալ է զնմանէ։ Իբրեւ մերձեցան ի գեօղն յոր երթային, և նա պատճառէր հեռագոյն եւս ուրեք եր-

թալ: Եւ բռնադատեցին զնա և ասեն. առ մեզ ագիր, զի ընդ երեկս է, և տարաժամեալ է օրս. և եմուտ ագանել անդ ընդ նոսա: Եւ եղեւ ի բազմելն նորա ընդ նոսա, առեալ զհացն՝ օրհնեաց, եբեկ և ետ նց: Եւ նց բացան աչք, և ծանեան զնա. և նա եղեւ ի նոցանէ աներեւոյթ: Եւ ասեն ցմիմեանս. ոչ իսկ և սիրտք մեր ճմլէին ի մեզ՝ մինչ խօսէրն ընդ մեզ զճանապարհայն, և ոմ բանայր մեզ զգիրս: Եւ յարուցեալ նոյնժամայն դարձան յԵմ, և գտին ժողովեալ զմետասանսն և զորս ընդ նոսայն էին: Եւ ասեն՝ թէ արդարեւ յարեաւ Տէր, և երեւեցաւ Սիմոնի: Եւ նոքա պատմէին զայն որ ղճանապարհայնն, և թէ զիարդ ետ ծանօթս նց ի բեկանել հացին: 35:

Եւ ելանեն խաչիւ եւ աւետարանաւ, խնկովք եւ մոմեղինօք եւ ամենայն զարդուք ի դուրս, ասելով

Շարական Ա2:

Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի. արասցուք տօն ցնծութեամբ. նորոգեալքս ի հնութենէ մեղաց ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց: Այսօր հրեշտակըն լուսափայլ ի յերկնից իջեալ. զարհուրեցոյց ըզպահապանսն. եւ նք կանանցըն քարոզէր ասելով. Քս յարեաւ ի մեռելոց: Այսօր նոր Իէլ կոչեցեալք ի Քրիստոս. ազատեալք արեամբ գառինն Աստուծոյ. պարենսցուք ընդ երկնայնոցն ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց:

Աւետարան ըստ Յովհաննու: Ի. 1:

Վասն յարութեան Տեառն մերոյ Յսի Քսի:

Եւ ի միաշաբաթոջն Մարիամ Մագդաղենացի գայ առաւօտուն ընդ արշալոյսն ի գերեզման անդր. և տեսանէ զվէմն բարձեալ ի դրաց գերեզմանին: Ապա ընթանայ և գայ առ Սիմոն Պետրոս և առ միւս ա-

շակերտն՝ զոր սիրէրն Յս, և ասէ ցնոսա. բարձին զՏէր ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմ՝ ո՛ւր եդին զնա: Ել Պետրոս և միւս աշակերտն, և գային ի գերեզմանն: Ընթանային երկոքեան ի միասին. և միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս, և եկն նախ ի գերեզմանն: Եւ խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն, բայց ի ներքս ոչ եմուտ: Եկն և Սիմոն Պետրոս՝ որ գայրն զկնի Նր. և եմուտ ի գերեզմանն, և տեսանէ զկտաւսն՝ զի կային անդ. և վարշամակն որ էր ի գլուխ Նր՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն ծալեալ ի մի կողմն: Յայնժամ եմուտ և միւս աշակերտն, որ եկեալն էր յառաջագոյն ի գերեզմանն, ետես և հաւատաց. զի չեւ ևս գիտէին զգիրս՝ թէ պարտ է Նմա ի մեռելոց յառնել: Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն: Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին և լայր. և մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ի գերեզմանն, և տեսանէ երկուս հրեշտակս ի սպիտակս, զի նստէին մի ի սնարից և մի յանոտից՝ ուր կայր մարմինն Յսի: Եւ նոքա ասեն ցնա. կի՛ն դու՝ զի՞ լաս: Ասէ ցնոսա. զի բարձին զՏրն իմ ի գերեզմանէ աստի, և ոչ գիտեմ՝ ո՛ւր եդին զնա: Զայս իբրեւ ասաց՝ դարձաւ ի թիկունս կոյս, և տեսանէ զՅս զի կայր. և ոչ գիտէր թէ Յս իցէ: Ասէ ցնա Յս. կին դու՝ զի՞ լաս, զո՞ խնդրես: Նմա այսպէս թուեցաւ՝ թէ պարտիզպանն իցէ. ասէ ցնա. տէ՛ր՝ եթէ դու բարձեր զնա՝ ասա՛ ինձ ո՞ւր եդիր զնա, զի ես առից զնա: Ասէ ցնա Յիսուս: Մա՛րիամ: Եւ նա դարձաւ, և ասէ ցնա եբրայեցերէն. Րաբբունի, որ թարգմանի՝ վարդապետ: Ասէ ցնա Յիսուս, մի՛ մերձենար յիս, զի չեւ ևս ելեալ եմ առ Հայր իմ. այլ ե՛րթ դու առ եղբարսն իմ, և ասա՛ ցնոսա, ելանեմ ես առ Հայրն իմ և առ Հայր ձեր, և Աստուածն իմ և Աստուած ձեր: Գայ Մարիամ Մագդաղենացի, և պատմէ աշա-

կերտացն՝ եթէ ետես նա զՏէր, և զայս ինչ ասաց ցնա ։ 18։

---

Եւ Երկման է գերեզմանս, եւ աւէն հանգստեան

Շարական ԱԶ։

Ո՛ր անճառ տնօրէնութե՛ք ի փրկութիւն ազգի մարդկան խոնարհեցար Բանդ Աստուած. * այսօր հանգոյ և ըզմեր ըզնընջեցեալսն ընդ մերս քո որ միայնդ ես մարդասէր։ Ո՛ր անչարչարելիդ մարմնով եկիր կամաւ ի չարչարանս. եւ ի խաչին բեւեռեցար. հեղեր զարիւնդ ի փրկութիւն. այսօր հանգ.։ Ո՛ր թաղմամբ երեքօրեայ ըզգերութիւն մահու լուծեր. եւ կոխեցեր զիշխանն մահու. եւ վերածեր ըզնընջեցեալսն. այսօր հանգ.։ Ո՛ր հրաւիրեցեր յանմահութիւն զազգըս մարդկան անմահութեամբ բաշխող Քրիստոս աղաչանօք Աստուածածնին. այսօր հանգ.։

Սաղ. ՃԻԹ։ ԿՑ. Եղիցին։ Փխ. Ի խորոց կար։ 483։

Աւետարան ըստ Յովհաննու ։ Ե. 24։

Տէրն մեր Յս Քս ասէ.

Ամէն ամէն ասեմ ձեզ. զի որ զբանն իմ լսէ, և հաւատայ այնմ որ առաքեացն զիս, ընդունի զկեանսն յաւիտենականս, և ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ի մահուանէ ի կեանս ։ Ամէն ամէն ասեմ ձեզ. զի գայ ժամանակ, և արդէն իսկ է, յորժամ մեռեալք լսիցեն ձայնի Որդւոյն ԱՅ. և որք լսիցենն՝ կեցցեն։ Զի ո՛րպէս Հայր ունի կեանս յանձին իւրում, նոյնպէս ետ և Որդւոյ ունել կեանս յանձին իւրում. և իշխանութիւն ետ նմա դատաստան առնել. և զի որդի մարդոյ է՝ ընդ այն զի՞ զարմանայք. զի եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքին որ ի գերեզմանս կայցեն՝ լուիցեն ձայնի նո՛ր և եկեսցեն արտաքս. որոց բարիս գործեալ

իցէ՝ ի յարութիւն կենաց, և որոց զչար արարեալ՝ ի յարութիւն դատաստանաց։ Ոչ կարեմ ես յանձնէ առնել և ոչ ինչ. այլ որպէս լսեմ՝ դատիմ, և դատաստանն իմ արդար է. զի ոչ խնդրեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։ 30։

---

Շարական ԱՁ։

Մե՛ք խա՛չն օ՛գնա՛կա՛ն հա՛ւատա՛ցե՛լո՛ց կա՛նգնեցա՛ւ ի յերկրի՛ յա՛ղթո՛ղ Թըշնամւո՛յն. ե՛կա՛յք ժո՛ղո՛վո՛ւրդք ե՛րկե՛րպա՛գե՛սցո՛ւք։ Ա՛րարի՛չն Ա՛ըծ՛ բա՛րձրացա՛ւ ի խա՛չի՛ն ե՛ւ զմեռեա՛լըս մե՛ղօք փա՛յտի՛ն ճաշակմա՛մբն. ի՛ սմա՛ նո՛րոգեա՛լ կե՛նդա՛նա՛ցո՛յց։ Ի՛ միւսանգա՛մ գա՛լըստեա՛ն Աստուա՛ծո՛րդւո՛յն սո՛ւրբ խա՛չն երեւի՛ ե՛ւ լուսա՛ւո՛րէ. զի՛ նա՛ է յո՛յս հա՛ւա՛տա՛ցե՛լո՛ց։

Սաղմոս Դ։ Կ8· Նշանեցաւ։ Փխ. Ի կարդալ։ Ցե. 480։

Աւետարան ըստ Յովհաննու։ Ժթ. 31։

Վասն խաչելութեան Տեառն մերոյ Յսի Քսի։

Իսկ Հրեայքն՝ քանզի ուրբաթ էր, զի մի՛ անդէն ի խաչին ագանիցին մարմինքն մինչեւ ցշաբաթն, զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ. աղաչեցին զՊիղատոս՝ զի խորտակեսցեն զբարձս նց, և բարձցին։ Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս, նոյնպէս և զմիւսոյն՝ որ ընդ նմա ի խաչն ելեալ էր։ Բայց իբրեւ եկին առ Յն և տեսին զի այն ինչ մեռեալ էր, ոչ խորտակեցին զբարձս նր. այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նր. և վաղվաղակի ել արիւն և ջուր։ Եւ որ ետեսն՝ վկայեաց, և ճշմարիտ է վկայութիւն նր. և նա գիտէ թէ ճշմարիտ ասէ, զի և դուք հաւատասջիք։ Այս եղեւ՝ զի լցցի գիրն, եթէ Ոսկր նր մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս գիր ասէ, եթէ Հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն։ 37։

Եւ քարոզէ սարկաւագն. Եւ եւս խաղաղ։ Վ՛ն ի վերուստ. եւ աւետարանաբերքն զանդաստանն եւ չորս կողմն աշխարհի։

---

Եւ ի դառնալն յեկեղեցին՝ քարոզէ սարկաւագն.

Եւ եւս խաղաղութեան։ Քհն. Օրհնութիւն և փառք։ Եւ ապա ասեն Խոնարհեցո եւ Ապրեցո։

Մեսեդի Յարութեան ԱՁ։

Տէր կարող և հզօր. Տէր կարող ի պատերազմի։

Տեառն է երկիր լրիւ իւրով. աշխարհ և ամենայն բնակիչք նորա։

Քարոզ. Ասասցուք. կամ Գանձ։

Համբարձի ԱՁ։

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն. ի խնկել զանապական մարմինն։ Փառք Հօր։ Եւ գտին զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին. եւ լուեալ բարբառ ի հրեշտակէն. եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց զմահ։ Այժմ և միշտ։ Եւ հանդիպեալ քո Տէր առաքելոցն եւ տուեալ ողջոյն կենդանարար. առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց։

Ասի աւետիքն այս յարութեան Տէր յերկնից երոյն. յամէն օր Համբարձի ասի է յայնէն մինչեւ ի Համբարձումն։

Քարոզ. Վասն խաղաղութեան։ Աղօթք. Հայր գթած։

Արձակման Սաղմոս ՃԽԷ։

Գովեա Երուսաղէմ զՏէր։

Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց. և օրհնեաց զորդիս քո ի քեզ։

Որ եդ զսահմանս քո ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Որ առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նորա։

*գնէ զձիւն որպէս զասր . և զմէգ ոպ փոշի ցանեաց :*

*Արկանէ զսառն ոպ պատառս . առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ :*

*Առաքէ զբան իւր և հալէ զնս . շնչեսցեն հողմք և գնասցեն ջուրք :*

*Ո պատմէ զբան իւր Յակոբայ . զարդարութի և զի-րաւունս Իսրայէլի :*

*Ոչ այսպէս արար ամ ազգաց Տէր . և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա :*

Աւետարան ըստ Յովհաննու : Ի. 19 :

*Վասն յարութեան Տեառն մերոյ Յսի Քսի :*

*Եւ էր երեկոյ ի միաշաբաթւոջ աւուրն . և դրօք փա-կելովք՝ ուր էին աշակերտքն ժողովեալ վն ահին Հրէից, եկն Յս և եկաց ի միջի նց, և ասէ ցնս . ողջոյն ընդ ձեզ : Իբրև զայս ասաց՝ եցոյց նց զձեռս և զկողս իւր . և խնդացին աշակերտքն իբրև տեսին զՏէր : Ասէ ցնս դարձեալ . ողջոյն ընդ ձեզ, ոպ առաքեաց զիս Հայր իմ՝ և ես առաքեմ զձեզ : Եւ զայս իբրև ասաց՝ փչեաց ի նոսա և ասէ . առէք Հոգի սուրբ . եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նց . եթէ զուրուք ու-նիցիք՝ կալեալ լիցի : Իսկ Թովմաս մի յերկոտասանիցն՝ անուանեալ Երկուորեակ՝ ոչ էր ընդ նոսա յորժամ եկն Յս : Ասէին ցնա այլ աշակերտքն, եթէ տեսաք զՏէր : Եւ նա ասէ ցնոսա . եթէ ոչ տեսից ի ձեռս նր զնշան բեւեռացն, և արկից զմատունս իմ ի տեղիս բեւեռացն, և մխեցից զձեռս իմ ի կողս նր, ոչ հաւ-ատամ : 25 :*

Քրզ. Խնդրեսցուք : Կեցո՛ Յայնժ— : Աղ. Թագաւոր :



# Ա. ԿՐԿՈԻՏԱԲԱԹԻ, ԱԿ.

*Մեռելոց է*

---

## Ի ԳԻՇԵՐԻ

### Օրհնութիւն ԱԿ:

Առաքեցար ի Հօրէ Բանդ Աստուած ի փրկութիւն ազգի մարդկան, օրհնեմք ըզքեզ սուրբ Աստուած: Ի գերեզման իջեր թագաւոր անմահ, եւ ի Հօրէ ոչ մեկնեցար, օրհնեմք ըզքեզ սուրբ Աստուած: Ի յերրորդ աւուր յարեար մեծապէս եւ ի յերկինս համբարձար, փառք յարութեան քո Տէր, օրհնեմք ըզքեզ սուրբ Աստուած:

Յարուցեալ Տէրն ի գերեզմանէն միածինն որպէս փայլակն եւ լոյս փառաց ծագեաց յաշխարհս, եւ երկինք և երկիրս ցընծային: Մեծ է յարութիւն Աստուածորդւոյն, քանզի դրունք երկնից բացեալ եղեն և հոտ անոյշ բուրեաց յաշխարհս, եւ լցոյց զարարածս ամենայն: Զօրք երկնից իջեալ էին եւ բանակեալ շուրջ ըզգերեզմանաւն. եւ հոգեղէն բարբառով եր-գէին, Տէր օրհնեալ է քո յարութիւնդ:

Աքանչելի հրեշտակըն Տեառըն ցընծութեամբ իջեալ ի գերեզմանըն հարկանէր, փող յարութեանըն Տեառն: Ի հարկանել փողոյն, պահապանքըն զար-հուրեցան եւ եղեն, ի յահէն որպէս մեռեալ: Զայն եղեւ ի հրեշտակէն, բարբառ եղեւ ուրախութեան Տէր յարեաւ, փառք յարութեանըն Տեառն: Դրունքըն փակելովք երեւեալ Քս աշակերտացն եւ ասէր, խաղաղութիւն ընդ ձեզ:

Հրաշալի ըզյարութիւն Աստուածորդւոյն, այսօր

տեսեալ առաքելոցն եւ բազմութիւք հրեշտակացն. երգէին երգ նոր անլռելի ձայնիւ: Զայն ահեղ գաբրիէլեան փողոյն. այսօր գոչէր աւետարանէր աւետիք ընդ աշխարհի. երգէին երգ նոր անլռելի ձայնիւ: Լոյս մեծ եւ ահաւոր. այսօր ծագեաց սբ եկեղեցւոյ յարուցեալ ի մեռելոց Քրիստոս. երգեսցուք երգ նոր անլռելի ձայնիւ:

*Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս յաղթական օրհներգութիւնս: Որ մահուամբ քո մեռուցեր զմահ եւ յարութեամբ պարգեւեցեր հողանիւթ բնութեանս. Երգեսցուք: Որ ցուցեր մեզ ճանապարհ նորոգման և մաքրեցեր զաղտեղութիւն յանցանացն զոր պատրեաց թշնամին. Երգեսցուք:

Ամենեցուն կանայքն իւղաբերք ի գերեզմանն. եւ տեսին զյարութիւնն Տեառն: Բացաւ դուռն յարութեան գերեզմանին կենքեղոյ. լոյս ծագեաց տիեզերաց:

ՀՈԳ. Որ յերկնային զօրս անմարմնոցն նախ հեղեր առատապէս Հոգիդ Ճշմարիտ. զմեծային և զգերագոյն քո իմաստութիւնդ. լինել փառաբանիչ սուրբ Երրորդութեանդ. *Ընդ նոսին փառաւորեմք զերրեակ միութիւնդ: Որ զկերպարանն մեծային ստեղծեալ Երրորդութեանդ խորհրդականութեան. զարդարեցեր փրկչմամբ շնորհաց քոց կենդանարար. եւ ընդ ծնեալսն առ ի նմանէ խօսեցար օրինօք եւ մարգարէիւք. ընդ նոսին: Որ յերկրորդի լինելութես յետ յարութեան քում էանկցին. մտեալ ի վերնատունն դրօքըն փակելովք. շնորհելով ըստ առաջին փրկչմանն ըզքեզ մետասանիցն. առաքելոցն ասաց առէք Հոգի սուրբ. ընդ նոսին:

ՆՆՉ: Յորժամ յերկնից գոչէ փողն ազդեցուցիչ անուանելով տիեզերաց ի դատաստան ահաւոր. յայնմ աւուր

յահեղին *յիշեա Տէր եւ ըզմեր ըզնընջեցեալսն. եւ Հանգո ընդ սուրբըս քո։ Յորժամ ճառագայթք ածութեըդ փայլեն ի յարեւելից. եւ դըպրութիւնք Հրաշիցըն բանին. յայնմ աւուր յահեղին յիշեա Տէր եւ ըզմեր ըզնըն։ Զարհուրեալ դողան արարածք ի ձայնէ սրովբէագոչ փողոյն. յորժամ Հարկանէ հրեշտակապետն եւ կոչէ ի դատաստան զազգս որդւոց մարդկան. յայնմ աւուր յահեղին յիշեա Տէր եւ ըզմեր։

ԱՁՆ։ Զանճառելի ըզլոյս աստուածութեան տընօրինաբար կրեցեր ի քում յորովայնի Մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Իմանաւոր լուսոյն զարհուրեցան դասք առաքելոցն. այլ ի քեզ բովանդակ կրեցեր ըզհուր Աստուածութեանն Մարիամ մայր եւ կոյս. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։ Առաքելոցըն հովանացեալ ամպ լուսեղէն. գերագոյն քեզ Հոգւոյն սրբոյ. եւ զօրութի Բարձրելոյն հովանաւորեալ սուրբ Աստուածածին. օրհնութեամբ ըզքեզ մեծացուցանեմք։

ԽՆ։ Որ ի սկըզբանէ իմաստութբ հաստատեցեր զեկեղեցի Հօր իմաստութիւն. զոր նախանըկար տեսութեամբ նըշանակեալ Մովսէս խորանաւն երկնահանգոյն ի Սինա լերին. լուսաւորելով փառօքն Աստուծոյ։ Որ զխորհուրդ անապական տնօրէնութեանդ քո ի սրբոյ կուսէն. տըպաւորելով տապանակն ածային ուխտին կտակարանաց Բանիդ Աստուծոյ. փառաց անեղին տեղի հանգըստեան։ Փառք Հօր։ Որ ի կեանս վերադարձի բնութեան դարձմամբ Յորդանանու օրինակեցեր. եւ ըզբըռնութիւն մահու եւ դըժոխոց կործանմամբն Երիքովի տապանակաւ խաչին հրա-

շագործեալ նոր խորհրդի. օրհնութիւն քեզ Տէր երգեսցեն մանկունք։

Այժմ և միշտ։ Ցարեաւ Տէրն ի մեռելոց. հզօր զօրութբ հաստատեաց զհիմունս եկեղեցւոյ սրբոյ։

Մաղթանք. փառք հրաշափառ յարութեան։

Ալէլու Ցորոնեան Ակ։ Ծափս հարէք ամենայն։ 36։

---

## ՑԱՌԱՒՕՏՈՒ

Հարց հանգստեան ԱԶ։

Օրհնեալ ես դու Քս որ յարեարդ ի մեռելոց ողորմած և կոխեցեր ըզմահ. Տէր Արծ հարցն մերոց։ Որ մահկանացուացս կեանքդ ես. զհոգիս ննջեցելոց մեր ընկալ. Տէր Արծ հարցն մերոց։ Զորս փոխեցեր յաշխարհըն կենդանանեաց հանգըստեան արժանաւորեա. Տէր Արծ հարցն մերոց։

Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Փառք Հօր։ Եցէք. Որ գալոցն է զօրութբ բազմաւ. աղդմամբ ձայնի կենագործէ ըզննջեցեալսն. ըզՏէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Այժմ և։ Օրհնեսցէ։ Աղաչեմք ըզքեզ բարերար. հանգո զհոգիս ծառայից քոց ընդ սբըս քո. օրհնեսցուք եւ բարձր արասցուք զանուն քո յաւիտեան։

Մեծաց. ԱԶ։ Յարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս. որ ըզննջեցեալսն յԱդամայ կենագործէ անապական. *զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Փառք Հօր։ Արարողին երկնի և երկրի եղեր տաճար և առագաստ. որ ըզննջեցեալսն մեր հրեղէն նորոգէ. զքեզ։ Այժմ և միշտ։ Կերակրողին տիեզերաց արբուցեր ըզքո սբ ըզկաթն. որ ըզննջեցեալսն մեր վերստին նորոգէ. զքեզ։

Ողորմ. ԱՁ։ Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո Տէր պատուեցեր զմեզ. ընկալ եւ այժմ զընծայեցեալսն ի քեզ ուղիղ հաւատով. ըստ մեծի քում ողորմութեանն։ Փառք Հօր։ Որ շնորհօք նմա Հոգւոյն լուսաւորեցեր յիշատակի իւրեանց զհոգիս նց ընկալ մարդասէր. ըստ մեծի քում ողորմութեան։ Այժմ և։ Որք հաղորդեցան մարմնոյ եւ արեան քո Տէր. հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո Քրիստոս Աստուած. քանզի գինք նք արեան քո են։

Տէրյերգն. ԱՁ։ Քեզ վայելէ Ած օրհնութի. որ յարութիւնդ ես ձայնիւ յաւիտենից ննջեցելոց. թագաւոր եւ իշխան վերօրհնեմք զքեզ։ Փառք Հօր։ Ի միւսանգամ գալստեանն քո Քս փառաց թագաւոր. ի ձայն փողոյ նորոգին հոգիք ննջեցելոցն. և յառնեն ի մեռելոց անապական մարմնով։ Այժմ և միշտ։ Վասն որոյ եւ մեք զքեզ աղաչեմք Հայր երկնաւոր. դասաւորեա զընծայեցեալսն մեր ի վերինըդ քո Երուսաղէմ. ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս։

Առաւ. երգ Յարութ. Զյարութի։ Յարեաւ Ած։ 53։

Առաւ. Սաղմոս ԿԴ։ Քեզ վայելէ օրհնութի։ 484։

Աւետարան ըստ Ղուկասու։ ԻԴ. 1։

Վասն յարութեան Տեառն մերոյ Յսի Քսի։

Բայց ի միաշաբաթուն վաղ ընդ առաւօտն եկին ի գերեզմանն. բերին զխունկսն զոր պատրաստեցին. և այլ կանայք ընդ նս. և գտին զվէմն թաւալեցուցեալ ի գերեզմանէ անտի։ Եւ մտեալ ի ներքս՝ ոչ գտին զմարմինն Տեառն Յսի։ Եւ եղեւ ընդ հիանալն նց վասն այնորիկ, և ահա արք երկու հասին առ նս ի հանդերձս լուսաւորս։ Եւ իբրեւ զահի հարան և խո-

Նարհեցուցին զերեսս իւրեանց յերկիր, ասեն ցնոսա. զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս: Չէ աստ, այլ յարեաւ. յիշեցէք ո՞րպ խօսեցաւ ընդ ձեզ մինչ էրն ի Գալիլեա, և ասէր թէ պարտ է որդւոյ մարդոյ մատնել ի ձեռս մարդոց մեղաւորաց, և ի խաչ ելանել, և յերրորդ աւուր յառնել: Եւ յիշեցին զբանսն նր: Եւ դարձան պատմեցին զայս ամ մետասանիցն և այլոցն ամենեցուն: Եւ էին Մարիամ Մագդաղենացի և Յովհաննա և Մարիամ Յակովբայ, և այլք ընդ նս՝ որ պատմեցին զայս առաքելոցն: Եւ երեւեցան առաջի նց շաղփաղփութի բանքն նց, և չհաւատային նց: Բայց Պետրոս յարուցեալ ընթացաւ ի գերեզմանն, և հայեցեալ տեսանէ զկտաւսն լոկ՝ զի կային. և գնաց՝ ընդ միտս զարմացեալ թէ զինչ եղեւ: 12:

Քրզ. Խնդրեսցուք: Կեցո՛: Աղ. Քում ամենազօր:

Ցայս յինանցս յառաւօտուն եւ յերեկոյին Կեցո՛ ասա յայնիս: Եւ Արտօրըշական ոչ ասի. Բայց է կէսօրէն ընթրաստեղծեալն ասա:

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

### Առաջին Սաղմոս ԿԴ:

Քեզ վայելէ օրհնութիւն Այ ի Սիովն. և քեզ տացին աղօթք յԵրէմ:

Լո՛ւր աղօթից իմոց, զի առ քեզ ամ մարմին եկեսցէ:

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր. զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես:

Երանի զորս ընտրեցեր և ընկալար. և բնակեսցեն ի գաւիթս քո:

Լցցուք մեք ի բարութենէ տան քո. սուրբ է տաճար քո, սքանչելի արդարութեամբ:

Լո՛ւր մեզ Այ փրկիչ մեր. յոյս ամենայն ծագաց երկրի, և որ ի ծով հեռի:

Որ պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով. զգեցեալ է զօրութիւն։

Որ խռովեցուցանէ զմեծութիւն ծովու. և զձայն ալեաց նորա ցածուցանէ։

Խռովեսցին հեթանոսք. և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց։

Ցելս առաւօտու և ընդ երեկոյս զուարճասցին. հայեցար յերկիր, արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն նորա։

Գետն Այ լի եղեւ ջուրք. պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն։

Զակօս նր արբեցուցեր, և բազում արարեր զարմտիս նորա։

Ի ցօղել նոցա զուարթ եղիցի բոյս նորա. օրհնեսցի պսակ տարւոյ քաղցրութեան քոյ։

Դաշտք քո լցցին պարարտութեամբ. պարարտասցին գեղեցկութիւնք անապատի։

Բլուրք ցնծութի զգեցցին. և զգեցցին խոյք մաքեաց։

Հովիտք բազում արասցեն ցորեան, աղաղակեսցեն և օրհնեսցեն։

Աւետարան ըստ Մարկոսի։ ԺԶ. 2։

Վն յարութե Տեառն մերոյ Յսի Քսի։

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն գան ի գերեզմանն ընդ արեւագալն, և ասէին ցմիմեանս. ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ի դրաց գերեզմանին։ Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր զվէմն ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ։ Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն, տեսին երիտասարդ մի զի նստէր ընդ աջմէ կողմանէ՝ զգեցեալ պատմուճան սպիտակ, և զարհուրեցան։ Եւ նա ասէ ցնս. մի՛ երկնչիք. զՅն խնդրէք զնազովրեցի զխաչելեալն, յարեաւ՝ չէ աստ. ահաւադիկ տեղին՝ ուր եդին զնա։ Այլ երթայք ասացէք ցաշա-

կերտս Նո՛ր և ցպետրոս, եթէ ահա յառաջագոյն եր-թայ քան զձեզ ի Գալիլեա, անդ տեսանիցէք զնա՝ որպ ասացն ձեզ։ Եւ իբրեւ լուան՝ ելին և փախեան ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ոչ ումեք ինչ ասացին, զի երկնչէին։ 8։

Ցայս շաբաթս մինչև ի Նոր կիւրակէն զանցեալ առաւօտու աւետարանն՝ այսր առաւօտու երեկոյի առաջին ձայն կարգաւ. Եւ զառաւօտեան աւետարանն՝ արձակման կարգաւ, որ աւելի գոյ։ Եւ զմեղնափոխ ըստ հետ կարգաւ։

Մեսեդի Յարութեան. Ակ։

Ո՛ւթոռ քո Ած, յաւիտեանս յաւիտենից. գաւազան ուղղութե գաւազան արքայութե քո։

Բղխեաց սիրտ իմ զբան բարի. և ասեմ զգործս իմ թագաւորի։

Համբարձի Ակ։

Ա՛ռաքե՛ցա՛ր ի Հօրէ Բա՛նդ Աստը՛ւած ի՛ փրկու՛թի՛ ազգի՛ մարդկան օ՛րհնե՛մք ըզքե՛զ սու՛րբ Ա՛ստը՛ւա՛ծ։ Փառք Հօր։ Ի՛գերե՛զման իջե՛ր թագա՛ւո՛ր անմա՛հ. ե՛ւ ի Հօ՛րէ՛ ոչ մեկնե՛ցար. օ՛րհնե՛մք ըզքե՛զ սու՛րբ Ա՛ստը՛ւա՛ծ։ Այժմ և։ Ի՛ յե՛րրո՛րդ աւո՛ւր յարեա՛ր ա՛ծա-պէս ե՛ւ ի յե՛րկի՛նըս համբարձա՛ր. փա՛ռք յա՛րութե քո՛ Տէ՛ր. օ՛րհնե՛մք ըզքե՛զ սու՛րբ Ա՛ստը՛ւա՛ծ։

Արձակման Սաղմ. Ճխէ։ Գովեա՛ Երուսաղէմ զՏր։ 491։

Աւետ. Ղուկ. Բայց ի միաշաբաթուն։ 497։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո՛։ Աղ. Թագա՛ւոր խաղ։

# Ա. ԵՐԵՔՇԱԲԱԹԻ, ԲԶ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհն—ւթի—ն ԲԶ:

Ի գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և զխուն-կըս բերին. ի պատիւ թաղման քո զի զմեզ ըզ-հողացեալըս վերածեր ի կեանս: փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս եւ զաղաչանս մեր ընդ առաւօ-տեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան Եւ-այի ունկամբն: Ետուն աւետիս առաքելոցն յարութեան յարուցչին մեր աւերեալ ըզդըժոխս. եւ զթըշնամին կապեաց ի յանլոյծ կապանս:

Եկին ի գերեզմանն առաւօտեան սբ կանայքն. յօծանել խընկել զանապական մարմինն: Գոչումըն հրեշտակին քաջալերէր ըզնոսա ասելով. ցընծացէք յարեաւ որպէս յառաջն ասաց: Լուեալ ի հրեշտա-կէն զաւետիս յարութեանն. պատմէին աշակերտացն եթէ յարեաւ Քրիստոս:

Զայն աւետաւոր հրեշտակին զուարճացոյց զառա-ւօտեան կանայսն. զՔ՟սի պատմելով ըզյարութի՟ն: Մի յուսահատիք տըրտմութ՟բ այլ ցընծացէք բերկըրե-լով. խընկազգեացք Ա՟ծայնոյն և փափաքողք յարու-թեանն: փութացարուք ի Գալիլեա աւետարանեցէք աշակերտացն. եթէ յարեաւ Քրիստոս եւ խափանեաց ըզմահ:

Այսօր զուարճացան տիեզերք ամենայն ճըշմարիտ յարութեամբ Ա՟ծորդւոյն. քանզի զդըժոխս աւերեաց եւ գերեաց զարգելեալսն ի նմա: Այսօր լուսափայլեալ մեծապայծառ ծագմամբ հրեշտակապետն ի վերայ վի-

մին. կանանցն աւետէր ասելով. զի խնդրէք զկեն-դանին ընդ մեռեալս։ Այսօր բերկրեցան կանայքն իւղաբերք աւետեօք յարութեան Ածորդւոյն. դարձան յառաքեալսն ասելով յարեաւ Ած։

Աքանչելի կանայքն աներկիւղ եկին ի տեսանել ըզգերեզմանն. զի կատարեալ սէրըն մերժեաց զեր-կիւղն։ Եկին ի խնկել ըզտէրունեան մարմինն եւ տեսին յարուցեալ ի գերեզմանէն. եւ վերըստին լոյ-սըն ծագեաց յաշխարհս։ Քարոզեաց հրեշտակըն զյարութիւնըն Տեառն. և բացան գերեզմանք նըն-ջեցելոց. եւ յարութիւն Տեառըն յաղթեաց մահու։

Կանխելով սբ կանանցն ընդ առաւօտն ի գերեզ-մանն. եւ զահաւոր յարութեան ըզձայն ի հրեշտակէն լըւեալ. եթէ յարեաւ Ած։ Թողեալ ըզտըրտմութի-երջանիկ և սբ կանանցն. եւ խնդութեամբ ընթանային պատմել աշակերտացն. եթէ յարեաւ Ած։

ՀՈԳ. Նոյն և նման Հօր և Որդւոյ Հոգիդ անեղ և համագոյ. բըղխումըն Հօր անքննաբար առող յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր զհոգիդ շնորհաց քոց արբուցեր. արբո և մեզ ո-ղորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան։ Էից ստեղ-ծող արարածոց որ շրջէիր ի վր ջրոց. Նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին. գըգուես սիրով աղաւնակերպ զմարդիկ ծնանիս ածա-կերպ. արբո և մեզ ողորմութեամբ ի բաժակէդ ի-մաստութեան։ Բաբուն վերնոցն իմանալեաց և ըստորին այսըր զգալեաց. որ մարգարէս տաս ի հովուաց և ա-ռաքեալս ի ձըկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս քա-րոզ բանի քում զհալածողս. արբո և մեզ ողորմու-թեամբ ի բաժակէդ իմաստութեան։

ՆՆԶ։ Զհրեշտակային ձայնիւն օրհնեսցուք զամենասուրբ զԵրրորդութիւնն․ փառաւորելով ըզՀայր․ որ վերակոչեաց զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն։ Երգեցէք Տեառն երգ նոր եկեղեցիք սըրբեցելոց․ Քրիստոսի երկրպագելով․ որ վերակոչեաց զամենեսեան ի մահուանէ յանմահութիւն։ Արբասաց ձայնիւն օրհնեսցուք․ հոգեւորական հընչմամբ գովեսցուք․ սուրբ զՀոգին փառաւորելով․ որ վերահանգոյց զամենեսեան ի մահուանէ յանմահութի։

ԱՁՆ։ Ըզքեզ կոյս և մայր և բնակարան անծայրին ներմարդութեանն․ գոհաբանեմք և վերօրհնեմք զեղեալ փրկող կենդանութեան ազգի մարդկան․ *վասն որոյ ըզքեզ Ածածին և կոյս բարեբանեմք ըզմայր և զաղախին փրկչին մերոյ։ Ծընունդըն Հօր և հինաւուրց․ անժամանակն յաւիտենից․ ժամանակաւ յորովայնի քում բնակեցաւ և ի Հօրէ ոչ մեկնեցաւ․ վն որոյ։ Ծընեալն ի քէն ի խաչ ելեալ․ եւ ի յաթոռ փառաց ընդ Հօր․ անորգել ի մարդկանէ փառատրութբ էութբ երկրպագեալ․ վն որոյ։ Ըզքեզ ոչ միայն որդիք մարդկան այլ և վերին զօրութիւնք․ դասք անմարմնոց հոգեղինաց հրեղինաց զուարթնոց եւ հրեշտակաց․ գոհաբանեն և վերօրհնեն եւ փառաւորեն ըզմայր և զաղախին փրկչին մերոյ։

ԽՂ։ Ըսպաւինեցաք ի խաչ քո արարիչ յաւիտենից․ որ եղեւ մեզ պահապան․ յաղթող ընդդէմ թըշնամւոյն․ աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր։ Բարձրեալ թագաւոր․ որ վասըն մեր ելեր ի խաչ․ և բարձեր սովաւ զյանցանս․ նախաստեղծին Ադամայ․ աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինս մեր։ Գըլուխ նըք՝ հաւատոյ․ և փայտ կենաց մարդ-

կան յայտնեալ. զոր տեսեալ այսոյն պըղծոյ. կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինըս մեր։ Դողացաւ թըշնամին ընդ յայտնել սրբոյ խաչին. և ի յահէ փառաց նորա. կործանեցաւ յանդունդս երկրի. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինըս մեր։ Փառք Հօր և։ Երկինք ցընծային և երկիր ուրախանայր. քանզի փրկիչ ցուցաւ սբ խաչն. և լուսատու տիեզերաց. աղաչեմք սովաւ փրկիչ պահպանեա զանձինըս մեր։

Այժմ և միշտ։ Զանքննելի և զհրաշագործ ըզյարութիւն քնի. առաքելոցըն ստուգապէս տեսեալ. ընդհանուր քարոզէին. եթէ յարեաւ Աստուած։

Մաղթ. Փառք հրաշափառ յարութեան։

Ալէլու Յարութեան Բ2։ Յարեաւ Ած և ցրուե։ 36։

---

ՅԱՌԱՒՕՏՈՒ

Հարց Ա2։

Պայծառացիր եկեղեցի հեթանոսաց. յարութեամբ քնի որ յարեաւն այսօր ի մեռելոց. պըսակեաց զքեզ խաչիւն իւրով. Ած հարցըն մերոց։ Այսօր ողբայ յինքեան ըզկործանումն իւր մահ. քանզի որ յԱդամայ մեռեալքն էին. կենդանացան յարութեամբն Քրիստոսի Ած հարցըն մերոց։ Այսօր ցընծան մանկունք առագաստի. քանզի քն յարուցեալ փարատեաց զսուգ եւ զտրտմութիւն եւ լուսաւորեաց զաշխարհս. Ած հարցըն մերոց։

Գ. Ըզ Տէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Փառք Հօր։ Այս օր է զոր արար Տէր՝ եկայք ցընծասցուք. տօնեցէք ուրախութեամբ մինչեւ յանկիւնըս սեղանոյ. բարձր արարէք ըզնա յաւի-

տեան։ Այժմ և։ Բարձրացուցէք զՏէր Ած մեր գո-
չէ մարգարէն. երկրպագեցէք պատուանդանի ոտից
Նորա. որ եբարձ զդատակնիք մահու ի մէնջ.
բարձր արարէք զնա յաւիտեան։

Մեծաց. ԱՁ։ Որ զաւետիս Հոգւոյն ի հրեղէն ի հրեշտակէն ընկալար ուրախ լեր. բերկրեալդ Տէր ընդ քեզ Մարիամ ամենօրհնեալ։ Փառք Հօր։ Անըսկիզբն Բանըն հաճեցաւ առնուլ մարդեղութեամբն ըսկիզբն ի կուսէդ. Քրիստոս Աստուած թագաւորն յաւիտենից։ Այժմ և։ Աղաչեմք զքեզ մօր Աստուածածին առ քո բարեխօսեա փրկել զժողովուրդս իւր զոր գնեաց արեամբն իւրով։

Ողորմ. ԱՁ։ Խինսիմ։ Ողորմեա ինձ Աստուած։ Փառք Հօր։ Լուսեղէն արա ինձ Տէր զզգեստն յարութեան. աւետաւոր հրեշտակին որ քարոզեացն զյարութիւն. ողորմեա ինձ Աստուած։ Այժմ և։ Որ յարեարդ ի մեռելոց քո Ածն. և մեզ կեանս շնորհեցեր. պարգեւատու ամենեցուն. ողորմեա ինձ Աստուած։

Տէրյերկն. ԱՁ։ Փառք յարութեան քո Տէր։ Փառք Հօր։ Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնիդ զգեցաք զանմահութիւն. փառք յարութեան քո Տէր։ Այժմ և։ Խաբանօք փայտին ճաշակեցաք զմահ. իսկ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան. փառք յարութեան քո Տէր։

Առաւ. երգ Ցորեն. ԲՁ։ Զյարութի։ Զյարուցեալն։ 53։

Առաւօտու Սաղմոս Ե։

Կց. Տէր ոչ զինու հաճութեան քով պսակեցեր զմեզ։
Փխ. Բանից իմոց ունկն դիր Տէր, և ի միտ առ զաղաղակ իմ։

Նայեա՛ ի ձայն աղօթից իմոց, Թագաւոր իմ և Ած իմ:

Ես զքեզ աղաչեմ Տէր, ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում. ընդ առաւօտս պատրաստ եղէց յանդիման լինել քեզ:

Ոչ թէ դու Աստուած կամիս զանօրէնութիւն. և ոչ բնակեն առ քեզ չարք, մի՛ անօրէնք բնակեսցեն առաջի աչաց քոց:

Ատեցեր զայնոսիկ որ գործեն զանօրէնութիւն կորուսանես զամենեսեան ոյք խօսին սուտ:

Զայր արիւնահեղ և զնենգաւոր պիղծ առնես դու Տէր. այլ ես ըստ բազում ողորմութե քում մտից ի տուն քո. երկիր պագից ի տաճար սբ քո երկիւղիւ քո:

Տէր առաջնորդեա՛ ինձ յարդարութե քում. վն թշնամեաց իմոց ուղիղ արա առաջի իմ զճանապարհս քո:

Զի ոչ գոյ ի բերանս նց ճշմարտութիւն, և սիրտք նց նանրեալք են:

Որպէս գերեզման բաց է կոկորդ նոցա. լեզուօք իւրեանց նենգաւորք եղեն:

Դատեա՛ զնս Ած զի անկցին ի խորհրդոց իւրեանց. ըստ բազում ամբարշտութե նոցա մերժեա՛ զնոսա, զի դառնացուցին զքեզ:

Ուրախ լիցին ամենեքեան որ յուսացեալ են ի քեզ. յաւիտեան ցնծասցեն, և բնակեսցես դու ի նոսա:

Պարծեսցին ի քեզ սիրելիք անուան քո. զի օրհնեսցես դու զարդարն. Տէր ոպ զինու հաճութբ քով պսակեցեր զմեզ:

Աւետարան ըստ Ղուկասու: ԻԴ: 13:

Յետ յարութե Տեառն մերոյ Յսի Քսի:

Եւ ահա երկուք ի նոցանէ երթային ի նմին աւուր ի գեօղ մի, որ հեռի էր յԵրուսաղէմէ հարիւր և վաթսուն ասպարիսաւ. և էր անուն նր Եմմաւուս: Եւ նոքա խօսէին ընդ միմեանս վն ամ անցիցն անցելոց: Եւ եղև

ընդ խօսելն նցա և ընդ վիճել, և ինքն իսկ Յս մերձեցաւ և երթայր ընդ նոսա։ Եւ նցա աչք կալեալ էին՝ առ ի չճանաչելոյ զնա։ Եւ ասէ ցնս. զի՞նչ են բանքդ՝ վասն որոյ վիճիքդ ընդ միմեանս մինչ դեռ գնայքդ, և տըրտմեալ էք։ Պատասխանի ետ մի ոմն ի նոցանէ՝ որում անուն էր Կղէովպաս, և ասէ ցնա. դո՞ւ միայն կաս յԵրուսաղէմ, որ ոչ գիտացեր զինչ գործեցաւ ի նմա յաւուրս յայսոսիկ։ Եւ ասէ ցնոսա. զի՞նչ։ Եւ նոքա ասեն. զՅսէ Նազովրեցւոյ, որ եղեւ այր մարգարէ՝ հզօր արդեամբք և բանիւք առաջի ԱՅ և ամ ժողովրդեանն։ Ո՛րպ մատնեցին զնա քահանայապետքն և իշխանքն մեր ի դատաստան մահու, և հանին զնա ի խաչ։ Մեք ակն ունէաք՝ թէ նա է որ փրկելոցն իցէ զԻսրայէլ. այլ և հանդերձ այսու ամի՝ այս երրորդ օր է՝ յորմէ հետէ այն գործեցաւ։ Այլ և կանայք ոմանք ի մէնջ զարմացուցին զմեզ, որք կանխեալ ընդ առաւօտս չոգան ի գերեզմանն, և ոչ գտին զմարմին նր. եկին և ասեն՝ թէ և տեսիլ եւս հրեշտակաց տեսին, որք ասէին զնմանէ թէ կենդանի է։ Եւ գնացին ոմանք ի մէնջ ի գերեզմանն, և գտին նոյնպէս որպէս կանայքն ասացին, բայց զնա ոչ տեսին։ Եւ նա ասէ ցնոսա. ով անմիտք և հեղգասիրտք ի հաւատալ ամենայնի զոր խօսեցան մարգարէքն։ Ո՞չ զնոյնս պարտ էր չարչարել Քի, և մտանել ի փառս իւր։ Եւ սկսեալ ի Մովսիսէ և յամ մարգարէից՝ մեկնէր նց որ ինչ յամ գիրս գրեալ է զնմանէ։ Իբրեւ մերձեցան ի գեօղն յոր երթային, և նա պատճառէր հեռագոյն եւս ուրեք երթալ։ Եւ բռնադատեցին զնա և ասեն. առ մեզ ագիր, զի ընդ երեկս է, և տարաժամեալ է օրս. և եմուտ ագանել անդ ընդ նոսա։ Եւ եղեւ ի բազմելն նորա ընդ նոսա, առեալ զհացն՝ օրհնեաց, եբեկ և ետ նց։ Եւ նց բացան աչք, և ծանեան զնա. և նա եղեւ ի նոցանէ աներեւոյթ։ Եւ ասեն ցմիմեանս. ո՞չ իսկ և սիրտք մեր

ճմլէին ի մեզ՝ մինչ խօսէրն ընդ մեզ զճանապարհայն, և մինչ բանայր մեզ զգիրս։ Եւ յարուցեալ նոյնժամայն դարձան յԵ͞մ, և գտին ժողովեալ զմետասանսն և զորս ընդ նոսայն էին։ Եւ ասէին՝ թէ արդարև յարեաւ Տէր, և երևեցաւ Սիմովնի։ Եւ նոքա պատմէին զայն որ զճանապարհայնն, և թէ զիարդ ետ ծանօթս ն͞չ ի բեկանել հացին։ 35։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղ. Քում ամենազօր։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Առաջին Սաղմ. Ե։ Կ8. Տ͞ր ո͞վ զինու։ Փխ. Ընանից։ 505։

Աւետարան Ղուկ։ Բայց ի միաշաբաթուն։ 497։

### Մեսեդի Յարութեան ԲՁ։

Տէր թագաւորեաց, ցնծասցէ երկիր. ուրախ եղիցին կղզիք բազումք։

Երևեցան փայլատակունք նորա տիեզերաց. ետես և սասանեցաւ երկիր։

### Հարմարցի ԲՁ։

Ի գերեզման քո կանխեցին կանայքն զիւղս և զխունկս բերին. ի պատիւ թաղման քո զի զմեղք ընդհողացեալս վերածեր ի կեանս։ Փառք Հօր։ Փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս եւ զաղաչանս մեր ընդ առաւօտեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լուան ի նուայի ունկամբն։ Այժմ և։ Եւ տուն աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչն մեր աւերեաց ըզդըժոխս. եւ զթըշնամին կապեաց ի յանլոյծ կապանս։

### Արձակման Սաղմոս Ի։

Տէր ի զօրութեն քում ուրախ եղիցի թագաւորն. ի փրկութեն քում ցնծասցէ յոյժ։

Զցանկութի սրտի ն͞ր ետուր նմա. և զկամս շրթանց ն͞ր ոչ արգելեր ի նմանէ։

Ժամն արարեր զնա յօրհնութի քաղցրութե քո․ և եդիր ի գլուխ նր պսակ ի քարէ պատուականէ։

Կեանս խնդրեաց ի քէն․ և ետուր նմա ընդ երկայն աւուրս՝ յաւիտեանս յաւիտենից։

Մեծ են փառք նորա ի փրկութե քում․ զփառս և զմեծվայելչութի դիցես ի վերայ նր։

Տացես զնա յօրհնութի յաւիտեանս յաւիտենից․ ուրախ արասցես զնա յուրախութի երեսաց քոց։

Թագաւոր յուսացաւ ի Տէր․ և յողորմութի Բարձրելոյն նա մի՛ սասանեսցի։

Գտցի ձեռն քո ի վերայ թշնամեաց քոց․ և աջ քո գտցէ զամ ատելիս քո։

Դիցես զնս որպ հնոց հրոյ՝ ի ժամանակի երեսաց քոց։

Տէր բարկութեամբ իւրով խռովեցուսցէ զնս․ և հուր կերիցէ զնս։

Պտուղ նց յերկրէ կորիցէ․ և զաւակ նց յորդւոց ի մարդկանէ։

Խոտորեցան ի քէն չարութեամբ․ խորհեցան խորհուրդ՝ զոր ոչ կարացին հաստատել։

Արասցես զնս հալածեալս․ ի մնացուածս քո պատրաստեսցես զերեսս նոցա։

Բա՛րձր լեր Տէր ի զօրութե քում․ օրհնեսցուք և սաղմոս ասասցուք զօրութե քում։

Ա–էջ․ Ղ–ոյ․ Եւ ահա երկուք ի նոցանէ։ 506։

Քարոզ․ Խնդրեսցուք։ Կեցո։ Աղօթ․ Թագաւոր։

# Ա. ԶԱՏԿԵՏԱՐԱՑԻ, ԲԿ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն ԲԿ:

Քո յարութեամբդ փառք վայելէ երկայնամիտ Տէր: Օրհնեալ է քո յարութիւնդ Աստուած որ ըզմահ մահու ծանուցեր քոյին կամաւոր մահուամբդ. քո յարութեամբդ փառք վայելէ երկայնամիտ Տէր: Գոչումն ահեղ հրեշտակին ի վիմին որ քարոզէր առնբ կանայսն յարեաւ Տէրն ի մեռելոց. քո յարութեանըդ փառք վայելէ երկայնամիտ Տէր:

Քրիստոս յարեաւ ի մեռելոց: Ընդ արշալուսն առաւօտուն կանխեալ կանանցն ի գերեզմանն ասելով. Քս յարեաւ ի մեռելոց: Եւ առ նոսա ասէր հրեշտակն զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. Քրիստոս յարեաւ ի մեռելոց: Փութացարուք ով սուրբ կանայք եւ պատմեցէք աշակերտացն ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց:

Առաւօտեան սք կանայքն հանդերձ իւղովք և խնկովք եկին ի սբ գերեզմանն. եւ ողբալով խնդրէին զանմահ փառաց Թագաւորն: Եւ ի ձայնէ հրեշտակին զուարճացան տրտմազգեացք. առաւօտեան սք կանայք զի՞ խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. յարեաւ փառաց Թագաւորն: Ածասէր սք կանայք փութացարուք հետեւեալ. պատմ[illegible] լինել Պետրոսի և Յովհաննու սիրելւոյ. յարեաւ փառաց Թագաւորն:

Կանխեցին կանայքն ընդ առաւօտն ի գերեզմանն հանդերձ խնկովք: Բերելով զիւղս անուշունս. ի յօծումըն կենարար մարմնոյ փրկչին մերոյ: Եւ

հրեշտակըն զօրութեան. գոչելով աղաղակէր յարեաւ Քրիստոս։

Ըզյարութիւն Քրիստոսի ամենեքեան օրհնեսցուք. զի նա միայն Աստուած փառաւորեալ յաւիտեան։ Ըզճառագայթ յարութեան տեսանելով հրեշտակին. նա զօրանայր ի պատմել ըզկենսաբեր յարութիւն։ Զայն աւետեաց լըսէին առաւօտեան սբ կանայքն. ի հրեշտակէն դառնային ուրախութեամբ յառաքեալսն։

Զտիեզերական խնդութեանցն աւետիքս. երանելի կանանցն ուսեալք ի հրեշտակէն. աներկիւղ խնդութեամբ և բերկրալից ուրախութեամբ ընթանային պատմել աշակերտացն ամսելով։ Զոր մահուն երկիւղիւ ընդ մեռեալս համարեալ կարծէաք. նա ինքնիշխանութեամբ յարուցեալ. զմահու ելոյծ զիշխանութիւն և կենդանութիւն պարգեւեաց ամզգի մարդկան։

ՀՈԳ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ երկրաւորացս նորոգման. քանզի նորոգողն էից Հոգին էջ ի սբ վերնատան. որով նորոգեցաւ դասք առաքելոցն։ Այսօր հողանիւթեայ բնութիւնս ցնծայ ընդ Հօր հաշտութեան. քանզի որ եբարձ զՀոգին ի մարդկանէ զմարմին եղելոց. դարձեալ վերըստին ըզնոյն պարգեւէ։ Այսօր մանկունք եկեղեցւոյ տօնեն ցնծութեամբ զգալուստ սբ Հոգւոյն. որով զարդարեցան ի զգեստս լուսափայլս և գերապայծառս. երգեն ընդ սովբէն զերեքսրբենին։

ՆՉ։ Թագաւոր խաղաղութեան. որ քաղցրութեամբ խնամես զքո զարարածս յիշեա Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սբրս քո. և դասաւորեա ի յաւուրն այցելութեան։ Որ կոչեցեր ի դրաց մահու ըզսիրելին քո զՂազարոս. և ծանուցեր զզօրութիւնդ ընդհանուր տիեզե-

րանց. լուսաւորեա Տէր զհոգիս ննջեցելոցն ընդ սուրբս քո. եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեան: Ի տաճարի քում սրբութեան մատուցանեմք քեզ պաղատանս արտասուալից. պայծառացո Տէր զհոգիս նընջեցելոցն ընդ սուրբս քո. եւ դասաւորեա ի յաւուրն այցելութեան:

ԱՁՆ: Աղբիւր լուսոյ եւ ամպ հովանի սուրբ կոյս. որ ցօղեցեր ի մեզ ըզցօղն երկնային. զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս: Անկէզ մորենի եւ սրովբէ հողեղէն սուրբ կոյս. քանզի պտուղըն կենաց ի քէն տուաւ մեզ. զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս: Անիծից լուծիչ եւ քաւիչ մեղաց սուրբ կոյս. որ զանտանելին յէից ի գիրկըս քո բարձեր. զքեզ բարեբանեմք Աստուածածին կոյս:

ԽՆ. Խաչըն կենարար որ եղեւ մեզ փրկութիւն. սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք: Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ի յերկրի. եւ զաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք: Փառք Հօր: Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցաւ. ի յօգնութիւն ընդդէմ թշնամեացն. սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք:

Այժմ եւ միշտ: Այլ ի բաց եդեալ ըզհրեշտակն երկիւղին ըզկարծիսն. նախաժամանեցին ի պատիւ այնորիկ. որ մահուամբն իւրով ըզմահ եւ անմահութիւն պարգեւեաց ամենազգի մարդկան:

Մաղթանք. Փառք հրաշափառ յարութեան:

Ալէլ. Յարութեան ԲԿ: Հաճեցար Տէր ընդ: 37:

## ՅԱՌԱՒՕՏՈՒՆ

### Հարց Ա Ձ։

Օրհնեալ ես Տէր Ած հարցն մերոց։ Որ բարձրացար ի խաչին վասն ազգի մարդկան․ առաքեա զքո զողորմութիւնդ ի պաշտօնեայս և յերկրպագուս․ Ած հարցն մերոց։ Որ զամենայնսն յանձն առեր վասն մեր բարերար․ խնայեա յարարածս քո յարութեամբդ քո․ Աստուած հարցն մերոց։

Գ․ Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեանս։ Փառք Հօր։ Որ յանապական յաթոռ նստիր բարեբանեալն ի հրեշտակաց․ կամաւոր չարչարանաց համբերեր մահու խաչի մարմնացեալ Բանն․ անդադար օրհնեցէք և գովեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեանս։ Այժմ և։ Եւ իջեալ ի գերեզմանն անապական մարմնով․ զի նորոգեսցէ ըզհնութիւն մեռելութեան մերոյ յարութեամբն իւրով․ անդադար օրհնեցէք և գովեցէք բարձր արարէք ըզնա յաւիտեանս։

Մեծացու․ Ա Ձ։ Մեծացուցանեմք ըզքեզ որ ի Հօրէ Բանդ և անճառելի ծնունդ․ որ ի կուսէն մարմնացար ցուցար մեզ։ Փառք Հօր։ Մեծացուցանեմք ըզքեզ որ կոխեցեր ըզմահ աստուածապէս․ և լուծեր ըզկնիք մահու․ որ ի խաչին բարձրացար․ կամաւ Հօր։ Այժմ և։ Մեծացուցանեմք ըզքեզ որ թաղեցար ի նոր ի գերեզմանի․ և յերրորդ աւուր յարեար․ որ ի յերկինս համբարձար փառօք Հօր։

Ողորմ․ Ա Ձ։ Անճառելի Հօր էակից ի խաչ ելեր կամաւ Հօր․ ողորմեա։ Փառք Հօր։ Անմահութեանց տուող Քրիստոս ի գերեզմանի իջեր ընդ մարդ․ ողորմեա։ Այժմ և։ Ե՛ յերրորդ աւուր յարեար յոյս յարութեան ցուցար մեզ․ ողորմեա։

Տէրյէրէն. ԱՁ: Ը՛նդ կանայսն իւղաբերսն առ քեզ առաւօտեմք կենդանի՛դ յարութենի՛ց՝ քս ընկալ և ըզմերս. փոխանակ խընկոցըն զօրհնաբանութիւնս:
Փառք Հօր: Փոխանակ սուրբ աւետաւոր զըւարթնոյն զըթութեն՝ քո մեզ հանդիպեսցի՝ յուսով գիտութեն՝ մըխիթարել ըզհոգիս եւ լուսաւորել: Այժմ և: Ը՛նդ նոսին աւետարանութեն քարոզեսցուք. ըզքո միայնը զաքանչելի լինդ. որ յարեար ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ:

Ա—. Երգ Յ—ր—ն. ԲԿ: Զյարութի: Զյարուցեալն: 53:

Ա—. Սաղ. ՃԽԷ: Գովեա Երէմ զՏէր: Տէ. ի վ—յ:

Ա—ետարան ըստ Ղ—կասու: ԻԴ. 36:

Յետ յարութեն Տեառն մերոյ Յսի Քսի:

Մինչ դեռ զայն խօսէին, ինքն իսկ Յս եկաց ի մէջ նց, և ասէ ցնս. խաղաղութի ընդ ձեզ. ես եմ, մի երկնչիք: Եւ զահի հարեալ երկնչէին. և համարէին ոգի ինչ տեսանել: Եւ ասէ ցնս. զի՞ խռովեալ էք, և ընդէ՞ր խորհուրդք ելանեն ի սիրտս ձեր: Տեսէք զձեռս իմ և զոտս, զի ես նոյն եմ շօշափեցէք զիս և տեսէք. զի ոգի՝ մարմին և ոսկերս ոչ ունի, որպ զիս տեսանէք զի ունիմ: Եւ զայս ասացեալ՝ եցոյց նց զձեռս և զոտս: 40:

Քրզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղ. Քում ամենազօր:

---

ՅԵՐԵԿՈՅԻՆ

Առաջին Սաղմոս ՃԽԷ:

Գովեա Երուսաղէմ զՏէր:
Եւ օրհնեա զԱստուած քո Սիոն:
Զի զօրացոյց զնիգս դրանց քոց. և օրհնեաց զորդիս քո ի քեզ:
Որ եդ զսահմանս քո ի խաղաղութի. պարարտութբ ցորենոյ լցոյց զքեզ:

Ո առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նր:

Դնէ զձիւն որպէս զասր. և զմէգ ոպ փոշի ցանեաց:

Արկանէ զսառն ոպ պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ:

Առաքէ զբան իւր և հալէ զնս. շնչեսցեն հողմք և գնասցեն ջուրք:

Ո պատմէ զբան իւր Յակոբայ. զարդարութի և զիրաւունս Իսրայէլի:

Ոչ այսպէս արար ամ ազգաց Տէր. և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա:

Աւետ. Ղուկ: Եւ ահա երկուք ի նոցանէ: 506:

Մեսեդի Ցորեկնեան Բկ:

Երգեցէք Տեառն երգ նոր ամենայն երկիր. ծառայեցէք Տեառն ուրախութեամբ:

Մտէք առաջի նորա ցնծութեամբ. ծանիրո՛ւք զի նա է Տէր Աստուած մեր:

Համբարձի Բկ:

Քո յարութեանդ փառք վայելէ երկայնամիտ Տէր: Փառք Հօր: Օրհնեալ է քո յարութիւնդ Աստուած որ ըզմահ մահու ծանուցեր քոյին կամաւոր մահուամբդ. քո յարութեանդ փառք վայելէ երկայնամիտ Տէր: Այժմ և միշտ: Գոչումն ահեղ հրեշտակին ի վիմին որ քարոզէր առ սբ կանայսն յարեալ Տէրն ի մեռելոց. քո յարութեանդ փառք վայելէ երկայնամիտ Տէր:

Արյակմ. Սաղմ. ԻԴ: Քեզ վայելէ օրհնութի: 484:

Աւետ. Ղուկ: Մինչդեռ զայն խօսէին: 514:

Քրղ. Խնդրեսցուք: Կեցո: Աղ. Թագաւոր խաղաղ:

# Ա. ՀԻՆԳՇԱԲԱԹԻ, ԳՋ.

## Ի ԳԻՇԵՐԻՆ

## Օրհ—թի—ն Գ2։

Իւղաբեր եւ սուրբ կանայքն ողբալով փութայէս եկին ի գերեզման քո Տէր. եւ խնդրել զանապական մարմինդ: Բարբառ աւետաւոր հրեշտակին որ գոչէր առ երջանիկ կանայսն. զի՞ խնդրէք զկենդանին ընդ մեռեալս. քանզի յարեաւ Տէր եւ աւերեաց զդժոխս: Պատմեալ երանելի կանանցն զյարութիւն Տեառն աշակերտացն ուրախացեալք ընթանային Պետրոս եւ Յովհաննէս ի կենսատու գերեզմանն:

Այսօր յարութիւն քո Տէր տօնեմք հաւատացեալքս. եւ մի *Աստուած հայր ամենակալ: Այսօր եւ կանայքն իւղաբերք աւետիս տային առաքելոցն. օրհնեն զԱստուած: Այսօր եւ հրեշտակք ի յերկինս հոգեւոր հընչմամբ երգով. օրհնեն զԱստուած:

Ի խաչանիշ փայտէն դողդողեցան դժոխք. զօրութբ մբ Հոգւոյն նորոգեցաւ երկիր. ով է սա որ խափանեաց զմահ: Հրեշտակն աւետէր կուսին Մարիամու. սա է ի սկզբանէ Բանն որ յառաջ քան զյաւիտեանս Որդին. սա է Թագաւորն որ խափանեաց զմահ: Յարեաւ յաւուր երրորդի. վէմք պատառեցան երկիր շարժեցաւ սասանեցան դժոխք. սա է կենդանին յաւիտենից Քրիստոս:

*Փառաւորեալ է քո յարութիւնդ: Որ յարեարդ ի մեռելոց յաւուր երրորդի քն Որդի Ած. փառաւոր: Որ յահեղ բարբառոյ յարութեան քո Տր երկիր շարժեցաւ. վէմք պատառեցան քն Որդի Ած. փառաւոր:

Ի ձայն ահեղ յարութեան քո Տէր զարհուրեցան զինուորացըն դասքն. յարփիափայլ հրեշտակին ի շիրմինն. եւ դողալով շարժեցաւ երկիր։ Առաւօտեան նոր կանանցըն դիտելով ըզվիմափոր գերեզմանն. բերելով զիւղս անուշս. ի յօծումըն կենարար մարմնոյն. անպարագիր էականութեան։ Եւ տեսեալ ըզքերովբէն վերանըստեալ ի վիմին. տարփողելով սըրբուհւոյն. ասէ դարձիր ողջոյն տուր փողոցն. քանզի յարեաւ որ յառաջն ասաց։

Հրաշալի յարութիւնն ըզպահապանսըն զարհուրեցոյց. եւ հրեշտակն ի յերկնից իջեալ ի ձայն ահեղ յարութե ածորդւոյն. կանանցն աւետէր յարեաւ Աստուած։ Ի ձայնէ հրեշտակին զուարճացան տըրտմազգեաց կանայքն. եւ դարձան խընդութբ ետուն աւետիս առաքելոցն. եթէ յարեաւ նախապատմելին։

ՀՈԳ. Արեգակն արդարութեան քո ծագեալ յաշխարհ հալածեաց ըզխաւարն անգիտութե. եւ յետ մահու եւ յարութե համբարձաւ առ Հայր յորմէ ծագեաց. որ երկըրպագի յերկնաւորաց և յերկրաւորաց ընդ Հօր եւ սուրբ Հոգւոյն. * վասն որոյ և մեք երկիր պագանեմք Հօր հոգւով եւ ճըշմարտութեամբ։ Որ փոխանակ ծոցածին Բանին որ եղ յերկինս. առաքեցաւ աւետիքըն Հօր ի բարձանց Հոգին ճըշմարտութե. մըխիթարել զորս յԱդամայ տըրտմեցելոց եւ հրաշլինել զընտրեալ դասս առաքելոցն. վն որոյ։ Այսօր տըրտմական և գիշերային լուծան երկունք ծնընդեան նախամօրն. քանզի զծընեալըն մարմնով ի մահ եւ յապականութի. վերըստին ծնանի Հոգին յորդիս լուսոյ Հօրն երկնաւորի. վն որոյ և։

ՆՆՉ: Ի ձայն մեծի զուարթնոյն և ի հնչումն հրաշալի փողոյն. ուր հողացեալ մարմինք մարդկան նորոգին. *յայնժամ ասուր յահեղին մինչեւ ցՏէր և ըզմեր ըզննջեցեալսն. եւ հանգո ընդ սուրբս քո: Յորժամ նշան տէրունեան ճառագայթիւք փայլէ. և Թագաւորըդ Թագաւորաց փառօք տեսանիս. յայնժամ ասուր: Յորժամ ատեան դատաստանին դնի. և դըպրութիւնք հրաշիցըն բանին. յայնժամ ասուր:

ԱՃՆ: Լոյս լուսոյ մայր և կենարար Բանին բնակարան. *քեզ երանիցեն ազգք եւ ազինք ամենայն: Ստեղծողին մայր և հընութեան կերպի նորոգողին. քեզ երան: Լոյս ծագեցար ի քէն նըստելոցս ի խաւարի. քեզ երան:

ԽՆ: Հրաշափառ տեսութիւն ի կաթուղիկէ եկեղեցւոյ տեսանի. գործարան մահու մահուամբ առիթ գոլ կենաց. եւ մահացուցիչ նախաստեղծին մահուամբ գոլ շնորհող յարութեան: Պարգեւ գերագոյն պարգեւի այսօր հաւատացելոց. եւ մահացուն ի կենաց առնու իւր զօրըս վերելեալս. եւ Թռուցեալ վերագոյի բընակիլ ի տեղւոջըն սրբութեան: Փառք Հօր: Եկայք ժողովուրդք ընդ հոգեղինացըն սպասաւորեսցուք. երկրպագեսցուք աստուածային սուրբ նըշանիս. փառաւորեսցուք ըզհրաշագործ պարգեւաց տըւողըն:

Նժմ և: Եկայք լուսազգեացք յօրհնութիւն նոր օրհնեսցուք ըզՏէր. քանզի մարմինն որ ի մէնջըն էառ ի հրեշտակաց երկրպագութի առնու. ի սրովբէից և ի քրովբէից:

Մողբ. Փառք հրաշափառ յարութեան:

Ալէլու Յարութեան. Գ2: Տէր Թագաւորեաց: 37:

## ՅԱՌԱՒՕՏՈՒՆ

Հարց ԱՁ:

Ընդ երիս մանկունս օրհնաբանսըն. բարեբանեմք ըզքեզ Քս. Աստուած հարցըն մերոց: Որ իջեր ի յերկնից խոնարհութեամբ. եւ խաչիւ համբերեալ փրկեցեր ըզմեզ. Աստուած հարցըն մերոց: Թաղեցար ի նոր ի գերեզմանի. եւ յարուցեալ նորոգեցեր ըզտիեզերս. Աստուած հարցըն մերոց:

Գ. Ըզտր. օրհնեցէք * բարձր արարէք ըզնա յաւիտեան: Փառք Հօր: Զթագաւորն անմահ և զԱստուած յաւիտենից. ամենայն ժողովուրդք բարեբանելով. բարձր արար: Այժմ և: Որ մահուամբն ըզմահ խափանեաց. եւ յարութեամբ իւրով զյարութիւն մեզ պարգեւեաց. բարձր արա:

Մեծացո. ԱՁ: Որ ըզհրեշտակին ըզձայնըն լուեալ հիացեալ երկրպագեցար. * բարեխօսեա վասըն մեր. մեք օրհնաբանեմք զօրհնեալդ ի կանայս: Փառք Հօր: Որ ըզհուրն Աստուած յորովայնի քում կրեցեր անկիզելի մորենի. բարեխօս: Այժմ և միշտ: Որ զանշօշափելին յէից ի գիրկըս քո. բարձեալ դիեցուցեր կաթընասուն. բարեխօս:

Ողորմ. ԱՁ: Որ խոնարհեցար ի յերկնից. և իջեր ի յերկիր միածին Որդի եւ Բանդ Այծ. ողորմեա բանաւոր հօտի: Փառք Հօր: Որ կանգնեցեր ըզխաչ քո ի մէջ երկրի. եւ ելեալ բարձրացար փրկեցեր ըզտիեզերս. ողորմ: Այժմ և միշտ: Թաղեցար ի նոր ի գերեզմանի. եւ յարուցեալ յերրորդ աւուր ի յերկինըս համբարձար. ողորմ:

Տէրյերկն. ԱՁ: Որ անճառ էութեամբ Հօր ես փառակից չարչարիլ մարմնով յանձն առեր վասըն մեր.

* մի՛շտընջենաւո՛ր օրհնութի՛ւն ի հրե՛շտակա՛ց օ՛րհնեա՛լ ե՛ս Տէ՛ր։ Փառք Հօր։ Ո՛ր էա՛կդ ե՛ս ընդ Հօր ե՛ւ ընդ Հոգւո՛յն. խա՛չե՛ցա՛ր և Թա՛ղեցա՛ր կա՛մա՛ւ Հօ՛ր վասն մե՛ր. մի՛շտընջե։ Այժմ և։ Ո՛ր միւսանգա՛մ գա՛լոց ես հա՛յրե՛նի փառօ՛ք. շնո՛րհե՛լո՛վ մեծապէ՛ս յա՛րութ տիե՛զե՛րաց. ա՛մ արա՛րա՛ծո՛ց յաւի՛տենի՛ց օ՛րհնեա՛լ ե՛ս Տէ՛ր։

Առաւ. երգ Յարութ. Զյարութ։ Ող եղն ի բարձ։ 53։

Առաւօտու Սաղմոս ՂԸ։

Կ8. Բա՛րձր արարէ՛ք զՏէր Ած մեր. երկի՛ր պագէք պատուանդանի ոտից Նորա, զի սուրբ է։

Փխ. Տէր Թագաւորեաց, բարկացան ժողովուրդք. որ Նստի ի քերովբէս. սասանեցաւ երկիր։

Տր ի Սիոն մեծ է. և բարձր է ի վր ամ ժողովրդոց։

Խոստովան եղիցուք անուան քում մեծի, զի ահաւոր և սուրբ է. և պատիւ Թագաւորի զիրաւունս սիրէ։

Դու պատրաստեցեր զուղղութի. զիրաւունս և զարդարութի Յակովբայ դու արարեր։

Բա՛րձր արարէ՛ք զՏէր Ած մեր. երկի՛ր պագէք պատուանդանի ոտից Նորա, զի սուրբ է։

Մովսէս և Ահարոն երիցունք Նորա. Սամուէլ ընդ այնոսիկ որ կարդան զանուն Նր։

Կարդային առ Տէր և Նա լսէր Նց. և ի սիւն ամպոյ խօսէր ընդ Նոսա։

Պահէին զվկայութիս Նր, և զհրամանս զոր ետ Նց։

Տէր Աստուած մեր դու լսէիր Նոցա. Աստուած դու քաւիչ լինէիր. վրէժխնդիր ի վերայ ամ գործոց Նց։

Բա՛րձր արարէ՛ք զՏէր Ած մեր. երկի՛ր պագէք ի լեառն սուրբ Նր, զի սուրբ է Տէր Ած մեր։

Աւետարան ըստ Մատթէոսի։ Ե. 1։

Տէրն մեր Յս Քս

Իբրև տեսեալ զժողովուրդսն՝ ել ի լեառն. և իբրև Նստաւ անդ՝ մատեան առ Նա աշակերտքն Նր. և բա-

ցեալ զբերան իւր ուսուցանէր զնս, և ասէր ։ Երանի աղքատաց հոգւով, զի նց է արքայութի երկնից ։ Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին ։ Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր ։ Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն արդարութե, զի նոքա յագեսցին ։ Երանի ողորմածաց, զի նոքա ողորմութի գտցեն ։ Երանի այնոցիկ որ սբ են սրտիւք, զի նոքա զԱծ տեսցեն ։ Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Այ կոչեսցին ։ Երանի որ հալածեալ իցեն վս արդարութե, զի նց է արքայութի երկնից ։ Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ և հալածեսցեն, և ասիցեն զա՛մ բան չար զձէնջ սուտ վասն իմ ։ Ցնծացէք և ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս. զի այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին ։ 12 ։

Քրզ. Խնդրեսցուք ։ Կեցո ։ Աղ. Քում ամենազօր ։

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Առաջն Սաղմ՝ ԿԸ. Բարձրարա ։ Փխ. Տէր թագաւ ։ 520 ։

Աւետարան Ղուկասու ։ ԻԴ. 36 ։

Յետ յարութե Տեառն մերոյ Յսի Քսի ։

Մինչ դեռ զայս խօսէին, ինքն իսկ Յս եկաց ի մէջ նց, և ասէ ցնս. խաղաղութի ընդ ձեզ. ես եմ մի երկնչիք ։ Եւ զահի հարեալ երկնչէին. և համարէին ոգի ինչ տեսանել ։ Եւ ասէ ցնս. զի՞ խռովեալ էք, և ընդէ՞ր խորհուրդք ելանեն ի սիրտս ձեր ։ Տեսէք զձեռս իմ և զոտս, զի ես նոյն եմ շօշափեցէք զիս և տեսէք. զի ոգի՝ մարմին և ոսկերս ոչ ունի, որպ զիս տեսանէք զի ունիմ ։ Եւ զայս ասացեալ՝ եցոյց նց զձեռս և զոտս ։ 40 ։

Մեսեդի Յարութեան ԳԶ ։

Եկա՛յք և տեսէք զգործս Աստուծոյ. որ արար զնշանս և զարուեստս ի վերայ երկրի ։

Ած մեր ապաւէն և զօրութի. օգնական ի վերայ նեղութեանց, որք գտին զմեզ յոյժ։

Համբարձի ԳՁ։

Իւղաբեր եւ սուրբ կանայքն ողբալով փութապէս եկին ի գերեզմանն քո Տէր. և խնկել զանապական մարմինդ։ Փառք Հօր։ Բարբառ աւետաւոր հրեշտակին որ գոչէր առ երջանիկ կանայսն. զի խնդրէք ըզկենդանին ընդ մեռեալս. քանզի յարեաւ Տէր եւ աւերեաց ըզդժոխս։ Այժմ և։ Պատմեալ երանելի կանանցն զյարութիւն Տեառն աշակերտացն. ուրախացեալք ընթանային Պետրոս և Յովհաննէս ի կենսատու գերեզմանն։

Արձակման Սաղմոս ԺԴ։

Տէր ով կացցէ ի խորանի քում. կամ ով բնակեսցէ ի լեառն սբ քո։

Որ գնայ անբիծ, գործէ զարդարութի. խօսի զճշմարտութի ի սրտի իւրում։

Որ ոչ նենգաւորեաց լեզուաւ իւրով. և չար ընկերի իւրում ոչ արար։

Նախատինս ի մերձաւորաց ոչ առնու. արհամարհեալ է առաջի նր չարագործ։

Զերկիւղածս Տեառն փառաւոր առնէ. որ երդնու ընկերի իւրում և ոչ ստէ։

Զարծաթ իւր ի վարձու ոչ տայ. կաշառ ի վերայ իրաւանց ոչ առնու. որ զայս առնէ՝ նա մի սասանեսցի յաւիտեան։

Աւետ. Մատթ։ Եւ տեսեալ զժողովուրդն ։ 520։

Քրղ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղ. Թագաւոր։.



# Ա. ՈՒՐԲԱԹ, Գ. Ձ.

### Ի ԳԻՇԵՐԻՆ

Օրհնութիւն գկ։

Յարեաւ Տէրն ի գերեզմանէն։ Ընդ յառնել փրկչին մերոյ. երկիր շարժեցաւ. վէմքն պատառեցան։ Ճառագայթեալ լոյսն ի վերայ վիմին զարհուրեցոյց ըզպահապանսն. առ դրանըն գերեզմանին։

Զամենայն ըզգերեզմանաւըն բոլորեալ դասք հրեշտակաց. տեսանէին ըզՏէրըն յարուցեալ ի գերեզմանէն։ Ածասէր կանայքն եկին ի գերեզման փրկչին. անոյշ իւղօք եւ խընկօք. յօծանել զմարմինըն տէրունական։ Լուսապայծառ հրեշտակն նըստէր ի վէր՝ վիմին. աւետարանէր կանանցն. յարեաւ փրկիչըն տիեզերաց։

Ընդ քո յարութիւնդ օրհնեմք մարդասէր. *աղաղակելով Տէր փառք քեզ. Ջոր օրհնեն սերովբէքն եւ գովեն քերովբէքն. աղաղակեն։ Անդադար բերանով անհանգիստ բարբառով. աղաղակելով։

Ըռեալ եւ մեր զօրհնութիւս հրեշտակացն երգեմք եւ ասեմք փառք յարութեան քո Տէր։ Որ խաչեցար վասըն մեր թաղեցար եւ յարեար ազատեցեր ի մեղաց։ Մի Ած սուրբ եւ հըզօր ես անմահ թագաւոր։

Տեսիլ փայլականաձեւ զուարթնոյն. ի վիմին հընչեցեալ առ խընկազդեաց կանայսն. փարատեցոյց զերկիւղալից տըրտմութիւն։ Պահապանքըն պակուցեալ անհամբեկ լինէին. եւ կանանցն աւետարանեալ.

մահ մահու յաղթեաց և ծանուցաւ մահ։ Քարոզս առաքելով առ երջանիկ առաքեալսն. փութացարուք ի Գալիլեա. եւ տեսանիցէք զկենագործողն ըզՔս։

Յանձառ փառաց խոնարհեցար. և ըզգեցար ըզհողեղէն բընութիս. վերառեր զանկեալն ի գլորմանէ յանմահական ի կեանս. * ըզքեզ օրհնեմք անպականդ Բանդ Աստուած։ Անպարտականդ մահու. դատապարտեալ ի վերայ խաչին. որ փոխանակ դառնութե պղտորոյն արբուցեր մեզ ի տիգախոց կողէդ. ըզքեզ օրհ։

ՀՈԳ. Զանըսկըզբնաբար բըղխումն ի Հօրէ և յՈրդւոյ զՀոգին ճըշմարիտ. որ հընչմամբ ձայնի էջ ի վերնատունն այսօր նըման սաստիկ հողմոյ. * զոր փառաւորեմք հոգեւոր երգով։ ԶՀամագոյակիցըն Հօր եւ Որդւոյ զբաշխողըն շնորհաց. որ ի հրեղէն լեզուս բաժանեալ զբանն ընտրութե լեզուաց շնորհեաց սուրբ առաքելոցն. զոր փառաւ։ Զաղբերըն իմաստութե ըզկատարեալըն անձնաւորութիւ. որ խօսեցաւ յօրէնս և ի մարգարէս և յաւետարանս. զոր փառ։

ՆՂ։ Փառք քեզ Ած փառաւորեալ յաւիտեան. որ կենարար ես մարմնոց. եւ գոյացուցիչ հոգւոց մեր նընջեցելոցն։ Որ բարձրացար ի խաչին վասն Ադամայ նորոգմանն. եւ իջանելով քո ի դժոխս աւեր առեր ըզգերեալս։ Ըզգինս արեան քո յիշեա կենագործող աշխարհի. եւ հանգըստեան արժանաւորեա յԵրուսաղէմըն վերին։

ԱԾՆ։ Աստուածածին խորան լուսոյ անվայրափակ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութե. եւ նըստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր. * վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծա-

ցուցանեմք։ Անապական տաճար եւ մորենի անկիզելի․ որ զանշէջ հուր աստուածութեան ի քեզ տարեալ կրեցեր․ որով բնութիւնս կիզեալ շիջաւ կրից բոց․ վասն որոյ։ Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտին․ որով եւք յերկիր աւետեաց հորդեալ․ Հոգւով ի քեզ տըպաւորեալ Բանին․ վասն որոյ։

Խղ։ Ով քառաթեւ լուսածին գերապանծ նիշ կառուցող կենացն ամենից․ միշտ բազկատարած առ քեզ էն։ Քառակուսի ազանց հովանի եւ պահապան ի յելս եւ ի մուտս․ փրկութիւ ի յայսմ եւ պարիսպ ամրութեան։ Փառք Հօր։ Դրոշմ ըզգայութեան եւ կնիք ի դէմս ամենից․ դու եւ յաստուածայինսըն կատարես խորհուրդ․ յորմէ արեգակնային փայլէն ճառագայթք։

Նյժմ եւ։ Առաքեցար ի դըժոխս․ ցուցանելով ըզզօրութիւ աստուածութեան․ ջախեցեր ըզգլուխ խարդախողին խափանեցեր ըզզօրութիւ մահու․ ըզքեզ օրհնեմք անապականդ Բանդ Աստուած։

Մաղ․ փառք հրաշափառ յարութեան։

Աւետ․ Յարութեան Գ․կ։ Օրհնեցէք մանկունք։ 37։

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒՆ

### Հարց ԱՁ։

Այսօր որ ի հրեղէն յաթոռ բարձրացեալ հանգչիս․ երեքսրբեան ձայնիւ ի դասուց հոգեղինաց օրհնաբանիս․ Աստուած հարցըն մերոց։ Պատկերակից եղեր հողեղէն բընութեանս․ մարդասիրապէս գըթացար․ կուսական ծնընդեամբդ ազատեցեր ըզմեզ․ Աստուած հարցըն մերոց։ Քանզի միոյն յանցանօք ամենեքեան մեռաք․ այլ ի խաչելըն քո Քրիստոս ամենեքեան նորոգեցաք ի փառս․ Աստուած հարցըն մերոց։

Գ. Ըզ Տէր. *օրհնեցէք և բարձր արարէք զնա յաւիտեանս: փառք Հօր: Որ բազմեալ հանգչիս յանարուեստ ի յաթոռ. ըզմահ խաչին ի յանձն էառ վասն ազգի մարդկան. օրհնեցէք: Այժմ և միշտ: Եւ ի կողահոս արեան աղբերէն նորոգեցան արարածք և անմահացան. օրհնեցէք և:

Մեծ՟ոյ. ԱՁ: Ըզքեզ երեւեալ դրունն առ Եզեկիէլիւ մարգարէիւ. ընդ որ ոչ ոք էանց եթէ ոչ Ած՟ միայն Ածածին կոյս. օրհնութեամբ մեծացուցանեմք: փառք Հօր: Ըզքեզ որ ի մորենւոջն առ Մովսիսիւ մարգարէիւ. ըզնոր խորհուրդ կուսի յայտնեցեր մարդկան ազգի. օրհնութեամբ մեծացուցանեմք: Այժմ և: Ըզքեզ որ ի Հօրէ անժամանակապէս եւ ի մօրէ անթարգմանաբար. ի ժամանակի ծնընդեան ի բոլորից փրկութեն յայտնեցար. Որդի Բարձրելոյն. օրհնութեամբ մեծացուցանեմք:

Ողորմ. ԱՁ: Անըսկիզբըն Բանդ անբաժանելի ծընունդ Հօր. որ վասըն մեր մարմնացար ի կուսէն. ըզմահ խաչին ի յանձն առեր եւ թաղեցար յերկրի: փառք Հօր: Այսօր զանմահ և զանապական մարմինըն Տեառն. կանայք ոչ մեռելոյ խընկել խընդրէին. այլ հրեշտակին ձայնեալ ասէր. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս: Այժմ և: Նա ըզթըշնամին կապեաց եւ ըզդըժոխս աւերեաց. յարուցեալ ի մեռելոց Քս՟ Ած՟. պարգեւէ ազգի մարդկան զմեծ ողորմութիւն:

Տէր յերկ՟. ԱՁ: Սոսկալի տեսիլ հրեշտակին. ի փառաւոր քո գերեզմանին. ըզպահապանսըն զարհուրեցոյց: Իմանալին մարմնական ձայնիւ. բարբառէր առ նս՟ կանայսն. փարատեցոյց զսուգ եւ զտըրտմութի՟:

Ո՛վ կանայք ըզգաստք ծ՛աւսէրք. զա՛մենեցուն ըզլոյսն եւ զյարութիւն. ընդ մեռելո՞ց զի՞ խնդրէք։

Փայլակնաձեւ հրեշտակն իջեալ յերկնից զարհուրեցոյց ըզպահապանսն. եւ սուրբ զկանայսըն խնդութեամբ լցոյց։ Փառք Հօր։ Աւետաւէր կանայք ցընծայցէք այսօր յարեաւ Քն ի մեռելոց. եւ լոյս մեծ աշխարհի ծագեաց։ Այժմ և։ Աւետիս լըւեալ ի նմ հրեշտակէն ընթանային առ աշակերտսըն. պատմելով նոցա զյարութիւնըն Տեառն։

Առ––– . Երգ Յ–ր––ն։ Զյարութիւ։ Որ եղն ի բարձ։ 53։

Առ–––օ–– Ս–ղմ–– ՂԷ։

Կց. Տեսին ամ ծագք երկրի զփրկութի Այ մերոյ։

Փխ. Օրհնեցէք զՏէր յօրհնութի նոր, զի սքանչելիս արար։

Փրկեաց նմա աջ իւր, և բազուկ սբ իւր։

Եցոյց Տէր զփրկութի իւր. առաջի ազգաց յայտնեաց զարդարութի իւր։

Յիշեաց ողորմութեամբ իւրով զՅակոբ. ճշմարտութեամբ իւրով զտունն Իսրայելի. և տեսին ամ ծագք երկրի զփրկութի Այ մերոյ։

Աղաղակեցէք առ Տէր ամ երկիր. օրհնեցէք, ցնծացէք և սաղմոս ասացէք։

Սաղմոս ասացէք Այ մերոյ օրհնութեամբ. օրհնութեամբ և ի ձայն սաղմոսաց։

Ի ձայն օրհնութեան կռածոյ փողոյ. օրհնութեամբ, ցնծութբ և ի ձայն եղջեր փողոյ աղաղակեցէք առաջի թագաւորին Տեառն։

Խռովեսցի ծով լրիւ իւրով. տիեզերք և ամ բնակիչք նր. և գետք ծափս հարցեն ի միասին ձեռամբ։

Լերինք ցնծացեն առաջի Տեառն. զի գայ և հասեալ է Տէր ի դատել զերկիր։

*Դատի զաշխարհս արդարութբ՟, և զժողովուրդս իւր ուղղութեամբ։*

### Աւետարան ըստ Յովհաննու։ ԻԱ. 1։

### Յետ յարութեան Տեառն մերոյ Յս՟ի Ք՟սի։

*Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր Յս՟ աշակերտացն իւրոց առ ծովեզերբն Տիբերեայ. և յայտնեաց այսպէս։ Էին ի միասին Սիմովն Պետրոս և Թովմաս անուանեալն Երկուորեակ և Նաթանայէլ՝ որ ի Կանայ Գալիլեացւոց, և որդիքն Զեբեդեայ, և այլք յաշակերտաց անտի երկու։ Ասէ ցնս՟ Սիմովն Պետրոս. երթամ ձուկն որսալ։ Ասեն ցնա. գամք և մեք ընդ քեզ. գնացին և մտին ի նաւ, և յայնմ գիշերի կալան և ոչ ինչ։ Իբրև այգ եղև՝ կայր Յս՟ յեզր ծովուն, բայց ոչ ծանեան աշակերտքն թէ Յս՟ իցէ։ Ասէ ցնս՟ Յս՟. մանկունք, մի՛ թէ ունիցի՞ք ինչ ուտելոյ։ Պատասխանի ետուն և ասեն ցնա. ոչ։ Ասէ ցնս՟. արկէք յաջակողմն նաւին զուռկանդ, և գտանիցէք։ Արկին, և ոչ կարէին ձգել ի բազմութէ՟ անտի ձկանցն։ Ասէ աշակերտն այն զոր սիրէրն Յս՟՝ ցՊետրոս. Տէր է այն։ Սիմոն Պետրոս իբրև լուաւ թէ Տէր է, արկաւ զիւրև զսփածանելին՝ քանզի մերկ էր, և ընկէց զինքն ի ծովն։ Եւ այլ աշակերտքն նաւաւն իսկ գային, քանզի չէին հեռի ի ցամաքէն՝ այլ իբրև երկերիւր կանգնաւ, քարշէին զգործին հանդերձ ձկամբն։ Իբրև ելին ի ցամաք՝ տեսանեն կրակետղ կայծականց, և ձուկն մի ի վերայ և հաց։ Ասէ ցնոսա Յս՟. բերէք ի ձկանց այտի՝ զոր դուքդ կալարուք այժմիկ։ Եմուտ Սիմովն Պետրոս, և ձգէր զգործին ի ցամաք՝ լի մեծամեծ ձկամբք հարիւր և յիսուն և երիւք. և այնչափ ինչ կայր, և ոչ պատառեցաւ գործին։ Ասէ ցնս՟ Յս՟. եկա՛յք ճաշեցէք։ Եւ ոչ ոք յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ դու ո՞վ ես. զի գիտէին թէ Տէրն է։ Գայ Յս՟ և առնու զհացն և տայ*

նց, նոյնպէս և զձուկնն: Զայս երիցս անգամ երեւեցաւ Յս աշակերտացն՝ յարուցեալ ի մեռելոց: 14:

Քրզ. Խնդրեսցուք: Կեցո: Աղ. Քում ամենազօր եւ հրաշալի յարութեանդ:

---

## ՅԵՐԵԿՈՅԻՆ

Առաջին Սաղմ. ՂԷ: Կց. Տեսին ամ: Փխ. Օրհն. 527:

Աւետարան ըստ Մատթէոսի: Ե. 1:

Տէրն մեր Յս Քս:

Իբրեւ տեսեալ զժողովուրդսն՝ ել ի լեառն. և իբրև նստաւ անդ՝ մատեան առ նա աշակերտքն նր. և բացեալ զբերան իւր ուսուցանէր զնս, և ասէր: Երանի աղքատաց հոգւով, զի նց է արքայութի երկնից: Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին: Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր: Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն արդարութե, զի նոքա յագեսցին: Երանի ողորմածաց, զի նոքա ողորմութի գտցեն: Երանի այնոցիկ որ սբ են սրտիւք, զի նոքա զԱծ տեսցեն: Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք Այ կոչեսցին: Երանի որ հալածեալ իցեն վն արդարութե, զի նց է արքայութի երկնից: Երանի է ձեզ՝ յորժամ նախատիցեն զձեզ և հալածեսցեն, և ասիցեն զմ բան չար զձէնջ սուտ վասն իմ: Ցնծացէք և ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս. զի այսպէս հալածեցին զմարգարէսն որ յառաջ քան զձեզ էին: 12:

Մեսեդի Յարութեան Գկ:

Աստուած մեր յերկինս և յերկրի. զամենայն զոր ինչ կամեցաւ՝ և արար:

Յելանելն Իսրայէլի յԵգիպտոսէ՝ տանն Յակովբայ ի ժողովրդենէ այլազգեաց:

Համբուրջի Գկ։

Յարեաւ Տէրն ի գերեզմանէն։ փառք Հօր։ Ընդ յառնել փրկչին մերոյ երկիր շարժեցաւ վէմքն պատառեցան։ Այժմ և։ Ճառագայթեալ լոյսն ի վերայ վիմին զարհուրեցոյց ըզպահապանսն առ դրանն գերեզմանին։

Արձակման Սաղմոս ՂԲ։

Տէր թագաւորեաց՝ վայելչութիւն զգեցաւ․ զգեցաւ Տէր զօրութիւն ընդ մէջ իւր ածաւ։

Հաստատեաց զաշխարհ, զի մի՛ սասանեսցի․ պատրաստ է աթոռ քո, ի սկզբանէ յաւիտենից դու ես։

Ամբարձան գետք Տէր․ ամբարձին գետք զձայնս իւրեանց․ յարիցեն գետք ի գնացս իւրեանց։

Ի ձայնէ ջուրց բազմաց սքանչելի եղեն զբօսանք ծովու։

Սքանչելի ես դու Տէր ի բարձունս․ վկայութեանց քոց մեք յոյժ հաւատացաք։

Տան քում վայելէ սրբութիւն Տէր ընդ երկայն աւուրս։

Աւետարան Յովհ. Յետ այսորիկ դարձեալ։ 528։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղ. Թագաւոր։

---

# Ա. ՇԱԲԱԹ, ԴՋ.

*Տօն է Գլխատման Յովհաննու Մկրտչին:*

---

## Ի ԳԻՇԵՐԻՆ

Օրհնութիւն Գ2։

Փառաբանակից Հօր Որդի որ վասն մեր խաչեցար․ զդժոխս աւերեալ յարեար յաւուր երրորդի․ փառք յարութեան քո Տէր։ Հրեշտակապետին իջումն․ որ ըզպահապանսն երկիւղիւ․ զարհուրեցոյց

առ դրանըն գերեզմանին. * փառք յարութե քո Տէր։ Եւ ըսքանչելի են կանանցն աւետարանէր ասելով. յարեաւ Քս յարուցիչըն մեռելոց. փառք։

Կանանցըն կանխելով. ի թաղումըն կենդանունոյն տեսին ըզվէմն ի դրանցն ի բաց մերժեալ։ Թափուր ըզգերեզմանն. եւ ունայն տեսանէին. եւ տրտմութեամբ լային յուսահատեալք։ Մայր խաչեցելոյն զի՞ լաս տրտմազգեցեալ. քանզի Քս փառօք մեծաւ յարեաւ։

Ահագին ձայնիւըդ քո Քս. ի վերայ խաչին դողացուցեր զարարածս ամենայն. զերկնային եւ զերկրաւոր բնութիւնս։ Ահագին երեւումըն հրեշտակին. զարհուրեցոյց ըզկանայսն ասելով. զի խընդրէք ըզկենդանին ընդ մեռեալս։ Եւ յահէ զօրութե Ած որդւոյն. զարհուրեցան կարապետք դըժոխոցն ասելով. համբարձէք իշխանք ըզդրունըս ձեր ի վեր։

Որ ի վերդ ես քան ըզմիտս և զխորհուրդս. համագոյական եղելոցս արարող. ի Հօրէ առաքեցար վասըն մեր և մարմնացար ի նբ՝ ի կուսէն։ Անքըննին ի յէութե Արծ. տնօրինեցար յարգանդի կուսին. ապրեցուցանել զնախաստեղծին ծընունդն. և վերըստին նորոգել ի փառս։ Ոչ շատացար մարդ եղանիլ Արծ. այլ և խաչի համբերեալ ըզթաղումըն յանձն առեր զերեքօրեայ. և յարուցեալ նորոգեցեր զաշխարհս։

Օ յարութիւն Աստուածորդւոյն. հրեշտակապետն այսօր աւետէր կանանցն ասելով. * յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն։ Ընթացեալ կանանցըն խընդութեամբ պատմէին աշակերտացն ասելով. յարուցեալ։ Վս որոյ և՝ մեք ընդ հրեշտակին գոչեսցուք զյարութիւնըն Քսի. որ փրկեացն ըզմեզ ի ձեռաց մահու։

* փառաւորեալ անճառելի յարութիւնըն Քրիստոսի։ Որ կամաւ Հօր և Հոգւոյն ի վերայ քառաթեւին պատարագեալ գառն Այ. փառաւորեալ։

ՀՈԳ. Առաքելոյ աղաւնոյ. իջանելով մեծաձայն հնչմամբ ի բարձանց. ի նմանութի լուսոյ փայլման հրազինեալ անկիզելի զաշակերտսն. մինչդեռ նըստէին ի սուրբ վերնատանն։ Աննիւթական աղաւնի. անքննելի որ քննէ ըզխորս Այ. զոր առեալ ի Հօրէ պատմէ զանհասն և ըզմիասնական գալուստն. զոր քարոզեցին համագոյական։ Օրհնութի ի բարձունս. ելողին ի Հօրէ և յՈրդւոյ Հոգւոյն սրբոյ. որով առաքեալքն արբեցան անմահական բաժակաւն. եւ հրաւիրեցին զերկիրս ի յերկինս։

ՆՆԶ։ Ժամանակ դարձի իմոյ եհաս ի յերկիր. արդ Տէր ընկալ ըզծառայս քո. * և Հոգի քո բարի առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ։ Խոստովանող հոգիս. որ եկից զունայնութե ընթացս աշխարհի. արդ Տէր ընկալ ըզծառայս քո. և Հոգի։ Ի վերջնումն աւուր մեծի յորժամ առնես այցելութիւն քոյոց սիրողաց. յայնժամ խնայեա ի ծառայս քո. եւ Հոգի։

ԱՁՆ։ Ածածին մայր լուսոյ մբ կոյս լուսեղէն տաճար. որում երկինք չէին բաւական առ ի բնակութի ի քէն մարմնացաւ։ Ըզքեզ ամենօրհնեալ որ միայնդ ի կանայս օրհնեալ. կրելով ի քեզ զանտանելի զէութիւն. օրհնութեամբ մեծացուցանեմք։ Ուրախ լեր աթոռ փրկութեան յոյս հաստատութե մարդկան. միջնորդ օրինաց և շնորհաց. օրհնութեամբ անդադար գոհութեամբ մեծացուցանեմք։

ԽՆ։ Ի Թաբոր ի լերին ձեւացուցեր ըզքո բնութի անտանելի գոյացութբ. * ընդ որս և մեք ցընծութբք

երգեմք քեզ օրհնեալ մեզ մարդասէր: Աշակերտք հիացեալ բարբառէին ըզխորհուրդս ի տագնապել սրտից իւրեանց. ընդ որս և: Սքանչելի մեծ խորհուրդ զԵրրորդութեանդ. քոյ սրբոց առաքելոցըն ծանուցեր բարերար. ընդ որս և: Սոսկալի հիացմամբ զայլակերպութիւն քո Տէր. առաքելոցըն տեսեալ յօրինէին քեզ տաղաւար. ընդ որս: Փառք Հօր: Հովանացեալ ամպ լուսեղէն. և ըզհայրականըն լուեալ ըզձայն. եթէ դա է որդի իմ սիրելի. ընդ որս:

Այժմ և: Քո անման թագաւորն հեռագօտեալ ի դըժոխս. կապեաց զիշխանըն մեղսասէր զմահու գերեալըն յԱդամայ կենագործեաց ի կեանս անման. փառաւորեալ անճառելի յարութիւն Քրիստոսի:

Մաղթ. Փառք հրաշափառ յարութեն:

Ալէլու- Ցուրուբէան Դ Զ: Գովեա Երուսաղէմ: 37:

---

## ՅԱՌԱՒՕՏՈՒՆ

### Հարց ԱԶ:

Նախայաւիտեան Բանին պատմող. առաքեցար աշխարհի նբ՝ Յովհաննէս մկրտիչ. աղաչեա զԱստուած հարցըն մերոց: Որ ըզհրեշտակացն անհասանելին. յարգանդի կուսին տեսեալ քո և երկրպագեալ. աղաչեա զԱստուած հարցըն մերոց: Որք հաւատով ըզյիշատակըս քո տօնեմք. և անդադար ձայնիւ ըզքեզ ունիմք բարեխօս. աղաչեա զԱստուած հարցըն մերոց:

Գ. ԸզՏէր. Գովեցէք ըզՏէր Քրիստոս միշտ և յաւիտեան: Զմեծին ի ծնունդըս կանանց զկարապետին և զմկրտչին Յովհաննու. զառաքինութեանն ըզհանդէս տօնելով այսօր ի ձայն հընչման. գովե-

ցէք ըզՏէր Քրիստոս միշտ եւ յաւիտեան։ Փառք Հօր։ Խայտացելոյն յորովայնի հոգւով ի ծնընդեանըն Քնի՝. որ ի փրկութիւն աշխարհի յայտնեցաւ Ած Բանն. գովեցէք ըզՏր Քրիստոս միշտ եւ յաւիտեան։ Այժմ և։ Յանապատի բարբառոյ ձայնի և ըզմըկըրտչին Յովհաննու. զյաղթանակ մարտի ըզգըլխատմանըն կատարեմք այսօր ըզյիշատակ. գովեցէք ըզՏէր Քրիստոս միշտ եւ յաւիտեան։

Մեծացոյ. ԱՁ։ Որ զԲանն Ած բաւական եղեր ընդունել յորովայնի միշտ կոյս. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Փառք Հօր։ Որ էից լուսոյն արժանի եղեր բառնալ ի գիրկըս քո մարմնով. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Այժմ և։ Անարատ տաճար տընօրէնութեան կոչեցար Հոգւոյն սրբոյ միշտ կոյս. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։

Ողորմ. ԱՁ։ Կարապետ արքայութեան երկնից ն՝բ Յովհաննէս մըկըրտիչ. որ եղեւ աշխարհի քարոզ փըրկութեան յաւիտենից. աղօթիւք սորա Տէր լուր մեզ եւ ողորմեա։ Փառք Հօր։ Որ առաւել քան ըզմարգարէս մեծ ի ծնունդըս կանանց. որ ըզքեզ մեզ յայտնեաց՝ Ած և մարդ յերկրի երեւեալ. աղօթիւք սորա Տէր լուր մեզ եւ ողորմեա։ Այժմ և։ Ձայն բարբառոյ յանապատի կատարիչ խորհըրդոյ. գըլխատեալ այսօր ի Հերովդիայ. վերափոխեցաւ ի դաս անմարմնոցն. աղօթիւք սր Տր լուր մեզ եւ ողորմեա։

Տէր յերկնից ԱՁ։ Երկնաքաղաքացին Յովհաննէս մեծ ի ծնունդըս կանանց. քարոզէր յանապատի ազդարարող բարբառով. ըզծագումըն լուսոյ արեգականն արդարութեան։ Փառք Հօր։ Ճըշմարիտ մար-

գարէ և ձեռնադրող Որդւոյն Ա՟յ. յառաջընթաց կարապետ և պատմող Ա՟ծային օրինաց. հորդէր զճանապարհս թագաւորին յաւիտենից: Այժմ և: Յանօրէն գինարբուսըն մոլեգնեալ Հերովդիադա. ի պարգեւի մասին խնդրէր ըզգլուխ մարգարէին. շիջուցանել զարուսեակն և զանաղօտ լապտերն:

Առ---. Երգ Յ---Բ. Դ Զ: Զյարութի: Որ համբեր: 53:

Ա-------- Ս----- ՁԸ. Է Ըխ:

Կց. Աստուած փառաւորեալ է ի խորհուրդս սրբոց իւրոց մեծ և ահաւոր ի վ՟ր այնոցիկ՝ որ շուրջ են զնովաւ:

Փխ. Զողորմութիւնս քո Տէր յաւիտեան օրհնեցից. յազգէ յազգ պատմեցից զճշմարտութիւնս քո բերանով իմով:

Ասացեր թէ աշխարհս ողորմութ՟բ շինեսցի. յերկինս պատրաստ եղիցի ճշմարտութ՟ի քո:

Եդի ուխտ ընտրելոց իմոց. երդուայ Դաւթի ծառայի իմոյ:

Յաւիտեան հաստատեցից զզաւակ քո, և շինեցից յազգէ յազգ զաթոռ քո:

Խոստովան եղիցին երկինք սքանչելեաց քոց Տէր, և ճշմարտութ՟ի քո յեկեղեցիս ս՟րց:

Ո՞վ է յամպս որ հաւասարէ քեզ. կամ ո՞վ նմանիցէ Տեառն յորդիս Ա՟յ:

Ա՟ծ փառաւորեալ է ի խորհուրդս ս՟րց իւրոց, մեծ և ահաւոր ի վերայ այնոցիկ՝ որ շուրջ են զնովաւ:

Տէր Ա՟ծ զօրութեանց, ո՞ նմանէ քեզ. հզօր ես դու Տէր՝ և ճշմարտութ՟ի քո շուրջ է զքեւ:

Դու տիրես զօրութեանց ծովու, և զխռովութ՟ի ալեաց ն՟ր դու ցածուցանես:

Դու խոնարհեցուցանես որպէս վիրաւորս զամբարտաւանս. ի զօրութ՟ի բազկի քո ցրուեցեր զթշնամիս քո:

*Քո են երկինք և քո է երկիր· զաշխարհս լրիւ իւրով դու հաստատեցեր· զհիւսիս և զհարաւ դու արարեր· Թաբոր և Հերմոն յանուն քո ցնծասցեն։*

*Քո է բազուկ և քո է զօրութի· զօրասցի աջ քո և բարձր եղիցի ձեռն քո։*

*Յարդարութի և յիրաւունս հաստատեալ է աթոռ քո· ողորմութիւն և ճշմարտութիւն գնասցէ առաջի երեսաց քոց։*

*Երանի՛ ժողովրդեան որ գիտեն զօրհնութիս քո Տէր· ի լոյս երեսաց քոց գնասցեն, և յանուն քո ցնծասցեն զօրհանապազ, և յարդարութն քում բարձր եղիցին։*

*Պարծանք զօրութեց մերոց դու ես, և ի կամս քո բարձր եղիցի եղջիւր մեր։*

*Ի Տռնէ է օգնութի սբյն Իէլի Թագաւորին մերոյ։*

*Յայնժամ խօսեցար տեսլեամբ ընդ որդիս քո, և ասացեր· եդից զօգնութի ի վերայ հզօրին· և բարձր արարից զընտրեալն ի ժողովրդենէ իմմէ։*

*Գտի զԴաւիթ ծառայ իմ· իւղով սրբով իմով օծի զնա։*

*Ձեռն իմ ընկալցի զնա, և բազուկ իմ զօրացուսցէ զնա։*

*Մի՛ մեղիցէ նմա թշնամի, և որդի անօրէնութն մի՛ չարչարեսցէ զնա։*

*Հարից առաջի նր զթշնամիս նր· և զատելիս նորա ի պարտութի մատնեցից։*

*Ճշմարտութի իմ և ողորմութի իմ ընդ նմա· և յանուն իմ բարձր եղիցի եղջիւր նր։*

*Եդից ի ծովու զձեռն նր և ի վր գետոց զաջ նր։*

*Նա կարդասցէ առ իս՝ Հայր իմ ես դու· Ած ընդունելի փրկութն իմոյ։*

*Ես անդրանիկ արարից զնա· և բարձր քան զամ թագաւորս երկրի։*

*Յաւիտեան պահեցից նմա զողորմութի իմ· և ուխտ իմ հաւատարիմ ընդ նմա։*

Հաստատեցից յաւիտեանս յաւիտենից զզաւակ նր՟. և զաթոռ նր՟ ոպ՟ զաւուրս երկնից։

Թէ թողցեն որդիք նր՟ զօրէնս իմ. և յիրաւունս իմ ոչ կամեսցին գնալ։

Թէ զարդարութ՟իս իմ անարգեսցեն. և զպատուիրանս իմ ոչ պահեսցեն։

Հարից գաւազանաւ զանօրէնութ՟իս նց՟. տանջանօք զանիրաւութ՟իս նց՟։

Բայց զողորմութ՟ի իմ ոչ արգելից ի նոցանէ. և ոչ նենգեցից ճշմարտութ՟ե իմոյ. և ոչ անարգեցից զուխտ իմ. և ինչ որ ելանէ ընդ շրթունս իմ՝ զայն ոչ արհամարհեցից։

Միանգամ երդուայ ի սրբութ՟ի իմ, թէ Դաւթի ես ոչ ստեցից։

Զաւակ նր՟ յաւիտեան կացցէ. և աթոռ նր՟ ոպ՟ արեգակն առաջի իմ. որպէս լուսին, զի հաստատեալ է յաւիտեան հաւատարիմ յերկինս։

Իսկ արդ դու մերժեցեր և անարգեցեր, և ընդ վայր հարեր զօծեալ քո։

Դարձուցեր զուխտ ի ծառայէ քումմէ. պղծեցեր յերկրի զսրբութ՟ի նր՟։

Քակեցեր զա՟մ պարիսպս նր՟, և եդիր զամուրս նորա ի դողում՟ն։

Յափշտակեցին զնա անցաւորք ճանապարհի. եղեւ նա նախատ դրացեաց իւրոց։

Բարձր արարեր զաջ նեղչաց նորա. ուրախ արարեր զա՟մ թշնամիս նր՟։

Դարձուցեր զօգնութ՟ի ի սրոյ նր՟. և ոչ ընկալար զնա ի պատերազմի։

Անարգեցեր զսրբութ՟ի նր՟. և զաթոռ նր՟ յերկիր կործանեցեր։

Նուազ արարեր զաւուրս ժամանակաց նր՟, և հեղեր զնովա՟ւ զամօթ։

Մինչեւ յե՞րբ դարձուցանես զերեսս քո ի սպառ. բորբոքեսցի ո՟չ հուր բարկութ՟ի քո։

Իսկ արդ յիշեա՛ և տե՛ս ո՞վ է իմ հանգիստ. մի՛ թէ ի զո՞ւր ինչ ստեղծեր զա՟մ որդիս մարդկան։

Ո՞վ է մարդ՝ որ կեցցէ և ոչ տեսցէ զմահ, կամ փրկեսցէ զանձն իւր ի ձեռաց դժոխոց։

Ո՞ւր են ողորմութի՟ք քո Տէր առաջինք, զոր երդուար Դաւթի ճշմարտութ՟բ քով։

Յիշեա՛ զնախատինս ծառայի քոյ. զոր ընկալայ ի ծոց իմ յազգաց բազմաց։

Զոր նախատեցին թշնամիք քո Տէր. նախատեցին փո-խանակ օծելոյ քոյ։

Օրհնեալ Տէր Աստուած յաւիտեանս յաւիտենից. եղիցի եղիցի։

Ընթերցուածս յԱռակաց։ Ը. 4։

Ձեզ աղաչեմ, ո՛վ մարդիկ, և բաշխեմ զբարբառ իմ որդւոց մարդկան։ Իմացարո՛ւք անմեղք զխորագի-տութ՟ի. և անխրատք դի՛ք ի սիրտս ձեր։ Լուարո՛ւք ինձ, զի զպարկեշտս բարբառիմ. և բղխեմ ի շրթանց իմոց զուղղութ՟ի։ Զճշմարտութ՟ի խոկասցէ կոկորդ իմ. և պիղծ են առաջի իմ շրթունք՝ սուտք։ Արդարութ՟բ են ա՟մ բանք բերանոյ իմոյ. և ոչ գոյ ի նս՟ ծռութ՟ի և ոչ թիւրութ՟ի։ Ամենայն ինչ ուղիղ է իմաստնոց. և յարմարեալ է այնոցիկ՝ ո՟յք գտանեն զգիտութիւն։ Ընկալարո՛ւք զխրատ և մի՛ զարծաթ. և զգիտութիւն քան զոսկի ընտիր։ Ընտրելի է հանճար քան զոսկի մաքուր։ Եւ լաւագոյն է իմաստութ՟ի քան զականս պա-տուականս. և ա՟մ ինչ պատուական չարժէ զնա։ 11։

Ընթերցուածս յԵսայեայ մարգարէէ։ Խ. 3։

Ձայն բարբառոյ յանապատի. պատրա՛ստ արարէք զճանապարհս Տեառն և ուղի՛ղ արարէք զշաւիղս Ա՟յ մերոյ։ Ամենայն ձորք լցցին, և ա՟մ լերինք և բլուրք

խոնարհեսցին. և եղիցին ամ՟ դժուարինք ի դիւրինս. և առապարքն ի դաշտս: Եւ երեւեսցին փառք Տեառն, և տեսցէ ամ՟ մարմին զփրկութի՟ Այ՟. զի Տէր խօսեցաւ: Ձայն որ ասէ՝ գոչեա՛. և ասեմ, զի՞նչ գոչեցից: Գոգ-ջի՛ր՝ ամ՟ մարմին խոտ է, և ամ՟ փառք մարդոյ իբրեւ զծաղիկ խոտոյ: Ցամաքեցաւ խոտն և թօթափեցաւ ծաղիկ նր՟. զի ոգի Տեառն շնչեաց ի նա. արդարեւ խոտ է ժողովուրդս այս: Ցամաքեցաւ խոտն, և թօ-թափեցաւ ծաղիկն. և բան Տեառն մնայ յաւիտեան: 8:

ընթերցուածս ի Մաղաքեայ մարգարէէ: Դ. 4:

Եւ ահա ես առաքեմ առ ձեզ զԵղիա Թեզբացի, մինչ չեւ եկեալ իցէ օր Տեառն մեծ և երեւելի: Որ պատրաստեսցէ զսիրտ հօր առ որդի, և զսիրտ առն առ ընկեր իւր. գուցէ եկեալ հարկանիցեմ զերկիր միանգամայն: Յիշեցէ՛ք զօրէնսն Մովսէսի ծառայի իմոյ, ոպ՟ պատուիրեցի նմա ի Քորէբ, զա՟մ հրամանս և զի-րաւունս: 6:

ընթերցուածս ի գործոց առաքելոց: ԺԳ. 25:

Եւ իբրեւ լնոյր Յովհաննէս զընթացսն, ասէր. զո՞ ոք կարծէք զինէն՝ թէ իցեմ. չեմ ես այն. այլ ահա գայ զկնի իմ, որում չեմ արժանի զկօշիկս ոտիցն լու-ծանել: Ա՛րք եղբարք՝ որդիք աբրահամեան տոհմին, և որ ի ձեզ երկիւղածք իցեն յԱյ՟. ձեզ բանս այս փրկու-թե՟ առաքեցաւ: Բայց որ բնակեալ են յԵ՟մ, և իշխանք նց՟ անծանօթ եղեն ի նմանէ. և ըստ բարբառոյ մարգարէիցն, որ զա՟մ շաբաթսն ընթեռնուին՝ դա-տեալ կատարեցին. և ոչ մի ինչ պատճառս մահու գտեալ՝ խնդրեցին ի Պիղատոսէ սպանանել զնա: Եւ իբրեւ կատարեցին զա՟մ՝ որ վասն նորա գրեալ էր, իջուցեալ ի փայտէն՝ եդին ի գերեզմանի: Այլ Ած՟ յարոյց զնա ի մեռելոց. որ երեւեցաւ աւուրբք բազմօք այնոցիկ՝ որ ելեալ էին ընդ նմա ի Գալիլեէ յԵ՟մ.

որք և արդ իսկ վկայք են նորա առ ժողովուրդն: Եւ մեք ձեզ աւետարանեմք զխոստումն՝ որ առ հարսն եղեալ էր: Զի զնոյն Ած̃ կատարեաց առ մեզ որդիս նոցա՝ յարուցեալ զՅս̃. ոպ̃ և ի սաղմոսին գրեալ է յերկրորդում. Որդի իմ ես դու, և ես այսօր ծնայ զքեզ: 33:

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

Կարապետն Յովհաննէս զարհուրեալ, ի յորովայնէ յորովայն երկրպագեալ, ապաստաւոր եղեւ բանին Ած̃. և լուեալ զահաւոր զձայնն, աղաղակէր ասելով. ահա գառն Ած̃ որ բառնայ զմեղս աշխարհի:

**Աւետարան ըստ Մարկոսի: Զ. 14:**

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ լուաւ արքայ Հերովդէս. քանզի յայտնի եղեւ անուն նր̃. և ասէր, թէ Յովհաննէս մկրտիչ յարեաւ ի մեռելոց, և վն̃ այնորիկ զօրութիւնք լինին նովաւ: Այլք ասէին՝ թէ Եղիա է, իսկ այլքն՝ թէ մարգարէ է, կամ թէ իբրեւ զմի ի մարգարէից: Իբրեւ լուաւ Հերովդէս, ասէ. զորոյ ես զգլուխն հատի զՅովհաննու՝ սա է, նա յարեաւ ի մեռելոց: Զի ինքն Հերովդէս առաքեաց կալաւ զՅովհաննէս, և կապեաց զնա և եդ ի բանտի վն̃ Հերովդիայ կնոջ Փիլիպպոսի եղբօր նր̃, զի նա կին արար զնա: Քանզի ասէր Յովհաննէս ցՀերովդէս՝ թէ ոչ է օրէն քեզ ունել զկին եղբօր քո: Եւ Հերովդիա ոխացեալ էր ընդ նմա, և կամէր սպանանել զնա, և ոչ կարէր: Զի Հերովդէս երկնչէր ի Յովհաննէ, քանզի գիտէր զնա այր արդար և սր̃. և սպասէր նմա. և լուեալ ի նմանէ բազում ինչ՝ առնէր, և քաղցրութբ̃ լսէր նմա: Իբրեւ օր մի լինէր պարապոյ, յորժամ ընթրիս տայր Հերովդէս յաւուր ծննդոց իւրոց՝ նախարարաց իւրոց և հազարապետաց և մեծամեծաց Գալիլեացւոց. և ի մտանել դստերն Հերովդիայ և ի կա-

քաւեալ՝ հաճոյ եղեւ Հերովդի և բազմականացն։ Ասէ թագաւորն ցաղջիկն. խնդրեա՛ յինէն զոր ինչ կամիս, և տաց քեզ։ Եւ երդուաւ նմա բազում անգամ, թէ զոր ինչ և խնդրեսցես դու յինէն՝ տաց քեզ, մինչեւ ցկէս թագաւորութե̃ իմոյ։ Նա ելեալ ասէ ցմայր իւր. զի՞նչ խնդրեցից. և նա ասէ, զգլուխն Յովհաննու մկրտչի։ Եւ մտեալ անդրէն փութանակի առ թագաւորն, ասէ. կամիմ՝ զի այժմ տացես ինձ վաղվաղակի ի վերայ սկտեղ զգլուխն Յովհաննու մկրտչի։ Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն, այլ վն̃ երդմանցն և կոչնականացն՝ ոչ կամեցաւ անարգել զնա. և առաքեաց վաղվաղակի թագաւորն դահիճ, և հրամայեաց բերել զգլուխն նր̃. և չոգաւ գլխատեաց զնա ի բանտին, և եբեր զգլուխն նր̃ սկտեղբ՝ և ետ ցաղջիկն. և աղջիկն տարաւ ետ մօր իւրում։ Իբրեւ լուան աշակերտքն նր̃՝ եկին բարձին զմարմինն, և եդին ի գերեզմանի։ 29։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղ. Քում ամենազօր։

---

## ԵՐԵԿՈՅԻՆ

### Առաջին Սաղմոս ԿԶ։

Ած̃ ողորմեա՛ մեզ և օրհնեա՛ զմեզ. երեւեցո՛ զերեսս քո ի մեզ և ողորմեա՛ մեզ։

.Ճանաչել յերկրի զճանապարհս քո. յազգիս ամենայն զփրկութի̃ս քո։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Ած̃, խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք ամ̃։

Ուրախ եղիցին, և ցնծասցեն ազինք. զի դու դատիս զժողովուրդս յուղղութե̃. և ազգաց երկրի դու առաջնորդես։

Խոստովան եղիցին առ քեզ ժողովուրդք Ած̃. գոհասցին զքեզ ժողովուրդք ամ̃։

Երկիր ետ զպտուղ իւր, և օրհնեաց զմեզ Աստուած Աստուած մեր։

Ած մեր օրհնեսցէ զմեզ, և ի նմանէ երկիցեն ամ ազգք երկրի:

Աւետարան ըստ Յովհաննու: ԻԱ. 1:

Յետ յարութեն Տեառն մերոյ Յսի Քսի:

Յետ այսորիկ դարձեալ յայտնեաց զանձն իւր Յս աշակերտացն իւրոց առ ծովեզերբն Տիբերեայ. և յայտնեաց այսպէս: Էին ի միասին Սիմոն Պետրոս և Թովմաս անուանեալն Երկուորեակ և Նաթանայէլ՝ որ ի Կանայ Գալիլեացւոց, և որդիքն Զեբեդեայ, և այլք յաշակերտաց անտի երկու: Ասէ ցնս Սիմոն Պետրոս. երթամ ձուկն որսալ: Ասեն ցնա. գամք և մեք ընդ քեզ. գնացին և մտին ի նաւ, և յայնմ գիշերի կալան և ոչ ինչ: Իբրև այգ եղև՝ կայր Յս յեզր ծովուն, բայց ոչ ծանեան աշակերտքն թէ Յս իցէ: Ասէ ցնս Յս. մանկունք, մի՞ թէ ունի՞ք ինչ ուտելոյ: Պատասխանի ետուն և ասեն ցնա. ոչ: Ասէ ցնս. արկէք յաջակողմն նաւին զուռկանդ, և գտանիցէք: Արկին, և ոչ կարէին ձգել ի բազմութենէ անտի ձկանցն: Ասէ աշակերտն այն զոր սիրէրն Յս՝ ցՊետրոս. Տէր է այն: Սիմոն Պետրոս իբրև լուաւ թէ Տէր է, արկաւ զիւրև զսփածանելին՝ քանզի մերկ էր, և ընկէց զինքն ի ծովն: Եւ այլ աշակերտքն նաւաւն իսկ գային, քանզի չէին հեռի ի ցամաքէն՝ այլ իբրև երկերիւր կանգնաւ, քարշէին զգործին հանդերձ ձկամբն: Իբրև ելին ի ցամաք՝ տեսանեն կրակետղ կայծականց, և ձուկն մի ի վերայ և հաց: Ասէ ցնոսա Յս. բերէք ի ձկանց այտի՝ զոր դուքդ կալարուք այժմիկ: Եմուտ Սիմոն Պետրոս, և ձգէր զգործին ի ցամաք՝ լի մեծամեծ ձկամբք հարիւր և յիսուն և երիւք. և այնչափ ինչ կայր, և ոչ պատառեցաւ գործին: Ասէ ցնս Յս. եկայք ճաշեցէք: Եւ ոչ ոք յաշակերտացն իշխէր հարցանել՝ թէ դու ո՞վ ես. զի գիտէին թէ Տէրն է: Գայ Յս՝ և առնու զհացն և տայ

նգ, նոյնպէս և զձուկնն: Զայս երիցս անգամ երեւեցաւ Յն աշակերտացն՝ յարուցեալ ի մեռելոց: 14:

Աւրհնաբանի փառ Գողգոթեան:

Բարեբանեալ որ եկիր և գալոցդ ես ի յերկնէ՝ աստուածային քո փառօք. շնորհեա ամենեցուն զյարութի քն, ով մարդասէր: Լոյս զուարթ:

Մեսեդի Գողգոթեան: Օրհնեալ որ գաս: 96:

Համբարձի ԱԶ:

Որ վերօրհնիս յաթոռըս քերովբէից. ի վերայ. նըստել յաւանակի հաճեցար. * բարեբանեալ որ եկիրդ ի կեցուցանել: Ուստի և մեք զյաղթական օրհնութեցն ըղձայն. մատուցանեմք քեզ թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարեբան: Ովսաննա ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ Տեառն ալէլուիա. և օրհնութի որ գալոցդ ես անուամբ Տեառն ալէլուիա:

Այսօր զանըսկիզբըն Բանն որ յաթոռ փառաց ընդ Հօր յերկրի երեւեալ տեսաք. քրովբէական ձայնիւ օրհնեսցուք. * օրհնեալ եկեալ անուամբ Տն: Փառք Հօր: Այսօր յաւանակ քերովբէ և տղայք Եբրայեցւոց բարեբանեն. օրհնութի որդւոյ Դաւթի. օրհնեալ: Այժմ և: Այսօր զուարճացան տիեզերք գալստեամբ Աստուածոյն յերկիր. և գոչէին հընչմամբ երգով. օրհնեալ:

Արձակման Սաղմոս Զ:

Ցնծացէք առ Ած օգնական է մեր. աղաղակեցէք առ Ած Յակովբայ:

Առէք սաղմոս և տուք օրհնութի. սաղմոս ասացէք նմա ի ձայն քաղցրութե:

Փող հարէք ի գլուխս ամսոց, յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց:

*Հրաման է այս Իսրայէլի, և իրաւունք Ած Յակովբայ։*

*Վկայութիւն Յովսեփու զոր եդ ընդ Նմա, որպէս ելանէր նա յերկրէն Եգիպտացւոց. զլեզու զոր ոչ գիտէր լուաւ։*

*Ի բա՛ց արար ի բեռանց զթիկունս Նր, և զձեռն Նր յորթ և ի թի ծառայելոյ։*

*Ի Նեղութեան կարդացեր առ իս՝ և փրկեցի զքեզ. լուայ քեզ ի գաղտնութէ մրրկին, և փորձեցի զքեզ ի վերայ ջուրցն Հակառակութեան։*

*Լո՛ւր ժողովուրդ իմ և վկայեմ քեզ. և Իսրայէլ, թէ լուիցես ինձ։*

*Մի՛ եւս եղիցին քեզ աստուածք առժամայնք. և մի՛ երկիր պագանիցես դու աստուծոյ օտարի։*

*Ես եմ Տէր Ած քո, որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց. բաց զբերան քո և լցից զդա։*

*Ժողովուրդ իմ ոչ լուաւ ձայնի իմում. և Իսրայէլ յիս ինչ ոչ նայեցաւ։*

*Թարձի թողի զնս երթալ զհետ կամաց սրտից իւրեանց. զի գնացին Նոքա ըստ կամս անձանց իւրեանց։*

*Զի թէ ժողովրդեան իմոյ լուեալ էր ինձ, կամ Իսրայէլի զճանապարհս իմ գնացեալ էր։*

*Որպէս զոչինչ խոնարհ արարեալ էր իմ զթշնամիս Նորա և ի վր Նեղչաց Նորա արկեալ էր զձեռն իմ։*

*Թշնամիք Տեառն ստեցին Նմա. եղիցին ժամանակք Նոցա յաշխարհի։*

*Կերակրեաց զնս ի պարարտութէ ցորենոյ. և ի վիմէ մեղր յագեցոյց Նոցա։*

Աւետարան ըստ Յովհաննու։ ԻԱ. 15։

Յետ յարութեան Տեառն մերոյ Յսի Քսի։

*Իսկ իբրեւ ճաշեցին, ասէ ցՍիմովն Պետրոս՝ Յս. Սիմովն Յովնանու սիրես զիս առաւել քան զդոսա։ Ասէ ցնա. այո՛ Տէր, և դու գիտես՝ զի սիրեմ զքեզ։ Ասէ*

ցնա՝ արածեա՛ զգառինս իմ։ Դարձեալ ասէ ցնա. Սիմո՛վն Յովնանու սիրե՞ս զիս։ Ասէ ցնա. այո՛ Տէր, և դու գիտես՝ զի սիրեմ զքեզ։ Ասէ ցնա. արածեա՛ զոչխարս իմ։ Ասէ ցնա երիցս անգամ. Սիմո՛վն Յովնանու սիրե՞ս զիս։ Տրտմեցաւ Պետրոս, զի ասացն ցնա երիցս՝ թէ սիրե՞ս զիս. և ասէ ցնա. Տէ՛ր, դու զա՛մ գիտես. և դու իսկ զա՛մ ճանաչես, և եթէ սիրեմ զքեզ։ Ասէ ցնա Յս̃. արածեա՛ զոչխարս իմ։ Ամէն ամէն ասեմ քեզ. զի մինչ մանուկն էիր՝ անձամբ անձին գօտի ածէիր, և երթայիր յո՛ և կամէիր. և յորժամ ծերասցիս՝ ձեռս ի վեր կալցես, և այլք ածցեն քեզ գօտի, և տարցին՝ ուր ոչն կամիցիս։ Զայս ասաց՝ նշանակեալ թէ որո՛վ մահու փառաւոր առնիցէ զԱծ̃։ Եւ զայս իբրեւ ասաց՝ ասէ ցնա. եկ զկնի իմ։ Դարձաւ Պետրոս՝ և տեսանէ զաշակերտն՝ զոր սիրէր Յս̃, զի երթայր զկնի, որ և անկաւ զլանջօքն Նր̃՝ և ասէ, Տէ՛ր ո՞վ է՝ որ մատնելոցն է զքեզ։ Զնա տեսեալ Պետրոսի, ասէ ցՅս̃. Տէ՛ր, իսկ սա զի՞։ Ասէ ցնա Յս̃. եթէ կամիմ, զի կացցէ դա՝ մինչեւ ես գամ. քեզ զի՞ փոյթ է, դու ե՛կ զկնի իմ։ Եւ ել բանս այս յեղբարս՝ և համարեցան թէ աշակերտն այն ոչ մեռանիցի. և ոչ ասաց նմա Յս̃ եթէ ոչ մեռանիցի, այլ՝ թէ կամիմ ես թէ կացցէ դա՝ մինչեւ ես գամ։ Այս աշակերտ է՝ որ վկայէ վասն այսորիկ. որ և գրեացն իսկ զայսոսիկ. և գիտեմք, եթէ ճշմարիտ է վկայութի̃ Նր̃։ Բայց է և այլ ինչ բազում զոր արար Յս̃, զոր եթէ գրեալ էր մի ըստ միոջէ՝ կարծեմ թէ և ոչ աշխարհս բաւական էր տանել զգիրսն՝ որ թէ գրեալ էին։ 25։

Քրզ. Խնդրեսցուք։ Կեցո։ Աղ. Թագաւոր խաղաղ։

Եւ արժանի է խաղաղութեան։

# ՍԱՂՄՈՍՔ


Երես

Սղ. ՂԹ. Աղաղակեցէք առ Տէր ամենայն երկիր . . . 296
ՃԼԹ. Ապրեցո զիս Տէր ի մարդոյ. . . . 93, 186
ԻԷ. Առ քեզ Տէր կարդացի Աստուած . . . 266
ԻԴ. Առ քեզ Տէր համբարձի զանձն իմ 232, 262
ՃԻԲ. Առ քեզ Տէր համբարձի զաչս իմ . . . 104
ԼԸ. Ասացի թէ պահեցից զճանապարհս իմ . . 275
ՃԹ. Ասաց Տէր ցՏէր իմ, Նիստ ընդ . . . . 367
ԻԹ. Աստուած Աստուած իմ նայեաց առ . 394, 428
ԾԹ. Աստուած մերժեցեր եւ աւերեցեր զմեզ . 353
ՀԸ. Աստուած մտին հեթանոսք ի . . . . 359
ԾԳ. Աստուած յանուան քում կեցո զիս 23, 104
ԿԶ. Աստուած ողորմեա մեզ եւ օրհնեա 23, 541
ՂԳ. Աստուած վրէժխնդիր, Տէր . . . . . 259
ՃԸ. Աստուած օրհնութեան իմոյ մի . . 365, 381
Ե. Բանից իմոց ունկն դիր Տէր . . . . . 505
ՃԽԴ. Բարձր առնեմ զքեզ Աստուած իմ . . 87
ԻԹ. Բարձր առնեմ զքեզ Տէր . . 22, 154, 267
ԽԴ. Բղխեաց սիրտ իմ բան բարի եւ . . . . 221
ՃԽԷ. Գովեա Երուսաղէմ զՏէր . . . 491, 514
ԽԲ. Դատ արա ինձ Աստուած եւ իրաւ . 279, 347
ԻԵ. Դատ արա ինձ Տէր, զի ես . . . . . 264
ԼԴ. Դատեա Տէր զայնոսիկ, որ դատին . . . 387
ՃԺԸ. Եկեսցէ ի վերայ իմ ողորմութիւն քո . . 101
Խ. Երանի որ խորհի զաղքատն 244, 277, 345, 392
ՁԸ. Զողորմութիւնս քո Տէր յաւիտեան . . 535
Բ. Ընդէ՞ր խռովեցան հեթանոսք եւ . . . 333
ՃԻԹ. Ի խորոց կարդացի առ քեզ . . . 172, 483
Դ. Ի կարդալ իմում լուաւ ինձ 108, 183, 335, 480
Լ. Ի քեզ Տէր յուսացայ մի ամաչեցից 268, 398
Կ. Լուր Աստուած աղօթից իմոց . . . . 354
ՁԵ. Խոնարհեցո Տէր զունկն քո . . . ·91, 185
ՃԺԷ. Խոստովան եղերուք Տեառն 190, 295, 370, 444
ՃԺ. Խոստովան եղէց քեզ Տէր . . . . . 367
ԿԸ. Կեցո զիս Աստուած զի հասին ջուրք . . 405
ՁԴ. Հաճեցար Տէր ընդ երկիր քո . . . . 23
ՃԻ. Համբարձի զաչս իմ ի լերինս . . . . 98
ԼԹ. Համբերելով համբերի Տեառն, . . . . 276
ՃԺԵ. Հաւատացի զոր եւ խօսեցայ եւ ես . . . 82
ՃԽԱ. Ձայնիւ իմով ես առ Տէր . . . ·94, 188
ԻԸ. Մատուցէք Տեառն որդիք ԱՅ . . 266, 317
ՃԺԸ. Մերձեսցին խնդրուածք իմ . . . . . 25
ԼԶ. Մի նախանձիր ընդ չարս եւ մի ընդ . . . 271

Երես

Ծ. Ողորմեա ինձ Աստուած . . 48, 67, 284, 313
Ղ. Որ բնակեալն է յօգնութիւն . . . 76, 103
ՀԹ. Որ հովուեսդ Իսրայէլի նայեաց . . . . 360
ԽԱ. Որպէս փափաքէ եղջերու . . . 278, 287, 346
ԾԳ. Ունկն դիր Աստուած աղօթից իմոց . . . 308
ԺԵ. Պահեա զիս Աստուած զի ես ի քեզ . . 431
ՃԺԴ. Սիրեցի զի լուիցէ Տէր զձայն . . . . 82
ՁԷ. Տէր Աստուած փրկութեան . . 4, 413, 441
Գ. Տէր զի բազում եղեն նեղիչք իմ . . 3, 334
ՂԸ. Տէր թագաւորեաց բարկացան . . . . 520
ՂԲ. Տէր թագաւորեաց վայելչութիւն . . . 530
Ի. Տէր ի զօրութեան քում ուրախ եղիցի . 508
ԻԶ. Տէր լոյս իմ եւ կեանք իմ . . . . . 264
ՃԱ. Տէր լուր աղօթից իմոց եւ աղաղակ . . 24, 420
ՃԽԲ. Տէր լուր աղօթից իմոց ունկն դիր . . 6, 25
ՃԽ. Տէր կարդացի առ քեզ . . . . . 94, 187
ԻԲ. Տէր հովուեսցէ զիս եւ ինձ ինչ . . 71, 310
Զ. Տէր մի սրտմտութեամբ քով յանդի . . 21
ԼԷ. Տէր մի սրտմտութեամբ: Զի նետք . 273, 390
ԺԴ. Տէր ո՞վ կայցէ ի խորանի քում . . . 522
Ձ. Ցնծացէք առ Աստուած օգնական . 361, 543
ԾԸ. Փրկեա զիս ի թշնամեաց իմոց . . . . 352
ԿԴ. Քեզ վայելէ օրհնութիւն 214, 474, 484, 498
ՃԲ. Օրհնեա անձն իմ զՏէր եւ ամենայն . . 5
ՃԳ. Օրհնեա անձն իմ զՏէր, Տէր Աստուած . 201
ՃԺԶ. Օրհնեցէք զՏէր ամենայն ազինք . . . 82
ՃԽԸ. Օրհնեցէք զՏէր յերկինս, օրհնեցէք. . . 50
ՂԷ. Օրհնեցէք զՏէր յօրհնութ . . 168, 174, 527
ՃԽԹ. Օրհնեցէք զՏէր յօրհնութիւն նոր, օրհն. 51
ՃԾ. Օրհնեցէք զԱստուած ի սրբութեան . 51, 105
ՃԺԲ. Օրհնեցէք մանկունք զՏէր եւ օրհն. . . 443

Յով. Բ. Ի նեղութեան իմում ես առ Տէր . . . 279
Ղուկ. Ա. Մեծացուսցէ անձն իմ զՏէր . . . 42, 106
Տէր ամենակալ Աստուած Աբրահամու . 281
Դան. Գ. Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց . 38
Ղուկ. Ա. Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի . . . 42

# ՇԱՐԱԿԱՆՔ


Երես

բձ. Ալէլուիա։ Այսօր ընդ զօրս երկնից . . . . . . 201
գձ. Ահաւոր ես Թագաւոր քրովբէական . . . . . 221
դձ. Աղբիւր անմահութեան բխեալ ի Բեթանիա . . 154
գձ. Աղբիւր լուսոյ եւ ճառագայթ . . . . . . . 254
դկ. Ամենակալ քաւեա զմեղս իմ, զի Աստուած . . 282
բկ. Ամենայն երկիր տուք փառս այնմ . . . . . 218
դկ. Այսօր անճառ լուսոյն ծագումն . . . . . . 335
գձ. Այսօր աստուածութիւնն զուարճանայ . . . . 444
գձ. Այսօր Գաբրիէլ ցնծութեամբ երգեաց . . . . 241
աձ. Այսօր գոլով ի Բեթանիա . . . . 149, 118, 163
գձ. Այսօր եկեալ կամաւ փրկիչն . . . . . . . 244
բկ. Այսօր երկնայինքն ուրախացան ընդ . . . . . 511
աձ. Այսօր զանսկիզբն բանն որ յաթոռ . . . 160, 162
աձ. Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի . . 469, 487
դձ. Այսօր զոր երկնային լուսեղինացն . . . . . 333
բձ. Այսօր զուարճացան տիեզերք ամենայն . . . . 501
բկ. Այսօր ընդ հրակերպեան դասուցն . . . 173, 189
դձ. Այսօր ի կատարումն աստուածային . . . . . 332
բձ. Այսօր խնդրի պատուական փայտ . . . 125, 152
ակ. Այսօր կարգեցաւ օրինակ . . . 120, 259, 310, 315
դկ. Այսօր հրեշտակք ի յերկինս . . . . . . . 473
աձ. Այսօր յարեաւ ի մեռելոց . . . . . . 469, 473
գձ. Այսօր յարութիւն Քրիստոսի տօնեցէք . . . . 516
դկ. Այսօր նշան յաղթող երեւեալ . . . . . 172, 482
գձ. Այսօր ուրախացեալ ցնծան . . . . . . . . 256
գձ. Այսօր ցնծան դասք հրեշտակաց . . . . . . 242
բձ. Անեղն ի Հօրէ ծնեալ Որդի . . . . . . . . 196
աձ. Անճառելի Հօր էակից ի խաչ ելեր . . . 118, 513
աձ. Անսկիզբն բանդ անբաժանելի . . . . . . . 526
բձ. Ապաւինեցաք ի խաչ քո . . . . . . . 378, 503
բձ. Առ ամենեսեան գթած Քրիստոս . . . . . . 200
բկ. Առաւօտեան սուրբ կանայքն . . . . . . . 510
ակ. Առաքեցար ի Հօրէ բանդ Աստուած 447, 493, 500
գկ. Առեալ եւ մեր զօրհնութիւնս . . . . . . . 523
գձ. Աստուածածին երկնային դուռն . . . . 243, 439
գկ. Աստուածածին խորան լուսոյ . . . . . 134, 524
դկ. Աստուածածին մայր եւ կոյս, ծագող . . . . 139
բձ. Աստուածային դաշմամբ ձայն արկեալ . . . . 153
դկ. Աստուած անեղ անժամանակ, հայր . . . . . 140
ակ. Արարիչ Աստուած եւ ստեղծիչ . . . . . . . 83
դձ. Արարիչ եւ մարդասէր, անոխակալ . . . . . 145
դձ. Արարչական բանին հրաման . . . . . . . . 61

Երես

գձ. Արեգակն արդարութեան Քրիստոս . . . 241, 517
բձ. Արծաթսիրութեամբն մոլեալ . . . . 376, 436
գձ. Արկող զլոյս որպէս զօթոց . . . 258, 130, 240
բձ. Բանալի արքայութեան տուաւ . . . . . . 199
բձ. Բանն առաքեալ ի Հօրէ, որ վասն . . . . . 151
դկ. Բանն որ ընդ Հօր յէութեան . . . . . . 138
բկ. Գալոց է միածինն փողով . . . . . . 218
գձ. Դասք անմարմնականք երկնաւոր . . . . . . 131
բկ. Դատաւոր արդարութեան հաստատեցեր . . . 217
բձ. Դարձո զցասումն քո ի մէնջ . . . . . . 123
գկ. Դու ծաղիկ անթառամ տոհմի . . . . 172, 482
դձ. Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք . . . . 430
բձ. Եկայք որդիք մարդկան այսօր . . . . 196, 150
գձ. Եկեալ ի փրկութիւն ազգի մարդկան . . 380, 240
բձ. Եկին ի գերեզման առաւօտեան . . . . . . 501
դձ. Ես ասացի ի վերանալ յինէն . . . . . . 146
ակ. Երգեսցուք քեզ ընդ հրեշտակս . . . . . . 494
ակ. Զանճառելի զլոյս աստուածութեան . . . . . 495
գկ. Զանսկզբնաբար բղխումն ի Հօրէ . . . 134, 524
գկ. Զաստուածային զգերեզմանաւն բոլորեալ . . . 523
դկ. Զարհուրեալ դողացաւ ամենամեղ . . . . . 280
դձ. Զգալուստ քո Քրիստոս այսօր . . . 162, 136, 182
գձ. Զերծո զիս յորոգայթէ որսողին . . . . . . 130
բձ. Զկուսութիւնդ քո Աստուածածին . . 153, 220
աձ. Զհոգիս ծառայից քո Քրիստոս . . . . . 117
դձ. Զյարութիւն աստուածորդւոյն . . . . . . 136
բկ. Զյարութիւն Քրիստոսի ամենեքեան . . . . . 511
դկ. Զողորմութեան քո զդուռն բաց մեզ . . . . 194
բկ. Զտիեզերական խնդութեանցն աւետիքս . . . 511
աձ. Զփառաւորեալն յամենայն արարածոց . . . . 163
բկ. Զքեզ Աստուածածին որ վերօրհնիս ի . . . . 218
աձ. Զքեզ երեւեալ դուռն առ Եզեկիէլի . . . . 526
բձ. Զքեզ կոյս եւ մայր եւ բնակարան . 198, 378, 503
բձ. Զքեզ Հայր յառաջ քան . . . . 200, 258, 437
գձ. Զքեզ օրհնեմք թագաւոր յաւիտ . . . . . 439
բձ. Զքեզ օրհնեմք որ բաշխողդ ես . . . . 200, 377
գձ. Զքէն խորհեցան ի չարութիւն . . . . . . 243
գկ. Զքո յարութիւնդ օրհնեմք մարդասէր . . . . 523
բկ. Զքրիստոս թագաւորն որ էն ի յաթոռ . . . 167
դձ. Զօրութիւն սուրբ խաչի քո Քրիստոս . . . . 137
աձ. Ընդ երիս մանկունսն օրհնաբանս . . . . . 519
բձ. Ընդ թագուհին քո յերկրի . . . . . . . 433
աձ. Ընդ լուսանալ միաշաբաթին . . . 469, 476, 491
աձ. Ընդ կանայսն իւղաբերսն առ քեզ . . . 470, 514
բձ. Ըստ աւետեաց մարգարէին, որ առ . . . . . 123
բձ. Թագաւոր անմահ արարիչ յաւիտենից . . 123, 377
դձ. Թագաւոր գոլով քո յաշխարհս . . . . 161, 178
բկ. Թագաւոր խաղաղութեան որ . . . . . 126, 511

Երես

բձ. Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք ·220, 193, 196
բձ. Ի գերեզման քո կանխեցին . . . ·478, 501, 508
բկ. Ի գիշերաց կանխեալ սաղմոսիւք . . . . . . 126
բձ. Ի գիշերին յորում մատնէր փրկիչն . . . . . 376
գձ. Ի խաչանիշ փայտէն դղրդեցան . . . . . . 516
աձ. Ի խորանի քում սրբութեան . . . . . . 165
գձ. Ի ձայն ահեղ յարութեան քո Տէր . . . . . 517
գձ. Ի ձայն մեծի զուարթնոյն եւ ի . . ·129, 241, 518
բձ. Ի ձայն փողոյ գալստեան քո . . . ·122, 151, 437
դկ. Ի համբառնալ բանին յերկինս . . . . . . 139
դձ. Ի հանգիստ քո Տէր ուր ամենայն . . . . . . 135
բկ. Իմաստուն կուսանքն պատրաստեալ . ·216, 127, 192
դձ. Ի յարութեան յաւուր գալստեան . . . 162, 183
գձ. Իջեր յերկնից անսկիզբն որդի . . . . . . . 379
ակ. Իջեր յերկնից որդի Աստուծոյ եւ մարմնացար . . 121
բձ. Իջեր յերկնից որդի Աստուծոյ ազատեցեր . . . 124
բկ. Իջեր Տէր ողորմութեամբ քո . . . . . 128, 218
բկ. Ի վերայ վիմի հաւատոյ շինեցեր . . . . . . 218
գձ. Իւղաբեր եւ սուրբ կանայքն . . . . . . . 516
բձ. Լոյսդ ի հայրական ծոցոյ ծագեալ . . . . . 257
գկ. Լոյս ի լուսոյ զմեզ լուսաւորեա . . . . . 132
գձ. Լոյս լուսոյ մայր եւ կենարար բանին . . 380, 518
աձ. Լոյսդ որ ի հրեղէն յաթոռ . . . . . . . . 525
գձ. Լուսաւորեա Երուսաղէմ զի հասեալ . . . . 454
բկ. Խաչի քո Քրիստոս երկիր պագանեմք . . . . 385
դկ. Խաչի քո Քրիստոս երկրպագեն արարածք . . . 139
բկ. Խաչն կենարար որ եղեւ մեզ . . . . . 386, 512
դկ. Խնդրեմք ի քէն Թագաւոր փառաց . . . . . . 138
բկ. Խոնարհեցար ի բարձանց եւ . . . . . . . . 125
դձ. Ծագումն հրաշալի որ անյայտ էր ի մէնջ . . . 137
ակ. Ծով կենցաղոյս հանապազ զիս. . . . . . . 120
բձ. Կանխելով սուրբ կանանցն ըստ . . . . . . . 502
բկ. Կանխեցին կանայքն ընդ առաւօտն . . . . . . 510
ակ. Կանխեցին կանայքն իւղաբերք . . . . . . 494
դձ. Կենդանարար Աստուած մարդասէր . . . . . . 136
բձ. Կենդանին յաւիտենից Քրիստոս . . . . . . 435
աձ. Կենդանութեանց բաշխող Քրիստոս .. . 149, 163
բձ. Կուսածին մարմնով Քրիստոս այսօր . . . . 436
դձ. Համբառնամ առ քեզ Տէր զաչս. . . . . . . 136
ակ. Հայր անոխակալ եւ բարեգութ . . . . . . . 119
դկ. Հայր անսկիզբն բարեխնամ մարդասէր . . . . 137
աձ. Հայր բազումողորմ խոստովանիմ . . . . . . 118
գձ. Հայր բարեգութ որ գթացար . . . . . . . 84
ակ. Հրաշալի զյարութիւն Աստուածորդւոյն . . . 493
գձ. Հրաշալի յարութիւնն զպահապանսն . . . . 517
աձ. Հրաշակերտ եւ զօրեղ փայտ. . . . . . . . 119
գձ. Հրաշափառ տեսութիւն ի կաթուղիկէ . . . . 518
բձ. Հրեշտակային ձայնիւ օրհնեսցուք . ·122, 198, 503

Երես

ած. Ձայն արկեալ կենարարին աստուածային . 117, 164
բձ. Ձայն աւետաւոր հրեշտակին . . . . . . 501
ակ. Ձեռք քո արարին եւ ստեղծին զիս ի . . . . 119
բկ. Ճառագայթ փառաց Հօր Որդիդ. . . . 128, 217
ած. Մարմնացեալդ ի կուսէն Նախայաւիտեան . . . 164
ած. Մեծացուցանեմք զքեզ որ ի Հօրէ . . . . . 513
բկ. Մեղք իմ բազում են յոյժ, ծանր. . . . . 193
գձ. Յաւիտենայնի բազումողորմ Աստուած . . . . 130
բկ. Յաւիտենայն ժամ աղաչանք իմ այս են . . . . 127
գկ. Յանճառ փառաց խոնարհեցար . . . . . . 524
գկ. Յանսկզբնական ծոցոյ Հօր խոնարհեալ . . . 85
բձ. Յաստուածային ձայնէ գոչմանն . . . . 149, 124
գկ. Յարեաւ Տէրն ի գերեզմանէն . . . . . . 523
ակ. Յարուցեալ է Տէրն ի գերեզմանէն . . . . . 493
ած. Յարուցելոյն ի մեռելոց . . . . . . . . 496
դկ. Յիսուս միածին անմահութեանց 154, 138, 172, 482
բկ. Յոյս իմ քո դու Տէր քաւիչ . . . . . . 192
գձ. Յովսէփ ճշմարիտ եւ արդար. . . . . . . 440
դկ. Յովսէփ քեզ հաւատացեալ . . . . . . . 440
դկ. Յորժամ եկին ի գերեզման իւղաբեր . . . . 139
դձ. Յորժամ եկն Յիսուս յԵրուսաղէմ . . 161, 171
դձ. Յորժամ հարկանի փող գալստեան . . . . . 85
ակ. Յորժամ յերկնից գոչէ փողն. . . . . 120, 494
բկ. Յորժամ յերկնից փառօք գաս. . . . . . . 216
գձ. Յորմէ սարսեալ ահռաւորքն ոչ իշխէին . . . . 255
բձ. Նահապետին Աբրահամու հայցմամբ . . . . . 81
բձ. Նոյն եւ նման Հօր եւ Որդւոյ . . .197, 437, 502
Նորաստեղծեալ բանն յանէից . . . . . . . 58
դկ. Նորոգող տիեզերաց որ զգեցուցեր . . . . . 401
գձ. Նոր զքանչելիք այսօր տեսանեմք . . . . 244, 252
բձ. Շնորհեա մեզ Տէր արթնութիւն ընդ . . 191, 197
գկ. Շնորհեա մեզ Տէր ընդ աղքատացն . . . . 133
բկ. Ողորմեա ինձ Աստուած իմ ողորմեա . . . . 127
ած. Ողորմեա ինձ Աստուած: Լսելի արա ինձ . . . 505
ած. Ողորմեա ինձ Աստուած: Որ զառաջինն . . . 117
ակ. Ով գերահրաշ ծաղիկ բուրեալ . . . . . . 121
գկ. Ով պահապան որ ծագեցար յԵդեմայ . . . . 134
գձ. Ով զքանչելի եւ տեսիլ ահաւոր . . . . . 380
գկ. Ով քառաթեւ լուսածին գերապանծ . . . . 525
գկ. Որ անբաւ քո մարդասիրութեամբդ . . . . 132
ած. Որ անճառ էութեամբ Հօր ես փառակից . 470, 519
ած. Որ անճառ տնօրէնութեամբ ի փրկութիւն . . 489
գձ. Որ յանսկիզբն յէութեանդ ես . . . . . 259, 240
ակ. Որ առաքեցար ի հայրական ծոցոյ . . . . . 120
ակ. Որ առաքեցար ի Հօրէ Հոգիդ անեղ . . . . 121
գձ. Որ արարեր զօրութեամբ զիմանալեաց . . . . 129
դկ. Որ արարիչդ ես արարածոց . . . . . . . 138
գկ. Որ արարիչդ ես հրեշտակաց եւ հոգեղինաց . . . 132

| | | Երես |
|---|---|---|
| բձ. | Որ արարիչդ ես յաւիտենից | 199 |
| գձ. | Որ բաշխողդ ես բարութեանց | 439 |
| գձ. | Որ եսդ ի յերկինս եւ ի վերայ երկրի | 254 |
| գձ. | Որ երկայնամիտդ ես քաղցր | 129, 256 |
| աձ. | Որ զաւետիս Հոգւոյն ի հրեղէն | 119, 505 |
| բձ. | Որ զխորհուրդ քո գալստեանդ | 150 |
| աձ. | Որ զհրեշտակին զձայնն լուեալ | 519 |
| դձ. | Որ զօրէնս սրբութեան պահող | 135 |
| բձ. | Որ թագաւորդ ես թագաւորաց Քրիստոս | 381, 436 |
| դկ. | Որ թագաւորդ ես յաւիտենից Քրիստոս | 86 |
| աձ. | Որ ի լերինն այլակերպեալ ցուցեր | 163 |
| դձ. | Որ ի չորեքկերպեան կենդանեաց | 153 |
| ակ. | Որ ի սկզբանէ իմաստութեամբ | 495 |
| բձ. | Որ ի վերդ ես քան զամենայն զմիտս | 197 |
| բձ. | Որ ի վերդ ես քան զմիտս եւ զխորհուրդս | 150 |
| դկ. | Որ ի քրովբէական աթոռ ընդ Հօր | 165 |
| աձ. | Որ ի քրովբէական կառսդ հանգչիս | 164, 470 |
| աձ. | Որ խոնարհեցար ի յերկնից եւ իջեր | 519 |
| գձ. | Որ խոնարհեցար յերկնից բանդ | 129 |
| գձ. | Որ խորհրդեամբ ընդ Հօր եւ Հոգւոյն | 239 |
| գձ. | Որ խորհրդոց ես Տէր Աստուած անմահ | 243 |
| բձ. | Որ կոչեցեր առ քեզ Տէր | 83 |
| գձ. | Որ համագոյդ ես Հօր եւ Որդւոյ | 130, 255 |
| գձ. | Որ յաթոռ փառաց բազմեալ ընդ Հօր | 239 |
| աձ. | Որ յամենայնի ես Աստուածութիւն, եւ | 118 |
| բձ. | Որ յանէից գոյացուցեր զքո | 213 |
| ակ. | Որ յերկնային զօրս անմարմնոցն | 494 |
| գձ. | Որ յէութեանդ ես ընդ Հօր եւ | 256 |
| բձ. | Որ նստիս ի քրովբէս Աստուած | 220, 196, 376, 436 |
| բկ. | Որ ողորմեցար ի մեղս ծնեալ | 128. |
| բկ. | Որ որդիդ ես եւ բանդ Աստուած | 84 |
| բկ. | Որ պատուիրան ճշմարտութեան | 126 |
| աձ. | Որ ստեղծմամբ ըստ պատկերի քո | 83, 497 |
| բձ. | Որ սքանչելիդ ես ի բարձունս Տէր | 219 |
| աձ. | Որ վերօրհնիս յաթոռս քերովբէ | 160, 162, 167, 177 |
| գձ. | Որ վասն մեր յերկրի երեւեալ | 255 |
| գկ. | Որ տրտմահաղորդ քո չարչարանօք | 133 |
| բկ. | Ուրախ լեր եկեղեցի սուրբ ի | 166, 217 |
| աձ. | Ուրախ լեր յոյժ դուստր Սիովնի | 166 |
| աձ. | Պայծառացիր եկեղեցի հեթանոսաց | 504 |
| բձ. | Պարգեւատուն ամենեցուն այսօր | 435 |
| բձ. | Սարսափելի հողմոյ նման | 124, 151, 377 |
| ակ. | Սեղան քո Տէր զօրութեանց հաւատով | 122 |
| բկ. | Սիւն լուսոյ եւ ամպ հովանի | 512 |
| աձ. | Սոսկալի տեսիլ հրեշտակին | 526 |
| աձ. | Սուրբ խաչն օգնական հաւատացելոց | 490 |
| բձ. | Սքանչելի կանայքն աներկիւղ եկին | 502 |
| ակ. | Սքանչելի հրեշտակն Տեառն | 493 |

